# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ՎԱԹՍՈՒՆՈՒԵՐՐՈՐԴ ՏԱՐԻ

**1949**

Վ Ի Ե Ն Ն Ա

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ



# HANDES AMSORYA

## Zeitschrift für armenische Philologie

Dreiundsechzigster Jahrgang

**1949**

Wien

Mechitharisten-Buchdruckerei

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ
# Ս. ՄԱՇՏՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ

### ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Աստուածաշունչի թարգմանութեան 15րորդ դարադարձին երբ կը գրէի Ս. Մաշտոցի եւ անոր Դպրոցի մասին, զբաղած էի Կորիւնով. այս պատճառով ալ երբ առաջարկութիւն ըրաւ ինծի Պր. Ա. Ալպօյաճեան, որ թարգմանեմ Կորիւնի Վարքն Մաշտոցի, սիրով յանձն առի (1942, Բէյրութ)։ Թարգմանութիւնն ի գլուխ հանեցի նոյն տարւոյն։ Այս թարգմանութեան՝ պիտի ընկերանար նաեւ բնագիրը։ Ուզեցի վերակազմել այդ բնագիրը. երբ աւարտեցաւ աշխատանքս, նկատեցի որ չափազանց ծանրաբեռնուած է բնագիրը քննական սարուածքով. անոնք անհրաժեշտ էին սակայն արդարացնելու համար կատարած փոփոխութիւններս. իսկ Պր. Ալպօյաճեանի նպատակն էր տալ ժողովրդական հրատարակութիւն։ Այս եւ այլ կէտերու մէջ չկրցանք գալ համաձայնութեան։

Տակաւին անմատչելի էր ինծի Մ. Աբեղեանի հրատարակութիւնը. կը պակսէին ինծի նաեւ կարգ մը աղբիւրներ եւ ուսումնասիրութիւններ, զորոնք կարելի չէր գտնել Բէյրութի շրջանակին մէջ։ Ես չաճապարեցի հրատարակութեան տալ աշխատութիւնս։ Վիեննա վերադառնալէ (1946) ետքը լծուած էի այլ աշխատանքներու։ Մխիթարի 200ամեակը պատեհագոյն առիթը համարեցայ լոյս ընծայելու այս աշխատութիւնս, ուրիշ ժամանակի պահելով Թարգմանութեան հրատարակութիւնը։

Մեծ աշխատանք պահանջեց ինծմէ շատ աղճատուած բնագրի վերակազմութիւնը, բայց ուրախ եմ, որ յաջողեցաւ ինծի հ ն ա ր ա ւ ո ր չ ա փ ի մ է ջ վերընծայել Ե. դարու բնագիրը։ Վիճելի ընթերցուածներ մնացին հոն անշուշտ, ինչպէս նաեւ երկբայելի սրբագրութիւններ։ Յամենայն դէպս այս տեղ առաջին անգամ է որ փորձ կ'ըլլայ Ագաթանգեղոսի, Փաւստոսի եւ Համառօտ Կորիւնի քով ինչպէս նաեւ այլ ձեռագիր հատակոտորներու մէջ պահուած կորիւնեան հատուածները նկատողութեան առնել Կորիւնի բնագրի վերակազմութեան համար։

Ներածութեան մէջ խօսած եմ այն աղբիւրներու վրայ, որոնց հիման վրայ կատարած եմ վերակազմութիւնս. իսկ բնագրի տակ զետեղած եմ ձեռագիրներու ընթերցուածներն եւ այլ նկատողութիւններս։ Բնագրին վերջը տուած եմ Լուսաբանութիւններ զանազան պատմական եւ բանասիրական հարցերու շուրջը։

Փափագս էր զետեղել բնագրին կից այն հատուածները, զորոնք Ագաթանգեղոս եւ Փաւստոս փոխ առած են Կորիւնէն, ինչպէս նաեւ Համառօտ Կորիւնի համապատասխան տեղիքները, դիւրութիւն ընծայելու համար բանասէրներու վերաքննելու իմ վերակազմած բնագիրս։ Տեղս չներեց սակայն այս ոչ շատ անհրաժեշտ Յաւելուածովս աւելի ծանրաբեռնել հրատարակութիւնս։

Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

*«Քրիստոսի ետքը Ա—Դ դարերուն մէջ ահաւոր ծուլութիւն կը տեսնուի Հռոմէական Պետութեան մէջ, որ ոչ միայն զինուորական մարզին, այլ եւ միւս բոլոր մարզերու վրայ կը տարածուի: Երեւան չեկաւ աչքառու նորութիւն ոչ գեղարուեստի, ոչ արուեստներու եւ ոչ պետական վարչութեան մէջ: Նաեւ գրականութիւնը կը դիմէ դէպի սին նմանողութիւն անցեալի ստեղծագործութեան, որ երթալով կը նուազի եւ կ'անչքանայ: Մարզ մը միայն բացառութիւն կը կազմէ, կրօնականը: Նոր-պղատոնական փիլիսոփայութիւնն եւ քրիստոնէական վարդապետութեան յօրինուածական բարգաւաճումը միակ ստեղծագործական վաստակներն են, որոնք կը պաշտպանեն դարաշրջանս բացարձակ ոչնչութեան մեղադրանքի առաջ: Այս կէտի մէջ արդիւնաւոր եղան Կապադովկիա եւ Ասորիք»*[1]:

*Մինչ քաղաքակիրթ պետութիւններ բարձր մշակոյթով՝ կը ծիւրէին, կը ծնդէին, բարբարոս ժողովուրդներու աւար կ'ըլլային, Կովկասեան հիւսիսի բարբարոս ժողովուրդ մը, Թօթափած հեթանոսական հնութեան ժանգը նորափետուր կը զարդարուէր քրիստոնէական հանդերձանքով, միտքն ու սիրտը, վարքն եւ բարքը կ'ազնուանցէր, կը նրբացնէր, ինքնուրոյն, սեպհական գրականութեամբ պճնուելու կը պատրաստուէր* (218—408): *Եւ այդ ժողովուրդէն զաւակ մը, Մաշտոց, դուրս կը կարկառի, բարձր հանճարով, հնարագէտ կորովութեամբ, եւ երեք ժողովուրդներու բարբարոս լեզուներուն համար այբուբեններ կը ստեղծէ, անոնց մղում կու տայ սեպհական գրականութիւն ծաղկեցնելու եւ գրագէտ ժողովուրդներու կաճառին մասնակցելու: Ան նոյն իսկ չորրորդ ժողովուրդ մը, Աղուանները, կը հրաւիրէ գրի բարիքին հաղորդ բաժանորդ ըլլալու: Այսպէս Ե. դարու սեմքին Հայերը, Վրացիք եւ Աղուանները կը պայծառանան գրականութեամբ, բովանդակ հիւսիսը, ուր նաեւ քրիստոնէութիւնը Հայոց միջնորդութեամբ քարոզուած էր: Իսկ Ալանգոթական ժողովուրդը, որոնք գաղթականութեամբ հիւսիսէն՝ Արեւելեան Հռոմէական պետութեան մէջ հաստատուած էին, հելլէն քաղաքակրթութեան ազդեցութեան տակ, եւ վտանգի մէջ այդ ազդեցութեան կուլ երթալու, իր հզօր բազուկով դուրս կը կորզէ այդ հնոցէն. անոր լեզուին համար ալ նորատուր աղփաբետ կը հնարէ եւ հնարաւորութիւն կու տայ գերմանական լեզուախումբի պատկանած բարբառի մը գրականութիւն զարգացնելու. որ թէպէտ կարճօրեայ կեանք ապրեցաւ, բայց պարծանքը հանդիսացաւ բազմաճիւղ գերմանական ցեղերու եւ առաջին սկզբնաւորութիւնը ապագային աշխարհակալ գերմանախօս գրականութեան:*

*Այդ մեծ Հանճարը նուիրեց իր ոյժերը առաւելապէս իր սեպհական ժողովուրդի մշակոյթի ծաղկումին, հայ գրականութեան բարգաւաճումին, հայ լեզուի դասական բարձրութեան ճախրումին: Ան հելլենական նուրբ ճաշակով հրահանգուած եւ մշակուած հռետորաբան ճարտարախօսներ, հոյակապ մատենագիրներ իր աշխարհը կը փոխադրէ, անոնց հայ բեմին վրայ հայերէնաբարբառ ճարտարախօսել կու տայ, աւելի՛ վսեմ:*

---

[1] Seeck, Untergang des Römischen Reiches.

Կոստանդիոս Բ. կայսր 357ին երբ առաջին անգամ ըլլալով Հռոմ ոտք կոխեց եւ տեսաւ յաւիտենական Քաղաքի հոյակերտ շինուածքներն ու անդրիները, հիացաւ զարմացաւ. իսկ ի տես Տրայանոսի յաղթական կամարին եւ այն անդրիին, որ կը ներկայացնէր Տրայանոս կայսրն ահիպարանոց ձիու վրայ, աքանչացաւ եւ փափաք յայտնեց նման մը ինքն ալ ունենալ: Պարսիկ իշխան մը, որ կը գտնուէր Կայսեր շքախումբին մէջ, գլուխը շարժելով դիտողութիւնս ըրաւ. Այնպիսի ձի մը ունենալու համար հարկէ համապատասխան ախոռ մ'ալ ունենալ[2]: Այսինքն մշակոյթ: Եթէ Կայսրը չունեցաւ համարձակութիւնը այդ ձին փոխադրելու իր մայրաքաղաքը, բայց Մաշտոց ունեցաւ քաջութիւնը քրիստոնեայ յոյն եւ ասորի մեծ մաքերը ասպնջականել ամենայն շուքով հայ գրականութեան ճեմարանին մէջ: Ընդունակ էր հայ լեզուն ամենայն նրբութեամբ վերընծայելու անոնց խօսքերը, իսկ հայ ժողովուրդը լսելու եւ ըմբռնելու:

Ամենակարճ ժամանակի մէջ ստեղծեցին հայ թարգմանիչները հայ հողին վրայ ճոխ Մատենադարան ամենազգի բովանդակութեամբ:

Այս հրաշքը գործեց Մաշտոց: Այն չեղաւ վաղանցիկ երեւոյթ մը: Հայ գրականութիւնը ծաղկեցաւ 1500 տարիէ ի վեր, թէ եւ ոչ միշտ հաւասար բարձրութեան վրայ եւ համաչափ պտղաբերութեամբ:

Այսպէս չորս անգրագէտ, բարբարոս ժողովուրդներ երջանկացուց Մաշտոց եւ բարձրացուց զանոնք գրագէտ ժողովուրդներու կարգին, հասցուց զանոնք մտաւոր անկախութեան, տէր դարձուց սեպհական մշակոյթի:

Այս հանճարով հնարագէտ, մտքով ստեղծագործ, վարքով սուրբ, արդիւնքներով լուսատու, դարերու հազուադէպ ծնունդ, միջազգային ծաւալով մեծ Մարդու Վարքը գրած է Կորիւն, անոր աշակերտն եւ հիացողը:

1. «Կորիւն» անունը: Միակ գրութեամբ, Մաշտոցի Վարքով ծանօթ է մեզի Կորիւն: Այս Վարքը հասած է մեզի մէկ ձեռագրի մէջ միայն, այն է Երեւանի Մատենադարանի Թ. 2639, գրուած 1672ին, որ խորագիր կը կրէ. «Յիշատակ սրբոյն Մեսրովպայ արարեալ երանելւոյն». առանց մատենագրին անունի: Այս ձեռագրէն արտագրուած օրինակներու մէջ (ինչպէս Թ. 131, յամէ 1781) վերածուած է այս խորագիրը. «Պատմութիւն վարուց եւ մահուան երանելւոյն սրբոյ վարդապետին Մեսրոպայ... արարեալ ի Կորիւն վարդապետէ յաշակերտէ նորին...» (տես Կորիւն, Ա. 1 ծան.): Առանց տարակուսի նորագոյն ձեռքէ յերիւրուած: Աւելի հնագոյն ծագումէ է Վարքիս համառօտ խմբագրութիւնը, պահուած Պարիսի Ազգային Մատենադարանի Թ. 178 ձեռագրին մէջ, իբր ԺԲ. դարէ, ուր կ'ըսուի. «Ի յիշատակի պատմութեան վարուց երանելւոյ սուրբ վարդապետին Մեսրովբայ, զոր ասացեալ է նորին աշակերտ(ի) Կորեան»: Թէեւ նաեւ հոս «Մեսրովբայ» ընթերցուածը սակաւ ինչ կասկած կը զարթուցանէ խորագրիս հարազատութեան մասին, բայց չունինք պատճառ երկբայութեան ենթարկելու Կորիւն, սեռ. «Կորեան» անունն եւ «զոր ասացեալ (կարդա՛ «արարեալ») է նորին աշակերտի»: Անունս «Կորիւն» ունի իր համեմատականը «Եզնիկ» անուան մէջ. իբրեւ յատուկ անուն հոս միայն գործածուած: Թէ Վարքին հեղինակը Կորիւն է, կը վկայեն նախնիք:

---

[2] Ammianus Marcellinus, XVI, 10, 15.

ա․ Նախնեաց վկայութիւն։ Ղեւոնդ–Ղազար Փարպեցի (իբր 700ին) խօսելով Մաշտոցի մասին կը գրէ․ «Եւ զայս թէ կամիցի ոք գիտել հաւաստեաւ՝ ի Պատմութենէ գրոց առն ցանկալի Կորեան աշակերտի նորին՝ երանելւոյն Մաշտոցի կարդացեալ տեղեկասցի զվարս կենաց նորա եւ զգիւտ (տպ. գիւր) հայերէն նշանագրացն, թէ ե՞րբ կամ ո՞ւր եւ կամ յո՞յր ուրուք ձեռն[ն] գտանէ (իմացիր՝ գտաւ)՝ Թագաւորին Հայոց Վռամշապհոյ ջերմեռանդն խնդրելով․ զոր կարդեաց գրելով ճշմարտապէս յառաջագրեալ այրն հոգեւոր Կորիւն․ ուստի եւ մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ հաւաստեաւ» (էջ 13)։ Նոյն հեղինակը յիշելով Ս․ Սահակի մահուան պարագաները դարձեալ կ՚անդրադառնայ․ «Որ եւ զօր ծննդեան Սրբոյն ի սորոյ գիտողաց եւ ի Պատմութենէ երանելւոյ առն Կորեան հաւաստեաւ (տպ. հաստատեալ) գիտացաք լինել նոյն օր եւ ծննդեան Սրբոյն ի Նմին ամսեան» (էջ 37)։ Մ․ Խորենացի եւ Յովհաննէս Դրասխանակերտցի թէպէտ կ՚օգտուին Կորիւնէն, բայց չեն յիշեր իրենց աղբիւրը յանուանէ։

Թովմաս Արծրունի իր տեղեկութիւնները Ս․ Սահակի եւ Մաշտոցի մասին քաղած է Վարքէն․ իր աղբիւրը ցոյց կու տայ․ «զոր եւ երանելին Կորիւն, ուսումնակից Մովսէսի եւ աշակերտ սրբոյն Մեսրովպայ, յիւրում ստուգաբանեալ Պատմութեան պայծառիկ մեզ հաւատարմացուցանէ[3]»։ Այսպէս նաեւ Ստ․ Ասողնիկ, պատմելով գրի գիւտը՝ «Որպէս պատմեն Կորիւն եւ Ղազար[4]»։ Նոյն դարուն Անանիա Սանահնեցի իր «Սուրբ Աստուածի» Մեկնութեան մէջ ունի ակնարկութիւնս․ «Զգործս չարութեան (Նեստորականաց) ուսցիս ի Պատմութենէն Կորեան, աշակերտին Մաշթոցի, ի սպառուածին[5]», որով կ՚ակնարկէ Կորիւն, ԺԶ․ 3 հատուածը։

Կիրակոս Գանձակեցի, որ «Պատմութիւնն առն սքանչելի Կորեան» դասած է պատմագրաց ցանկին մէջ Սեբէոսէն առաջ (էջ 3), այլուր կը գրէ․ «Եւ Կորիւն (շարագրեաց) զՊատմութիւն սրբոյն Մեսրոպայ եւ այլ ժամանակաց» (էջ 17)։ Կիրակոս ժամանակը յետ Սեբէոսի ցոյց կու տայ, Կիրակոս հետեւած կ՚երեւայ Երեւանի Մատենադարանի Թ․ 2639 ձեռագրի գաղափար օրինակին, ուր Կորիւնի՝ Պատմութիւնը Սեբէոսի Պատմութեան կը յաջորդէ։ Մխիթար Այրիվանեցի «Կորիւնը» յիշած է իր Ցանկին մէջ Ղազարէն առաջ եւ Խորենէն յառաջ[6]։ Աւելի ուշ ժամանակէ է «Պատմիչք Հայոց» գրուածքը, ուր Կորիւնի մասին ըսուած է․ «Կորիւն Թարգմանիչ, որ է Պատմութիւն սրբոյն Մեսրոպայ հայրապետին[7]»։ Յիշեմ ի վերջոյ Ղազար Ջահկեցւոյ տողերս․ «Կորիւն արի եւ զարմանալի, էր եւ սա յաշակերտաց սրբոյն Մեսրօպայ։ Արար զՊատմութիւն ժամանակաց. եւ գլխակատար Պատմութիւն սրբոյն Մեսրոպայ[8]»։ Հոս «զՊատմութիւն ժամանակաց» փոխառութիւն է Կիրակոսէն։ Ա Ճառընտիրներու խորագրին մէջ կ՚ըսուի․ «…զոր արարեալ է Կորենայ սրբոյ», ուր անշուշտ Կորեան ուղղական ձեւն համարուած՝ սեռականի վերածուած է Կորենայ։

---

[3] Թովմաս Արծրունի, Պատմութիւն, Պետերբուրգ 1887, էջ 76։

[4] Ստեփանոս Ասողնիկ, Տիեզերական Պատմութիւն, Մոսկուա 1885 էջ 74։

[5] Հայսմաւուրք, Ա․ 49։

[6] Մխիթար Այրիվանեցի, Ժամանակագրութիւն, Պետերբուրգ 1867, էջ 37։

[7] Հ. Գ. Զարպհանալեան, Պատմութիւն հայ դպրութեան, Վիեննա 1893, էջ 206։

[8] Դրախտ ցանկալի, Կ․ Պոլիս 1735, էջ 624։

*Այս վկայութիւնները (Ը—ԺԸ) դարերէ միաբերան կը հաստատեն թէ Մաշտոցի Վարքին հեղինակն է Կորիւն։ Այս տուեալներու հիման վրայ կրնանք վերակազմել նաեւ Վարքին խորագիրը. «Պատմութիւն վարուց եւ կենաց առն երանելւոյ Մաշտոց վարդապետի, զոր արարեալ է նորին աշակերտի Կորեան»։*

բ. Կորիւնի վկայութիւնը։ *Վարքին մէջ հեղինակը իր անունը յիշատակած է անգամ մը միայն, հետեւեալ դէպքին. «Դէպ լինէր եղբարց ոմանց ի Հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս Յունաց, որոց առաջնոյն Ղեւոնդէոս անուն էր եւ երկրորդին Կորիւն. եւ մատուցեալք յարէին յԵզնիկն իբրեւ առ ընտանեգոյն սննդակից ի Կոստանդինական քաղաքին» (ԺԶ. 4)։ Ղեւոնդ եւ Կորիւն ուղարկուած էին Ս. Սահակէն տանելու համար Հայոց պատասխանը Կ. Պոլսոյ Պրոկղ պատրիարքին, 436ին։ Այն տեղ էր Եզնիկ։ Կորիւնի այս տեղիքը Մովսէս Խորենացի (Գ. 60) այլայլած է հետեւեալ ձեւով. Յովսէփ եւ Եզնիկ Եդեսիայէն կ'անցնին Կ. Պոլիս. «եւ ընդ նոսա նախանձեալ ընկերաց իւրեանց աշակերտակցաց, որոց անուանքն Ղեւոնդ եւ Կորիւն կարդային՝ յիւրեանց կամաց եկին առ նոսա ի Բիւզանդիոն... որոց ընդունելութիւն ամենեցուն մեծապէս արար Մաքսիմիանոս եպիսկոպոս Բիւզանդացւոց[9]»։ Վարդան պատմիչ երկիցս խօսք ըրած է այս առաքելութեան մասին. «Սահակ... առաքէ յազգս՝ բերել յամենայն ազգաց զարուեստ մատենից, զՅովսէփ... զԵզնիկ, զԿորիւն» (էջ 51). եւ դարձեալ. «Զայսու ժամանակօք դարձան ի թարգմանութենէ Ղեւոնդ, Կորիւն եւ Արձան, որ դիպեցան ի ժողովն Եփեսոսի, զոր արար Թէոդոս... եւ բերին անտի կանոնս գլուխս վեց» (էջ 53)։ Վարդան հոս Մ. Խորենացւոյ ազդեցութեան տակ է։*

գ. Արտաքին վկայութիւն։ *Կորիւնի վերոյիշեալ տեղիքը «եւ երկրորդին՝* Կորիւն» BC *ձեռագիրներն ունին «Կորմինոս», միւսները սրբագրած են «Կորիւնս», այսինքն «ես Կորիւնս», որ չի պատշաճիր տեղւոյն։ Կրնայինք կարդալ «Կորիւնոս», յունական ձեւով, ինչպէս «Ղեւոնդ» անունը տուած է երկու անգամ «Ղեւոնդիոս»։ Արտաքիններէն Իննովկենտիոս Մարոնիացի եւ Լիբերատոս, որոնք խօսած են յիշեալ պատգամաւորներու մասին, անուանած են զանոնք հայցական հոլովով* Leontium *եւ* Abellium. *վերջին անունս Լիբերատոսի Համառօտագրին մէջ ունի նաեւ* Abelium *եւ* Aberium *ընթերցուածները[10]։ Եթէ հոս* Leontium *նոյն է Հայ. Ղեւոնդիոսի հետ, հարկ է* Abellium, Abellium, Aberium *ընթերցուածներն ալ աղաւաղուած ձեւերն համարել նախնական Κοριυνιον, Κοριουνον հայցական ձեւերու, այն է «Կորիւնոս»։ Հ. Մ. Չամչեան[11] իմացած է «Աբրահամ»։ Յամենայն դէպս ուղիղ չի կրնար նկատուիլ «Կորիւնս» ընթերցուածը, զոր նախորդ Հրատարակիչները առած են բնագրի մէջ. եթէ «Կորիւնս» ընթերցուածը պահել պէտք ըլլար, հարկ էր նախադասութիւնս ուղղել «եւ երկրորդն ես, որ Կորիւնս կոչիմ»։ Այսպէս թէպէտ չէ ուզած հեղինակը զգալ տալ, թէ Ղեւոնդին ընկերացողն ինքն է, բայց կայ պարագայ մը, որ ի նպաստ անոր խոնարհ անձին կը վկայէ։ Կորիւն ամէն անգամ, որ կը յիշէ Մաշտոցի աշակերտներէն մին կամ միւսը, սովոր է*

---

[9] *Մաքսիմիանոս պատրիարք*, 25 *հոկտ.* 431—12 *ապր.* 434։

[10] Ed. Schwarz, Konzilstudien, Straßburg 1914, S. 39.

[11] *Պատմութիւն Հայոց, Ա.*, *Վենետիկ* 1784, *էջ* 530։

առընթեր նշանակելու անոր կամ ծննդավայրն եւ կամ անձին նկարագրականը. այսպէս երբ առաջին անգամ խօսք ըրած է Ղեւոնդի մասին, շեշտած է թէ էր ան «այր հաւատարիմ եւ ճշմարտապաշտ» (ԺԳ. 1). իսկ հոս, ուր առաջին անգամ կը յիշուի Կորիւն, անոր ոչ հայրենիքն մատնանշուած է եւ ոչ ալ նկարագրականը, այլ անուանուած լոկ «Կորիւնոս», որպէս աննշանակ անձնաւորութիւն[12]:

Յեցած այս տուեալներու վրայ կ'ընդունինք, թէ Կորիւն է Մաշտոցի աշակերտն եւ անոր կենսագիրը: Նկատենք այժմ իր անձն ի մերձուստ:

2. Կենսագրական գծեր: Ղ. Փարպեցի իր Պատմութեան մէջ յառաջ բերած է ի լսելոյ պատմուածք մը Ղեւոնդ երէցի մասին, ուր կայ ակնարկութիւն նաեւ Կորիւնի նկատմամբ. Մաշտոց եւ իր աշակերտները օր մը — «յառաջագոյն ժամանակի» ի միասին կը գտնուին. Ղեւոնդ ընկողմանած մէկ կողմ մը կը քնանայ. «Այրն Աստուծոյ Մաշտոց՝ վարդապետն նորին (Ղեւոնդի) հանդերձ եւ այլ աշակերտօք իւրովք, Երանելեաւն Կորեամբ եւ Արձանաւ, տեսանէին արթնութեամբ ճառագայթեալ շուրջ զնովաւ (զՂեւոնդեաւ) լոյս սաստիկ. որք անդէն եւ անդ ծանեան երանելի արքն սուրբ Հոգւով զվախճան սորոյն, թէ նահատակութեամբ կատարի» (էջ 70): Ո՞ւր եւ ե՞րբ պատահած է դէպքս, չգիտենք: Բայց կարող ենք հաստատել ասկէ, թէ Կորիւն աշակերտած է Մաշտոցի ունենալով իրեն հասակակից եւ աշակերտակից զՂեւոնդ եւ զԱրձան:

Կորիւն ինքնին կը խոստովանի, թէ Մաշտոցի աշակերտած է. երբ Յովսէփ տեղապահ կը յանձնարարէ իրեն գրել Մաշտոցի Վարքը, կը հանէ իրեն նաեւ «այլոց եւս քաջալերութիւն՝ աշակերտակցաց մերոյ վարդապետութեանն — ուստի եւ իմ մասնաւոր աշակերտութեան վիճակ առեալ, թէպէտ եւ էի կրտսերագոյն» (Ա. 1): Եւ գրեցի, կ'ըսէ, այս Վարքը «ոչ եթէ ի հին համբաւուց ինչ տեղեկացեալ... այլ որոյ մեզէն իսկ ականատեսք եղեալ 'կերպարանացն եւ առընթերակացք հոգեւորական գործոցն եւ լսողք շնորհապատում վարդապետութեանն եւ նորին արբանեակք ըստ աւետարանական հրամանացն» (Ի. 2): Այստեղ Կորիւն կ'արտայայտուի յոգնակի դէմքով. խօսքը իր անձին մասին է. եւ ականատես, առընթերակաց, լսող եւ արբանեակ բառերը կը թելադրեն նկատել զինքը երկար տեւողութեամբ Վարդապետին հետեւած ըլլալ իբրեւ փոքրաւոր, իբրեւ սիրելի աշակերտ. ուստի ամէնէն աւելի ծանօթ մը Վարդապետին գործունէութեան եւ «հոգեւորական գործոց»:

Հաւանօրէն այն «մանկտւոյն» թուին մէջ էր Կորիւն, զորոնք հետն առաւ Մաշտոց եւ զետեղեց Ամիդ եւ Եդեսիա յունարէն եւ ասորերէն սորվելու (407/8): Իբր այսպիսի ըլլալու էր ան մօտաւորապէս գոնէ 12 տարեկան մը. ուստի ծնունդ մը 395 տարւոյ: Կարելի է ենթադրել, թէ Կորիւն Մաշտոցի հետ էր, երբ ան իբր 415ին շրջեցաւ Գողթն, Սիւնիք, Աղուանք եւ Վրաստան. դարձեալ Հռոմէական Հայաստան, Կ. Պոլիս եւ այլն: 435/36ին ուղարկուեցաւ Կորիւն Ղեւոնդի հետ Կ. Պոլիս, իբրեւ թղթատար առ Պրոկղ հայրապետ. նա այժմ իբր 40 տարեկան էր: «Որք մատուցեալք յարէին յեցնիկն իբրեւ առ

[12] Այս թղթատարութեան շուրջը տես Ակինեան, Ս. Մաշտոց, Վիեննա 1949, էջ 64—68: P. A. Vardanian, Ein Briefwechsel zwischen Proklos und Sahak: Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, 1913, S. 417.

ընտանեգոյն սննդակից»: Նաեւ հոս արտայայտուած է պատմագիրը երրորդ դէմքով: Գեղեցիկ ներկայացուցած է իր հանդիպումը Եզնիկին, զոր կ'անուանէ «ընտանեգոյն սննդակից», ոչ միայն իբրեւ մէկ վարդապետի (երէց) բերելով իրենց հետ աշակերտակից, այլ թերեւս եւ հայրենակից: Անոնք վերադարձան ի միասին Աստուածաշունչի յոյն թարգմանութեան «հաստատուն օրինակ» մը, այլ եւ Եզնիկի թարգմանութիւններն Ս. Հարց գործերու եւ «Նիկիական եւ Եփեսոսական կանոնքները»: Այն մանր եւ զգայուն նկարագրութենէն, զոր հաղորդած է Կորիւն Մաշտոցի վերջին ժամերու մասին, կարելի է հետեւցնել, թէ ան գտնուած է մահամերձ Վարդապետի սնարքին քով:

Մաշտոց վախճանեցաւ 440, փետրուար 17ին եւ թաղուեցաւ Օշական: Երեք ամիս (այլ ձձ. տարի) ետքը Վահան Ամատունեաց տէրն եւ Հայոց հազարապետը շինեց խորան մը նոյն աւանի մատուռին մէջ եւ փոխադրեց հոն ի հանգիստ Ս. Վարդապետի նշխարները:

Որովհետեւ Մաշտոց վախճանեցաւ փետրուար 17ին եւ մատուռի շինութիւնը ի գլուխ ելած է երեք ամսէն, նշխարաց փոխադրութիւնը տեղի ունեցած ըլլալու է նոյն տարւոյն յունիս ամսին: Բայց Հայաստանեայց Եկեղեցին Ս. Մաշտոցի տօնը կը տօնէ յՕշական յետ Պենտակոստէից Դ. շաբաթուան հինգշաբթի: Այս օրը կ'իյնայ զատկական տօնի շարժման համաձայն ընդ մէջ 11 յունիս—14 յուլիս օրերու: Այս հաշուով 440ին կը պատահէր 27 յունիսին, ուստի ճշդիւ չորս ամիս եւ 12 օր ետքը: Եթէ միջին թիւն առնենք յունիս 20 կը ստանանք չորս ամիս լրիւ. այս պարագային պիտի ուզէի ձեռագրին գ (երեք) կարդալ դ (չորս) եւ հաշուել Մեհեկանի 13—13 Մարգաց (18 յունիս 440. Գշ.): Տօնացոյցի կարգադրութիւնը ուշ ժամանակ մը կ'ենթադրէ. իսկ ժողովուրդը որ կը հետեւէր հին աւանդութեան մը, շարունակած է իր ուխտագնացութիւնը որոշ օր մը, նոյն Մարգաց ամսոյն, որ կը զուգադիպէր յունիսին: 1927 յունիսին մասնակցեցայ եւ ես նոյն ամսոյն ուխտագնացութեան, եւ մատուցի երախտագէտ զգածումներս, սիրոյ եւ յարգանքի իղձերս Մեծ Սուրբին եւ հայ դպրութեան հիմնադրին նշխարներուն, որոնք կը պահուէին հոն յարկեղս սրբոց: B ձեռագրին ընթերցուածը «յետ ամաց երից» կը թուի ինձ սխալագրութիւն:

Կորիւն գիտէ թէ ժողովուրդը սովոր է ի Տարօն Ս. Սահակի գերեզմանի վրայ «ամի ամի ժողովովք գումարելովք ի նմին (Նաւասարդ) ամսեան (Լ.) զնորին յօր յիշատակի տօնախմբել» (ԺԹ. 2). Սահակ վախճանած էր 439 սեպտ. 7ին: Այս «ամի ամի» ասութիւնը կրնար գործածել հոս Կորիւն, նկատի առնելով 439—442 տարիները. հարկ չկայ աւելի երկարագոյն տարիներ ենթադրել նման սովորութիւն մը յիշելու համար:

Նոյն 440 տարւոյն պէտք է տեղի ունեցած ըլլայ Յովսէփի «գլխաւոր տեղապահ» եւ Յովհանու «վերակացու» կարգուիլը: Կը յիշէ Կորիւն նաեւ Յովհաննու Տիգրոն երթալն եւ զանազան տանջանաց ենթարկուիլը:

Յովհանի երթն Տիգրոն անշուշտ պաշտօնական հանգամանքով էր. պաշտօնն ունէր ծանուցանելու Յազկերտ Բ.ի Ս. Սահակի եւ Ս. Մաշտոցի վախճանիլն եւ կաթողիկոսական աթոռի վրայ Յովսէփի ընտրութիւնը, միաժամանակ խնդրելու թագաւորին հաւանութիւնը անոր ի Կեսարիա երթալու ձեռնադրութեան համար: Այս միջոցին Պարսկաստանի քրիստոնէից կաթողիկոսը խզած էր իր յարաբերութիւնները Անտիոքի մետրապոլտութեան հետ եւ ինքզինքը անկախ մետրապոլիտ եւ կաթողիկոս հռչակած: Ինչպէս Մետրապոլ-

տին, նոյնպէս Բարձրագոյն Դրան հաճելի էր, որ Հայոց եկեղեցին ալ ենթարկուէր Տիզբոնի կաթողիկոսի իրաւասութեան եւ անկէ առնէր Յովսէփ իր ձեռնադրութիւնը։ Յովհան, ինչպէս կը սպասուէր, տեղի չտուաւ այս առաջարկութեան եւ ենթարկուեցաւ չարչարանքներու։ Ի վերջոյ վերադարձաւ խոստովանողական անուամբ «ի վերակացութիւն», բայց Յովսէփ չկրցաւ ընդունիլ եպիսկոպոսական ձեռնադրութիւն։ Այս միջադէպը, որ պատահած ըլլալու է 440—441 տարուոյն յիշատակած է Կորիւն յաւելուածաբար իր Պատմութեան վերջը, անշուշտ իբրեւ բողոք։

Այստեղ կը կորսնցնենք Կորիւնի հետքը։ Ան չի յիշուիր 444ի Շահապիվանի եւ 450ի Արտաշատի ժողովին մէջ եւ ոչ ալ 450—460 տարիներու քաղաքական անցքերու ընթացքին։ Մեզի անծանօթ կը մնայ Կորիւնի մահուան տարին։

3· Կորիւն Վրա՞ց եպիսկոպոս։ B ձեռագրին տեղիքս, թէ Մաշտոց Վրաց գիր տալով եւ դպրոցներ բանալով, գրագէտներ ծաղկեցուց, «յորոց եւ իմ անարժանիս եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ· որոց առաջինն Սամուէլ անուն… եպիսկոպոս կացեալ տանն արքունականի» (ԺԳ· 3), Հ· Մ· Չամչեան[13] մեկնած է· «Սոյն այս երանելիս Կորիւն ձեռնադրեցաւ ի սրբոյն Սահակայ յեպիսկոպոսութիւն միոյ կողման Վրաց աշխարհին ի վերայ Հայոց եղելոց անդ· ըստ որում յիշատակէ եւ ինքն»։ Կարծիքս մէկ անգամ տեղ գտնելէ ետքը Հայոց Պատմութեան մէջ, իր ընթացքը առած է ազգային եւ օտար գրականութեան մէջ, կը յիշեմ· Նոր Բառգիրք հայկազեան լեզուի, Ա· (1837), Նախադրութ, էջ 14· «կարգեալ եպիսկոպոս ի սահմանակցութեան Վրաց եւ Աղուանից»· Զարբհանալեան[14], «Սահակ հայրապետ զԿորիւն Վրաց եպիսկոպոս ձեռնադրեց, եւ անշուշտ այն պաշտաման մէջ իւր կեանքը կնքեց»· Սարգիսեան[15], «Իրօք Հայոց աւանդութիւն է, թէ Կորիւն կարգեալ էր եպիսկոպոս Վրաց, յետ Սամուէլի» (°)։ Գ· Տէր Մկրտչեան[16], «Մենք գիտենք, որ Կորիւն Վրաց կամ Վրահայոց եպիսկոպոս էր· իսկ իմ կարծիքով նաեւ՝ թերեւս վրացի կամ գոնէ վրահայ… յամենայն դէպս դժուար է ուրիշ տեսակ հասկնալ Կորիւնի իւր մասին ասածը»։ Ալիշան[17], «Այս խօսքէն հետեւցնեն ոմանք, թէ ազգաւ այլ վրացի էր Կորիւն· այլ հաւանօրէն վրահայ կրնայ ըսուիլ, ազգաւ հայ, այլ բնիկ այն գաւառներուն, որ երբեմն Վրաց իշխանութեան ներքեւ էին, եւ երկիրն Վրաց դաշտ կ՚ըսուէր»։ Այսպէս նաեւ Հ· Յ· Թորոսեան[18], Ֆնտգլեան[19], Ա· Ս· Սարուխան[20]։ Վերջին երկուքը կը շարունակեն պնդել նոյն կարծիքի վրայ, թէեւ ծանօթ են Նորայր Բիւզանդացւոյ սրբագրութեան։ Առաջին անգամ Նորայր Բիւզանդացի[21] եղաւ, որ անդրադարձաւ, թէ հոս Կորիւնի բնագրին մէջ աղաւաղում մը կայ· «Հաստուածդ

---

[13] Պատմութիւն Հայոց, Ա·, էջ 537։

[14] Հ· Գ· Զարբհանալեան, Պատմութիւն հայկ· հին դպրութեան, Վենետիկ 1897, էջ 310։

[15] Հ· Բ· Սարգիսեան, Ագաթանգեղոս եւ իր բազմադարեան գաղտնիքը, էջ 111։

[16] Գ· Տէր-Մկրտչեան, Ագաթանգեղոսի աղբիւրներից, Արարատ 1896, էջ 430։

[17] Հ· Ղ· Ալիշան, Հայապատում, Ա·, 48։

[18] Հ· Յ· Թորոսեան, Բազմավէպ 1897, էջ 32—34։

[19] Ֆնտգլեան, Կորիւն, էջ ԺԸ—ԻԲ եւ ԼԴ։

[20] Ա· Սարուխան, Վրաստան եւ Հայերը, Վիեննա 1939, էջ 233—245։ Հմմտ· նաեւ S. Weber, Koriun, S. 187.

[21] Կորիւն վարդապետ, էջ 385—386։

*խանգարեալ է առանց իրիք երկբայութեան, եւ թուի ուղղելի. Յորոց եւ գտան արժանիք ելանել ի կարգ եպիսկոպոսութեան վիճակի. որոց առաջինն Սամուէլ անուն» եւ այլն* [22]:

*Հարկ չկար սուր աչք ունենալ, տեսնելու համար, թէ Բնագիրը հոս աղաւաղուած է: Իսկ Նորայրի անդրադարձութիւնը պէտք էր բանալ կոյր աչքերն ալ: Կորիւն կը պատմէ հոս, թէ Մաշտոց Վրացիներուն այբուբեն տուաւ. բացաւ դպրոցներ, հաւաքեց աշակերտներ, դրադէտ ըրաւ զանոնք. այս վրացի աշակերտներէն ոմանք այն աստիճանի զարգացան, որ ապա նոյն իսկ եպիսկոպոսութեան հասան, զոր օրինակ Սամուէլ: Եւ որովհետեւ Սամուէլ Ցուրտաւի, Տաշիրքի իշխանական քաղաքին եպիսկոպոս կարգուեցաւ, ուր թէ վրացախօս եւ թէ հայախօս բնակչութիւն կար, ուստի կրնանք ենթադրել, թէ այդ դպրոցներու մէջ թէ վրացերէն եւ թէ հայերէն լեզուն կ'ուսուցուէր, ղոնէ այն գաւառներուն մէջ, ուր խառն կ'ապրէին երկու ժողովուրդներն ալ: Կորիւն իբրեւ աշակերտակից, իբրեւ արբանակ անշուշտ Մաշտոցի կցորդներու մէջ էր, ականատես այն բոլոր անցքերուն, որոնք տեղի ունեցան Վրաստան:*

4. Ե՞րբ գրեց Կորիւն Մաշտոցի Վարքը:

*Այս հարցով առաջին անգամ զբաղեցաւ Հ. Յ. Գաթըրճեան* [23] *եւ յանղեցաւ այն եզրակացութեան թէ «այս գրութեան ժամանակը ստուգիւ* 445—450*ի մէջ կ'իյնայ»: Հ. Յ. Թորոսեան ի սկզբան մէտ էր զետեղելու ժամանակը* 447—449 *տարիներու մէջ, բայց ապա հակեցաւ* 442—445 *տարիներու* [24]: *Նորայր Բիւզանդացի* [25] *կը համարի «իբր յամի* 443—444: *Ա. Ֆնտգլեան* [26] *կը տատանի «*446—447*էն յառաջ» «*443—445*»* [27] *տարիներու մէջ: Մ. Աբեղեան «դա յօրինուած է, կ'ըսէ* 443—451 *թուականների մէջ* [28]*». իսկ այլուր* [29] *կը գրէր. «եթէ Կորիւնն առաջ էլ սկսած լինէր իր աշխատութիւնը, նա այդ վերջացրել է ոչ վաղ քան* 443 *թուականը»:* P. Vetter[30] *«գրութեանս յօրինման ժամանակը պէտք է* 445—451 *տարիները դնել»: Ա. Մ. Գարագաշեան* [31]*, «Կորիւն գրած է իր Պատմութիւնն զկնի պատերազմին Վարդանանց, զի գիտէ քահանայից հալածումն ի Տիզբոն եւ զմահ Վահանայ Ամատունւոյ» կամ «Կորիւն, որ գրեց իր մատենիկն եթէ ոչ յետոյ, դէթ ոչ բազում ամօք յառաջ քան զպատերազմն Վարդանանց* [32]: *Ն. Ադոնց* [33] *կը գրէ. «Որովհետեւ Կորիւնը չի յիշում Ե. դարի շարժումներին, հաւանական է, որ մեռած է մինչեւ Արտաշատի ժողովը, Յազկերտի ԺԲ. տարին* (439—450)*: Սորանից հիմնւում է, որ Մաշտոցի կեանքը գրած պիտի լինի* 440—450 *տասնամեակի ընթացքում: Սակայն չի կարելի անուշադիր թողնել,*

---

[22] *Սրբագրութեան այլ փորձեր տես սատ Ծանօթութիւն, Թ.* 55:

[23] *Հանդ. Ամս.* 1887, *էջ* 10:

[24] *Բազմավէպ* 1897, *էջ* 465 *եւ* 1931, *էջ* 465:

[25] *Կորիւն վարդապետ, էջ* 7:

[26] *Ֆնտգլեան, Կորիւն, էջ ԼՁ:*

[27] *Անդ, էջ ԼԸ:*

[28] *Հայոց հին գրականութեան Պատմութիւն, Ա., Երեւան* 1944, *էջ* 150:

[29] *Աբեղեան, Կորիւն, էջ* 8:

[30] *Հայկական աշխատութիւններ, էջ* 80:

[31] *Պատմութիւն Հայոց, Դ., էջ* 26:

[32] *Անդ, էջ* 67:

[33] *Մաշտոց եւ նրա աշակերտները, էջ* 51—56:

որ Կորիւն Սիւնեաց Վասակ իշխանին գովելով, մեծարում է նրան այնպիսի մակդիրով, որ կասկածանքի դուռ է բաց անում...։ Պէտք չէ՞ ենթադրել, որ Կորիւն համախոհ է եղել վատարախտ մարզպանին եւ նրա կուսակցութեան եւ ուստի անհաղորդ է մնացել շարժման...։ Կորիւն գիտէ Վահան Ամատունուն հազարապետի պաշտօնում, գիտէ եւ նրա մահը...։ Ո՞վ է այս Յովհանը... ով որ լինի... նրա դարձը չի կարելի յառաջ դնել քան Աբրահամի եւ նախարարների արձակումը Պերոզի Ե. տարին, այս ինքն 462 թ., կան նշաններ ուրեմն, որ Կորիւնը թեւակոխել է Ե. դարի երկրորդ կէսը»։ Աղոնց նոյն իսկ Ե. դարու երրորդ քառորդի վէճերուն միջամուխ կ՚ընծայեցնէ Կորիւնը։ Անսանձ ձիարշաւ։

Այս բազմազան կարծիքներու պատճառ նկատելու է Կորիւնի աղաւաղուած բնագիրը։ Քար գայթակղութեան եղած են մանաւորապէս երկու տեղիք. «յետ ամաց երից անցելոց յաջողեցաւ Վահանայ Ամատունւոյ քրիստոսասէր փութով խորան սքանչելի կանգնել տաճարոյ վկայօք». եւ «իսկ բարեացապարտին Վահանայ յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր» (ԺԹ. 7 եւ 9)։ Այս տեղիքները վերակազմուած Բնագրիս մէջ են՝ «յետ ամսոց երից» համաձայն H ձեռագրին. եւ «իսկ բարեացապարտն Վռամշապուհ յանկարծահաս կենացս ասպնջական ցանկալի ամենայն սրբոց լինէր» համաձայն HAU ձեռագրաց (տես Ծան. 89)։

Գրութեան տարին ստուգելու համար կը համարիմ թէ կռուան կարող է ծառայել Նախակարգ Բանն, ուր կը խոստովանի Կորիւն, թէ երբ կը խորհէր ինքնաբերաբար գրել Մաշտոցի Վարքը, ահա հասաւ ինձ Յովսէփի հրամանը «փութանակի եւ առանց յապաղելոյ» մատենագրել նոյնը։ Ե՞րբ ունեցաւ Կորիւն այդ խորհուրդն եւ երբ հասաւ իրեն Յովսէփ տեղապահին հրամանը։ Անշուշտ Վարդապետին մահէն (440, փետր. 17) եւ սուգի օրերէն ետքը. մանաւորապէս երբ որոշուեցաւ Վահան Ամատունւոյ կողմէ շինել «խորան տաճարոյ վկայօք»։ Հրամանն էր՝ փութանակի եւ անյապաղ։ Ինչու այս աճապարանքը։ Վասն զի որոշուած էր խորանի պատրաստութենէ ետքը հոն փոխադրել Սուրբին նշխարները աշխարհաժողով հանդէսով. եւ մտադրութիւն կար կարդալ այս հանդէսին Մեծ Վարդապետին Վարքը։ Վահան «քրիստոսասէր փութով» ետեւէ էր խորանին կազմութեան։ Ոչ եկեղեցի եւ ոչ ալ Մատուռ պիտի շինուէր, այլ պարզապէս խորան, որուն համար հարկ չկար երեք տարիներու աշխատանք, ինչպէս կ՚ենթադրէ B ձեռագիրը, այլ բաւական էր երեք ամիսը, ինչպէս ունի H։ Ուստի Նշխարաց փոխադրութիւնը այդ խորանին տակ պէտք է տեղի ունեցած ըլլայ Յունիս ամսին, այսինքն «յետ ամսոց երից անցելոց» (Մարտ—Մայիս)։ Ա՛յս ամսոյն ալ նշանակուեցաւ անշուշտ կատարել սուրբին յիշատակը տարիէ տարի։ Արդեամբք ալ շարունակուած է յիշատակի տօնս մինչեւ այսօր նոյն Օշական աւանի մէջ, ինչպէս տեսանք վերագոյն։ Կորիւն կարդաց Մաշտոցի Վարքը Նշխարաց փոխադրութեան հանդէսին 440 յունիսին։ Անշուշտ ան աշխատեցաւ ապա զայն յղկելու, պակասները լրացնելու եւ այլն։

Կորիւն ԺԹ. 8 յիշելով Յովսէփի ընտրութիւնն իբրեւ գլխաւոր ժողովոյն եւ Յովհաննու իբրեւ վերակացու, կը գրէ թէ վերջինս «յետ վախճանի Սրբոյն (Մաշտոցի)» պէսպէս փորձութեանց եւ կապանաւոր վշտաց ենթարկուած է ի Տիզբոն եւ խոստովանողական անուամբ վերադարձած է Հայաստան։ Ժա-

մանակը չնշուած է. 440 փետր. 17էն ետքը. բայց չէ մասնանշուած ո՛րչափ ետքը: Ինչպէս ենթադրեցինք վերագոյն, Յովհան ուղարկուած է Տիզբոն ծանուցանելու Յովսէփի ընտրութիւնը: Պէտք էր Յովսէփի ընտրութեան համար թագաւորին հաւանութիւնը, որպէս զի ձեռնադրուի եպիսկոպոսապետ: Յազկերտ թէպէտ ճանչցաւ ընտրութիւնը, բայց չտուաւ իր հաւանութիւնը ձեռնադրութեան համար: Բարձրագոյն դրան փափագն էր, որ Հայաստան ենթարկուի Տիզբոնի Կաթողիկոսի իրաւասութեան տակ. զոր, բնականաբար պիտի մերժէր Յովհան: Այս պատճառաւ անշուշտ ենթարկուեցաւ ան փորձութեանց եւ վշտաց: Յովսէփ մինչեւ իր նահատակութիւնը (454) մնաց երէց կաթողիկոս: Յովհանի երթն եւ վերադարձը պէտք է զետեղել 440 մարտ—441 մարտ տարւոյն:

Այն տեղիքը (ԺԸ. 2), ուր կ՚ըսուի, թէ Սահակի յիշատակն ի Տարօն «ամի ամի ժողովովք գումարելովք... տօնախմբեն» Նաւասարդ 30ին, կը պահանջէ գոնէ 2—3 տարի ժամանակ, ուստի 439 սեպտ.—սեպտ. 442:

Վահան Ամատունի ներկայ էր Մաշտոցի յուղարկաւորութեան. ի զինուորական կողմանէ իբրեւ հազարապետ: Նա հազարապետութեան մէջ էր դեռ 444ին, ինչպէս կ՚իմանանք Շահապիվանի Ժողովի Կանոնաց Նախաբանէն, երբ Հայոց մարզպան էր Վասակ: Այս պաշտօնը առած էր իրմէ Վասակ ընդմէջ 445—450 տարիներու: Իսկ Վասակ Հայոց մարզպանութեան կոչուած պէտք է ըլլայ 442/3 տարւոյն. յամենայն դէպս նա 440 փետրուար 17ին Նոր քաղաք չէր գտնուեր. այլապէս պիտի սպասուէր, որ ան, Վասակ, որ բարեկամացած էր Մաշտոցի հետ իբրեւ Մարզպան Վրաց, յուղարկաւորութեան անձամբ մասնակցէր «ի զինուորական կողմանէ»:

Այս ներքին ապացոյցները կը վկայեն, որ Կորիւն գրած է Մաշտոցի Վարքը 440, մարտ—մայիս ամիսներուն, Թարմ տպաւորութեան տակ. զայն յղկած եւ մշակած ձեւի մէջ լոյս ընծայած է 441 տարւոյն:

5. Մաշտոցի Վարքը: Մեծ Վարդապետին մահը կ՚երեւայ թէ մեծապէս ազդած է Կորիւնի, անոր աշակերտի վրայ: Անոր սիրտը, անոր միտքը դեռ Վարդապետին հետ է. անոր յուշերով կ՚ապրի: Կ՚արթննայ իր մէջ գաղափարը Վարդապետին Վարքը գրելու. «Մինչդեռ, կ՚ըսէ, անդէն ի խորհրդանոցի մտացս վասն յուշ արկանելոյ (զանցս անցս կենաց եւ գործոց զԵրանելւոյն) մտախորհ կայի», այս ինքն ծրագիր կը կազմէր, յուշերը կը դասաւորէր, Բարձրագոյն կողմէ, Յովսէփ կաթողիկոսական տեղապահէն «եկեալ հասանէր առ իս հրաման... ընդ նմին այլոց եւս քաջալերութիւն, աշակերտակցաց մերոյ վարդապետութեանն» «փութանակի եւ առանց յամպաղելոյ մատենագրել» Մաշտոցի կեանքի եւ գործունէութեան պատմութիւնը: Թէպէտ այս աշխատանքը իր կարողութենէն վեր կը գտնէ Կորիւն, բայց կը ձեռնարկէ նաեւ «պհամատարած ալեօք վարդապետական ծովուս», այս ինքն իր Մեծ Վարդապետին երկայնակեաց կեանքի արգասալիր գործունէութիւնը դրով ծաղկեցնել:

Իր նպատակը չէ սակայն Մաշտոցի կեանքի լիակատար պատմութիւնը գրի առնել, ժամանակակից քաղաքական եւ եկեղեցական պարագաներու նկարագրութեամբ, այլ վեր հանել հակիրճ տողերով, թէ «երբ եւ յորում ժամանակի մատակարարեցաւ աստուածապարգեւ» գիրը, եւ այն «որպիսի՞ արամբ այնպիսի նորոգատուր աստուածեղէն շնորհ երեւեցաւ», ապա պատկերացնել

*անոր «լուսաւոր վարդապետութիւնը», որով կ'իմանայ Մաշտոցի ուսուցչական եւ գրական գործունէութիւնն, ի վերջոյ ներկայացնել Վարդապետին «հրեշտակակրօն վարուցն առաքինութիւն», այս ինքն անոր ներքին օրինակելի կեանքը (Ա. 1)։ Հնարաւոր չէր, կ'ըսէ, Վարդապետին հարուստ վաստակներով առլցուն կեանքի մանրակրկիտ պատմութիւնը ընծայել, այս պատճառաւ «կյանճախագոյնսն թողեալ եւ ի նշանաւոր դրուագացն քաղելով ըհամառօտս կարգեցաք», կարեւորագոյնները մասնաւորապէս նկատի առի, հետեւելով Աւետարանագրին օրինակին (Յովհ. ԻԱ. 25). «զանցեալ զբազմախուռն արգասեօք Սրբոյս առ ի մանրակրկիտ առնելոյ» (Ի. 2)։*

*Վարքս գրուած է Սահակի, յատկապէս Մաշտոցի սրբակեաց կեանքն եւ անոնց ազդօգուտ գործերը ծանօթացնելու ապագայ սերունդին, «յօրինակ քաջալերիչ հոգեւոր ծննդոց իւրեանց եւ որոց նոքօք աշակերտելոցն իցեն յազգս ազգաց» (Ի. 2)։ Իր աչքի առաջ ունի Սուրբ մը, աստուածանուէր անձ մը, որուն Վարքը գրելու համար նոյն իսկ խղճահարութիւն ունեցած է, թէ ներեա՞լ է մահկանացուի մը նման ձեռնարկութիւն։ Այս զգածումով մերձեցած է գործի, եւ զգուշացած է շօշափել որ եւ է հարց կամ դէպք, որ աշխարհական կենցաղի, քաղաքական եւ քաղաքային կեանքի կը հայի։ Ան խուսափած է նոյն իսկ եկեղեցական պատմութեան, դաւանաբանական վէճերու մասին խօսելու, որոնք երկրէն ներս եւ դուրս մտքեր զբաղցուցած են։ Իր ուշադրութիւնն կենդրոնացած է այն կէտերու վրայ միայն, որոնք Մաշտոցի լուսաւորութեան գործին, գրական շարժումին, առաքելական գործունէութեան եւ ներքին կեանքին կը հային. ուստի համաձայն ծրագրին, զոր գծած էր նախաբանին մէջ, որուն եւ ճշդիւ հետեւած է։*

*Կորիւն իր այս համեստ ծրագրին մէջ որչափ ալ եղած է համառօտախօս, բայց տուած է շատ բան. ինչ որ գիտենք 387—441 տարիներէն, կը պարտինք իրեն։ Ան կը ներկայացնէ մեզի դէպքերը գործող դէմքերով, գործուած տեղերով, թէպէտ ոչ միշտ ժամանակագրական ցուցմունքներով։ Գրած է իբրեւ ականատես եւ ականջալուր, ճշտգրիտ եւ յստակ։ «Ոչ եթէ ի հին համբաւուց ինչ տեղեկացեալ եւ մատենագրեալ զայս կարգեցաք, կը գրէ, այլ որոց մեզէն իսկ ականատեսք եղեալ կերպարանացն եւ առընթերակացք հոգեւորական գործոցն եւ լուռք շնորհապատում վարդապետութեանն եւ Յոցին արբանեակք ըստ աւետարանական հրամանացն։ Ոչ սուտապատում ճարտարախօս եղեալ առ ի մերոց բանիցն... կարգեցաք»։ Եւ վստահելի է իր արժանահաւատութիւնը։ Անիրաւեցան իրեն հանդէպ մեր բանասէրներէն անոնք, որոնք կասկածելի համարեցան իր արդարախօսութիւնը։ Եթէ ինչ ինչ տեղիքներ իր գրուածքին առիթ ընծայեցին այս թերահաւատութեան, պատճառը պէտք է փնտռել ոչ Հեղինակին, այլ անոր գրուածքին անհաւատարիմ օրինակողներու քով։*

6. Բովանդակութիւն։ *Ընդարձակ Նախաբան մը կը կանխէ Վարքը։ Հեղինակը կը յայտնէ հոս նախ, թէ մինչ ինքը կ'որոճէր իր սրտի մէջ գրել Վարքս եւ ցոյց տալ եկող սերունդին, թէ որմէ՛, ե՛րբ եւ ի՛նչպէս զտնուեցաւ հայերէն այբուբենը, հասաւ իրեն Յովսէփ կաթողիկոսական տեղապահին հրամանը, փութանակի եւ առանց յապաղութեան գրել Մաշտոցի Վարքը։ Զուգելով ղիմադրել Բարձր Հրամանին՝ ձեռք կը զարնէ աշխատանքին։ Բայց խղճահարութեամբ հարց կը ծագի իր առջեւ. Կարելի՞ է ի Տէր հանգուցեալ*

որբակեաց անձնաւորութիւններու կենսագրութիւնը գրել: Լուծելու համար այս աստուածաբանական խնդիրը կը համախագրէ իր հմտութիւնը աստուածեղէն Գրոց եւ իր ճարտարախօսութիւնը. կ՚ապացուցնէ թէ կարելի է: Այս Ա. 2—10 հատուածները կրնանք իբրեւ ինքնակաց ճառ նկատել, գրուած հռետորական արուեստով եւ ծաղկազարդ ոճով: Ա. 11էն կը զգացուի, թէ այս մասը Վարքին գրութենէն ետքը կցած է աշխատութեանս:

Մաշտոց, Տարօնի Հացեկաց գիւղէն, որդին էր Վարդանի: Հրահանգուած հելլենական կրթութեամբ կը մտնէ զինուորական ծառայութեան մէջ Առաւան, Հայաստանի պարսիկ հազարապետի օրով: 392/3 տարւոյն կը հրաժարի զինուորութենէն, կը մկրտուի եւ կը նուիրուի եկեղեցական կոչումի: Կ՚ապրի խստամբեր կեանք: (Ս. Սահակ կը ձեռնադրէ զինքը քորեպիսկոպոս = վարդապետ): Հաւաքած իր շուրջ հոգելից գործակիցներ կը մեկնի անոնց հետ Գողթն գաւառ առաքելական քարոզութեան համար (404°): Իր քարոզչական ասպարէզի վրայ կը զգայ դժուարութիւնները անգրագէտ ժողովուրդին քրիստոնէական վարդապետութիւնը մատչելի ընելու: Կը յղանայ գաղափարը հայերէն լեզուին սեպհական գրականութիւն ստեղծելու:

Կը վերադառնայ Նոր քաղաք (Վաղարշապատ) խորհրդակցելու այս մասին Սահակ եպիսկոպոսապետի հետ. խնդիրը կը հանուի նաեւ Վռամշապուհ Թագաւորի առջեւ: Թագաւորը խօսք կ՚ընէ հայերէն այբուբենի մը մասին, որ կը գտնուի Դանիէլ ասորի եպիսկոպոսի քով: Նշանագիրները կը բերուին: Բայց փորձը ցոյց կու տայ, թէ ասոնք անընդունակ են հայերէն հնչիւնները ճշգիւ արտայայտելու: Կը յանձնարարուի Մաշտոցի Միջագետք իջնալ եւ խորհրդակցելով իմաստուններու հետ յարմար այբուբեն մը կազմել (406/7): Մաշտոց կը մեկնի, առած հետը թիւ մը պատանիներու, զորոնք կը զետեղէ Ամիդ եւ Եդեսիա, ուսանելու յոյն եւ ասորի լեզուները. իսկ ինքը հետամուտ կ՚ըլլայ իր նպատակին: Կը յաջողի ձեւել հայերէն հնչիւններու համար 36 նշանագիրներ յունարէն այբուբենի հիման վրայ. զորոնք կը դնէ Սամոսատ Ռուփինոս (Հռոփանոս) գեղագրի առջեւ, գեղագիտական ձեւ եւ կերպարանք տալու անոնց: Այս տեղ առաջին փորձը կ՚ըլլայ այս նշանագիրներով թարգմանելու Սողոմոնի գրքերը յունարէն բնագրէ հայերէնի: Մաշտոց կը վերադառնայ Հայաստան (407/8): Ռահ (Երասխ) գետի ափին կը դիմաւորեն զինքը Վռամշապուհ թագաւոր եւ Սահակ կաթողիկոս: Այս տեղ Կորիւն համեմատութեան կը դնէ Մաշտոցի մուտքը Նոր քաղաք Մովսէսի տասնաբանեայ պատուիրաններու տախտակներով Սինա լեռնէն իջնալու հետ, աքանչելի պատկերով:

Թագաւորի հրամանով դպրոցներ կը բացուին, պատանիներ կը հաւաքուին եւ Մաշտոց անձամբ դրագիտութիւն կ՚աւանդէ անոնց երկու տարի (408/9—410/11): Ինքն եւ իր գործակիցները կը թարգմանեն Հին եւ Նոր Կտակարանները: Կորիւն խանդավառ տողերով կը նկարագրէ այս տեղ այն ոգեւորութիւնը, զոր ստեղծած էր դրական շարժումը:

Մաշտոց խորհրդակցութեամբ Սահակի հետ կ՚որոշէ որ Միջնաշխարհի դրական շարժումին ղեկավար ըլլայ Սահակ, իսկ ինքը տարածէ դրականութիւնը Գողթն, Սիւնիք, Աղուանից աշխարհն եւ Վրաստան (410—415°): Ամէն տեղ կը գտնէ խանդավառ ընդունելութիւն: Աղուանից թագաւորն Արսվաղէն եւ եպիսկոպոսն Երեմիա յանձն կ՚առնեն հայկական դրականութիւնը, վասն զի

հայրենատոս էին այս կողմերու քրիստոնեայ ժողովուրդները։ Անկէ Գարդմանքի վրայէն կ'անցնի ի կողմանս Վրաց։ Հոս (Գուգարք—Տփղիս) կը հանդիպի Վասակ Սիւնւոյ, որ Վրաց մարզպան կարգուած էր, եւ կը գտնէ անկէ սիրալիր աջակցութիւն։ Այստեղ կը յօրինէ նաեւ վրացերէն լեզուի համար այբուբեն մը եւ կը մեկնի բարբարոս Վրաստան (այն է Քարթլի Մծխեթայ մայրաքաղաքով)․ որուն թագաւորն էր Բակուր (դաստիարակուած հելլէն դպրութեամբ) եւ եպիսկոպոսն Մովսէս․ երկուքն ալ յանձն կ'առնեն ներկայացուած այբուբենը, կը բանան դպրոցներ, կը ժողվեն պատանիներ եւ կը յանձնեն անոնց վերատեսչութիւնը Մաշտոցին, որ առած իրեն իբրեւ թարգման հայերէնագէտ եւ վրացագէտ Ջաղայ, կը թարգմանէ Աստուածաշունչն վրացերէնի եւ կ'առաջնորդէ հրահանգելու աշակերտութիւնը վրացերէն գրագիտութեան մէջ։

Մաշտոց կը վերադառնայ Նոր քաղաք (415°)։ Պէտք էր առաքելութիւն մ'ալ դէպի Հռոմէական Հայաստան, մատչելի ընելու համար հայ նոր դրականութիւնը նաեւ «Կէս ազգին Հայոց» (415/16)։ Անատոլիոս ստրատելատ սիրով կ'ընդունի զինքը իր աշակերտներու հետ․ բայց կարեւոր էր այդ առաքելութեան համար Կայսեր հաւանութիւնը։ Թէոդոս Բ․ Փոքր (408—450) տակաւին կը գտնուէր իր քրոջ Պուղքերիայի խնամակալութեան տակ։ Հրաման կը հանի, որ Մաշտոց անձամբ դնէ խնդիրքը Կայսեր առջեւ։ Մաշտոց պատուով կը հիւրասիրուի թէ արքունիքէն եւ թէ Եկեղեցիէն․ Ատտիկոս էր մայրաքաղաքին եպիսկոպոսը (404—425)։ Կը շնորհուի իրեն արքունիքէն ամէն ազատութիւն իր առաքելական գործունէութեան համար։ Արքունի ծախքով կը բացուին դպրոցներ եւ կը հաւաքուին պատանիներ։ Մաշտոց կը գտնէ նաեւ Բորբորիտ աղանդաւորները։ Այս ժամանակ կ'այցելէ իրեն Բենիամին անուն աղուան (աղուան-գոթ) երէց մը (հաւանօրէն Կ․ Պոլիս) եւ կը խնդրէ իր բարբարոս լեզուին համար այբուբեն․ Մաշտոց կը քննէ լեզուն եւ կը յարմարցնէ (յոյն այբուբենի հիման վրայ) պատշաճաւոր նշանագիրներ։ Վերջացնելով իր առաքելութիւնը, կը յանձնէ այն կողման դպրոցական գործերը իր աշակերտներէն Դանանի եւ ինքը կը վերադառնայ Նոր քաղաք (420°)։

Կ'այցելէ միւսանգամ Վրաստան, ուր այժմ Արչիլ կը թագաւորէր, եւ կը վերադառնայ Տաշիրքի վրայէն Հայաստան (421°)։

Այժմ Սահակ եւ Մաշտոց կը նուիրուին հայ գրականութիւնը առաւել մշակելու։ Յովսէփ եւ Եզնիկ կ'ուղարկուին Եդեսիա ասորական գրականութեան կարեւոր գործերը թարգմանելու (426°)․ անկէ կ'անցնին Կ․ Պոլիս, յունական Հայրերու գործերը հայացնելու (431)։ (Այս միջոցին կը գումարուի Եփեսոսի Ժողովը․ վէճերը կը շարունակուին Ժողովէն վերջն ալ։ Թէպէտ Հայաստան չմասնակցեցաւ այս վէճերուն, բայց համբաւ տարածուած էր, թէ Նեստորականները թափանցած են նաեւ հոն։ Ակակ Մելիտինէի, Ռաբուլա Եդեսիայի եւ Պրոկղ Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսները գրեցին Հայոց զգուշացուցիչ թուղթեր։) Հայոց պատասխանը Պրոկղ եպիսկոպոսին տարին Ղեւոնդ եւ Կորիւն։ Անոնք յարեցան կայսերական մայրաքաղաքին մէջ Եզնիկ Կողբացւոյ եւ վերադարձան ի միասին բերելով իրենց հետ յունարէն Աստուածաշունչի ընտիր օրինակ մը եւ այլ թարգմանութիւններ (436)։ Մաշտոց զբաղած էր ինքնուրոյն հեղինակութիւններով, կը գրէր «Ճառս յաճախագոյնս»։ Սահակ քաշուեցաւ այժմ Բագրեւանդի Բլուր գիւղը եւ Եզնիկի հետ

*կը պարապէր Աստուածաշունչի հայերէն թարգմանութիւնը նոր բերուած հաւաստատուն Օրինակին համեմատութեամբ սրբագրել:*

*Կորիւն հոս ընդհանուր ակնարկ մը կը նետէ Մաշտոցի հասարակական գործունէութեան եւ ներքին կեանքի մասին: Իր ետեւ ունէր Մաշտոց ժիր գործունէութեան 40 տարիներ: Թէ Սահակ եւ թէ Մաշտոց կը գտնուէին բարձր տարիքի մէջ: Անոնք ինչպէս պտղաբեր ծառեր արդիւնաբերած էին լիառատ եւ հասուն պտուղներ:*

*Սահակ վախճանեցաւ 7 սեպտ. 439: Անոր մահը մեծապէս ազդեց Մաշտոցի վրայ: Ան թէպէտ յառաջ տարաւ վարչական գործերը ամենայն կորովութեամբ, բայց չդիմացաւ անոր նուրբ սիրտը աւելի քան 6 ամիս. 440, փետրուար 17ին կնքեց նաեւ Մեծ Վարդապետը իր մահկանացուն: Կորիւն իբրեւ ականատես մանր նկարագրած է իր Վարդապետին վերջին ժամերն եւ յուղարկաւորութիւնը, ինչպէս նաեւ Նշխարաց փոխադրութեան հանդէսը մահէն իբր 3 ամիս յետոյ:*

*Կ՚աւարտէ իր Պատմութիւնը յիշելով Յովսէփի ընտրութիւնն իբրեւ «գլխաւոր ժողովոյն» եպիսկոպոսներու եւ քահանաներու, եւ Յովհանի իբրեւ «վերակացու»: Կը յիշէ վերջնոյս կրած փորձութիւններն ի Տիզբոն եւ ողջամբ վերադարձը (440/41). Հուսկ յետոյ կարեւոր համարած է նուիրել քանի մը տող ալ Վռամշապուհի յիշատակին, որ Սահակի եւ Մաշտոցի հետ ունեցած էր իր վաստակը հայ գրականութեան սկզբնաւորութեան համար:*

*Վերջին խօսքը կը դիտէ վստահացնել ընթերցողները իր ճշմարտախօսութեան վրայ, միաժամանակ արդարացնել իր համառօտախօսութիւնը: Կը յաջորդէ ժամանակագրական պատկեր մը, ուր կը նշանակէ Մաշտոցի կեանքի գլխաւոր հանգրուանները ժամանակը Սասանեան թագաւորներու գահակալութեան տարիներով:*

6. Նկարագիրը: *Մաշտոցի մահէն ետքը, երբ փափագ յայտնուեցաւ աշակերտաց ժողովի մէջ, որ անմահացուի Վարդապետին յիշատակը գրաւոր յիշատակարանով, ամէնուն ուշադրութիւնն ուղղուեցաւ Կորիւնի, իբրեւ միակի, որ ատակ էր այդ գործի. եւ Յովսէփ գլխաւորն Ժողովին պաշտօնապէս յանձնարարեց Կորիւնի մատենագրել Երանելւոյն Վարքը: Ինչո՞ւ Կորիւն նկատի առնուեցաւ եւ ոչ ուրիշ մը երէց կամ կրսեր աշակերտներէն, գ. օր. Եզնիկ կամ Ղեւոնդ: Անշուշտ կը փայլէր անոր վրայ առաւելութիւն մը, որ կը պակսէր թերեւս ուրիշներուն: Կորիւն եղած էր հանգուցեալին ոչ պարզապէս աշակերտ, այլ եւ ականատես անոր կերպարանքին, աընթերակաց անոր հոգեւոր գործերուն,· լսող անոր չնորհապատում վարդապետութեան եւ անբաժին արբանեակը. ան վայելած էր Վարդապետին սէրը, արժանացած անոր վստահութեան. ուստի ամէնէն աւելի ծանօթ անոր Վարքի եւ ներքին կեանքի ծալքերուն: Ան ուղարկուած էր կարեւոր պաշտօնով Կ. Պոլիս, առանց տարակուսի եղած էր նաեւ Վարդապետին ուղեկից այլեւայլ առիթներու մէջ, ուստի փորձ եւ վարժ արտաքին կենցաղավարութեան: Կ՚երեւայ թէ ան գնահատուած էր նաեւ իր աշակերտակիցներէն իր ծաղկալից ոճին եւ ճարտասանական կարողութեան համար: Միւս կողմէ իբրեւ աընթերակաց Վարդապետին հոգեւորական գործերու, եղած է հաղորդ եւ մասնակից անոր խիստ կրթութիւններու, եւ ծաղկած առաքինի, հոգելից եւ հոգեկիր: Կորիւն հաւատարիմ գտնուած էր իր Վարդապետին մինչեւ անոր կեանքի վերջին շունչը, ինչպէս կարելի է հետեւցնել այն մանր նկարագրութենէն անոր վերջին ժա–*

մերու եւ յուղարկաւորութեան։ Սիրողին սիրտը իր սիրելւոյն հետ է անոր մեկնելէն վերջն ալ։ Իր Վարդապետէն զրկուած կ'ապրէր ան անոր յուշերով. ինքնաբերաբար կ'որոճէր գրել անոր կենսագրութիւնը, իրեն հասած հրամանէն յառաջ։

Այս յարումը իր Վարդապետին ամէն քայլափոխին կը ցցուի մեր առջեւ այս Վարքին մէջ. որ գրուած է անչափ ոգեւորութեամբ, հիացմունքով եւ բարեպաշտութեամբ։

Վարքս մատենագրուած է իբրեւ Ներբողեան, համեստ ծրագրով, իբրեւ յիշեցուցիչ Մարդու մը մեծութեան, սրբութեան եւ անձնանուիրութեան, եւ ոչ իբրեւ ժամանակակից Պատմութիւն։ Մեծ կուխ արժած է իրեն դէպքերով հարուստ, արգասիքներով ճոխ կեանքի բազմախուռն պատահարներու եւ ստեղծագործութիւններու մէջ կարեւորագոյններն կարեւորներէ զանազանել, եւ «ի յաճախագունիցն զհամառօտսն» ընծայեցնել։ Եւ ան տուաւ, ինչ խոստացած էր տալ։ Իր արժանահաւատութիւնն եւ առարկայականութիւնը վեր է ամէն գովութենէ։ Չենք կրնար մեղադրել զինքը, թէ գործած է գիտակցօրէն որ եւ է դայթում հակառակ ճշմարտութեան. եւ իրաւամբ չեշտած է իր գործին վերջը, թէ չէ եղած սուտապատում։ Ան գրի առած է ինչ տեսած եւ լսած է։

Կորիւն նախ հռետոր է եւ ապա պատմիչ. բայց պատմութիւնը չէ զոհած իր հռետորութեան։ Կը սիրէ վկայութիւններ Ս. Գրքէն. զայս իր գիտնականութեան նշանակ կը համարի. իր դպրոցին առաջին եւ վերջին դասագիրքն եղած էր Աստուածաշունչը, զոր նաեւ այնուհետեւ չէ հանած իր ձեռքէն։ Կարդացած է նաեւ Ս. Հարց գործերը, որոնք հայերէն թարգմանութեամբ մատչելի եղած են իրեն. բայց ամէնէն աւելի սիրած է իր Վարդապետին հեղինակած «յաճախագոյն Ճառերը», Եւթաղի Յառաջաբաններն եւ Մակաբայեցւոց Գրքերը, որոնց հռետորական ոճը սիրելի եղած են իր սրտին։ Հեղինակը հետեւած կ'երեւայ հելլենական Կրթութեանց. հելլենական ազդեցութիւնը զգալի է կարգ մը դարձուածքներու եւ պարբերութեանց մէջ։ Որովհետեւ կոչուած էր իր գիրքը Մաշտոցի յիշատակին հրապարակաւ կարդացուելու, պէտք էր բնականաբար հնարքներու դիմել իր ունկնդիրները սթափելու, անոնց ուշադրութիւնը կաշկանդելու։ Ան կը սիրէ բարդ բառեր, բառերու կուտակում, յանդուգն, այլաշրջիկ, այլասացիկ դարձուածքներ եւ ասացուածքներ, անոնք նպատակ ունին գեղեցիկը, նախադասութիւններու ներդաշնակութիւնը։

Միշտ նկատի առնելու է, թէ ինքը կ'արուեստախօսէ եւ ոչ թէ կը պատմագրէ, ճշգրիտ դատելու համար իր ոճը։

Ան ունի ամրակուռ թեւերով բարձրասլաց ճախրանք. սպառազինուած է նորաձոյլ հարստաբուռն բառերով, կը հիւսէ հաստահեղոյս պարբերութիւններ, կը հանէ պատկերներ ուժեղ գոյներով, բայց միշտ համապատասխան Բարձրութեան իր Հերոսին, հաճոյ անոր ախորժանաց, ձուլուած անոր արուեստանոցի մէջ։ Իր նկարագրականով արուեստական է անշուշտ այս ոճը, անսովորական գրականութեան մէջ, բայց անոր մէն մի մասունք ծաղկաքաղ հանուած են գրական լեզուէն, հիւսուած գրական ճաշակով, եւ ամբողջութեան մէջ ինքնատիպ, վսեմ եւ վայելչական։ Գետը, որ կը հոսէ հարթավայրէն խաղաղ եւ հեզասահ, երբ զառիվայր, զարահոս ընթացք կ'առնէ, արագավազ, փրփրադէզ, աղմկայոյզ, ահեղագոչ կը թաւալի։ Նոյնպէս լե-

ղուն ճարտարախօս հռետորաբան արուեստաւորի բերնէն եւ գրչէն: Կորիւն, այս «երանելի», «հոգեւոր», «ցանկալի», «սուրբ» եւ «սքանչելի» մատենագիրը, ինչպէս յօրջորջած են զինքը մեր նախնիք, ունեցած է իր մէջ կրակը, հրավառելու ու հրդեհելու, երբ իբրեւ հռետոր բեմ կը բարձրանար եւ կամ գրաւոր կ'արտայայտուէր: Իր այս խառնուածքին մէջ կը զգանք յաղթական ոյժը իր ոգւոյն: Ան հայկաբանութիւնը ուսած էր Մաշտոցի դպրոցին մէջ, Հայ Նոր գրականութեան ռահվիրաներու շրջանակին մէջ, անոնց արտադրած մատենագրութեան ընթերցումով, եւ հանդիսացաւ իր ընկերակիցներու մէջ առաջին մատենագիրը, որ հեղինակեց ինքնուրոյն գործ, իր Մեծ Ուսուցչին Վարուց Պատմութիւնը, Հայ Նոր Գրականութեան անդրանիկ պտուղը:

Թէ որքան հաճելի երեւցած է իր ոճը մերձ ժամանակակիցներու իսկ, կը տեսնենք Ագաթանգեղոսի խմբագրի քով, որ անթիւ բառական քաղուածքներով գրուածքս ուզած է բազմագոյն փետրազարդուիլ: Ը. դարու սկիզբը Ղ. Փարպեցւոյ Պատմութեան Ա. Դրուագի խմբագիրը կը հաւաստէ, թէ «բազում անգամ կարդացած է» «առն ցանկալի Կորեան Պատմութիւնս» (էջ 13): Յաջորդ դարերուն նաեւ Ճառընտիրներու մէջ հիւրընկալուեցաւ գրուածքս, սակայն համառօտութեամբ:

7. Նկատմամբ լեզուի պէսպէս եղած է հայ բանասէրներու դատաստանը: ՆՀԲի հեղինակները (Նախադուռն, 14ա) կը գրեն. «Ոճն է բուն եւ հարազատ հայկաբանութիւն, ուրեք պարզ, եւ ուրեք վսեմ. այլ համառօտախօսութիւնն բերէ զմթութիւն. որ եւ առաւել անհմուտ գրչաց էր ընծայելի, եթէ չէր եւ Փարպեցւոյն վկայեալ, թէ կրկին եւ կրկին ընթերցմամբ լինի իմանալ[34]»:

Հ. Մ. Գարագաշեան[35] կը գրէ. «Զարմանալի է տեսանել... (ինչպէս Ոսկեբերանի եւ Բարսղի գործերու մէջ, նոյնպէս) եւ ի գործս Կորեանն զանհնարին առատութիւն եւ զհոյակապ զարդարանս բանից, որ ոչ արկանեն ձանձրոյթ ի լսողսն»: Հ. Յ. Գաթըրճեան[36], նկատի առնելով Կորիւնն կից Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի կը բնորոշէ անոր ոճը. «իբրեւ դիւանական իմն կամ արքունական բարձրագոչ հրամանաց բարբառս հնչեցուցանէ»:

Նորայր Բիւզանդացի[37] կ'արտայայտուի. «Ճոռոմ, պերճ, վսեմ. աւասիկ Կորեան հայերէնն ի Մաշտոցի կենսագրութեան: Ի՜նչ յորդութիւն քաջահնչիւն բառերու. որպիսի՜ ճախարակեալ պարբերութիւնք (période). ո՜րքան զարդք. ո՜րչափ ձեւք եւ պէսպիսութիւնք ասացուածոց. ի՜նչպէս ձայնդ կը հանդչի յաւարտ մէջն մի նախադասութեան՝ որպէս թէ ողորկ տանաւոր մի կարդայիր. միանգամայն իւր պաճուճաբան առատութեան հետ՝ ինչպէս լաւ գիտէ դերբայներով հատու եւ սեղմ դարձուած տալ իւր գաղափարաց արտայայտութեան, եւ ո՜րչափ մեծ արուեստիւ կը զուգէ մատենագրական բարձր լեզուին յատուկ ձեւոց եւ չարուածոց՝ ընտանեկան խօսից ձեւեր եւ չարուածներ»: «Զարդագիր են Եզնիկ եւ Կորիւն. Եզնիկ չ'ախորժիր սեթեւեթել տուժելով զյստակութիւն. մինչդեռ Կորեան զարդերն կ'աղօտացնեն յա—

---

[34] Ղ. Փարպեցւոյ Պատմութեան Ա. դրուագի հեղինակը կը գրէ, թէ Մաշտոցի Վարքը «մեր բազում անգամ կարդալով տեղեկացեալ հաւաստեաւ» (էջ 13). այսինքն՝ զոր մենք կարդացած ենք շատ անգամ, եւ իրմէ, Կորիւնէն են մեր հաւաքած տեղեկութիւնները. ինչպէս իմացանք վերագոյն:

[35] Նկարագիր Ոսմանց, Վիեննա 1845, էջ 29:

[36] Քաղուածոյք ի Թարգմանութեանց նախնեաց, Վիեննա 1849, էջ է:

[37] Նորայր, Կորիւն, էջ 10—13:

ճախ զմիտս բանին: Առաջինն՝ ի սկզբանէ ցկատարած իւր գրութեան՝ կը նմանի հեղասահ վտակի, որոյ ականակիտ ջրերուն միջէն պայծառապէս կը տեսնենք զյատակն. իսկ երկրորդն՝ շատ անգամ կարծես ուղխ մի է որ կը հոսի ծածկեալ ծաղիկներով, եւ այս պատճառաւ աչք մեր չկարեն թափանցիկ լինել ընդ խորութիւնն: Առ Եզնկայ միշտ կանոնաւոր է քերականութիւնն... ամենայն ինչ վճիտ է իբրեւ զվանակն (cristal)...: Իսկ առ Կորեան չեն պակսիր ասացուածք որ չըլլան կամ անկանոն կամ տարտամ (vague), բացատրութիւնք եւ բարդութիւնք, զորս անհնար է նոյն իսկ աշխարհաբար հայերէնի դարձնել, թող թէ օտար լեզուի»: «Նկատմամբ մթութեանն՝ որով առաւել կամ նուազ պատեալ է Վարքն Մաշտոցի յայլեւայլ տեղիս, կարելի է, որ յանցանքն գլխաւորապէս ողէտ ընդօրինակողաց ըլլայ, որք անկարող հասանելոյ ի բարձրութիւն մատենագրին՝ խանգարած են բազում հատուածս»: «Բաղձալի էր նաեւ որ ասացուածոց պէսպիսութեան մէտ դնող մատենագիր մի՝ որպիսի է Կորիւն, խորշէր ի միակերպութենէ կամ ի նոյնաձայնութենէ»: «Զիարդ եւ իցէ, հանդերձ իւր քանի մի խծբծելի մասամբք, Վարքն Մաշտոցի է եւ պիտի ըլլայ միշտ երկրորդ հոյակապ յիշատակարան ինքնադիր մատենագրութեանց մեր Ոսկեդարուն, առաջնութեան պարծանքն ՝մնալով ճառիցն ընդդէմ Աղանդոց: Փոքրիկ է Եզնկայ մատենիկն, եւ Կորեանն՝ փոքրադոյն, այլ երկոքին եւս բարձր նշանակութիւն ունին Հինգերորդ դարու դասական գրականութեան համար (406—462)»:

Ն. Ադոնց[38] կը գրէ. «Յայտնի է, որ Կորիւնի լեզուն եւս եզակի է իր յատկութիւններով անդրանիկ մատենագիրների շարքին: Արհեստական եւ շինծու ոճ է, ճապաղ եւ ծանր, որպէս ճռնչող սայլ եւ չունի միւս ժամանակակիցների ոճի ճեմական թեթեւ եւ սահուն նազանքը»:

Մանուկ Աբեղեանի[39] համաձայն Կորիւնի ոճը «միակերպ չէ. մերթ կարճ եւ հակիրճ է, մերթ երկարաբան ու խրթին: Նա յօրինում է շատ ճոռոմ պատկերաւորութեամբ, աւելորդ զարդերով ու պաճուճանքներով խճողած, ինչպէս ինքն ասում է «ծաղկեցրած»: Նրա գրածը յաճախ մութն է նաեւ անկանոն լեզուի կամ բարդ պարբերութիւնների պատճառով: Երբեմն պակասում են անհրաժեշտ բառեր, կամ շատ կան ամբողջ նախադասութիւնների փոխարինող իբրայատուկ նորահնար բարդ բառեր, այլ եւ բառերի կիրառութիւն ոչ մեզ ծանօթ սովորական նշանակութեամբ: Վրան աւելացրէք եւ բնագրի մասամբ աղճատուած լինելը, եւ պարզ կը լինի, թէ ինչո՛ւ այդ փոքրիկ գիրքը շատերի համար դժուարհասկանալի է եղել»:

8. Ազդեցութիւն: Կորիւն Մաշտոցի այն աշակերտներէն էր, որոնք մանուկ հասակին մտան անոր Դպրոցը եւ ուսան հայ դպրութիւնը: Անոնց դասագիրքերն եղան Աստուածաշունչն եւ անոր Մեկնութիւնները. իսկ բեմբասացութեան արուեստի համար առաջնորդ ծառայեցին ճառական գրութիւնները, որոնք թարգմանուած էին ասորերէնէ եւ յունարէնէ: Կը վկայէ Ղ. Փարպեցի, թէ «Մեր երանելի Վարդապետքն զամենայն զԿտակարանս եկեղեցւոյ երիցս եւ չորիցս ուսուցեալ մեզ ի սկզբանէ մինչեւ ի կատարած գրոցն՝ համարս պահանջէին ի մէնջ զնոյնս եւ իբրեւ զԴաւթի Սաղմոս(ս)ն պաշտել մեզ հարկաւորէին» (էջ 201): Ուստի առաջին հերթին Ս. Գրոց ազդեցութեան

[38] Հանդ. Ամս. 1927, էջ 400:

[39] Մ. Աբեղեան, Հայոց հին գրակ. պատմութիւն, Ա., էջ 156—157:

ենթարկուած էր Կորիւն, ինչպէս ցոյց կու տան այն բազմաթիւ կոչումնք եւ այլ ակնարկութիւնք այդ Գրքէն եւ այդ Գրքին։ Կ՚ունկնդրէր Կորիւն Մաշտոցի դասախօսութիւններուն, կը կարդար միաժամանակ իր Վարդապետին «Յաճախագոյն ճառերը», զորոնք հեղինակած էր ան։ Մաշտոց, ինչպէս իր ճառերէն կը տեսնենք, մեծ վարպետ էր բարդ բառեր կերտելու, մասամբ նմանութեամբ յոյնին եւ մասամբ հայ լեզուի ընդունակութեան շնորհիւ։ Այդ բարդ բառերէն մեծ թիւ մը կը գտնենք Կորիւնի գրչին տակ։ Ան նմանող եղած է նաեւ իր Ուսուցչին ոճին։ Եւ զարմանալի չէ այս ազդեցութիւնը իր վրայ, եթէ նկատի առնենք, որ ան երկար ժամանակ «լսող եղած է անոր շնորհապատում վարդապետութեան»։ Այն պարագան, որ Կորիւն նոյն իսկ տեղիք մը նմանողութեան առած է Եւթաղէն (Ա. 1), կը յորդորէ զմեզ հաստատելու, թէ ունեցած է իր մէջ ձգտում մեծ վարպետներու ոճին նմանող ըլլալու։

9. Երկբայական գրութիւններ։

ա. Պատմութիւն ժամանակաց։ Կիրակոս Գանձակեցի գրեց, կ՚ըսէ, Կորիւն «զՊատմութիւն Ս. Մեսրոպայ եւ այլ ժամանակաց» (էջ 17)։ Ասկէ հաւանօրէն ուսած կը գրէ Ղազար Ջահկեցի[40]. «Արար զՊատմութիւնս ժամանակաց եւ զլիականար Պատմութիւն սրբոյն Մեսրովբայ»։ Կ՚երեւայ թէ սոնց կը հետեւի Մարտէն Զրպէտ, երբ կ՚ըսէ թէ Կորիւն գրած է իր ժամանակին թէ քաղաքական եւ թէ կրօնական իրաց վրայ[41]»։ Իսկ Սէն-Մարտէն[42] կը հաւաստէ, թէ Կորիւն գրած է Պատմութիւն մը հրամանաւ Վռամշապուհ Թագաւորի։

Հ. Մ. Չամչեան (Ա. 537) գիտէ թէ «Սա (Կորիւն) բաց ի բազում գրուածոց եւ թարգմանութեանց արար եւ զՊատմութիւն Ս. Մեսրոպայ»։

Գալուստ Տէր Մկրտչեան[43], որ համոզուած է թէ Ագաթանգեղոս նոյն է Կորիւնի հետ, կը համարի թէ «ամենայն հաւանականութեամբ Կորիւնինն են ոչ միայն Մաշթոցի (եւ Ս. Պարթեւի) Վարքը, Հայոց դարձի Պատմութիւնը (=Ագաթ.), այլ եւ Վրաց դարձի Պատմութիւնը»։

Այս տեղիքները ձրի վարկածներ են։

Կորիւն իբրեւ թարգմանիչ կը յիշուի միայն Օրհնութիւնաբեր Յուցակին մէջ[44], որուն հնութիւնն եւ հարազատութիւնը շատ կասկածելի է. «Զաղաշխարողն արդիլել եւ դարձեալ ի Մեծ Հինգշաբաթին արձակել՝ Սուրբ Կիւրեղ արար ի դուռն Ս. Սիոնի ի ԻԱ (այլ ձձ. Ի) ամի հայրապետութեան իւրոյ, յաւուրն յորում ընծայեցուցանէր զՆղովմայեցիսն առ Աստուած։ Եւ Արզեւան (այլ ձձ. Արջեւան, Ընձակ, Օձեւան) եւ Կորիւն թարգմանիչք բերին ի Հայս»։

10. Կասկածներ Կորիւնի Բնագրին ամբողջութեան շուրջը։ «Չեմք կրնար ըսել, կը գրէ Հ. Ղ. Ալիշան[45], թէ մեր ունեցած եւ հրատարակած օրինակաց չափ եւ համանման էր իր սկզբնագիրը։ Ինչպէս երկարին հետ համառօտն այլ

---

[40] Դրախտ ցանկալի, էջ 624։

[41] Հմմտ. Հայապատում, Ա., 49։

[42] Հմմտ. անդ։

[43] Արարատ 1896, էջ 430։

[44] Հայապատում, Բ., էջ 420։ Հմմտ. Չամչեան, Ա., 769. Նորայր, Կորիւն, էջ 7։

[45] Հայապատում, Ա., 48։

*կայ, երկարէն այլ երկարագոյն եղած թուի սկզբնագիրն. գոնէ անտարակոյս է այդ մեզի ծանօթէն զատ՝ իր ուրիշ պատմական գրուածք արտադրելն»:*

*Ենթադրութիւնքը, զոր կ՚ընէ հոս Ալիշան նկատմամբ «երկարագոյն» Բնագրի մը, նոյնպէս «ուրիշ պատմական գրուածքի» մը «անտարակոյս» գոյութեան մասին, կը թուի ինծ թէ չունին հաստատուն հիմ: Հնագոյն աղբիւրները թոյլ չեն տար այսպիսի ենթադրութիւններու: Ստեփանոս Ռոշքայի մէջբերումները որ եւ է կապ չունին ո՛չ Կորիւնի եւ ոչ ալ առհասարակ Ե. դարու մատենագրութեան հետ: Նոյն հեղինակին անմատչելի մնացած են թէ՛ Կորիւն եւ թէ՛ Ագաթանգեղոս եւ Փաւստոս: Կիրակոս Գանձակեցւոյ ակնարկած «Լիակատար Պատմութիւնն Ս. Մեսրովբայ» Կորիւնի մեզի ծանօթ գործն է առանց տարակուսի, զոր նաեւ Պատմութիւնն Ս. Սահակայ (Սոփերք Բ. 37) «կատարեալ Պատմութիւն» կ՚անուանէ:*

*Բոլորովին տարօրինակ է Ն. Ադոնցի տեսութիւնը*[46]*. ան կը զանազանէ սկզբնագիր եւ խմբագրուած բնագիր. առաջինը գրուած է «պարզ եւ անպաճոյճ ոճով». երկրորդը Ե. դարու կէսէն յետոյ մէկ երկրորդ ձեռք «վեր է ածել աւելի բարձր ոճի, ինչ ինչ յաւելումներով եւ յապաւումներով»: Բայց «արծարծածս մտքերը, կ՚աւելցնէ քննադատը, տակաւին թէական կառուցումներ են որոշ դիտողութեանց հիման վերայ, որոշ դժուարութիւններ հարթելու համար: Դրական վճիռներ չեն»: Իր այս տեսութիւն աւելի զարգացուցած է Ադոնց*[47]*. կը յաջողի ստուգել նոյն իսկ խմբագրին ժամանակը* 460—468:

*Կը բաւէր դոյզն ըմբռնողութիւն դասական հայերէնի յատկանշական նկարագրին, զգալու համար իր մտքի քառարշաւ ընթացքը: Կորիւնի երկասիրութեան մէջ մէկ լեզու, մէկ ոճ կ՚իշխէ, ըստ ամենայնի այն վայելուչ հայերէնը, որ յատուկ է Ե. դարու առաջին կէսի մատենագրութեան:*

11. Կորիւն եւ Ագաթանգեղոս եւ Փաւստոս: *Արդէն վաղուց նկատուած էին այն նմանահնչիւն տեղիքները, որոնք կային Կորիւնի, Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի մէջ: Լուծման կը կարօտէր միայն խնդիրը, թէ ո՞վ որմէ կախում ունի: Հ. Մ. Չամչեան (Ա.* 669) *դատած է ի նպաստ Ագաթանգեղոսի. «Կորիւն... առնու անտի (յԱգաթանգեղեայ) հատուածս ինչ բանից ի բազում տեղիս ըստ շարադրութեանն. եւ յարմարեցուցեալ իւրում պատմութեան՝ դնէ զայնս ի վարս սրբոյն Մեսրոպայ՝ վասն նմանութեան ինչ գործոց՝ որք եղեն յայնմ ժամանակի...: Չէ մարթ կարծել, թէ այս բանք մուծեալ իցեն յայլոց ի գիրս Կորեան՝ առեալ յԱգաթանգեղոսէ, եւ կամ ի գիրս Ագաթանգեղոսի՝ առեալ ի Կորեանէն... որով եւ անտարակոյս հաստատի, թէ Կորիւն ընթերցեալ էր զգիրս Ագաթանգեղոսի, եւ հաւանեալ էր ընդ այն իբր ընդ հաւաստապատում գրութիւն...: Եւ մարթ իսկ է ասել, թէ սա ինքն Կորիւն իցէ թարգմանեալ զգիրս Ագաթանգեղոսի ի հայէ ի յոյն, եւ կամ ի յունէ ի հայ» (հմմտ. նաեւ էջ* 12)*: Այս տեսութեան կը յարի Սոմալեան*[48], *երբ կը գրէ ի մասին Կորիւնի.* «L'autore segue le pedate de' migliori storici nazionali che lo precedettero, non solo nelle circontanze de' fatti che narra,

---

[46] *Հանդ. Ամս.* 1927, *էջ* 400—402. *հմմտ. առ այս Ֆնտգլեանի նկատողութիւնները, անդ, էջ* 527—541:

[47] *Հանդ. Ամս.* 1928, *էջ* 88—94:

[48] Somal, Quadro della storia letteraria di Aemenia, Venezzia 1829, p. 23

ma eziandio nello stile, di modo che viene meritamente annoverato tra gli scrittori classici nazionali.»՝ Կ՚ակնարկուին անշուշտ Ագաթանգեղոս եւ Փաւստոս։ Զայնակից է անոնց ՆՀԲ (Նախադուռն, էջ 14)․ «Խորհրդով իմն պատուատեալ է Կորեանն այլ եւ այլ հատուածս յԱգաթանգեղոսէ եւ ի Բուզանդայ՝ առ ի նմանեցուցանել զսուրբն Մեսրոպ ընդ սրբոյն Գրիգորի եւ ընդ սրբոյն Յակովբայ Մծբնացւոյ»։ Նոյն միտքը սակաւ ինչ զարգացած ձեւի մէջ կը կրկնուի (անդ, էջ 10), երբ կը խօսուի Փաւստոսի մասին․ «Թարգմանութիւնն է քաջ հայկաբան… եւ ըստ իմումս բանի՝ երկաթիրութիւն Կորեանն․ որ եւ զհատուածս Բուզանդայ ի կիր արկանէ՝ յարմարելով ի Վարս սրբոյն Մեսրոպայ» եւ այլն։ Այս տեսութեան մէտ է եւ Հ. Յ. Գաթըրճեան[49], այնու որ Ագաթանգեղոսի թարգմանիչը կը համարի «որպէս հաւանութեան թուի՝ Կորիւն (յամի իբրեւ 445)»։

Թէ Ագաթանգեղոսի եւ թէ Փաւստոսի հանդէպ նախապաշարուած էին տակաւին մտքերը․ անոնք թարգմանութիւններ կը համարուէին, հնութեամբ կանխագոյն քան Կորիւն․ այս պատճառաւ ալ չէին կրնար ուրիշ կերպ լուծել առեղծուածը։ Գերմանացի բանասէրն Ա. Գուտշմիդ[50] կանխեց նախ Ագաթանգեղոսը քննութեան բովէ անցնել եւ ապա այս առեղծուածի լուծման մերձենալ․ ան չխղճահարեցաւ հաստատելու, թէ Ագաթանգեղոսն է, որ կը բանաքաղէ Կորիւնէն։ Եզրակացութիւնս ընդունեցաւ Պ. Ֆետտէր[51]․ բայց նկատմամբ Փաւստոսի յայտարարեց թէ Կորիւնն է բանաքաղը։ Հ. Բ. Սարգիսեան[52], երբ ձեռնարկեց մանր քննութեամբ մերձենալ հարցիս, զգաց ինքզինքը անելի մէջ, որովհետեւ չուզեց ձայնակից ըլլալ Գուտշմիդի քննութեանց ի մասին Ագաթանգեղոսի։ Առեղծուածին լաւագոյն լուծումը տուաւ Հ. Յ. Տաշեան[53]․ «Կորեան եւ Ագաթանգեղեայ մէջ շատ կտորներ կան իրարու բառ առ բառ համապատասխանող։ Այս կէտն ի վաղուց ծանօթ էր․ եւ առհասարակ Կորիւն կը համարուէր բանաքաղը։ Առաջին անգամ Գուտշմիդ յայտնեց հակառակ կարծիքը։ Սոյն խնդրով զբաղեցաւ մօտերս նաեւ Հ. Բ. Սարգիսեան, որ ճանչնալով հանդերձ գերմանացի գիտնականին կարծեաց հաւանականութիւնն՝ երբորդ եւ միջին ճամբայ մ՚ուզեց բռնել, բայց արդեամբք հնոց ծանօթ կարծեաց պաշտպան հանդիսացաւ։ Ըստ իս առանց երկբայութեան է թէ Կորիւն չէ բանաքաղն, այլ Ագաթանգեղոսի վերջին խմբագիրը, ուստի եւ Ագաթանգեղոս այս կերպարանաց մէջ Կորիւնէն ետքը մատենագրուած է»։ Այս տեսութեան կը հետեւի նաեւ Ֆնտգլեան[54]։

Գալուստ Տէր–Մկրտչեան[55] քայլ մը յառաջ առաւ․ «Կորիւնի բոլոր բառերն եւ ասացուածները ցրուած են Ագաթանգեղոսի մէջ ծայրէ ծայր — ամենայն հաւանականութեամբ նոյն ինքն Կորիւնն է Ագաթանգեղոս անուան տակ ծածկուողը»։ «Կորիւն եւ Ագաթանգեղոս իմ կարծիքով մի եւ նոյն անձնաւո–

---

[49] Տիեզերական Պատմութիւն, Ա., Վիեննա 1849, էջ 94։

[50] A. von Gutschmid. Agathangelos, S. 24—31.

[51] Ֆէտտէր, Հայկական աշխատասիրութիւններ, էջ 81—82։

[52] Բազմավէպ 1889, էջ 193—199, 225—232· Ագաթանգեղոս եւ իր բազմ. գաղտնիքը, էջ 107—119։

[53] Ագաթանգեղոս առ Գէորգայ, էջ 72—79։

[54] Կորիւն, էջ Թ—ԺԳ։

[55] Ագաթանգեղոսի աղբիւրներից, Արարատ 1896, էջ 428—429։

րութիւնն են... ես էլ համաձայն եմ այն արդէն ծանօթ վարկածին, որ Ագաթանգեղոսի մէջ պատահող հատուածները, քերականական դարձուածները, բառերն ու ոճերը, որ նոյն եւ նման են Մաշթոցի Վարքագրութեան լեզուին, ոչ թէ փոխառութիւններ են օտար գրողից, այլ մի եւ նոյն հեղինակի գրչի արտադրութիւններ են»։

Այս կարծեաց դէմ արտայայտուեցաւ Ստ. Մալխասեան[56]. «Կարծում ենք աւելի հաւանական է, թէ Կորիւն էլ եղած լինի Ագաթանգեղոսի աղբիւրներից»։

Ն. Ադոնց[57] կը մխէ հին տեսութեան, Կորիւնը բանաքաղ ճանչնալու. «Հարկադրուած ենք ընդունելու որ (Կորիւնի) վերջաբանը պատկանում է Ագաթանգեղին եւ յարմարեցրած յետոյ կամ միաժամանակ Մաշթոցի կեանքին։ Պէտք է խոստովանել, որ շատերը այն հատուածներից, որ անցած են համարւում Կորիւնից Ագաթանգեղոսի, Դարձ փրկութեան մասը, աւելի իր տեղն են Ագաթանգեղոսի մօտ, քան Կորիւնի։ Ամէն պարագային երկու երկերը, եթէ անգամ ելած են մի եւ նոյն գրչից, տակաւին կնճռոտ են իրենց փոխադարձ յարաբերութեան մէջ։ Վաղաժամ է պնդել Մաշթոցի Վարքի առաջնութեան վերայ ամէն կէտերում»։

Լրացնելու համար այս հարցին շուրջը կատարուած պէսպէս փորձերու շարքը, յառաջ կը բերեմ նաեւ յաջորդս, որ իմ ստորագրութիւնս կը կրէ[58].

«Ընդարձակ եւ մանր հատուածները, որոնք նոյնութեամբ կը տեսնուին Կորիւնի, Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի մէջ, ինձ կը թուի թէ մի եւ նոյն հեղինակի, յանուանէ Կորիւնի գրչէն են. որ մի եւ նոյն ժամանակ ձեռքի տակ ունենալով երեք գրութիւններու նոր խմբագրութիւն մը, զետեղած է զանոնք հաւասարապէս միոյն եւ միւսին մէջ, իբրեւ պատրաստի մտքեր, վերջին խմբագրութեան ժամանակ որոշելու անոնց իսկական տեղը։ Անշուշտ երեք գրութիւններու հեղինակներու ալ — եթէ ենթադրենք վայրկեան մը տարբեր անձեր — չէր պակսեր ոչ բառապաշար եւ ոչ ալ միտք, կարօտելու համար ուրիշի մրգաստանի պտուղներուն։ Եւ սակայն եթէ թոյլ տուած են իրենց բառական փոխառութիւններ, կար հոն մեզի անծանօթ խորհուրդ։ Կան հատուածներ, որոնք Մաշտոցի Վարքին մէջ եկամուտ կ'երեւան, եւ կան ուրիշներ, որոնք անկէ փոխառնուած կը թուին։ Աւելի լայն տեղւոյ կը պատշաճի այս խնդրոյս լուծումը» (Հանդ. Ամս. 1932, 229—230)։ Աւելի ուղիղ դատեց Մ. Աբեղեան[59], որ հետեւելով Տաշեանի կարծիքին կը գրէ. «Այժմ հաստատ է, որ օգտուողը Կորիւնը չէ, այլ Ագաթանգեղոսի խմբագրողը։ Կորիւնի գրուածքին այդպիսի հատուածներն իրենց բնական տեղումն են, իմաստային կապակցութեամբ, իսկական պատմութեանը յարմար, մինչդեռ Ագաթանգեղոսի մէջ դրանք դրուած են յաճախ անյարմար տեղերում եւ ընդհանրապէս անկապ են յաջորդ ու նախորդ մասերի նկատմամբ եւ հակասող ուրիշ տեղ սասծներին։ Բացի այդ՝ Կորիւնի եւ Ագաթանգեղոսի գրութեան ոճերը հիմնովին տարբեր են։ Եթէ կան էլ սակաւաթիւ նոյն բառերի

---

[56] Մշակ 1897, Թ. 21։

[57] Հանդ. Ամս. 1928, էջ 88—90։

[58] Անդ, 1932, էջ 229—230։

[59] Հայոց հին գրակ. պատմութիւն, Ա., 59։

կիրառութիւն, կամ երկու–երեք նոյն բառերի կապակցութիւններ, դրանք մեծ մասամբ ընդհանուր տեղեր են, առաւելապէս կրօնական լեզուի մէջ, կամ թէ բանաքաղը Կորիւնից առած հատուածների հետ՝ սակաւաթիւ այդպիսի բառերից եւ արտայայտութեան ձեւերից էլ օգտուել է Ագաթանգեղոսի մէջ»:

12· Նորայր Բիւզանդացւոյ տեսակէտը· Կորիւն թարգմանիչ Մակաբայեցւոց գրոց, Եւթաղի Մատենագրութեան, Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի: Նորայր կը գրէ· «Կու գամ հոչակել զԿորիւն Թարգմանիչ Ագաթանգեղի, Բիւզանդայ, եւս եւ Մակաբայեցւոց, հանդերձ Եւթաղիւ»: «Իմ ցուցմունք կը յառաջագային ի Համեմատական ուսումնասիրութենէ բնագրաց, զուգակշռելով զՎարս Մաշտոցի ընդ չորեսին Թարգմանութիւնսդ»: Յիշեալ «չորեքեան Թարգմանութիւնքն միաձոյլ զանգեալք՝ կը տարբերին ի հայկաբանութենէ ա՛յլ առաջին աշակերտաց»· անոնք «ձեռն ի ձեռն կ՚երթան կը խառնուին ի Վարս Մաշտոցի իբրեւ հարազատ եղբարք ի գիրկս միոյ եւ նորին հօր»: «Կորիւն չկարէր բանաքաղել յԱգաթանգեղէ եւ ի Բիւզանդայ, քանզի շատ հաւանական է որ երկու պատմագիրքդ թարգմանեալք են յետ յօրինման կենսագրութեանն Մաշտոցի»: «Հնդեակ մատենագրութեանցդ աղերսն այնպիսի է որ մեք հարկաւորեալ եմք նկատել զայնոսիկ անբաժան յիրերաց, իբր միոյ անձին սեպհականութիւնս» (էջ Է—ԺԹ եւ էջ 14): Ամբողջ 36—380 էջերը նուիրուած են այս հինգ գրութիւններու աղերսն իրարու հետ ապացուցանելու եւ անոնց յարաբերութիւնը միւս դասերու մատենագրութեան հետ քննութեան առնելու:

Իր ընդարձակ աշխատութեան մէջ խուսափած է նկատի առնելու այն բառ առ բառ նոյն հատուածները, որոնք կը գտնուին մէկ կողմէ Կորիւնի եւ միւս կողմէ Ագաթանգեղոսի եւ Փաւստոսի քով: Նկատել նկատած է զանոնք, բայց չէ հետաքրքրուած թէ անոնք ի՞նչպէս գոյութիւն առած են հոն: Եւ եթէ Ագաթանգեղոս եւ Փաւստոս են փոխ առնողները Կորիւնէն, ինչպէս աներկբայելի է, չէ՞ին կրնար անոնք եւ այլ տեղեր ենթարկուած ըլլալ Կորիւնի ազդեցութեան:

Կ՚ենթադրէ Նորայր, թէ Ագաթանգեղոս եւ Փաւստոս թարգմանուած են Կորիւնէն, անոր Մաշտոցի Վարքը գրելէ ետքը· բայց չի տար ապացոյցներ առ այդ:

Նորայր Ագաթանգեղոսն ամբողջութեամբ թարգմանութիւն կը համարի Կորիւնէն: Բայց չէ քննած թէ մէ՞կ ձեռքէ են անոր այլ եւ այլ մասերը·

ա· Պատմական մասը·
բ· Գրիգորի խոստովանութիւնը·
գ· Հռիփսիմեանց վկայաբանութիւնը.
դ· Վարդապետութիւնն Գրիգորի·
ե· Տեսիլն Գրիգորի· ի վերջոյ՝
զ· Յառաջաբանը:

Զանի՞ Պատմութեան խմբագիրը «Ագաթանգեղոս» (492ին) իր յաւելուածները Բ·—Ե· գրուածքներու մէջ· չանի՞ իր կարգին Յառաջաբանը իր ծոցը հատուածներ Գրիգորի Վարդապետութենէն:

Նոյնպէս Փաւստոսի Պատմութիւնը ծայրէ ի ծայր մէ՞կ թարգմանչի գործ է, թէ գործած են հոն այլ եւ այլ գրիչներ, դասական եւ ոչ դասական շրջաններէ:

Այս հարցերը պէտք է յարուցանէր նա ինքը, որ կ'ուսումնասիրէր Ե. դարու դասական շրջանի գրական լեզուն, եւ նախ լուծէր զանոնք:

Նորայր կ'ենթադրէ թէ Մաշտոցի «կրսերագոյն» աշակերտը աւելի հայկաբան էր, ինքնուրոյն լեզուի տէր, քան Մաշտոց, Սահակ եւ այլ թարգմանիչները: Հայ գրականութեան հիմնադիրն եւ հայ լեզուի առաջին վարպետն էր Մաշտոց եւ ունէր իրեն օգնականներ երիցագոյն աշակերտները, Սահակի հետ: Անոնք հայացուցին Աստուածաշունչը եւ այլ բազմաթիւ հայրագիտական գործեր, որոնց ընթերցմամբ ուսան եւ զարգացան հայ լեզուի մէջ կրսեր եւ կրսերագոյն աշակերտք:

Խմբագրութեան ենթարկուած է նաեւ Փաւստոսի Պատմութիւնը 492էն ոչ շատ վերջը, ուստի այս ալ իր ներկայ ձեւի մէջ չի կրնար թարգմանութիւն նկատուիլ: Խմբագիրը ծանօթ է Մաշտոցի Յաճախագոյն Ճառերուն (=Վարդապետութիւն Գրիգորի), հետեւաբար ան ալ կը գտնուի լեզուական տեսակէտէ անոր ազդեցութեան տակ: Բայց Կորիւն կարող էր կարդացած ըլլալ Փաւստոսի յոյն սկզբնագրին հայերէն թարգմանութիւնը 440էն յառաջ եւ իր կարգին գտնուած անոր ազդեցութեան տակ, առանց անպատճառ այդ թարգմանութեան թարգմանիչն ըլլալու:

Կը մնան Մակաբայեցւոց Ա.—Գ. գրքերու թարգմանութիւնն եւ Նեթաղի Մատենագրութիւնը: Նկատմամբ Մակաբայեցւոց գրքերու կը գրէ Հ. Ս. Կոգեան[60], թէ զանոնք «Կորեան թարգմանութիւն չենք համարիր, վասն զի Նորայրեան չորս կէտերը՝ գրական աշխատութեան մը հեղինակը որոշելու աստիճան իրականացած չենք գտներ Մակաբայեցւոց մէջ: Կորեան յ ա ճ ա խ գործածած բառերը չեն տեսնուիր մեր գրքին մէջ յ ա ճ ա խ, այլ այն ցանցառութեամբ որով նաեւ միւս դասերու մէջ կը պատահին»: Բառեր, որոնք այս գրքերու եւ Կորիւնի մէջ կը տեսնուին, ուշադիր կ'ընէ Կոգեան, թէ անոնցմէ մաս մը Մակաբայեցւոց գրքին մէջ բառ առ բառ թարգմանութիւն է յոյն բնագրին, ուստի անոնք ինքնայատուկ ասութիւններ չեն կրնար նկատուիլ Կորիւնի (էջ 20—21), բայց կարող են անկէ ընթերցմամբ իւրացուած ըլլալ:

Նոյն եզրակացութեան կ'առաջնորդեն զմեզ նաեւ այն բառերն եւ ասութիւնները, որոնք երեւան կու գան Կորիւնի եւ Նեթաղի քով: Վերջինս թարգմանութիւն է նոյնպէս յոյն բնագրէ. բառերն եւ ասութիւնները կազմուած են հոն յաճախ յունարէն բառերու եւ բարդութիւններու հայացումով (տես Վարդանեանի հրատարակութեան ծանօթութիւնները)[61]: Թէ Կորիւն, երբ կը գրէր Մաշտոցի Վարքը, Նեթաղն աչքի առաջ ունեցած է, կը տեսնուի բացայայտ Ա. 1, Ի. եւ ԻԱ. գլուխներու մէջ (տե՛ս եւ Նորայր, էջ 171—173):

Նորայրի համեմատութիւնները կը նպաստեն մեզի հաստատելու, թէ Կորիւն իբրեւ կրսերագոյն աշակերտ եւ ընթերցասէր նման մեղուի ընթացած է նոր հայ գրականութեան ծաղկալից դաշտը, հաւաքած է անկէ հիւթ, գեղեցիկ բառեր եւ ասութիւններ, իւրացուցած է զանոնք եւ արտայայտուած է

---

[60] Մակաբայեցւոց Բ. գրքին հայ. թարգմանութիւնը, էջ 15—24:

[61] Մատենագրութիւնք Նեթաղի, հրտ. Հ. Ա. Վարդանեան, Վիեննա 1930:

*անոնցմով։ Իրեն նմանութեան օրինակ առած է յատկապէս իր Վարդապետին ոճը, զոր ուսած է անոր դասախօսութիւններու ժամանակ եւ անոր ճառերէն եւ թարգմանութիւններէն։ Գիտենք իրմէ իսկ, Կորիւնէն թէ Մաշտոցի կը պատկանի «Գրիգորի Վարդապետութիւնը»․ այս ճառերը, որոնք ինքնագիր հեղինակութիւններ են, ունին իրենց մէջ գծեր, որոնք կրնան թերեւս նմաստամատոյց ըլլալ վերագրելու իրեն կարգ մը թարգմանութիւններ։ Իր կարգին կարդացած է Կորիւն Աստուածաշունչը, անոր հետ Մակաբայեցւոց գրքերն եւ Եւթաղի Յառաջաբանները, Ոսկեբերանի Մեկնութիւնները (ի մասին Պաւղոսի Թղթերու Մեկնութեան տե՛ս Նորայր, էջ 432—470), ինչպէս եւ այլ Մեկնութիւններ եւ ճառեր։ Կարդացած է՝ ըլլալու համար հմուտ Աստուածաշունչի եւ անոր Մեկնութեան, միանգամայն անոնց ճարտար թարգմանիչներու հայերէն ոճը իւրացնելու։ Կորիւն Հայ Դպրոցին աշակերտն է, եւ առաջինը այդ դպրոցին, որ ձեռնարկած է գրել ինքնուրոյն գործ մը, փոքրիկ, բայց հոյակապ իր կառուցուածքին մէջ։*

ՁԵՌԱԳԻՐՆԵՐ

1․ *Միակ օրինակով հասած է մեզի Մաշտոցի Վարքը, Էջմիածնի* Թ․2639 *ձեռագրին մէջ, որ նախ* 611 *համարը կրած է Գէորգեան Ցուցակի մէջ եւ ապա* 2463: *Մեծութիւնն է* 19 × 25 *հ․ գրուած բոլորգիր, Հայոց ՌՃԻԱ թուին, որ է փրկչական* 1672, *ի Բաղէշ, Ամիրտոլու վանքին մէջ, Պօղոս Գաւրցի եւ Գրիգոր երէց գրիչներէն հրամանով Վարդան Վ․ Բաղիշեցւոյ*[62]: *Ձեռագիրս կը բովանդակէ* 1․ *Ագաթանգեղոս*, 2․ *Թուղթ Դաշանց*, 3․ *Վարք Ս․ Ներսիսի Պարթեւի*, 4․ *Մ․ Խորենացի*, 5․ *Եղիշէ*, 6․ *Ղ․ Փարպեցի, Պատմութիւն եւ Թուղթ*, 7․ *Սեբիոս (անխորագիր)։ Գրիգոր գրիչ Ղ․ Փարպեցւոյ Թղթին վերջը գետեղած է Յիշատակարանս․ «Գիրքս հին էր եւ աւրինակս։ Յունան վարդապետն կարդացեալ էր զաւրինակն եւ նորոգեալ եւ զպակասութիւն թղթոցն որ պակասէ՝ ոչ էր գտեալ, եւ ես ոչ կարացի գտանել։ Աղաչեմ զամենեսեան, եթէ գտցի գիրս այս ուրեք, գրեսջիք զպակասումն թղթոյս եւ դիք ի սմայ։ Նախ զսկիզբն գրոցս եւ ապա յերիս տեղիս թուղթ մի անկեալ կայ»։*

*Յունան վարդապետի Յիշատակարանը չէ արտագրուած Գրիգոր գրչէն․ չէ ալ ըսուած թէ ինչ գրութիւններէ կը բաղկանար այդ ձեռագիրը․ կայի՞ն հոն Ղազարի կից Սեբիոս եւ Կորիւն։ Այս գաղափար–օրինակը, ինչպէս կ'երեւայ* 1590*ին ի Մեծոփ գտնուած է Սիմէոն Վ․ Ապարանեցւոյ ձեռքը, որ Սեբիոսի գործը, անանուն ձեռագրին մէջ, համարած է Ղազարի Պատմութեան մաս եւ այսպէս ոտանաւորի վերածած է երկու աշխատութիւնները իր Վիպասանութեան մէջ։ Սիմէոն ալ որ եւ է ակնարկութիւն չէ ըրած, թէ այդ ձեռագրին մէջ գոյութիւն ունէ՞ր Կորիւնի գործը։ Եթէ ուղիղ է մեր ենթադրութիւնը, թէ Սիմէոն ի Մեծոփ ունեցած է «հին օրինակը» իր տրամադրութեան տակ, պիտի հետեւցնենք, թէ նա ինքը բերած է ձեռագիրը Բաղէշ, ուստի* 1590*էն ետքը։ Թէ ի՞նչ եղաւ այդ ձեռագրին բախտը* 1672*էն ետքը, չգիտենք։ Դատելով Ղ․ Փարպեցւոյ եւ Սեբիոսի (ինչպէս նաեւ Կորիւնի) բնագիրներու արտագրութենէն, գաղափար–օրինակը «հին», տեղ տեղ անընթեռնլի*

---

[62] *Արարատ* 1891, *էջ* 147—155· 1901, *էջ* 542—549: *Ղազար Փարպեցի, Պատմութիւն, Տփղիս* 1904, *էջ Ե—Ձ*: *Ագաթանգեղոս, Տփղիս* 1909, *էջ ԺԴ (յիշատակարանը՝ էջ* 372):

եւ միջինմեսրոպեան երկաթագրով գրուած ըլլալու էր, այս պատճառով ալ գրիչը չէ յաջողած շատ տեղեր ճշգրիտ կարդալ բառեր եւ անուններ. իր ոյժէն վեր եղած է նաեւ թղթերու ետեւառաջութիւններու անդրադառնալ կամ թղթէ թուղթ անցնելու ժամանակ կապակցութիւններու ուշադիր ըլլալ: Ձեռագիրը կամ փոքրագիր եւ կամ մեծ երկաթագիր եղած ըլլալու է, իւրաքանչիւր թուղթ այժմեան ութածալ տպագրութեան իբր 11/12 տող բովանդակող:

Թ. 2639 ձեռագրին ընթերցուածները ծանօթ են ինձ Մ. Աբեղեանի հրատարակութենէն: Նոյն ձեռագրին հիման վրայ բնագիր մը կազմած էր նաեւ Գալուստ Տէր-Մկրտչեան, զոր չէր կրցած սակայն տպագրութեամբ լոյս հանել = B:

2. Էջմիածնի Թ. 1891 (Կար. 1646, նախկին 1688), գրուած 1774ին յԷջմիածին, բովանդակութեամբ Ղ. Փարպեցւոյ Պատմութիւն եւ Թուղթ եւ Կորիւն (թղ. 168ա—183բ)[63]: = C:

3. Գէորգ դպրի օրինակութիւնը, Ղ. Փարպեցի, Պատմութիւն եւ Թուղթ, Կորիւն, գրուած 1781ին յԷջմիածին, Թ. 1891 ձեռագրէն: Այս տեղ Կորիւնի վերջը կար յիշատակարանս. «Գրեցաւ մատեանս վարդապետին Կորիւնի ի ՌՄԼ (1781) թուականին Հայոց, ընդ յարկաւ սքանչելի չինուածոյ լուսաձեւեալ սուրբ կաթուղիկէին, ի Վաղարշապատ քաղաքի. գրչութեամբ Գէորգայ ուրումն անարժանի, բնիկ տեղեաւ Կոստանդնուպոլսեցւոյ[64]»: Ասկէ արտագրուած են Էջմ. 131, Վենետիկի Ա. եւ Բ. օրինակները 1784ին: Թէ ո՞ւր կը գտնուի Գէորգ դպրի այս օրինակը այժմ, ծանօթ չէ:

4. Էջմիածնի Թ. 131, էջ 59—94, գրուած 1781ին Էջմիածին Համբարձում դպրէ, Գէորգ դպրի օրինակէն: = D:

5. Վենետիկի Թ. 297 (նախկին 129), թղ. 6ա—19բ եւ թղ. 21ա—157ա Ղ. Փարպեցւոյ Պատմութիւն եւ Թուղթ. գրուած Գէորգ դպրի 1781ին գրած օրինակէն ի Վենետիկ, Ս. Ղազար 1784ին[65]: Այս է Ա. օրինակը, որուն համեմատ եղած է 1833ի տպագրութիւնը: = L:

6. Էջմիածնի Թ. 2682, թղ. 12ա, գրուած 1823ին Գէորգ դպրի օրինակէն:

7. Էջմիածին Թ. 3143, էջ 13. գրուած 1828ին Յովսէփ Բժշկեանէ: = E:

8. Վենետիկ, Թ. 1088, Բ. օրինակ. «զոր ի հնագոյն ձեռագրէ միոջէ օրինակեց Տիրացու Գէորգ եւ առաքեց ի Վանս[66]: Կը բովանդակէ Ղ. Փարպեցւոյ Պատմութիւնն եւ Կորիւն: = M:

9—11. Վենետիկ. «Այժմ բացի վերոյիշեալ երկու նօտրագիրներէն՝ կան նաեւ երեք ուրիշ օրինակներ եւս, որք գրեթէ համաձայն են 1833ի հրատարակութեան[67]:

---

63 Ղ. Փարպեցի, էջ Զ եւ էջ 1, ծան.:

64 Բազմավէպ 1905, էջ 54, ծան. 2:

65 Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ, Բ., էջ 1081—1082:

66 Հ. Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս, էջ 109:

67 Բազմավէպ 1905, էջ 54: Հմմտ. անդ 1897, էջ 113, ծան. 2, ուր կը գրէ Հ. Յ. Թորոսեան, թէ Վենետիկի ձեռագիրներու մէջ կայ նաեւ «երրորդ օրինակ մի, զոր գաղափարեր է՝ զգուշաւոր բաղդատութեամբ՝ մեր հին վարդապետներէն մին, յամին 1827. Պետրոս Մարիեան սարկաւագի նօտրագիր օրինակին վրայէն. որու բուն հին գրչագիրն Կ. Պոլսի Հայոց պատրիարքարանին մէջ կը պահուի: Երրորդ տպագրութեան (իմացիր 1894ի) յաւելուած ծանօթութիւններէն ոմանք՝ այս երրորդ օրինակին մէջ գտնուած տարբերութիւնք են»:

12. *Պարիսի* Bibliothèque Nationale, N. a. lat. 2083 (Suppl. arm. 85)[68] *պահած է Կորիւնի լատիներէն թարգմանութիւն մը Ոսկան վարդապետի ձեռքով.* Vita Mesropa ex Armenico in latinum translata a Domino Uskan Vartabied archiepiscopo Armeno. Vita beati Magistri Mesrop qui primus caracteras Armeniacae invenit, co(m)posite a discipuloillius nomine Coriun. *Ձեռագիրը* 37 × 25 *հմ. մեծութեամբ* 12 *թուղթ է, գրուած չղաքիր: Ոսկան վարդապետ վախճանած է* 1674*ին: Դժուար է ըսել թէ ի՞նչ ձեռագիրի վրայէն կատարած է իր թարգմանութիւնը: Կ'արժէ ի մերձուստ ուսումնասիրել:*

## ՀԱՄԱՌՕՏ ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆՔ

*Կորիւն գրեց Մաշտոցի Վարքը ծանօթացնելու համար եկող սերունդներու այբուբենի գիւտի, Վարդապետին վաստակներու եւ գրական շարժումի պատմութիւնը, միանգամայն ներկայացնելով անոր անձն ու ներքին ապրումները: Իր Մատեանը հրապարակ ելաւ իբրեւ ինքնուրոյն գրական գործ եւ յարգուեցաւ գրասէրներէ եւ պատմագիրներէ: Անշուշտ անկէ մասեր կը կարդացուէին նաեւ հաւատացեալներուն Սուրբին յիշատակի օրը: Կը համարիմ թէ Ը. դարուն, երբ ձեռնարկուեցաւ կազմել Ճառընտիրներ, Տօնամակներ, Կորիւնի Մատեանը ամբողջութեամբ ներս առնուեցաւ: Բայց Ժ.—ԺԱ. դարուն ան իր ամբողջութեան մէջ դժուարալուր երեւցած է. կարեւոր տեսնուած է համառօտել, ոչ միայն Նախաբանը, այլ եւ Մաշտոցի ուղեւորութիւններու մասին մանրամասն տեղեկագրութիւնները: Անկէ ծագած են մեզի ծանօթ Համառօտ Կորիւնները:*

*Անոնք թերեւս պատճառ եղան, որ Կորիւնի Մատեանը հրապարակէն կամաց կամաց մերժուի, նոր սերունդին անհետաքրքրական ըլլայ: Բարեբախտաբար այս Համառօտութիւնները, որոնք պէսպէս եղանակներով կատարուած են, հոգ տարած են Բնագիրին ըստ հնարաւորութեան խնայել: Այս հանգամանքը նպաստամատոյց կ'ըլլայ մեզի այդ Համառօտ օրինակները իբրեւ Կորիւնի համառօտուած Բնագիրներ նկատելու, եւ հոն պահուած անաղարտ հատակոտորները չահագործելու Բնագրի վերակազմութեան համար:*

13. *Պարիսի Ազգային Մատենադարանի հայերէն ձեռագիրներու Թ.* 178, *Թղ.* 467*ա, ԺԲ./ԺԳ. դարէն*[69]*: Ունի «Ի յիշատակի պատմութեան վարուց երանելւոյ սուրբ վարդապետին Մեսրովբայ, զոր ասացեալ է նորին աշակերտ(ի) Կորեան»: Հրատարակութիւնք տես վարը:* = H:

14. *Էջմիածնի Թ.* 3787, *Թղ.* 103*ա, Ճառընտիր ԺԴ./ԺԵ. դարէ*[70]: = I:

---

[68] F. Macler, Catalogue des manuscrits arméniens de la Bibliothèque Nationale. Paris 1908, p. 182 *կը յիշէ ձեռագիրս, բայց իր Ցուցակին մէջ չէ տուած անոր նկարագրութիւնը: Աչքի առաջ ունիմ ձեռագիր ցուցակ մը:*

[69] *Անդ, էջ* 98—99, *ուր նշանակուած է.* fol. 367 v°. «Mort de saint Sahak le Grand.»

[70] *Էջմիածնի Թ.* 3787 *Ճառընտիրս կը համարուի ԺԴ. դարէ. գրիչն է Վարդան Լոռեցի. սա Թղ.* 372 *կը հաղորդէ, թէ գրչութեան ժամանակ հոն (Սանահի՞ն, Հաղբա՞տ) հանդիպած է «տէր Աւագ դրիչ». սա հաւանօրէն նոյն է համանուն դրչին հետ, որ* 1337*ին գրած եւ նկարազարդած է Էջմիածնի Թ.* 212 *Աւետարանը: Իսկ Երեւանի Պետ. Թանգարանի Թ.* 98 *Աւետարանին գրիչներն են* 1332*ին Վարդան եւ Մելքիսեդեկ «ի Ձորս Խաղաեաց ի բանակետղս Լորի»: Կարելի է ասկէ հետեւցնել, թէ Ճառընտիրս գրուած ըլլալու է* 1330—1340 *տարիներու մէջ մերձաւորապէս:*

15· *Էջմիածին, Թ· 3797 (Գէորգ· Ցուց· 672), ճառընտիր, գրուած Նատեր գրչէ ԺԴ· դարուն*[71]։ = J։

*Այս երկու ձեռագիրներու ընթերցուածները առած եմ Մ· Աբեղեանի հրատարակութենէն։*

16· *Անկիւրիոյ Մագաղաթեայ պահպանակները, մասեր ճառընտրի, զորոնք հրատարակեց Բարգէն եպ· Կիւլէսէրեան*[72]։ *Այս հատակոտորներէն Ա· 1ա—1բ (էջ 657—611) քաղուած մըն է Մ· Խորենացւոյ Գ· 47, 52 եւ 54 գլուխներէն, տեղ տեղ բառ առ բառ, տեղիս տեղիս քաղուածաբար։ Իսկ Բ· 1ա—1բ (էջ 661—664) է քաղուածք Կորիւնէն, այն է Մաշտոցի մահուան եւ յուղարկաւորութեան մասերէն, ընտիր ընթերցուածներով*։ = K։

## ՀԱՏԱԿՈՏՈՐՆԵՐ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍԻ ԵՒ ՓԱՒՍՏՈՍԻ ՔՈՎ

17· *Ագաթանգեղոսի Պատմական Բաժնին վերջին մասը ըստ մեծի մասին Կորիւնէ հանուած բառական քաղուածքներէ կը բաղկանայ· կան հատուածներ նաեւ Յաճախապատումին մէջ։ Բարեբախտութիւն պէտք է նկատել այս քաղուածքները, որոնք կը նպաստեն մեզի Բնագրի վերակազմութեան*։ = A։

18· *Կան, թէեւ սակաւաթիւ, քաղուածքներ Կորիւնէն նաեւ Փաւստոսի մէջ· ուշագրաւ են յատկապէս երկու հատակոտորներ*։ = F։

*Ասոնք ունին այն առաւելութիւնն, որ իրենց քաղուածքները առած են Բնագրէ մը, որ հազիւ 50 տարւով հեռու է Սկզբնագրէն։*

*Եղան ոմանք, որ Համառօտ Կորիւնը (Պարիսի Թ·* 178) *հռչակեցին «նախընտրելի» ընդարձակէն (Էմին)*[73], *«ընտրելագոյն ընթերցուածովք» (Զարբանելեան)*[74], *«ոճը սեղմ, աւելի ազդու, կոկ եւ հասկանալի» (Սարգիսեան*[75], *«ընտիր եւ հարազատագոյն օրինակ մի» (Յառաջաբան 1894ի հրատարակութեան)։ Նորայր*[76] *պատասխանեց· «Ճշմարտութիւնն այս է, որ Սուտ-Կորիւնն է անոճ անհամ գրութիւն, ուր չեն պակսիր խառնաշփոթ եւ անիմանալի պարբերութիւնք, ուր յոռեգոյն ընթերցուածք կ՚առաւելուն քան զընտրելագոյնս· թող զյայտնի կամակորութիւնս բանից» (էջ 398)։ «Խառնուրդ է բանից Կորեան, Մ· Խորենացւոյ եւ անանուն կարկատողի ի ԺԱ· կամ յԺԲ· դարու» (էջ 397)*[77]։

---

[71] *Էջմիածնի Թ· 3797 (Գէորգեան Ցուցակ Թ· 672) ձեռագրի համար կը գրէ Մ· Աբեղեան, թէ «ունի ԺԴ դարի գրչութեան նշաններ» (Կորիւն, էջ 21)։ Ձեռագրիս մասին խօսուած է Արարատ 1896, էջ 511 եւ Ագաթանգեղոս, էջ Խէ, նշանակելով «անթուական», «տեղն անյայտ», բայց գիտեն թէ գրիչն է Նատեր։ Բաւական էր հռչակաւոր գրչին անունը, ստուգելու համար գրչութեան թէ տեղն եւ թէ ժամանակը։ Նատեր գրեչ գործած է 1339—1362 տարիներուն ի Սուրխաթ Ղրիմի· վախճանած է 1362էն ոչ շատ վերջը։ Ան յիշած է ձեռագրիս մէջ (թղ· 52բ) Սարգիս քահանայի որդիքը զՀամազասպն եւ զԳրիգորն զփոխեցեալն յաստեացս մատաղ տիօք ի տարաժամ մահուանէ»։ Այս դէպքը պատահած է 1347ին, ինչպէս կը յիշատակէ ինքն Նատեր Պետական Թանգարանի Թ· 107 Աւետարանին մէջ գրուած նոյն տարւոյն Սուրխաթի մէջ։ Ուստի ճառընտիր-Տօնականս գրուած է հաւանօրէն 1347էն ոչ շատ վերջը, նոյն Սուրխաթ քաղաքի մէջ։*

[72] *Հանդ· Ամս·* 1914, *էջ* 656—666։

[73] V. Langlois, Collection des historiens..., II. Introduction, p. 4.

[74] *Զարբանելեան, Պատմ· հայկ· հին դպրութեան, էջ* 314։

[75] *Սարգիսեան, Ագաթանգեղոս,* 109։

[76] *Նորայր, Կորիւն, էջ* 397—401։

[77] *Հմմտ· նաեւ Հ· Յ· Թորոսեան, Բազմավէպ* 1897, *էջ* 303—310։

## ՏՊԱԳԻՐՔ

1. *Կորիւն վարդապետի, Մամբրէի Վերծանողի եւ Դաւթի Անյաղթի մատենագրութիւնք. Վենետիկ* 1833, *էջ* 1—29 : = O :

2. *Կորիւն վարդապետի Պատմութիւն վարուց եւ մահուան Ս. Մեսրովպայ: Զմիւռնիա* 1847°, *էջք* 53: *Արտատպութիւն մըն է* 1833*ի հրատարակութեան*:

3. *Կորիւն, Պատմութիւն վարուց եւ մահուան Ս. Մեսրոպայ վարդապետի մերոյ թարգմանչի: Վենետիկ* 1894, *էջ* 48 (*Կորիւնի բնագրին տակ զետեղուած է Համառօտ Կորիւնը*) : = P :

4. *Կորիւն, Պատմութիւն վարուց...* (*համեմատ Գ. տպագրութեան*). *Թիֆլիս* 1913, *էջք* 72 (*էջ* 44—66 *Համառօտ Կորիւն*). [*Ղուկասեան Մատենադարան, ԾԳ*] :

5. *Կորիւն, Վարք Մաշտոցի. ուղղեալ եւ լուսաբանեալ ի Գառնիկ Ֆնտգլեանէ. Երուսաղէմ* 1930, *մեծ* 8°, *էջք Ի* + 101 (*արտատպուած «Սիոն»է* 1927, *էջ* 146—150 *եւն*) : = R :

6. *Կորիւն, Վարք Մաշտոցի. բնագիրը ձեռագրական այլ ընթերցուածներով, թարգմանութեամբ, առաջաբանով եւ ծանօթութիւններով, ի ձեռն Պրոֆ. Դր. Մ. Աբեղեանի: Երեւան* 1941, 8°, *էջք* 126 : = S :

## ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՔ

7. Goriun's Lebensbeschreibung des hl. Mesrop. Aus dem armenischen Urtexte zum ersten Male übersetzt und aus armenischen Schriftstellern erläutert von Dr. B. Welte. Tübingen 1841, 4° 52 S. (*Նախաբանը դուրս ձգուած է*) :

8. Koriun, Beschreibung des Lebens und Sterbens des hl. Lehrers Mesrop. Übersetzt und mit Einleitung versehen von Dr. Simon Weber: Ausgewählte Schriften der armenischen Kirchenväter. I. Band, Eznik, Koriun, Hatschachapatum. München 1927, S. 181—233 (Bibliothek der Kirchenväter).

9. *Մ. Աբեղեանի աշխարհաբար թարգմանութիւնը տես վերը Թ.* 6 :

## ՀԱՄԱՌՕՏ ԿՈՐԻՒՆԸ

10. *Կորիւն վարդապետի Պատմութիւն սրբոյն Մեսրովբայ. Վենետիկ* 1854, *էջք* 1—37 : [*Սոփերք Հայկականք, ԺԱ.*] :

11—12. *Համառօտին Բ. եւ Գ. տպագրութիւնը տես վերը Թ.* 3 *եւ* 4 :

13. *Համառօտին թարգմանութիւնը.* Goriun, Biographie du bienheureux et saint docteur Mesrob, traduite pour la première fois en français par Jean-Raphael Emine: V. Langlois, Collection des historiens anciens et modernes de l'Arménie, t. II. Paris 1869, p. 1—16. *Հմմտ. առ այս Նորայր, Կորիւն, էջ* 397—401 :

ԵՂԱՆԱԿԸ, ՈՐՈՒՆ ՀԵՏԵՒԵՑԱՆՔ

*Կորիւնի Վարքն Մաշտոցի պահուած է մեզի Էջմիածնի Թ. 2639 ձեռագրին մէջ, գրուած Գրիգոր գրչէն 1672ին, հին քայքայեալ օրինակէ մը, ի Բաղէշ: Թէ այդ գաղափար-օրինակը ի՞նչ վիճակի մէջ կը ներկայացնէր բնագիրը, չենք գիտեր: Բայց կրնանք ի յառաջագունէ ենթադրել, թէ 1230 տարի յառաջ հեղինակի գրչէն դուրս ելած սկզբնագիր մը, «հին օրինակէ» հասկացողութեամբ արտագրելու կարողութիւնը պիտի պակսէր Գրիգոր գրչի: Ինչպէս Ղ. Փարպեցւոյ եւ Սեբէոսի մէջ վխտացող վրիպակ ընթերցումները առանց տարակուսի վերջին գրիչներու չալակին վրայ պիտի բարձցուին, նոյնպէս եւ առաւել չափով դասական՝ հեղինակի մը, բարձր ոճով գրուած Մատեանի մէջ տեսնուած անիմաստ տեղիքները պիտի վերագրուին անոր օրինակողին: Չենք կրնար սակայն մեղադրել զինքը այս չարագործութեան համար. որովհետեւ անարդար պիտի ըլլար պահանջել իրմէ նման գրութեան մը ճշգրիտ իմացում եւ ապականած օրինակէ անվրէպ արտագրութիւն: Մենք պարտական ենք շնորհակալիք թէ Գրիգոր գրչի, որ իր օրինակութեամբ փրկած է կորուստէ թանկագին մարգարիտ մը, եւ թէ գրասէր Վարդան Բաղիշեցւոյ, որ նախահօր եղած է օրինակել տալու այս կարեւոր գործը:*

*Այս միակ ձեռագրէն ծագած են միւս մեզի ծանօթ 11 ձեռագիրները, որոնք զուրկ են հնագիտական արժէքէ: Բոլոր տարբերակները, որոնք կ՚երեւցնեն այս 11 ձեռագիրները եւ անոնց հիման վրայ լոյս տեսած տպագիրները, կա՛մ սխալագրութիւն են եւ կամ բանասիրական ուղղագրութիւններ, կարեւոր կամ անկարեւոր, ընդունելի կամ մերժելի: Այդ սրբագրութիւններու մեծագոյն մասը բանասէր Գէորգ դպրի գրչէն է:*

*Յետագային ուղղագրութեան փորձեր ըրին նաեւ ուրիշներ, կը յիշեմ Նորայր Բիւզանդացի, Հ. Յ. Թորոսեան, Հ. Գ. Նահապետեան, Հ. Ն. Ակինեան եւն: Ոչ ամէն փորձ հաճութիւն գտաւ Բանասէրներէ. բայց գրգիռ եղան անոնք լաւագոյն փորձերու: Ոսկի կանոնը, զոր Նորայր Բիւզանդացի տուաւ Բանասէրներու այս եւ նման բնագրական սրբագրութեանց համար*[78]*, կ՚արժէ ամէնուն եւ ամէն ժամանակի համար.*

*«Նախնեաց ո՛ր եւ իցէ բնագիրը յարդարելու համար, բաց ի Ձեռագրաց համեմատութենէն, անհրաժեշտ կարեւոր է լիովին ուսումնասիրել զայն՝ տէպ տէպ կարդալով: Պէտք է միտ դնել մատենագրին դարուն յորում կը գրէր, իւր գիտութեան աստիճանին, ընդելական դարձուածներուն, բառերու կազմութեանը, քերականութեանը. միտ դնել այն բառերուն եւ ասացուածներուն՝ որ մերթ այս կերպ գրուած են, մերթ այն կերպ, եւ նորին իսկ մատենագրին օգնութեամբ՝ աստ սխալ գրուածը սրբագրել անդ ուղիղ գրուածով. միտ դնել մատենագրին նաեւ ուրիշ գրուածոց եւ թարգմանութեանց՝ եթէ ունի, եւ իւր ժամանակակից ա՛յլ մատենագրութեանց՝ որ փոխադարձաբար կը լուսաւորեն կը պարզեն, կը հաստատեն կամ կ՚ուղղեն միմեանց, նոյնպէս եւ այն յետագայ մատենագրութեանց՝ յորս կը գտնուին փոխառութիւնք ի նոյն մատենագրէն: Սովին ոճով ուսումնասիրել եւ յարդարեալ բնագրի հրատարակութիւնն կը կոչուի Քննական Հրատարակութիւն»:*

*Կորիւնը վերակազմելու համար հարկ է աչքի առաջ ունենալ միայն* B *ձեռագիրը: Զայն ուղղելու համար պէտք է կենդրոնացնել աչքերը* HIJK

---

*78 Բուշարձան գրական ժողովածոյ, Վիեննա 1911, էջ 165:*

ձեռագիրներու վրայ, որոնք ծագած են B ձեռագրին քոյր ձեռագիրներէ· անոնց ընթերցուածները թանկագին կարելի է նկատել, երբեմն նոյն իսկ Bէն աւելի յարգի։ Ապա կու գան AF, որոնք թէպէտ հնութեամբ երիցագոյն են, բայց ոչ միշտ հարազատ աւանդուած ձեռագիրներու մէջ, ինչպէս կը հաստատուի Aի ձեռագիրներու բազմազան խոտորումներէն· այս տեղ ընտրութիւնը դասական մատենագրութեան ընտանի ճաշակին կը մնայ։

Կորիւն դասական մատենագիր է· կը պահանջուի իրմէ ուղղախօսութիւն։ Եւ եթէ ուզէր իսկ հեստել այս օրէնքին դէմ, չափ պիտի հրաւիրէին զինքը նախ վերակացուն աշակերտութեան, եւ ապա երէց աշակերտները, յանուանէ Կորիւնի ուսումնակիցն եւ սննդակիցն Եղնիկ։ Ուստի դասական հեղինակի պատուի դէմ պիտի մեղանչենք, եթէ զինքը քերականական օրէնքներու խրամատող, անսանձ մատենագիր որակենք, ու իր գրչին վերագրենք կարգ մը անկանոնութիւններ, որոնց պատասխանատու միայն տգէտ օրինակողներն կրնան ըլլալ։ Եւ որքա՜ն այդպիսի օձտումներ միւսանգամ արքունի ճանապարհ կը հանուին համեմատութեամբ ընտիր օրինակներու։

Մեր ակնարկութիւնը յատկապէս բանասէր Գ· Ֆնտգլեանի կը հայի, որ թէպէտ ջերմեռանդ սիրով մերձեցած է Կորիւնի, ճշմարտասէր փութով ուսումնասիրած է Մաշտոցի Վարքը, բայց որովհետեւ թերակատար եղած է իր հմտութիւնը դասական լեզուի յատկաբանութիւններու, մեծահոգի ներողամտութեամբ վերաբերուած է գրչագրական վրիպակներու, անոնց ջատագով իսկ կանգնած է։ Այսպիսի դէպքերուն խստապահանջութիւնը առաքինութիւն է բանասէրին։

Ուրիշ մը, Մ· Աբեղեան բաւականացած է ձեռագրական բաղդատութեամբ, առանց ի խորհուրդ կոչելու Ագաթանգեղոսը, Փաւստոսն եւ Համաստը, թող այլ հատակոտորներ։ Նաեւ Աբեղեան նկատի չէ առած թէ շատ աղաւաղուած դասական Բնագիր մ'ունի իր առջեւ։

Ուշի ուշով, մանրակրկիտ զննութեամբ քննութեան ենթարկելով Բնագիրս նկատեցի, որ ան բազմապիսի փորձութիւններու ենթարկուած է յընթացս դարերու։

ա· Աղճատուած է լեզուն բազմախուռն վրիպակներով·

բ· դուրս ինկած են բառեր, նախադասութիւններ·

գ· յաւելուածներ կրած է·

դ· կատարուած են հատուածներու տեղափոխութիւններ, ըլլայ դիտումով, ըլլայ թղթերու ետեւառաջութեամբ։

Բնագիրը վերակազմելու համար մեծապէս նպաստամատոյց եղան BHIJK ձեռագիրները, նոյնպէս AF։ Ասոնց հանդէպ CDELM ձեռագիրներու եւ OPRS տպագիրներու ընթերցուածները նկատի առի իբրեւ բանասիրական սրբագրութիւններ Գէորգ դպրի եւ ուրիշներու։ Այս կարգի սրբագրութիւններ են նաեւ Ն, Նհ եւ Ակ։ Բանասիրական ուղղումներ պահանջած էր եւ պահանջեց աղաւաղուած Բնագիրը ճշգրիտ իմացումի եւ պատշաճ յարդարումի համար։ Ասոնք վերջնական ստուգումի կը կարօտին ընտրելագոյն ձեռագրի մը հիման վրայ։ Սրբագրական զանազան փորձեր, որոնք առաջարկուած են ժամանակ ժամանակ, անհրաժեշտ չտեսայ յիշատակութեան· սարուածքի մէջ ներս առի այնպիսիներն միայն, որոնք հաւանական երեւցան ինձ։ Մատնանիշ ընելու համար, թէ Բնագրի մէջ առնուած նոր ընթեր-

*ցուածներու համար ո՛ր ձեռագիրն, ո՛ր հատակոտորն եւ որո՛ւն սրբագրութիւնը հիմ ծառայած է, տարբերակներու բաժնին, սարուածքի մէջ նշանակած եմ* A, B... *նշանագիրներով տարբերակներու վերջը:*

Անկումներ բառերու եւ նախադասութիւններու, *զորոնք նկատած եմ եւ մասամբ լրացուցած, առած եմ ընդհանրապէս փակագծի մէջ, ինչ ինչ մասնանշած եմ տարբերակներու բաժնին մէջ, ցոյց տալով թէ ինչ հիման վրայ ներս առնուած են Բնագրին մէջ: Այս տեղ կը պատկանին նաեւ աղաւաղուած նախադասութիւններու վերակառուցումները, որոնց մասին առանձին խօսք եղած է Ծանօթութիւններու մէջ:*

Յաւելուածները, *որոնք երկրորդ ձեռքի կը վերաբերին, առած եմ քառակուսի փակագծի մէջ. բացատրութիւնը պիտի գտնեն ընթերցողները Ծանօթութիւններու մէջ:*

*Աւելի ծանրակշիռ են ետեւառաջութիւնները, զորոնք նշմարած եմ: Այս մասին համառօտիւ խօսած եմ «Սուրբ Մաշտոց վարդապետ» աշխատութեանս մէջ* (*էջ* 11—16): *Կ՚ուզեմ միւսանգամ անդրադառնալ անոնց, որովհետեւ կը պահանջէ տեղս:*

## ԵՏԵՒԱՌԱՋՈՒԹԻՒՆՆԵՐ

*Աչքի առաջ ունիմ Կորիւնի Գ. տպագրութիւնը* (*Վենետիկի հրատարակութեան Բ. տպ.* 1894). *կը նշանակեմ էջով եւ տողով.*

1. *Տպ.* 12, *տ.* 16—13, *տ.* 6. *«Որպէս նոյն իսկ Պաւղոս — եւ զկատարումն Տեառն տեսէք» պէտք է փոխադրել էջ* 38, 11 *ընդ մէջ «կանոն աշակերտելոցն դնել* <> *մանաւանդ յուշ առնելով...»: Այս հատուածը հոս գտնուած էր Սկզբնագրին մէջ. Ագաթանգեղոսի խմբագիրը, որ նախորդ եւ հետեւորդ հատուածները փոխ առած էր Կորիւնէն, այս հատուածը զատելով զետեղած է Փաւստոսի մէջ, Դ.* 4, *ինչ ինչ փոփոխութեամբ, իսկ Կորիւնի մէջ տեղահան ընելով փոխադրած է էջ* 12—13: *Արդեամբք ալ անհամապատասխան է այն Նախաբանին, որովհետեւ հոն Կորիւնի խօսքը սրբոց գովութեան նուիրուած է, իսկ հոս բարի օրինակի վրայ կը խօսուի:*

*Հատուածս սկզբնական տեղը տեսած են Կոմիտաս կաթողիկոս եւ Համառօտին խմբագիրը: Կոմիտաս իր Թղթին մէջ յառաջ բերած է, առանց աղբիւրը յիշելու, տեղիքս*[79]. «Եւ համարձակութիւն տալ, *թէ Գնացէք մինչ զլոյսն ունիք*, ի բարեաց *գործոցն* առաքինութիւնս անխափան. *եւ թէ Յամենայն ժամ պարտ է ի բարիս նախանձաւոր լինել... Պաւղոսի, որոյ պարծանք խաչն եւ ազատութիւն յերկինս* <... *Հայեցարուք ի զօրագլուխն հաւատոց*> *եւ* <*ի*> *կատարիչն Յիսուս: Եւ դարձեալ թէ* Յիշեցէք զառաջնորդս ձեր, որք խօսեցան ձեզ զբանն Աստուծոյ. հայեցեալ յելս գնացից նոցա, նմանողք եղերուք հաւատոցն նոցա». *եւ դարձեալ թէ* «Նախանձաւոր լերուք շնորհացն որ լաւն են»: *Իսկ Համառօտն ունի «Քանզի սովոր իսկ են... քանզի Սկսաւ, ասէ, Յիսուս առնել ուսուցանել, եւ եթէ Հայեցարուք յառաջնորդն... զի ոչ վասն անձին Ամենատէրն... թեթեւագոյն արուեստից... Յիշեցէք... Հայեցեալք յելս...»: Հետեւելով այս կարգին վերակազմեցի Կորիւնի Ժէ.* 5—8 *հատուածները, ինչպէս կ՚ենթադրէ նաեւ Փաւստոսի հատուածը, որ*

[79] *Գիրք հաւատոյ, հրտ. Յաճախապատում, Վաղարշապատ* 1894, *էջ* 301:

կը սկսի եւ կ'աւարտի այսպէս․ «Կամ որպէս նոյն իսկ Պաւղոս բարեաց գործոց նախանձաւոր լինել ստիպէ ամենեցուն առեալսն — զկատարումն Տեառն տեսէք»։ Փաւստոս իր յառաջբերութեան մէջ Փիլիպ․ Բ․ 5 վկայութեան կից ունի Գործք Առ․ Ա․ 1․ ինչ որ ցոյց կու տայ, թէ Կորիւնի մէջ եռեւառաջութիւն տեղի ունեցած է․ համեմատութիւնն է․

| Կորիւն․ | Փաւստոս․ |
|---|---|
| Եւ միանգամայն, եթէ Զայս խորհեսցի իւրաքանչիւր ոք ի ձէնջ որ եւ ի Քրիստոս Յիսուս [Փիլիպ․ Բ․ 5]։ | Եւ միանգամայն թէ Զայս խորհեսցի… ի Քրիստոս։ |
| Հանգոյն ամին եւ Ղուկաս յսկիզբն Առաքելագործ Մատենին դնէ։ | չունի․ |
| Իսկ ցանկալի տեառնեղբայրն Յակոբոս…։ | Իսկ ցանկալի եղբայր Տեառն Յակոբոս…։ |

Կորիւնէն դուրս ինկած է «Սկսաւ Յիսուս…»․ իսկ Փաւստոսէն «Հանգոյն ամին…»։

2․ Տպ․ 17, տ․ 19—27 (Զ․ 3 «ուրախ լինէին»էն ետքը) «Ապա առեալ — նովին նշանագրաւք տանէր»․ կը փոխադրեմ Թ․ 2 (տպ․ 21, տ․ 22/23) իբրեւ շարունակութիւն «ուրախութեամբ անցուցանէին» հատուածին։ Նախկին տեղը չի պատշաճիր․ Դանիէլ եպիսկոպոսի նշանագիրները հասան Հայաստան Վռամշապուհի Ե․ տարւոյն․ Մաշտոց Միջագետք մեկնեցաւ նոյն թագաւորին Ե․ տարւոյն․ ուստի ոչ միջոց կայ նոյն նշանագիրները «ամս երկուս» ուսուցանելու եւ ոչ ալ պէտք կար անոնց անբաւական ըլլալու համար 2 տարի փորձի ենթարկելու։ Կեղծ–Ղազար Փարպեցի (էջ 15) կը կրկնէ Կորիւնի խօսքերը․ «…ընկալեալ զնշանագիրսն ի Հաբելէ՝ ուրախ լինէին»․ եւ լռելով Մաշտոցի ուղեւորութեան մասին, այբուբենի գիւտը Սահակի կը վերագրէ, ապա կը շարունակէ (էջ 16)․ «կարգեալ այնուհետեւ… զգիր գրենոյն հայերէնի… ցանկային կարգել դպրոցս եւ ուսուցանել բազմութիւն մանկտւոյ»։ Համառօտը կը հետեւի հոս Մ․ Խորենացւոյ․ իրմէ են սակայն տողերս․ Մաշտոց կը վերադառնայ Միջագետքէն հայերէն այբուբենով․ Սահակ եւ Վռամշապուհ «յոյժ ուրախ լինէին որպէս ընդ տախտակս աստուածագիծս․ եւ գոհութիւն… արարչին մատուցանէին զնորոգատուր պարգեւացն» (էջ 20—21)։ Մ․ Խորենացի (Գ․ 54) գիտէ թէ Մեսրոպ հրամանաւ Վռամշապուհի եւ Սահակայ «ժողովեալ մանկունս… դպրոցս կարգեաց յամենայն գաւառս եւ ուսոյց զընաւ կողմանս Բաժնոյն Պարսից» (!)։

Իր աղբիւրն է Կորիւն։ Կը տեսնուի ասկէ, թէ երեք հեղինակներն ալ հատուածս Թ․ 1ին շարունակութիւնը գիտեն։ Բնագրի մէջ կը պակսին սակայն Թ․ 2ի սկիզբը քանի մը տողեր, ուր դպրոցներ բացուելու մանուկներ հաւաքելու մասին խօսուած պէտք է ըլլալ։

3․ Տպ․ 21, տ․ 23—22, տ․ 2 (Զ․ 1 «անցուցանէին» տողին իբրեւ շարունակութիւն) «Յայնժամ վաղվաղակի — զերծանել» կը փոխադրեմ Տպ․31, տ․ 17ի իբրեւ շարունակութիւն (ԺԱ․ 4)։ Կը համարիմ թէ «ի թագաւորէն» իմանալու է Աղուանից Արսվաղէն թագաւորը։ Վերագոյն յիշուած էր, թէ Մաշտոց երբ կը քարոզէր ի Գողթն, դեւերը (հեթանոսնե՞րը) փախստական «անկանէին ի կողմանս Մարաց» (տպ․ 16 = Դ․ 2), ուստի հայկական սահմաններէն դուրս։ Անծանօթ ձեռք մը կ'երեւայ թէ հատուածս հոս զետեղած

է, ցոյց տալու համար թէ Մաշտոց գրի գիւտէն ետքը առաջին գործն ըրաւ այս «Մարաց կողմերը» լուսաւորել։ Այս Մարերը հաւանօրէն Մ․ Խորենացւոյ (Գ․ 54) Գարգարացիներն են։ Տես Ծան․ 45։

4․ Մաշտոցի ուղեգնացութիւնը Վաղարշապատ—Գողթն—Սիւնիք—Աղուանից աշխարհ—Բաղասական—(Մարաց կողմանք)—Գարդմանք—Գուգարք—Վրաստան—վերադարձ, դարձեալ Վաղարշապատ—Հռոմէական Հայաստան—վերադարձ․ դարձեալ Վրաստան—Տաշիրք—վերադարձ, շատ շփոթ ներկայացուած է Կորիւնի Բնագրին մէջ, կամ թղթերու եռեւառաջութեան պատճառով եւ կամ մասնաւոր դիտումով։ Մտադիր ընթերցողի համար դժուար պիտի չ՚ըլլար վերականգնումի փորձը․ դժբախտաբար չէ ունեցած Կորիւն այդ մտադիր ընթերցողը։

Այս փոփոխութիւնը տեղի ունեցած է Կորիւնի Բնագրին մէջ շատ կանուխ․ յամենայն դէպս Մ․ Խորենացի (իբր 850ին) այդպիսի խանգարուած ձեռագիր մը ունեցած է իր տրամադրութեան տակ։ Երկու բնագիրներու համեմատական պատկերն է

| Կորիւն (տպ․ 24—32)․ | Մ․ Խորենացի (Գ․ 54—60)․ |
| --- | --- |
| Գողթն—Սիւնիք (Վաղինակ, Վասակ)—Վրաստան—վերադարձ։ «Դարձեալ ելանէր շրջէր զտեղեօք կարգելովք ․․․ աշխարհին Հայոց»։ | Վաղարշապատ—Վրաստան—Աղուանից աշխարհ (Արսվաղէն թագ․ Բենիամին․ այբուբեն Գարգարացւոց լեզուին․ Վասակ Սիւնեաց) վերադարձ։ |
| Հռոմէական Հայաստան (Բենիամին երէց, գիւտ աղուաներէն այբուբենի)—վերադարձ։ | Հռոմէական Հայաստան։ |
| Վաղարշապատ—Աղուանից աշխարհ—Բաղասական—Գարդմանք—Բ․ այցելութիւն ի Վիրս (Արձիուղ թագ․)—Տաշիրք—վերադարձ։ | Վաղարշապատ—Գողթն—Բաղասական—Գարդման—Վրաստան (Արձիլ թագ․)—վերադարձ։ |

Կը վերականգնեմ ուղեգիծը այսպէս․

Մաշտոց կ՚անցնի Գողթն գաւառէն Սիւնեաց աշխարհը․ երկրին իշխանտանուտէրն էր Վաղինակ, որ ամէն աջակցութիւն ցոյց կու տայ Վարդապետին, դպրոցներ կը բացուին․ «ապա եւ զերկիրն Սիւնեաց դասուք վանականաց լնոյր» (տպ․ 24, վերջին տող)։ Յաջորդ էջը կը սկսի․ «Յորում ժամանակի պարգեւեալ յԱստուծոյ հասանէր ի գլուխ իշխանութեանն Սիւնեաց քաջն Սիսականն Վասակ․․․» (տպ․ 25, տ․ 1—2)։ Կորիւն նախորդ տողերու մէջ որ եւ է ակնարկութիւն չէր ըրած Վաղինակի մահուան կամ իշխանական գահէն հրաժարած ըլլալու մասին։ Պատմութեան կարգը խարխալած է հոս։ Էջ 24, վերջին տողը «դասուք վանականաց լնոյր» իր շարունակութիւնը կը գտնէ Տպ․ 30, տ․ 15—32, տ․ 5․ «Եւ ապա յետ այնորիկ հրաժարեալ — իսկ նորա անցեալ դիմեալ ի կողմանս Աղուանից»։ Այս ինքն Մաշտոց հրաժեշտ տալով Վաղինակ իշխանին՝ Սիւնիքէն կ՚անցնի Աղուանից աշխարհը, անկէ ալ կը մեկնի Գարդմանքի վրայէն «անցանել յաշխարհն Վրաց» (էջ 31) ուստի Տպ․ 32, տ․ 5 «Իսկ նորա անցեալ դիմեալ ի կողմանսն» պէտք է լրացնել՝ «Վրաց»։

Շարունակութիւնն է Տպ․ 25, տ․ 1—26, տ․ 26․ «Յորում ժամանակի — նորոգել եւ հաստատել։ Այս տեղ «ի կողմանս Վրաց» պէտք է իմանալ Գուգարաց աշխարհն եւ Տփղիսը։ Պարսիկները Դ․ դարու վերջերը հաստատած

էին այս կողմերը «Վրաց Մարզպանութիւն», որ կ՚ընդգրկէր Խաղտեաց աշխարհէն մինչեւ Կասպից (Իւրոյ=Վիրոյ) պահակը երկարաձգուող երկրաբաժինը. երբ կը հասնէր Մաշտոց այս կողմերը, այս իշխանութեան (մարզպանութեան) գլուխ կարգուած էր Վասակ Սիւնի, ծանօթ «Վ. Վրաց մարզպան» տիտղոսով. նոյն Վասակ յետոյ միայն «Հայոց մարզպան» անուանուեցաւ: Մաշտոց դադար առաւ հոս, աշակերտելու Գուգարքի հայախօս ժողովուրդը: Այս միջոցին պատրաստեց վրացերէն այբուբենը: Աւարտելով իր վարդապետութիւնն այս կողմերը՝ ձեռնտուութեամբ Վասակի, անցաւ Մաշտոց բուն Վրաստան, ուր կը թագաւորէր Բակուր: Ի գլուխ հանելով այս առաքելութիւնն ալ վերադարձաւ Վարդապետը Հայաստան: Հոս յանձնուեցաւ իրեն ուղեւորիլ Հռոմէական Հայաստան: Տպ. 26, տ. 29—30, 15. «Եւ յորժամ այնպէս ընդ ամենայն տեղիս լի առնէր զսուրբ աւետարան Տեառն — «մխիթարէր վասն հոգեւոր անձուկն սփռելոյ»: Շարունակութիւնն է 26, տ. 26:

Երբ դարձաւ անկէ Վաղարշապատ, կարեւոր տեսաւ Մաշտոց միւսանգամ այցելել Վրաստան: Կորիւն կը գրէ. Տպ. 26, տ. 26—28. «Ապա դարձեալ եկանէր շրջէր զտեղեօք կարգելովք եւ զգաւառօքն աշակերտելովք աշխարհին Վրաց (տպ. Հայոց) զարթուցանել, նորոգել, հաստատել», որ կը շարունակուի Տպ. 32, 5. «առ որով ժամանակաւ Արձիւղ անուն թագաւորեալ Վրաց...»: Այս տեղ կ՚աւարտի ուղեգնացութեան պատմութիւնը:

5. Տպ. 40, 16—41, 5 «Յայնմ ժամանակի բերեալ երեւեցաւ — ծուխ ինչ սատանայական յարիցէ», թէեւ երկրորդ ձեռքէ ներմուծում կ՚երեւայ, բարւոք համարեցայ տեղափոխել Տպ. 33, տ. 7 (ԺՁ. 3) իբրեւ շարունակութիւն, ուր աւելի կը պատշաճի: Հատուածս ԺԱ. դարուն արդէն գոյութիւն ունէր Կորիւնի գրուածքին մէջ (տես Ծան. 76):

ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Այս տեղ նկատի պիտի առնեմ այն գրութիւնները միայն, որոնք ուղղակի Կորիւնի եւ իր գրուածքին կը հային: Ուստի կ՚անտեսեմ այն բազմաթիւ գրութիւնները որոնք նուիրուած են Գրի գիւտին, Մաշտոց-Մեսրոպի Վարքին, եւ առ հասարակ Ե. դարու գրական շարժումին, զուրկ բանասիրական արժէքէ:

Կը դասաւորեմ այբուբենական կարգով:

Մ. Աբեղեան, Մեսրոպ Մաշտոց եւ հայ գրի ու գրականութեան սկիզբը: Սովետական Գրականութիւն. 1941 (Երեւան), Թ. 1, էջ 47—51, Թ. 2, էջ 41 51:

— — Պատմութիւն Հայոց հին Գրականութեան. Ա. գիրք. Երեւան 1944, էջ 149—157:

— — Տե՛ս վերը Կորիւնի հրատարակութեան Յառաջաբանը:

Ն. Ադոնց, Անծանօթ էջեր Մաշտոցի եւ նրա աշակերտների կեանքից ըստ օտար աղբիւրների: Հանդ. Ամս. 39 (1925), 193—202, 321—328, 435—441, 531—539 (արտատպ. Մաշթոց եւ նրա աշակերտները ըստ օտար աղբիւրների. Վիեննա 1925, $8^0$, էջ 56):

— — Կորիւնի մասին (Պ. Ֆնտգլեանի նկատողութիւնների առթիւ): Հանդ. Ամս.. 41 (1927), 273—284, 395—405:

— — Դարձեալ Կորիւնի շուրջը: Հանդ. Ամս. 42 (1928), 76—94:

Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա. մաս, Վենետիկ 1901, էջ 48—49:

Հ. Ն. Ակինեան, Ս. Մաշտոց վարդապետ. Կեանքն եւ գործունէութիւնը, հանդերձ կենսագրութեամբ Ս. Սահակայ. Վիեննա 1949, 8°, էջ 473 (նախ Հանդ. Ամս. 1935, էջ 449—563, 615—617. 1938, էջ 286—333. 1948, էջ 321—341, 449—508):

Ն. Ադրալեան, Կորիւն (դասախօսութիւն). Ազդարար 1942, Թ. 21:

Հ. Աճառեան, Ս. Մեսրոպի եւ գրերու գիւտի պատմութեան աղբիւրներն ու անոնց քննութիւնը. Պարիս 1907, էջ 4—18 (ի մասին Կորիւնի):

— — Հայոց գրերը. Վիեննա 1928, 8°, էջ 495:

Թ. Աւդալբէգեան, Նորից՝ Կորիւնը Վրաստանի եպիսկոպոս չէ եղել. Հանդ. Ամս. 40 (1926), 387—390 (արտատպ. ի գիրս՝ Անյայտ աղանդաւորներ Հայոց մէջ. Վիեննա 1926, էջ 47—52):

O. Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, V. Freiburg i. Br. 1932, S. 197—199.

Հ. Յ. Գաթըրճեան, Հինգերորդ դարու չորս հայ պատմագրութեանց ժամանակները. Ա. Կորիւն, Հանդ. Ամս. 1 (1887), էջ 10:

Ա. Մ. Գարագաշեան, Քննական Պատմութիւն Հայոց, Դ. Տփղիս 1895, էջ 22—47, 68, 155—156:

Գէորգ Մեսրոպ, Սուրբ Մեսրոպի կենսագիրը. Հայ Գրականութիւն 2 (1912/3), Թ. 10—11, էջ 52—56. Թ. 3 (1913). Թ. 2, էջ 1—5:

Alfred von Gutschmid, Agathangelos: Zeitschrift für Deutsche Morgenländische Gesellschaft 31 (1877) 1—60 (= Kleine Schriften, III (1892 S. 339—420) ի մասին Կորիւնի յատկապէս էջ 24—31: Հայերէն թարգմ. Հ. Ն. Ջնտոյեան, Ագաթանգեղոս. Բազմավէպ 1878, էջ 298—304. 1879, էջ 10—16, 97—101:

Հ. Գ. Զարբանալեան, Պատմութիւն հայկական հին դպրութեան. Վենետիկ 1897, էջ 310—314:

Հ. Թ. Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք ի մատենագրութեաց նախնեաց. Հատոր Բ., Վիեննա 1910, էջ 274—286 (Քաղուածք Կորիւնէն):

Հ. Յ. Թորոսեան, Համառօտ տեսութիւն Կորեան եւ իւր գրութեան վրայ. Բազմավէպ 1897, էջ 110—115, 303—310:

— — Կորեան յիշած «Բաբիլաս» եպիսկոպոսը (Եդեսիոյ Ռաբիլաս կամ Ռաբուլաս հայրապետը: Բազմավէպ 1922, էջ 99—104:

— — Քանի մի խնդրական կէտեր Կորեան գրքին մէջ. Բազմավէպ 89 (1931), 465—473. 90 (1932), 5—11, 148—156, 255—264:

Կ. Թումանեան, Առաջին հայերէն ինքնագիր գիրքը. Կորիւն սքանչելի. Կոչնակ Հայաստանի 1932, Թ. 27—28 (առթիւ Գ. Ֆնտգլեանի հրատարակութեան):

Ծովական, Կորիւն եւ Մակաբայեցւոց հայ թարգմանիչը. Սիոն 9 (1935), 181—187:

Հրանդ Կիւրճեան, Մեսրոպ եւ Սահակ: Հայ նշանագիրներու պատմութիւն. Կորիւն, Ղ. Փարպեցի եւ Մովսէս Խորենացի աշխարհաբար թարգմանուած եւ լուսաբանուած: Կ. Պոլիս 1913, էջք 44:

Հ. Ս. Կոգեան, Մակաբայեցւոց Բ. գրքին հայերէն թարգմանութիւնը. քննական ուսումնասիրութիւն. Վիեննա 1923, Կորիւնի մասին էջ 15—24:

J. Marquart, Über das armenische Alphabet in Verbindung mit der Biographie des hl. Maštʻoc. գերմաներէն եւ հայերէն լոյս տեսած Հանդ. Ամս. 1911—1912. արտատպուած գերմ. առանձին եւ հայերէն թարգմանութիւնն (Հ. Ա. Վարդանեանէ) առանձին Վիեննա 1913, 8 , էջ 60:

Fr. Müller, Lazar Pharpetshi und Koriun: Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, 5 (1891) 36—38. Հայ. թարգմ. Հանդ. Ամս. 5 (1891), 178—179։

Հ. Գ. Նահապետեան, Ուղղագրութիւնք Կորեան Պատմութեան եւ Վարուց Ս. Մեսրոպայ, Բազմավէպ 65 (1907), 195—199. նոյնը արտատպ. ի գիրս Ուղղագրութիւնք ազգային մատենագրաց. Վենետիկ 1907, էջ 147—177։ Հմմտ. նաեւ Բազմավէպ 1924, էջ 230—232, 257—260. եւ Հորոյ ի Թերթին Վերջին Լուր, Թ. 3119 եւն։

Նորայր Ն. Բիւզանդացի, Կորիւն վարդապետի հատուած սրբագրեալ. Բանասէր 1 (1887), 12—17։

— — Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք՝ Գիրք Մակաբայեցւոց, Եւթաղ Աղեքսանդրացի, Ագաթանգեղոս եւ Փ. Բիւզանդ. հանդերձ դիտողութեամբք, տեղեկութեամբք եւ լուսաբանութեամբք։ Տփղիս 1900, 8°, էջք ԻԵ + 520։

Ո. Մ. «Կայենական» եւ «Տէր». Սիոն 1932, էջ 314։ Հմմտ. նաեւ Հ. Աճառեան, Արարատ 1913, էջ 209։

Հ. Բ. Սարգիսեան, Լուծմունք բանաքաղութեան Կորեան կամ Ագաթանգեղոսի, հանդերձ վաւերաբանութեամբ ընդարձակ Պատմութեան Ս. Մեսրովբայ. Բազմավէպ 1889, 193—199, 225—232։

— — Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը. Վենետիկ 1890, էջ 107—119։

Հ. Յ. Տաշեան, Խնդիր բանաքաղութեան Ագաթանգեղեայ եւ Կորեան. ի գիրս՝ Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսի. Վիեննա 1891, էջ 72—79 = Հանդ. Ամս. 4 (1890), 145—150։

Գալուստ Տէր-Մկրտչեան, Հայ գրերի 1500ամեակի առթիւ. Արարատ 46 (1912), 499—514։ Հմմտ. Հանդ. Ամս. 27 (1913), 191։

— — Ագաթանգեղոսի աղբիւրներից. Էջմիածին, 1896, էջ 15—25։

Հ. Կ. Տէր-Սահակեան, Կորեան հատակոտորիկ մը, որ միայն Ագաթանգեղոսի մէջ կը գտնուի. Բազմավէպ 63 (1905), 550—552։

Գառնիկ Ֆնտգլեան, Նկատողութիւններ Մաշթոց-Մեսրովբ անուան եւ Կորեան բնագրի եւ ժամանակի մասին. Հանդ. Ամս. 40 (1926), 268—275։

— — Պատասխան Պրոֆ. Ադոնցին. անդ 41 (1927), 529—541։

— — Ուսումնասիրութիւններ Կորիւնի շուրջը. Անահիտ 1929, Թ. 1, էջ 111—116. Թ. 2, էջ 79—80. Թ. 3, էջ 21—28։

— — Կորիւնի լեզուն. Կոչնակ Հայաստանի 1933, Թ. 1—3։

Կորիւն, Վարք Մաշթոցի. Երուսաղէմ 1930 (տե՛ս վերը). Յառաջաբան-Ներածութիւն, Ա—Խ եւ Ծանօթութիւնք, էջ 83—93։

Գրախօսականներ հրատարակութեանս առիթով՝

Ն. Վ. Պ. Սիոն 1930, էջ 397—398։

Հ. Ս. Երեմեան, Բազմավէպ 1930, էջ 218—223։

Ա. Զօպանեան, Անահիտ 1930, էջ 102—105։

Հ. Ն. Ակինեան, Հանդ. Ամս. 1932, էջ 227—233։

P. Vetter, Koriun Bischof in Georgien: ի գիրս՝ Nirschl, Patrologie und Patristik, Bd. III (Mainz 1883) 228—231 = Հայ. թարգմ. Կորիւն եպ. ի Վիրս. ի գիրս՝ Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Ֆէտտէրի. Վիեննա 1895, էջ 78—82։ Անկէ՝ Յ. Յ. Ալան, Կորիւն եպ. ի Վիրս. Պատկեր 3 (1892), 197—201։

S. Weber, Ներածութիւն գերմ. թարգմանութեան Կորիւնի. տես վերը։

B. Welte, Goriun ի համայնագիտականին՝ Wetzer und Welte's Kirchenlexikon, Բ. տպ., հատոր V, էջ 846—847։

## ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՔ

A Ագաթանգեղեայ Պատմութիւն Հայոց. հրտ. Գ. Տէր–Մկրտչեան եւ Ստ. Կանայեանց, Տփղիս 1909:

A,b,t, Աբ, A ձձ, ոմանք, այլք եւն կ'ակնարկեն այն ձեռագիրները, որոնք նկատի առնուած են Aի հրատարակութեան մէջ: A 50 եւն, ցոյց կու տան էջերը:

ԱՎ Վարդապետութիւն Գրիգորի առ Ագաթանգեղեայ:

B Էջմիածնի Թ. 2639 (յամէ 1672):

C „ Թ. 1891 (յամէ 1774):

D „ Թ. 131 (յամէ 1781):

E „ Թ. 3143 (յամէ 1828):

F Փաւստեայ Բիւզանդեայ Պատմութիւն Հայոց. հրտ. Ք. Պատկանեանի, Պետերբուրգ 1883:

I Էջմիածին, Թ. 3787 (ԺԴ. դարէ) Ճառընտիր:

J Էջմիածին, Թ. 3797 (ԺԴ. դարէ) Ճառընտիր:

K Մագաղաթեայ հատակոտորք. հրտ. Բաբգէն եպ. Կիւլէսէրեան:

L Ա. Օրինակ Վենետիկի Մխիթ. Մատենադարանի:

M Բ. Օրինակ Վենետիկի Մխիթ. Մատենադարանի (յամէ 1784):

ՆՀ Հ. Գ. Նահապետեան, Ուղղագրութիւնք ազգային մատենագրաց. Վենե–տիկ 1907:

Ն Նորայր Բիւզանդացի, Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք. Տփղիս 1900:

O Ա. տպագրութիւն Կորիւնի, Վենետիկ 1833:

P Բ. տպագրութիւն Կորիւնի, Վենետիկ 1894:

R Կորիւն,, Վարք Մաշտոցի. հրտ. Գ. Ֆնտգլեանի. Երուսաղէմ 1930:

S Կորիւն, հրտ. Աբեղեանի. Երեւան 1940:

T Հ. Թ. Թոռնեան, Հատընտիր Ընթերցուածք, Բ.:

Ջ Հ. Մ. Ջամչեան, Պատմութիւն Հայոց. Ա.:

Մ Մովսէս Դասխուրանցի (Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից. Մոսկուա 1860:

Փ Ղ. Փարպեցի. Տփղիս 1904:

Ակ Սրբագրութիւններ Հ. Ն. Ակինեանի (հմմտ. մասամբ Հանդ. Ամս. 1932, էջ 227—233. եւ Ս. Մաշտոց վարդապետ, Վիեննա 1949):

ՆՀԲ Նոր Բառգիրք Հայկազնեան լեզուի. Ա. եւ Բ. հատոր, Վենետիկ 1837:

( ) Փակագծի մէջ առած ենք մեր յաւելուածները:

[ ] Քառակուսի մէջ առնուած են եկամուտ բառերն ու հատուածները:

] Կ'ընծայեն Բնագրի այն բառերը, որոնք այլ ընթերցուածներ ունին:

: : Երկու վերջակէտներու մէջ առնուած Համառօտագիրները ցոյց կու տան այն ձեռագիր կամ տպագիր օրինակներն եւ կամ հեղինակները, որոնց համաձայն վերականգնուած է Բնագիրը:

P տպագրութեան ընթերցուածները յառաջ բերուած են սարուածքին մէջ առանց Համառօտագրի:

---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ
# ԱՌՆ ԵՐԱՆԵԼՒՈՅ ՄԱՇՏՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ
## ԶՈՐ ԱՐԱՐԵԱԼ Է ՆՈՐԻՆ ԱՇԱԿԵՐՏԻ
## ԿՈՐԻՒՆ ԱՆՈՒՆ ԿՈՉԵՑԵԱԼ

### Ա. ՆԱԽԱԿԱՐԳ ԲԱՆ

1. *ԶԹորգոմայ*[1] *ազգիս եւ զՀայաստան աշխարհիս զաստուածապարգեւ գրոյն — եթէ ե՞րբ եւ յորո՞ւմ ժամանակի մատակարարեցաւ եւ որպիսի՞ արամբ այնպիսի նորոգատուր աստուածեղէն շնորհ երեւեցաւ — եւ զնորին լուսաւոր վարդապետութեանն եւ հրեշտակակրաւն վարուցն առաքինութեան զմտաւ ածի գյիշատակարանս առանձինն մատենանշան ծաղկեցուցանել: Եւ մինչդեռ անդէն ի խորհրդանոցի մտացս վասն յուշ արկանելոյ*

ԽՈՐԱԳԻՐ. B *յիշատակ սրբոյ Մեսրոպայ արարեալ երանելւոյն.* H *ի յիշատակի պատմութեան վարուց երանելւոյ սուրբ վարդապետին Մեսրովբայ, զոր արարեալ է նորին աշակերտի Կորեան.* Ij *մեհեկի ԺԳ. ի յիշատակի սրբոյն Մեսրովբայ վարդապետի, զոր արարեալ է Կորենայ սրբոյ յաղագս վարուց նորա.* CES *պատմութիւն վարուց եւ մահուան առն երանելւոյ սրբոյն Մեսրոպայ* (S *Մաշթոցի*) *վարդապետի սրբոյ թարգմանչի ի ի Կորիւն վարդապետէ յաշակերտէ նորին.* D *պ. վ. եւ մ. սրբոյ վ. Մ. եւ յաղագս գիւտոյ հայկական դպրութեան. արարեալ ի Կ. վ. յ. նորին.* M *պ. վ. եւ մ. երանելւոյ սրբոյ Մ. վ. մերոյ թարգմանչի, արարեալ ի Կ. վ. յ. նորին.* O *պ. եւ մ. սրբոյ առն երանելւոյ Մեսրովպայ վ. մերոյ թարգմանչի արարեալ… նորին:*

ԳԼԽԱԿԱՐԳՈՒԹԻՒՆՆ Ա—ԻԱ եւ հատուածներու բաժանումը մերն են:

1 *զասքանազեան:* A 12: *ազգին:* AH:

1 *հայաստան աշխարհին* AH:

3 H *աստուածատուր.* Ն. *նորատուր.* Նաեւ A 13 *նորոգատուր:*

4 *շնորհս:* ՆՀԲ:

4 *վասն նորին.* Նաեւ A 13:

4 *վարդապետութեան:* AE:

5 *հրեշտակարար կրօնիցն:* AH:

6 *զմտաւ ածելով.* C ի լուս. *խորհէի:* Ակ:

6 *առանձին:* A:

6 BCELOP *մատնանշան* MDS *մատենանշան:* Թերեւս *մանրապատում նշան(ակ)աւք.* հմմտ. *Ավ.* 133 «*պատմել մի ըստ միոջէ մանրապատում նշանակօք.* 232 «*առեալ մանրապատումն նշանակօք վասն… զալըստեան Իւրոյ՝ աշակերտացն ուսուցանել*»: Հմմտ. նաեւ *Ավ.* 363 «*յառաքելանշան յերկրորդ մատենին*», այն է «*առաքելագործ գիր*», որ է *Գործք Առաքելոց: Կորիւն Ա.* 2 կը կիրարկէ «*մատենապատում*»:

6 Հմմտ. *Ավ* 363 «*թուղթս հոգեպատումս, առաքելախօսս ծաղկեցուցեալ*»:

7 *ՆՀԲ անդրէն:*

7 Հմմտ. *Ավ* 362 «*զան… ի խորհըրդանոց Հոգւոյն սրբոյ:* Ն. 38—39:

7 BDEL *մտացն.* CMS *մտացս:* Ն. 38:

*միայնագործ Հոգայի, եկեալ հասանէր առ իս հրաման առն միոյ պատուականի Յովսէփ*[2] *անուն կոչեցելոյ, աշակերտի Առնն այնորիկ, եւ ընդ նմին այլոց եւս քաջալերութիւն՝ աշակերտակցաց մերոց վարդապետութեանն — ուստի եւ իմ մասնաւոր աշակերտութեան վիճակ առեալ, թէպէտ եւ էի կրսերագոյն եւ անդր զմեզ աւելի քան զկար մեր դրաւեալ անաչառ հրամանին հասելոյ — փութանակի եւ առանց յապաղելոյ զառաջի եդեալն մատենագրել: Զոր եւ մեր համաւրէն աղաչեալ ողեխառնել ընդ մեզ աղաւթիւք՝ յանձնարարութեամբ աստուածեղէն շնորհացն, զի կամակարագոյնս եւ ուղղագոյնս նաւիցեմք զհամատարած ալեւքն վարդապետական ծովուս:*

2. *Եւ արդ աւն առեալ նախ քննեսցուք, եթէ իցէ՞ համարձակութիւն գրով նշանակել զվարս արանցն կատարելոց: Ո՛չ առ ի մէնջ արուեստախաւսեալ մերովք կարծեւք զքմազարդ բա–*

8 *միայնագործ հոգացայ* B *հոկացա* CS *հոգայի*. թերեւս *մտախորհ կայի*:

9 չունին *անուն*: Ն. 73—74:

9 *առն*: Ակ:

10 LO *քաջալերութիւնն*: EM:

10 *մերոյն վարդապետութեան*: Ակ:

11 *աշակերտութեամբ*: CՆ 139:

12 Հմմտ. F Զ. 16 եւ *Ոսկ. Պաւղ. Բ*. 591. «*առեալ վիճակ բնակութեան ունէր զանապատն*»:

13 *եւ առաւել քան զկար մեր*. ուղղեցի. հմմտ. *Եւթաղ* 163. «*զի անդր զմեզ հայրենի հրամանն աւելի քան զկար մեր դրաւեաց*»:

14 D *առաջի*. հմմտ. *Ավ* 3 «*զառաջի եդեալն գործէ*»: Ն. 41:

15 *աղաչեալ* BC *աղաչեցեալ*:

15 *երկախառնել*. B *զեկախառնել* C ուղղուած *զողեխառնել*: Հմմտ. *Ա. Եզր Դ*. 21. «*միացեալ ողեխառնի ընդ նմա*». եւ «*հոգեխառն*» Հանդ. Ամս. 1924, էջ 354—355 եւ Ն. 441:

15 Հմմտ. *Եւթաղ* 193. «*ածեալ յաղերս զԱստուած վասն մեր, համաւրէն զամենայն մարդիկ... առնել աղաւթս անդադար վասն մեր*

16 DEM *աստուածային*:

17 B *զկամարագոյնն*. C ուղղած *զկարեւորագոյնս*:

17 BE *զուղղագոյնս*:

17 Հմմտ. A 12. «*զի կամակարագոյնս նաւիցեմք զալեւք ժամանակագրական ծովուս*»:

19 *Եւ արդ առեալ նախաբանեսցուք*. ուղղեցի ...*աւն առեալ նախ քննեսցուք*. հմմտ. *Եւթաղ* 79. «*արդ աւն առեալ...*»: Դասականաց քով չէ կիրարկուած «*նախաբանել*»:

20 BC *կատարելոցն*:

20 ՆՀԲ *ոչ ինչ*:

21 *արուեստախաւսեալ մերոյն կարծեօք վիճաբանելով այլ...* բնագիրն աղաւաղուած է. կ'ուղղեմ *մերովք կարծեւք...*: Կը լրացնեմ *զքմազարդ բանից ինչ առասպելս աւելի քան զարժանն ընթանալ* նկատի առնելով A 10 «*ոչ... սուտ ինչ... վիպասանել եւ ոչ զքմազարդ բանից ինչ առասպելս աւելի քան զարժանն ընթանալ*», ուր Կորիւնէ քաղուածք մը կը տեսնեմ: Հմմտ. *Ավ* 364. «*Եւ արդ առեալ... եւ գրով հաստատեալ... ոչ օտարագոյնս ի միմեանց արուեստախօսեալ, այլ... պատմել*»: Այլուր կը գրէ *Կորիւն*, Ի. 2. «*Ոչ ուսուտապատում ճարտարախօս եղեալ առ ի մերոց բանից... կարգեցաք*». հմմտ. *Բ. Պետր. Ա*. 16. «*Քանզի ոչ եթէ պաճուճեալ ինչ առասպելաց զհետ երթեալ ցուցաք ձեզ...*»: «*Վիճաբանել*» անծանօթ է դասական հեղինակներու:

նից ինչ առասպելս՝ աւելի քան զարժանն ընթանալ, այլ յաւրինակացն տուելոց զընդդիմակացն բարձրացուցանել: Քանզի Աստուծոյ բարերարին այսպէս բարի խորհեալ զիւրոց սիրելեաց ոչ միայն ըստ առաքինութեան վարուց զչքնաղ եւ զբարձրագոյն հատուցումն բաւական համարեալ յանսպառ յաւիտեանսն, այլ եւ աստէն իսկ կանխագոյն զանցաւոր ժամանակաւքս մատենապատում երկնաբերձ պայծառացուցեալ զհոգեղինացն եւ զմարմնականացն, զի առ հասարակ փայլիցեն:

3. Եւ ի Մովսիսական Պատմութեան յայտնի է երանելեաց արանցն ազնուականութիւն, ճշմարտութեան հաւատոցն հաստատութիւն, աստուածամերձ, աստուածամուխ կենացն վայելչութիւն, սքանչելական կրաւնիցն պայծառութիւն: Զի ոմն ընդունելի պատարագաւ «արդար» կոչեցեալ: Եւ այլ ոմն հաճոյական արուեստիւ ի վերայ ամենակուլ մահուանն կենաւք երեւեալ: Եւ մեւս ոմն բովանդակ արդարութեամբ ի վերայ համատարած լեառնացելոյ աստուածապատիժ ծովուն հանդերձ ամենայն շնչականաւք տարեւոր ժամանակաւք նաւակաց պահեալ: Եւ մեւս ոմն յանկարծագիւտ հաւատովք արդարացեալ, աստուածամերձ, աստուածախաւս, դաշնաւոր կատարեալ եւ զաւետիս հանդերձելոց բարեացն ժառանգեալ: Բազմաւք եւ այլ նոյնպիսիք ա-

22 BC տուելոցն. ՆՀԲ տուեցելոց: Հմմտ. Ավ 233 «հանդերձ օրինակօքն տուելովք», 356 «առեալ եւս զօրինակս տուեալս»:
22 BC քան փոխ. քանզի:
22 բարեխորհեալ: Ն. 42:
24 Հմմտ. Ավ 371 «վասն իւրոցն սիրելեաց զարքայութիւնն յարդարէ»:
26 հատուցումն: Ակ:
26 համարել: Ակ:
27 զի անցաւոր BC զանցաւոր:
28 Հմմտ. Ավ 371 «հոգեղինացն եւ մարմնականացն»: Ն. 42:
29 Զունին զի: Ակ.
30 Թերեւս լաւագոյն պատմութենէ:
31 BC հաստատութեան:
32 Հմմտ. Ավ 131 «արք արդարք.. աստուածամերձ կենացն վայելչութեամբ մարգարէք անուանեցան»:
33 BC զսքանչելական:
33 կենացն ուղղեցի կրաւնիցն:
35 DEO արուեստին. PE արուեստիւ: Ակ: Հմմտ. Ավ 154 Ենովքայ «զպարտ հաճոյական վարուցն հատուցեալ»:
35 Ավ 238 «մահ աշխարհակուլ»: Ն. 44:
36 BC միւսումն:
37 լեռնացելոյ. BC լեռնացելոց: Ակ:
37 BC զաստուածապատիժ:
37 Հմմտ. Ծնն. Զ. 9: Ավ 155 «առնուլ զնոյ ընտանեաւք հանդերձ եւ ամենայն շնչականօքն ի տապանն»:
38 R նաւակեաց: Ն. 45:
38 B պահել:
38 եւ միւսոյն: Ակ:
40 Հմմտ. Ոսկ. Մատթ. 457. «ընդ այն զի՞ զարմանայցես, թէ եւ զմաքսաւորն առաքեա՛լ կարիցէ կատարել»:
40 BC աւետիս:
40 BC զհանդերձելոց DE հանդերձելոցն:
41 Հմմտ. Ծնն. ԺԸ. 1 եւ շար. Եբր. Զ. 12 «որ հաւատովքն եւ երկայնմտութեամբ ժառանգեցին զաւե-

*տուածածանաւթք գտեալք, որոց ազնուականութիւնք յամենայն աստուածաշունչ գրոց պատմին:*

4․ *Հանգոյն ասացելոցս երանելոյն Պաւղոսի առ Եբրայեցիսն կարգեալ զանուանս՝ զովէ զնոցին ճշմարտութիւն հաւատոցն, որով զվարձահատոյց մխիթարութիւնն ընկալան յամենապարգեւն Աստուծոյ ըստ իւրաքանչիւր յառաջադիմութեանցն: Նաեւ զժանդագործին Րահաբու զհիւրընկալութիւն լրտեսացն ի համար ածէ: Իսկ իբրեւ հայեցեալ ի բազմախուռն գումարութիւն արդարոցն՝ զսակաւուցն զանուանս յայտ առնէ եւ զայլովքն եւս զանց առնէ, անբաւական զժամանակն (համարեալ) առ ի կարգաւ պատմելոյ: Ի կիր արկանէ այնուհետեւ նշանակել միանգամայն զփորձութիւնսն ի վերայ յարձակեալս եւ զնոցա զանընդդիմակաց զնահատակութիւնսն, զորս եւ պատուականս քան զաշխարհս առ վաճառ համարի:*

5․ *Սոյն աւրինակ եւ ամենայն Գիրք հոգեպատումք նշանեալ ունին զքաջութիւնս արանցն հզաւրաց․ զոմանց ըստ աստուածեղէն կրաւնիցն զքարեյաղթութիւնս եւ զոմանց ըստ աշ-*

*տիսն»: Ավ․ «որով զաւետիս հանդերձելոցն ընկալաւ* 157․ *«երեւեալ Աստուած Աբրահամու եւ ուխտ եղեալ խօսէր եւ վերանայր»* 156, *«դաշնաւոր եղեալ»* 171:

41 E *բարեաց*:

42 BCL *աստուածածանօթ*: DE:

42 B *յորոց*:

42 *ազնուականութիւնքն*: Ակ:

43 *պատմի*: Ակ:

44 *ասացելոյս*: BCDE:

44 իմացիր *ի թղթին Իւրում որ առ Եբրայեցիսն*:

45 D *զանուանքս*:

45 D *հաւատոցն ճշմարտութիւն*:

46 *մխիթարութիւն*: Ակ:

46 *յամենապարգեւողէն* BC *յամենապարգեւէն* A 128 եւ 380 ձեռագիրներէն ոմանք *յամենապարգեւն Աստուծոյ*, այլք *յամենապարգեւէն*․ իսկ *Ավ* 364 *«ամենապարգեւ Հոգւոյն զօրութիւն»*: Ակ:

47 R *յառաջդիմութեանցն*:

48 CDE *ժանդագործին*:

48 C *Րահաբաւ*:

48/49 *համեմատէ*․ *Նհ* 150 *դրուատէ*․ ունինք *ի համար բերել, ածել* եւ *արկանել* (հմմտ․ *Ն*․ 297): Ակ:

49 Հմմտ․ *Ավ* 347 *«սփռեցան (շնորհք Հոգւոյն) ի վերայ բազմախուռն գումարութեան ժողովոյն»*:

50 *արդարեւ* BS *արդարոցն* C *արդարոց*:

50 BC *զայլօք*:

51 Տեղս կը պահանջէ *համարեալ*:

52/53 *կարգի*: Ուղղեցի *կարգաւ*․ թերեւս լաւագոյն *կարգ ըստ կարգէ* (նաեւ *կարգի*)․ հմմտ․ *Ոսկ․ Մատթ*․ 488 եւ 643: Հմմտ․ *Եբր*․ *ԺԱ*․ 32․ *«Զի չէ բաւական ժամանակս պատմելոյ»*:

53 BC *զմիանգամայն*:

53 *զփորձութիւնս*: Ակ:

53 *նոցա*: BS:

55 CS *զաշխարհական վաճառս*: Հմմտ․ *Եբր*․ *ԺԱ*․ 37․ *«Զորս ոչ արժէ աշխարհս»*:

55 BC *համարին*:

56 B *նշանակեալ*․ B *նշանեալ*:

57 *ամենայն զօրաց*․ ուղղեցի *արանցն հզաւրաց*:

58 *զքարեյաղթութիւն*: Ակ:

*խարհակիր կարգաց՝ զմարտից եւ զպատերազմաց արութիւնսն, որպէս զՅեփթայեայն եւ զՍամփսոնին եւ զԴաւթայն. եւ զոմանց զընական իմաստութիւն զովեալ՝ աստուածեղէն իմաստութեամբն հանդերձ, որպէս զՅովսեփայն յԵգիպտոս եւ զԴանիէլին ի Բաբելոն. որք եւ հզաւր թագաւորաց խրատիչք էին եւ զաշխարհակեաց կենաց զհանգամանս ցուցանէին՝ հանդերձ ամենիշխանին Աստուծոյ ծանաւթս առնելով: Զորոց եւ մարգարէին իսկ զովեալ զիմաստութիւնն՝ ասէր ցոմն այսպէս. «Մի թէ իմաստնագո՞յն իցես քան զԴանիէլ. կամ իմաստո՞ւնք խրատեցին զքեզ հանճարոյն իւրեանց»: Եւ ոչ այսչափ միայն. այլ եւ հոգեկան ազգին հրեշտակութեան զովեալ զսրբոցն զարութիւնս. զԴանիէլ «ցանկալի» քարոզեալ կոչէին եւ զսուրբ Տեառնամայրն ի Գալիլեա «աւրհնեալ ի կանայս»:*

6. *Բայց զի՞նչ ասիցեմք զզուգականացն զառ ի միմեանց պատուեալ զգովութեանցն. զորոց եւ Տէրն իսկ ամենայնի բերանալիր*

59 B *աչակերտակիր*: OP *աշխարհագիր*. հմմտ. *Ավ* 360 «*ըստ աշխարհակիր կարգաց*»: LMHSR Ն 52:

59 O *պատերազմողաց*: Ն 140:

59 R *զարութիւնս*:

60 B *զերբօտայն* C *զեփայեայն* սրբ. *զերբոտայն* OPRS *ներբոտայն*: Նհ. 151: Հմմտ. *Եբր. ԺԱ.* 32. «*Զի չէ ժամանակս պատմելոյ վասն Գեդէոնի, Բարակայ, Սամփսոնի, Յեփթայեայ, Դաւթի եւ այլոց մարգարէից*»: Հաւանօրէն Սկզբնագրին մէջ կային նաեւ «*զԳեդէոնին, զԲարակայն...*»:

61 *զիմաստութիւն*: B:

63 *բաբիլոն*. B *բաբելոն*: *Ակ*:

63 BC *որոց եւ* LMOPRS *յորոց եւ*. ուղղեցի *որք եւ*:

63 *թագաւորացն*. D *թագաւորութեանցն*: *Ակ*:

63 C *եղեն*:

63 *եւ* չունին: *Ակ*:

64 *զաշխարհակալ* (CS *զաշխարհական*) *կենցաղոյս* (B *կենցաղս*). հմմտ. A 450 (*Փաւստ. Դ.* 3) «*որ յաշխարհակեաց կեանս էր*» եւ *Ավ* 153 «*յետ վարուց երկրակեաց կենացս*» եւ A 106 «*զի վարուց երկրակեաց կենացս եւ ինչ ոչ ցանկացայ*»: *Ակ*:

64 *զհանգամանսն*: BC *հանգամանս*: R: Հմմտ. *Եւթաղ* 92. «*Բազում իրաց զհանգամանս եցոյց*». *Ոսկ. Մատթ.* 742. «*Յետոյ աշակերտացն ցուցանէր զհանգամանս յերկարելոյն*»:

64/65 *ամէնիշխանին*: *Ակ*:

65 B *առնելոյ*:

66 O *զիմաստութիւնսն*:

67 *խրատուք* (*խրատեցին*) չունին: B եւ *Եզեկիէլ*:

68 *հանճարով*: R եւ *Եզեկ.*:

68 *Եզեկ. ԻԸ.* 3:

69 Հմմտ. *Ավ* 241. «*Զհոգեկան ազգին զամենայն մարդակերպ նմանութիւնս*»:

69 *հրեշտակութեամբ* D *յիշատակութեամբ*: Ն. 52:

69 *զսրբոյն*: SՆ 52:

69 *զաւրութիւն որ*. հմմտ. *տ.* 57 «*զքաջութիւնս արանցն հզաւրաց*»: *Ակ*:

70 BC *Դանիէլի*:

70 *քարոզելով*: *Ակ*:

70 Հմմտ. *Դանիէլ Ժ.* 11:

70 *տիրամայրն*: BC:

71 *գալիլեայ*: *Ակ*:

71 Հմմտ. *Ղուկ. Ա.* 28. «*Ուրախ լեր, բերկրեալդ*». իսկ *Ղուկ. Ա.* 42 Եղիսաբեթ կը քարոզէ. «*Օրհնեալ ես դու ի կանայս*»:

72 *զզուգանացն* BS *զզուգականացն*:

72 B *զառիմեանց*:

73 *զգովութիւնս*: *Ակ*:

*գովէր զազնուականութիւնս, ոչ միայն զյանդիմանական գործոց, այլ եւ զծածուկ սրտիցն լուսաւորութիւնս առաջի հրեշտակաց եւ մարդկան բերէր· որպէս զհիւրամեծարին Աբրահամու հրեշտակաւքն հասելովք զծառայական հաւասարութիւնն յայտ արարեալ՝ պատմէր նմա յետ աւետեացն ընկալելոյ, թէ զի՛նչ ի Սոդոմն էր գործելոց: Նոյնպէս եւ զքաջի նահատակին Յոբայ յառաջ քան զպատերազմել՝ առաջի պատերազմականին յաւրինէր զգովութիւնն ասելով· «Այր ճշմարիտ, արդար եւ աստուածապաշտ եւ որոշեալ յամենայն գործոց չարաց»: Իսկ զմեծին Մովսիսի զառաւելագոյն զաստուածամուխ մերձաւորութիւն ամենայն եկեղեցեաց գրով հնչեցուցեալ· զորոյ եւ զտղայութեան զկայտառութիւնն յայտ արարեալ աստուածեղէն Աւրինայն. Նաեւ զայլազգւոյն զՅոթորի եւս զխրատն չանցուցեալ անգիր: Եւ այնպէս միահամուռ ամենայն աստուածակրաւն արուեստականացն բարեգործութիւնք փայլեն յաստուածագիր Աւրինացն, զորոց չէ ոք բաւական յիշատակել զերանելի անուանցն գումարութիւն:*

7. *Եւ ոչ միայն զյառաջագունիցն, այլ եւ զկնի եկելոցն միածին Որդին Աստուծոյ, փրկիչն ամենեցուն, ի լուսաբեր աւետարանին իւրում ծաղկեցուցանէր զազնուականութիւնս, մանաւանդ*

74 *գոչէր*. E *կոչէ*: ՆՀԲ (*ը. բ. Բեբանալիր*). hմմտ. Ն 231:
75 *գործոյն*: R:
75 *լուսաւորութիւնս* R *զլուսաւորութիւնս*: MS: Հմմտ. *Փաւստ*. Դ. 5 (թուի Ավ էն). «*Որք այժմ ի ծածուկ լուսաւորութենէն խորհրդովքն տեսանեն* (*տպ. –էին*) *զնա ըստ նորա կամացն. (որոց) ապա ի վախճանի դէմ յանդիման երեւեսցի*». Ն 140:
76 *բերէ*: Ակ:
76 B *հիւրամեծարին* E *զհիւրամեծարն*:
77 Հմմտ. Ավ 226. «*հրեշտակօք երեւեալ*» եւ 260 «*եկելովքն հրեշտակօք*»:
78 *պատմելով*: Ակ:
78 BC *ընկալելոցն*:
78 *թէ* չունին: Ակ:
79 BC *գործելոցն*:
79 Հմմտ. Ծնն. ԺԸ. 17—22:
79 B *զքաջին*:
81/81 *յօրինէ*: Ակ:
81 *զգովութիւն*: B:
82 Յոբ. Բ. 3. «*Այր ճշմարիտ, անարատ, աստուածապաշտ, մեկնեալ յամենայն չարութենէ*»:
82 *մեծին*: Ն 43:
83 *Մովսէսի*: Ակ:
84 *Եկեղեցական*: Հմմտ. վարք, Ա. 9, տ. 128. «*ամենայն եկեղեցեացն հնչեցուցանէ զընտրելոցն զազնուականութիւն*»: Ակ:
84 B *զտղայութենէ*:
85 B *զկատարութիւն*:
85 Հմմտ. Ելք, Բ. 2:
86 B *զյոթոնի* C *զՅոթորայ*:
86 *եւս*] B *եւ*:
86 E *անցուցեալ*:
86 Հմմտ. Ելք, ԺԸ. 19—23:
88 M *փայլին*:
89 *անուանց*: Ակ:
90 *եւ* չունի R:
90 *եղելոցն*. hմմտ. Ավ 206. «*Եւ զկնի եկեալն յառաջագունացն ծանօթ լինի*». անդ 425. «*զկնի իւրեանց եկելոցն*»: Ակ:
91 *զմիածնի որդւոյն աստուծոյ փրկչին*: Ն 53—54:

երանութեամբ խսկ պսակէր։ Ոչ միայն զսեպհականացն՝ զերկոտասանիցն եւ կամ զյառաջամուտ զկարապետին, այլ եւ զայլոց մատուցելոցն եւս զովէ զհաւատոցն ճշմարտութիւն. քանզի զնաթանայէլ «առանց նենգութեան» նշանակէ եւ զԹագաւորազին զմեծութիւն հաւատոցն անգիտ յիսրայեղի ասէ։ Բայց ոչ միայն զմեծամեծսն, այլ առաւել եւս զթեթեւագոյնսն բարձրագոյնս հռչակեցուցանէ անարգամեծարն Քրիստոս, որ զսակաւիկ ինչ զծախ իւղոյն յարգէ եւ զծախելեացն յիշատակարան պատմել (պատուիրէ) ամենայն ուրեք եւ յաւիտեանց եկելոց առ ի ներքոյ երկնից։ Եւ զկնոջն քանանացւոյ «մեծ» զհաւատոցն ասէ։ Նաեւ զդանկացն երկուց ընծայելոց զովէ զարկանելեացն զյաւժարութիւն առաւել քան զմեծացն։

8. Իսկ զՊաւղոս, որ ի մտի եդեալ էր չիջուցանել զքրիստոսադիր կարգացն պայծառութիւն, «անաւթ ընտրութեան» անուանեալ՝ անուանակիր յաշխարհի իւրոյ «սքանչելի անուանն» առնէ։

93 BC պսակէ։
93 սեպհականացն։ Ակ։
93/94 D զերկոտասանից։
94 D կարապետին։
95 մատուցելոցն զովէ եւ զհ. B չունի եւ։ Ակ։
96 Յովհ. Ա. 48. «Ահա արդարեւ Իսրայելացի, յորում նենգութիւն ոչ գոյ»։
97 Իսրայէլի B Իսրայեղի։ Ակ։
97 Թագաւորազնի մասին կը խօսի Յովհ. Դ. 46—53։ Կորիւնի ակնարկութիւնը կը հայի հարիւրապետին. Մատթ. Ը. 10. «Ամէն ասեմ ձեզ եւ ոչ յԻսրայէլի այսպիսի հաւատս գտի երբեք»։
98 BC թեթեւագոյնս։ — C բարձրագոյն։
99 Հոս բայ մը կը պակսի. C ունի ի լոյս. առնէ. կ'աւելցնեմ հռչակեցուցանէ. հմմտ. Ալ 369. «Որով բարձրապատումս եւ երկնաբարձրագոյնս սկսան հռչակեցուցանել զպատիւ խսկական փառաց Միածնին»։
99 սակաւիկ։ Ակ։
100 Թերեւս լաւագոյն՝ զծախս։
101 պատմեն. չունին պատուիրէ։ Ակ։
101 չունին եւ յաւիտեանց եկելոց. հմմտ. Ալ 362. «զի գրով հաստատեսցեն ամենայն ազգաց եւ յաւիտեանց եկելոց ի ներքոյ երկնից»։
101 Հմմտ. Մատթ. ԻԶ. 7—13. Մարկ. ԺԴ. 3—9։
102 զկնոջէն։ Ակ։
102 Հմմտ. Մատթ. ԺԵ. 28. «Ով կին դու, մեծ են հաւատք քո»։
103 զդանկաց CDELM դանկաց։ B։
103 C երկուցն։
103 ընծայելոցն։ Հմմտ. Ալ 371. «զի վասն փոքր պատճառանացս աստի ի վեր ընծայելոց... հատուցանող գտանիցի»։ Ակ։
103 O զարեացն։ — B յօժարութիւն։
104 Հմմտ. Մարկ. ԺԲ. 42—43. Ղուկ. ԻԱ. 2—3։ Թէ Մարկ. եւ թէ Ղուկ. ունին «երկուս լումայս. (յն. λεπτά)։ Դանկ գործածուած է Մատթ. Ժ. 29 եւ Ղուկ. ԺԲ. 6 (յն. ἀσσάριον). իսկ Ելք Լ. 13. Ղեւտ. Իէ. 25 (յն. ὀβολος)։
105 OP պաւղոս ի մտի BCRS պաւղոսի ի մտի. չունին որ։ Ն 380։
105 չըջեցուցանել։ Ն 380 R։
105 պայծառութիւնն։ Ակ։
106 Հմմտ. Գործք Առ. Թ. 1—2։
106 անուանակիր] B անուանեալ։
107 Հմմտ. Գործք Առ. Թ. 15. «Զի անօթ ընտրութեան է ինձ նա, կրել զանուն իմ առաջի հեթանոսաց»։ Հմմտ. նաեւ Ալ 224. Եւթաղ 164—165։ Ն 55։
107 Հմմտ. Սաղմ. Ը. 2 եւ 10. «Զի սքանչելի է անուն քո»։

Վասն որոյ երանելւոյն հայեցեալ ի չնորհացն բարձրութիւն՝ առ իւր մեծարանացն եւ առ ամենայն սրբոցն՝ բարձրագոյն բարբառով ի փառաւորութիւն ղառնայ, եթէ «Շնորհքն Աստուծոյ, որ յամենայնի հռչակ հարկանէ զմէնջ ի Քրիստոս. եւ զհոտ գիտութեանն իւրոյ յայտնի առնէ մեւք յամենայն տեղիս»: Ի վերայ այնորիկ ապա եւ զհամարձակագոյնն բերէ, թէ «Ո՞ կարէ բիծ դնել ընտրելոց Աստուծոյ»:

9. Եւ զայս աւձան ընկալեալ ի Տեառնէ երանելի Առաքելոցն՝ զամենայն գործակցաց իւրեանց գրով նչանակեն զքաջութիւնս. եւ է տեսանել զոմանց ի սուրբ Աւետարանին եւ զոմանց ի Գործս Առաքելոցն՝ յերանելւոյն Ղուկայ մատենագրեալ, եւ իցեն որ ի կաթուղիկէս Առաքելոցն առաւելագոյնս ճանաչին: Այլ եւ սուրբն

108 BE բարձրութիւնս C բարձրութիւսն: Հմմտ. Ավ 251 «զի... փայլեցուսցէ զչնորհացն բարձրութիւն»:

109 իւրոյ. C իւր. այսինքն առ անձին մեծարանացն. հմմտ. Ոսկ. Մատթ. 639. «վասն անձանց մեծարանաց առնէ ին»:

109 C սուրբսն:

110 B ի փառատրութիւնն CLOPRS ի փառատրութիւն DEM ի փառաւորութիւն:

110 BC չնորհքն միւսները չնորհք:

112 գիտութեան: Ակ:

112 O մեօք BCDE միօք:

112 Բ. Կոր. Բ. 14. «Այլ Աստուծոյ չնորհքն, որ յամենայնի հռչակ հարկանէ զմէնջ ի Քրիստոս Յիսուս, եւ զհոտ գիտութեանն իւրոյ յայտնի առնէ մեւք յամենայն տեղիս»:

113 BC համարձակագոյն. R համարձակագոյնն. միւսները զհամարձակագոյնն:

113 ի վերայ այնորիկ ապա եւ զհամարձակագոյնն բերէ. իմացիր յետ այնորիկ ապա եւս համարձակագոյն ի վերայ բերէ: Հմմտ. Ոսկ. Ես. 85. «Եւ այլ ոչ եւս յորդորեաց... այլ զյանդիմանութիւնն ի վերայ բերէ»:

114 Հռոմ. Ը. 33. «Ո՞վ իցէ որ մեղադիր լինիցի ընտրելոց Աստուծոյ»:

116 Նչանակել: Ակ:

117 եւ է (տեսանել) աւելցուցի, ինչպէս կ'ենթադրէ եւ իցեն. հմմտ. Եւագր 20 «է որ մթին բանիւք պատմեսցէ, եւ է որ յառակս օրինակաց ցուցանիցէ, եւ իցէ որ յայտնապէս ցուցանիցէ»:

117 R զոմանս:

118 երանելւոյն Ղուկասու. հմմտ. Ավ 368. «որպէս եւ երանելւոյն Ղուկայ... յայտ արարեալ»: Ակ:

119 BC ի կաթուղիկէ. միւսները ի կաթուղիկէս. փոխառութիւն է յն. καθολικὸς կաթողիկոս, «ընդհանրական» բառին իգական καθολική (ἐκκλεσία, ἐπιστολή) ձեւէն՝ կաթողիկէ, որ ապա ասորերէնէ (ܩܬܘܠܝܩܐ) փոխառութեամբ եղած է կաթուղիկէ, ձեռագիրներու եւ արձանագրութիւններու մէջ կը տեսնուի նաեւ կաթաղիկէ, կաթաւղիկէ ձեւերը: Անկէ կազմուած են կաթողիկեայ, կաթողիկէական հայկական ձեւերը: Այսպէս կ'ըսուին թուղթք կաթողիկեայք, կաթողիկէ թուղթք եւ կաթողիկէք: Լաւոդիկէի ժողովին Կան. ԾԸ. (յն. 60) ἐπίστολαι καθολικαὶ ἑπτά. թարգմանուած է «Կաթողիկէք (իմացիր՝ Կաթողիկէ) թուղթք եւթն»: Ս. Աթանասի «Յաղագս Ս. Երրորդութեան» ճառին մէջ կ'ըսուի. «Որպէս ասէ ի Կաթողիկէսն Յովհաննէս» (էջ 119): Իսկ Եւսեբ. Եկեղ. Պատմ. Զ. 14 (էջ 449). «Յամենայն թուղթն Յուդայ եւ այն որ կոչի Կաթողիկեայք». Եւագր ստէպ կոչումներ կ'ընէ «ի կաթողիկէից» թղթոց (էջ 245—246, 259, 274): Ավ 360. «Եւ Պետրոս ի կաթողիկէական թղթին իւրում» եւ 309. «Եւ Յովհաննէս ասէ ի Կաթողիկէին իւրում». Կորիւնի տեղիքը կամ

*Պաւղոս չորեքտասանեքումբք Թղթովք պատուէ զնա նիզակակիցս եւ զգործակիցս եւ ուրախակիցս իւր առնէ. եւ ի վախճանի Թղթոցն ըստ իւրաքանչիւր ումեք յողջոյն մատուցեալ յանուանէ հարցանէ. եւ զուրումն «յաւետարանի անդ է» նշանակէ «զգովութիւնն»: Բայց ոչ միայն զգործակցացն զաւգնականութիւնս յարգէ, այլ եւ զքրիստոսամեծար ասպնջականիցն իւրոց բազում գովութիւնս փոխանակ մեծարանացն կարգէ. վասն որոյ եւ յաղաչանս առ Աստուած մատուցեալ՝ զփոխարէնս բարեացն հատուցանել հայցէ: Եւ ամենայն եկեղեցեաց հնչեցուցանէ զընտրելոցն զաւգնականութիւն, ոչ միայն զարանցն, այլ եւ զկանանցն աշակերտելոց, որք զճշմարտութիւնն աւետարանեն: Եւ զայս ամենայն աւետարանեալ ոչ ի պարծանս գովութեան, այլ զի աւրինակ եւ կանոն զկնի եկելոցն պաշտիցի**:

10. *Յայտնի է այսուհետեւ ասացելովքս, եթէ գովութիւնք*

պէտք է կարդալ լրացնելով «*ի կաթողիկէ թուղթս*» եւ կամ ուղղել «*ի կաթողիկէս*»:

119 *այլ սուրբն* չունին *եւ*: *Ակ*:

120 *պաւղոսի* C *պօղոս*:

120 Հմմտ. *Եւթաղ* 89 (*եւ* 170). «*Եւ ամենեւին... իսկ չորեքտասանեքումբք թղթովքս այսոքիւք զմարդկան նկարեաց զառաքինութիւն*:

120 *պատմէ* փոխ. *պատուէ*: *Ակ*:

120/121 DELOPS *զնա առաքելակիցս եւ նիզակակիցս* BCM *նիզակակիցս գործակիցս* (M *զգործակիցս*): «*Առաքելակից*» բառը Պաւղոս իր Թղթերուն մէջ աւմենեւին չէ գործածած. բայց ունի *գործակից* եւ երկիցս՝ *զինուորակից* (*Փիլիպ*. *Բ*. 25, *Փիլիմ*. 2 (*յն*. *συνεργός* եւ *συνστρατιώτης*), այս պատճառաւ անհարազատ կը համարիմ *առաքելակիցս*. կը կարդամ «*զնա նիզակակիցս եւ զգործակիցս*». հմմտ. Ն 57—58:

122 B *թղթոյն*:

122 C *ողջոյն*:

122 *կատարեալ* կ'ուղղեմ *մատուցեալ*:

123 BC *զորումն*:

123 *յաւետարանէ անտի*. տես տ. 124 ծան.:

123/124 *զգովութիւնսն*: BC:

124 Հմմտ. *Բ*. *Կոր*. *Ը*. 18. «*Եւ առաքեցաք ընդ նմա* (*Տիտոսի*) *զեղբայրն, որոյ գովութիւնն յաւետարանի անդ է՝ ընդ ամենայն եկեղեցիս*»: Այս հիմամբ Կորիւնի տեղին *յաւետարանէ անտի* ուղղեցի *յաւետարանի անդ է*:

124 *զերանելւոյն* փոխ. *զգործակցացն*: *Ակ*:

124 *զօգնականութիւնսն*: BCD:

127 C *մատուցանել*:

127 *զփոխարէն* ուղղեցի *զփոխարէնս*: Հմմտ. *Ոսկ*. *Մատթ*. 551. «*Երախտեաց նորա փոխարէնս հատուցանէ ին*»: եւ էջ 74. «*Նոքա բժշկեալք եւ պատուեալք ի նմանէ՝ անուղղայ փոխարէնս հատուցանէ ին*»:

128 *եկեղեցեօքն*. B *եկեղեցօք*: *Ակ*:

130 DEMR *պարկեշտելոց* BC *աշակերտելոցն*: *Ակ*:

132 Հմմտ. *Ակ* 361 «*Նոյն կանոնք եւ առաքելովքն պաշտեցան*. հմմտ. նաեւ Ն 59:

* Կորիւնի բոլոր, ձեռագիր եւ տպագիր օրինակները ունին հոս «Որպէս նոյն իսկ — տեսէք» ընդարձակ հատուածը, որ կամ թղթերու տեղափոխութեամբ եւ կամ ուրիշ պատճառով մը հոս զետեղուած է: Փոխադրեցի ԺԷ. 5:

133 B *ասացելովք*: Հմմտ. *Ակ* 245. «*Եւ արդ յայտնի է այսուհետեւ ասացելովքս, թէ...*»:

133 *գովութիւն*: *Ակ*:

*ամենայն աստուածասէր ընտրելոցն, ո՛ր ի Տեառնէ, ո՛ր ի հրեշտակաց եւ ո՛ր առ ի միմեանց, ոչ ի պարծանս անձանց, այլ առ ի նախանձուկս միմեանց արկանելոյ են։ Զի միմեամբք քաջալերեալք ամենեքեան հասանիցեն ի բարեացն կատարումն, ի նշանակեալ նպատակն երանելւոյն Պաւղոսի, եթէ «Միաբան հասանել ի չափ հասակին Քրիստոսի»․ որոյ «ազատութիւնն յերկինս է, ակն ունել Փրկչին, մեծին Աստուծոյ»։ Ունիմք եւ զհարցն սրբոց յաջորդելոյ յառաքելոցն անտի զշնորհապատում գրեալսն, եթէ որպէս մեծարեալք ի միմեանց, գովեալք ըստ ճշմարիտ հաւատոցն եւ ըստ աւետարանագործ կրաւնիցն մինչեւ ցայսաւր ժամանակի նովին սովորութեամբ վարին։*

11․ *Եւ արդ առեալ յերկոցունցն համարձակութիւն (ելից ի մտաց երիվարն եւ յարմարեցից զասպարէզն հանճարոյ, ուղղեցից զնպատակն խորհրդոյ եւ թափ տաց ուժի բազկաւքս եւ ձգեցից ի կորովս գրչի մատանցս եւ լեզուաւս զխորհուրդս յուզեցից, զի շրթունքս շշնջել իմաստունս կարասցեն, հոլովել զանիւ պատմութեանց բանիցս), ի գիր արկանել զվարս Առնս արդարոյ (պատ–*

134 B *յամենայն*։
134 R *ընտրելոց*։
134 *որ* չունին։ Ակ։
134 *ի տեառնէ է*։ B։
135 *եւ որ* չունին։ C ունի *որ*։ Ակ։
136 *են* չունին։ Ակ։
136 *զմիմեամբք*։ Փոխ․ *զիմ*․։ CRS։
136—140 *զի քաջալերեալք — Աստուծոյ* ունի *նաեւ* A 403։
137 *ամենեքեան* չունին։ A։
137 E *բարեաց*։
138 Aβad *հասցուք*։
139 *Եփես*․ *Դ*․ 13․ *«Մինչեւ հասցուք ամենեքեան ի մի միաբանութիւն հաւատոց եւ ի գիտութիւն որդւոյն Աստուծոյ․ յայր կատարեալ ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի»*։ *Ավ* 370․ *«Արդ միով միաբանութեամբ եւ ինքնայօժար մերովք իսկ կամօք հասցուք մեք հաւատոց եւ գիտութեան որդւոյն Աստուծոյ, յայր կատարեալ ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի»*։ *«Կատարմանն»* կ'երեւայ կանուխէն դուրս ինկած է Կորիւնէն։
139 *որոյ*․ այսպէս նաեւ AԱB խումբի ձեռագիրք․ միւսներն *որոց*։
140 Հմմտ․ *Փիլիպ*․ *Գ*․ 20․ *«Այլ մեր առաքինութիւն (յն*․ *τὸ πολίτευμα քաղաքավարութիւն) յերկինս է, ուստի եւ Փրկչին ակն ունիմք Տեառն Յիսուսի Քրիստոսի»*։ Անմեկնելի է, թէ ինչո՞ւ *«ազատութիւն»* ունին hոս *Կորիւն* եւ իրմէ առնելով A եւ ասկէ ալ *Կոմիտաս Կաթողիկոս* (*Գիրք հաւատոյ*, հրտ․ *Յաճախապատում*, *էջմ*․ 1894, *էջ* 301)։
140 *զկանոնական* BC *զկանոնականսն*․ ուղղեցի *զհարցն սրբոց*։ Հմմտ․ A 447․ *«Նոյնպէս եւ ամենայն հարքն որ յաջորդեցան, յառաքելական կանոնացն կրեալ․․․»*։
140/141 *յաջորդեալ* BC *յաջորդելոյ* (C *ըստ յ*․)։ Ակ։
141 C *առաքելոցն*։
142 BC *գովեալ*։
142 *հաւատոյն*։ B։
143 *եւ ըստ* չունի C։
143 *կրօնից* BC *կրօնիւքն*։ Ակ։
144 D *վարեն*։
145 *յերկոցուն* C *զերկոցունց*։ B։
145 B *համարձակութիւնն*։
145—153 A։ Տես Ծան․ 3։
150 BRS *ի գիր արկանել եւ* միւսները *ի կիր արկանել եւ* ջնջեցի *եւ*։
150 *առն արդարոյ*․ C *արանց արդարոց*․ ուղղեցի *առնս*։

մել ազգաց յազգս, որք յետ այսր անցեալ ժամանակաց գալոցն իցեն: Որք հարցեալ զհայրական մատեանս եւ պատմեսցի նոցա եւ զծրագիրս կարգեալս եւ ասասցի նոցա)3: Արդ այսուհետեւ խոստացեալն առաջի դիցի. եւ Ցիշատակարանս խնդրեալ պատուաւորաց,4 առ ի մէնջ՝ հաճեսցի եւ նոցա քաղցրատուր հրաման հաստուցեալ զարդարեսցի:

## Բ. ԱՇԽԱՐՀԱԿԵԱՑ ԿԵԱՆՔ ՄԱՇՏՈՑԻ

1. Առնն, զոր ի Նախակարգ բանիս նշանակեալ, վասն որոյ եւ փոյթ արարեալ մեր պատմելոյ, էր Մաշտոց5 անուն, ի Տարունական գաւառէն, ի Հացեկաց գեղջէ, որդի առն երեւելւոյ Վարդան6 անուն կոչեցելոյ: Ի մանկութեան տիսն վարժեալ հելլենական դպրութեամբն7 եկեալ հասեալ ի Դուռն Արշակունեաց թագաւորացն Հայոց մեծաց8, կացեալ յարքունական դիւանին՝ լինել սպասաւոր արքայատուր հրամանացն, առ հազարապետութեամբն աշխարհիս Հայոց Առաւանայ ուրումն9: Տեղեկացեալ եւ

154 եւ հայրենակատար մեծարեալ պայմանաւ որ (առ ի մէնջ): Ուղղեցի. տես Ծան. 4:
156 D զարդարեսցէ:

Բ. 1 առն IJ զառնն: Ն. 60:
1 IJ զոր նախակարգ բանից:
1 նշանակեմք. B նշանակեմ IJ նշանակեցաք:
2 մաշթոց. IJ մաշտոց H մեսրովբ:
3 Ա ի Տարօն գաւառէ: Տես Ծան. 5:
3 DE գեղջէն IJ չունին ի Հացեկաց գեղջէ: Տես Ծան. 5:
3 Հաւանօրէն կար հոս սկզբնագրին մէջ «յազատ տանէ», որդի..., ինչպէս ունի Անանուն ժամանակագրութիւնը (Վենետիկ 1904, էջ 57. «Մեսրովբ երանելի ի Հացեկաց Տարաւնոյ, յազատ տանէ»:
3 երանելւոյ. IJ երեւելոյ H չունի: Ակ:
4 IJ չունին անուն: Հմմտ. Ն. 73—74:
4 IJ ի մանկութենէ H ստիս: Ոչ նուազ ընտիր է նաեւ՝ Hի ընթերցուածը ի մանկութեան ստիս. հմմտ. F Դ. 3 «յստիս մանկութեան» եւ Վարք Փոկասու (Վարք եւ վկայաբանութիւն. Բ. 492) «մինչդեռ յստիս մանկութեանն էր». Ոսկ. Պաւղոսի Բ. 532 «յետ ստեացն մանկութեան անցանելոյ» եւ այլն:
5 IJ հելենական H հելլենացւոց A յունարէն ուսեալ դպրութիւն:
5 ի դաւառն: AHIJR: Հմմտ. Ն. 62—65:
5 A15 արշակունւոյ:
6 թագաւորաց: H:
6 IJ դիւանի:
7 լինէր: Ակ:
7 հրամանին: IJ:
8 R աշխարհին:
8 B որումն I ուրեմն:
8 IJ չունին եւ A տեղեկացեալ եւ վարժեալ: H:
8 Հմմտ. Ակ 349. «Որոց հմուտ եւ տեղեկագոյն եղեալ ասացելոցն»:
9 CM աշխարհակաց B աշխարհակալաց IJ աշխարհացն DEOPS աշխարհական H աշխարհակեաց վարուցն ի զինուորական կարգս A 450 «որ յաշխարհակեաց կեանս էր». Փաւստ. Դ. 3. լեալ էր ամուսնաւոր յաշխարհակեաց կեանս: R:

հմուտ եղեալ աշխարհակեաց կարգաց եւ ցանկալի եղեալ զի-նուորական արուեստին իւրոց զաւրականացն:

2· Եւ անդէն ի նմին ուշ եղեալ փութով ընթերցուածոց աստուածեղէն Գրոց· որով առժամայն լուսաւորեալ եւ թեւակոխ միջամուխ եղեալ աստուածատուր հրամանացն ի հանգամանս· եւ ամենայն պատրաստութեամբ զանձն յարդարեալ հարկանէր զիշխանացն սպասաւորութիւնս:

## Գ· ՀԱԻԱՏՔ ՄԱՇՏՈՑԻ

1· Եւ յետ այնորիկ ըստ աւետարանական չափոյն ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրին դարձեալ՝ մերկանայր այնուհետեւ զաշխարհակիր ցանկութիւնսն եւ առեալ զխաչն պարծանաց ելանէր զկնի ամենակեցոյց Խաչելոյն: Եւ հաճեալ զհրամանացն պայման՝ ի խաչակիր գունդն Քրիստոսի աշակերտացն խառնէր·

9 կարգաց] H վարուց IJ կարգօք A հրամանօք:
9 եւ չունին: A (450) F Դ. 3 եւ ցանկալի:
10 BC իւրոյ IJ արուեստիւ իւրով:
10 D զօրականաց R զուգականացն: Հմմտ· Փաւստ. Դ·3 «Ցանկալի եղեալ իւրոցն համարուեստն զուգակցացն»:
11 չունին ի նմին (նաեւ At): IJA (453):
12 Հմմտ· Ավ 364· «Որով լուսաւորեալ... եւ առժամայն իսկ ծանօթ եղեալ էական անձինն Որդւոյ»:
12/13 թեւամուխ միջամուխ C միջնամուխ IJ թեւակոխ մ. A (454) թեւակոխ (t թեւակուռ) թեւամուխ:
13 BDELMOPR չունին եղեալ: CAS:
13 յաստուածատուր CA աստուածատուր:
13 ի (հանգ.) չունին: A:
14 զարդարեալ (նաեւ J): IA:
14 C առ ոտն հարկանէր:
15 E զսպասաւորութիւնսն IJ սպասաւորութիւն միւսները սպասաւորութիւնսն: Ակ:
15 Հմմտ. վարք ժէ. 8· «զաստուածեղէն կրօնիցն զծառայութիւնսն հարկանէր»:

Գ. 1 B չունի ըստ:

1 չափուցն C չափու կանոնին I չափոյն A չափոցն (ոմանք չափոյն H ըստ ա. հրամանին. հմմտ. Փաւստ. Գ. 5· «աւետարանական հրամանացն սպասաւորել»· նաեւ Կորիւն Ի. 1 «արքանեակ ըստ աւետարանական հրամանացն»:
2 H մարդասիրի:
2 IJ յայսմհետէ:
3 զիշխանակիր A զհեթանոսակիր IJ զամենայն աշխարհակիր:
3 IJ ցանկութիւնս:
3 A զնշան պարծանաց խաչին յանձն իւր երթեալ զկնի:
3 Հմմտ· Գաղատ. Զ. 14· «Այլ ինձ քաւ լիցի պարծել, բայց ի խաչն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:
4 Հմմտ· Մատթ. ԺԶ. 24· «Եթէ ոք կամի զկնի իմ գալ՝ ուրասցի զանձն եւ առցէ զխաչն իւր եւ եկեսցէ զկնի իմ: Հմմտ· նաեւ Մարկ. Ժ. 21· Ղուկ. ԻԴ. 27:
4 հաճեալ հրամանացն չունին պայման. IJ հ. հրամանացն պայմանի Abt ըստ հրամանացն պայմանի HA (ad ԱԲ) հ. զհրամանացն պայման Aβ հ. հրամանաց պայմանն: Ակ:
5 ի (խաչակիր) չունին IJ:
5 չունին աշակերտացն: A զկնի խ. գնդին Քրիստոսի աշակերտելոցն հետեւեալ (այլ ձձ. չունին աշակերտելոցն հետեւեալ): IJH:
5 Հմմտ· Ավ 461· «զի խառնեսցին ի գունդն Քրիստոսի»:

*եւ անդէն վաղվաղակի ի միայնակեաց լեառնակեաց կրաւնս մտանէր*[10]*: Եւ բազում եւ ազգի ազգի վշտակցութիւն ըստ աւետարանին կրէր. եւ ամենայն կրթութեամբ եւ ամենայն իրաց հոգեւորաց զանձն տուեալ՝ միայնաւորութեան, լեառնակեցութեան, քաղցի եւ ծարաւոյ եւ բանջարաճաշակ կենաց եւ արգելանաց անլուսից, խարազնազգեստ եւ գետնատարած անկողնոց: Եւ բազում անգամ զհեշտական հանգիստ գիշերացն՝ զհարկ քնոյ յոտնաւոր աքնութեան ի թաւթափել ական վճարէր: Եւ զայս առնէր ոչ սակաւ ժամանակս:*

2. *Եւ գտեալ եւս զոմանս՝ յինքն յարեցուցեալ եւ աշակերտեալ նմին աւետարանական սպասաւորութեանն: Եւ այնպէս ամենայն փորձութեանց ի վերայ հասելոց կամական քաջութեամբ տարեալ եւ նովիմբ լուսաւորեալ եւ պայծառացեալ՝ ծանաւթական եւ հաճոյ լինէր առաջի Աստուծոյ եւ մարդկան:*

6 *միայնակեցական կ.* (նաեւ IJ) H *միանձանց* A (450) «*որ ի միայնակեաց* (gt *մենակեաց*) *լեռնակեաց* (այլք՝ *լեառնակեաց*) *կրօնս մտեալ էր*»: Ակ:

6 *կարգ* H *զկրօնս*: AIJ:

7 *եւ* չունին (*նաեւ* IJ): AH:

7 *վշտակեցութիւն* JIHAbg *վշտակցութիւն* A այլք *վշտակեցութիւն*, *վշտամբերութիւն*:

8 *կրէր ամենայն իրաց* (BC *իրացն*) *ամենայն կրթութեամբ հոգեւորացն.* իսկ IJ *կ. եւ ամենայն կրթութեամբ եւ ամենայն իրաց հոգեւորաց.* H *կ. եւ ամենայն կրթութեամբ հոգեւորացն* A *կ. ամենայն կրթութեամբ եւ ամենայն իրաց հոգեւորաց*: IJ:

9 *միաւորութեամբ* RT *միաւորութեան* A ումանք *միայնաւորութեան*, այլք *մենաւորութեան* եւ *միայնաւորութեամբ*: A:

9 *լեռնակեցութեան* (նաեւ A ումանք) . IJ *լեռնակցութեան* A(t) *լեառնառնակեցութեան*:

10 *բանջարաճաշակութեանց.* AIJ *բանջարաճաշակ կենաց* (IJ *լինելոյ*) : A:

10 *եւ* (*արգ.*) ունի միայն A:

11 I *խարազնազգեաց*:

11 IJ *անկողնոյ*:

12 *հանգիստ* (BC *հանգիստն*) *գիշերոյն.* A (ումանք) *հանգիստն գիշերաց* IJ *գիշերացն*:

12 *եւ զհարկ*: A:

13 *յոտանաւոր* (նաեւ Adg) C *ոտնաւոր* H *յոտնաւոր*:

13 E *աքնութեանն* CH *աքնութեամբ*:

13 IJ *վճարելով*:

13 *զայս ամենայն ա.*: A:

13 A *արարեալ*:

15 *յարեցուցանէր ա.* IJ *յարուցանէր ա.* A (450) *յարեցուցեալ եւ*:

16 IJ *աշակերտել*:

16 A *ամին*:

16 *սովորական.* AIJH *աւետարանական*:

16 *աւետարանութեան* C *աւետարանութեանն.* H *կրօնաւորութեան*: IJ *սպասաւորութեանն* A *-ութեան*: IJ:

17 *կամայական* (նաեւ H) IJ *կամացական* BA(b) *կամական* (այլք *կամայական*): BA:

18 *եւ նովիմբ լուսաւորեալ* չունին: AIJH:

18 *պայծառացեալ* չունին IJ:

18 A *եւ ծ.*:

19 IJ *հաճոյական լինէր առաջի Աստուծոյ եւ մ.* H *հաճոյ Աստուծոյ եւ մարդկան երեւեալ* A *եւ հաճոյ եղեալ առաջի Աստուծոյ եւ ամենայն մարդկան*:

19 *առաջի* չունին:

19 Հմմտ. *Ա. Թագ. Բ.* 26. «*Հաճոյ էր Աստուծոյ եւ մարդկան*»:

## Դ. ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ՄԱՇՏՈՑԻ Ի ԳՈՂԹՆ ԳԱՒԱՌԻՆ

1. Առեալ այնուհետեւ Երանելւոյն զհաւատացեալս իւր՝ դիմեալ իջանէր յանկարգ եւ յանդարման տեղիս Գողթան 11: Անդ ընդ առաջ լինէր նմա իշխանն Գողթան, այր երկեւղած եւ աստուածասէր, որում անուն էր Շաբիթ. եւ ասպնջական հիւրամեծար գտեալ բարեպաշտութեամբ՝ սպասաւորեալ ըստ աշակերտական հաւատոցն ի Քրիստոս: Իսկ Երանելւոյն վաղվաղակի զաւետարանական արուեստն ի մէջ առեալ՝ ձեռն արկանէր զգաւառաւն, հանդերձ միամիտ սատարութեամբ իշխանին: Եւ «գերեալ զամենեսեան» ի հայրենի աւանդելոցն եւ ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէն «ի հնազանդութիւն Քրիստոսի» մատուցանէր:

2. Եւ յորժամ ի նոսա զբանն կենաց սերմանեալ եւ զամենեսեան յաստուածպաշտութիւն կրթեալ՝ յայտնի իսկ բնակչաց գաւառին նշանք մեծամեծք երեւեալ. կերպակերպ նմանութեամբք դիւացն փախստական լինելով անկանել ի կողմանս Մարաց 11:

Դ. 1 Ա զհաւանեալս H զաշակերտեալս:

2 այլ եւ. H որում: Ա:

3 ելանէր: HՋ:

4 H չամբիթ: Հմմտ. Մ. Խոր. Գ. 47. «օգնականութեամբ իշխանի գաւառին, որում անուն էր Շաբիթ»:

4—5 չունին որում — սպասաւորեալ: ԱS:

5 ԱH սպասաւորէր: A:

6 ըստ աշակերտացն Քրիստոսի: ԱHA:

6 H անդէն վաղվաղակի:

8 զգաւառովն: A:

8 Հմմտ. Եւթաղ 79. «զքո աղօթսդ տացես ինձ ի սատարութիւն»:

8 եւ ունին միայն Ա:

9 A 'գերէր զամենեսին:

9 աւանդելոց. A ի հայրենեացն աւանդելոց (նաեւ ի հայրենեաց աւանդելոցն):

9 A ի սատանայապաշտ (այլ ձեռագիրք ի սատանայական) սպ.:

9/10 Հմմտ. Բ. Կոր. 3. «Գերեմք զամենայն միտս ի հնազանդութիւն Քրիստոսի»:

10 մոլորութենէն փոխ. սպասաւորութենէն: A:

10 A ի հնազանդութիւն ծառայութեան:

12 CԱ սերմանեաց:

13 չունին զամենեսեան յաստուածպաշտութիւն կրթեալ: AԱ:

13 A որ եւ յայտնի:

14 երեւէին: AԱH:

15 նմանութեամբ Ա նմանութեան նմանութեամբք: A:

15 Հմմտ. Ավ 241. «Զհոգեկան ազգին զամենայն մարդակերպ նմանութիւնս առ մարդիկ եղեալ». իսկ A 50. «Ցնորիւք կերպս ի կերպս լինելով դիւաց»:

15 Ա փախստեա:

15 B եւ այլք, Խոր. A(b) անկանէին H անկանելով: A:

16 A խաղտեաց:

## Ե. ՄԱՇՏՈՑ Ի ՀՈԳՍ ՎԱՍՆ ՆՇԱՆԱԳՐԱՑՆ ԳԻՒՏԻ

1. *Ապա եւս առաւել հոգ ի միտ արկանէր զհամաշխարհականս զոփալով*12: *Եւ անձին իւրում եղեալ սահման պահաւք եւ տքնութեամբ՝ առնել աղաւթս մշտնջենաւորս եւ բազկատարած պաղատանս առ Աստուած եւ արտասուս հանապազաբուղխս վասն աշխարհին իւրոյ՝ զմտաւ ածելով զառաքելականն. եւ ասէր հոգալով. «Տրտմութիւն է ինձ յոյժ եւ անպակաս ցաւք սրտի իմոյ վասն եղբարց եւ ազգականաց իմոց ըստ մարմնոյ»: Եւ այնպէս տրտմական հոգովք պաշարեալ եւ թակարդապատեալ եւ անկեալ ի ծուփս խորհրդոց, եթէ ո՛րպէս արդեւք ելս իրացն գտանիցէ:*

2. *Եւ իբրեւ աւուրս բազումս անդէն ի նմին դեգերէր՝ յարուցեալ այնուհետեւ հասանէր առ սուրբ կաթուղիկոսն Հայոց Մեծաց, որոյ անուն ճանաչէր Սահակ*13: *Զոր պատրաստական գտանէր նմին փութոյ հաւանեալ: Որ մանաւանդ միաբանեալ եւ միասնական յաւժարութեամբ գումարեալ՝ հանդերձ աղաւթիւք մեծաւք եւ ուժգին խնդրուածովք առ Աստուած կանխէին՝ վասն*

*Ե*. 1. *նոյնպէս եւ*: IJ:
1 *ի մտի*: IJR:
2 *սփոփելով* ERՆ *սփոփելոյ*: IJ:
2—3 չունին *անձին — տքնութեամբ*: A:
3 *առաւել* փոխ. *առնել*. C *յառնել* IJ *առեալ*. չունի A: *Ակ*:
3 *յաղօթս*: AIJH:
4 *անդադարս* փոխ. *հանապազաբուղխս* H *աղօթս արտասուալիցս առ Աստուած մատուցանէր*: A:
5 չունին *վասն աշխարհին իւրոյ*: A:
5 B *զառաքելական*:
6 չունին *յոյժ*: IJ:
7 *եղբարց իմոց*: DIJ:
7 չունին *իմոց ըստ մարմնոյ*: IJ:
6/7 *Հռոմ. Թ*. 2—3. «*Զի տրտմութիւն է ինձ յոյժ եւ անպակաս ցաւք սրտի իմոյ. զի ուխտիւք խնդրէի ես ինքնին նզով լինել ի Քրիստոսէ վասն եղբարց եւ ազգականաց իմոց ըստ մարմնոյ*»:
8 B *օթայկարդապատեալ* C *յոտակարդապատեալ* O *թակարթապատեալ* չունին IJ: Հմմտ. *Եւթաղ* 165. «*որ շուրջ զքեւ թակարդապատեալ կայ*»:
9 *որպիսի*: IJ:
9 IJ չունին *արդեւք*:
10 Հմմտ. *Եփրեմ*, *Ա*. 234. «*Ելս եգիտ նա գործոյն*»:
10 H այսպէս կ'ամփոփէ Կորիւնի պլաասացիկ տողերը. «*Բայց զի ոչ էր գիր հայերէն լեզուիս՝ բազում պակասութիւն լինէր ճշմարտութեան աւանդիցն առ աշակերտեալսն: Իսկ երանելի վարդապետն տարակուսեալ ի խորհուրդս իւր առ Աստուած ապաւինէր*»:
11 IJ *իբրեւ բազում անգամ ի նմին դադարէր*:
12 D չունի *հասանէր*:
12 H *առ սուրբն Սահակ հայրապետն Հայոց*. իմացիր *առ եպիսկոպոսն Հայոց մեծաց*:
13 IJ *ճանաչիւր*:
14 B *հաւանեալ սոյն. մանաւանդ հաւանեալ*:
14/15 *հաւանեալ եւ մանաւանդ յօժ*. IJ *հ. որ մանաւանդ միաբանեալ եւ միասնական յօժ*.: Հմմտ. *Ավ* 312 «*արդ արարեալ զնոսա միասնական միաբանութեամբ իբրեւ զմի տուն երեւեցուցեալ*»:
16 *մեծովք*: IJ:
16 չունին *եւ ուժգին խնդրուածովք*: IJ: Հմմտ. *Կորիւն*, *ԺԹ*. 1 եւ *Եփրեմ*, *Գ*. 206:

ամենայն ոգւոց քրիստոսատուր փրկութեանն հասանելոյ: Եւ զայն առնէին աւուրս բազումս: Ապա ելանէր նոցա վճիռ պարգեւական յամենաբարւոյն Աստուծոյ՝ յաջողել զաշխարհահոգ խորհուրդն երանելի միաբանելոցն եւ ի գիւտ նշանագրացն Հայաստան ազգին հասանել:

## Զ. ՆՇԱՆԱԳԻՐՔ ԴԱՆԻԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

1. Բազում հարցի եւ փորձի եւ քննութեան զանձինս սահմանեալ եւ բազում աշխատութեանց համբերեալ՝ ազդ առնէին յյնուհետեւ զկանխագոյն խնդրելին իւրեանց՝ թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ 14: Յայնժամ պատմէր նոցա արքայն վասն առն ուրումն Ասորւոյ, եպիսկոպոսի * ազնուականի,

17 B որդւոց CD հոգւոց:
17 քրիստոսաբեր. հմմտ. Ավ 360 «ամենայն ումեք քրիստոսատուր փրկութեանն հասանելոյ». եւ 413. «անպատում է այս պատիւ քրիստոսատուր փառացն առաջնորդութեան». իսկ A 428 «վասն կենսատու (այլ f կենատուր, կենսատուր) փրկութեանդ հասելոյ ձեզ յԱստուծոյ»: Ն 73:
17 IJ փրկութեան: A:
17 հմմտ. Բ. Տիմ. Բ. 10. «Զի եւ նոքա փրկութեան հասանիցեն որ ի Քրիստոս Յիսուս»:
18 չունին վճիռ: Ակ:
19 C պարգեւ IJ պարգեւական պատճառք. հմմտ. Գ. Մակաբ. Ե. 6. «Իսկ այն, որ յաւիտենից ժամանակաց գեղեցիկ արարածք, բարւոք բաժին տունջեան եւ գիշերոյ վճիռ ելեալ յերկնաւոր ի պարգեւատու յառատաձեռն Աստուծոյ, ելանէր պարգեւ մասն մի քնոյ՝ զոր առաքէր ի վերայ թագաւորին». եւ Կորիւն, Է. 3. «որում եւ պարգեւէր իսկ վճիռ յամենաշնորհն Աստուծոյ, ծնանել..»: «Պարգեւական զաւակ», Ավ 156. — երկիր, անդ, 163. — նշան, Ոսկ. Պաւղ. 613 եւն:
19 C յամենաբարւոյն, այլf յամենաբարին: Հմմտ. Ոսկ. Պաւղ. 575. «այլ զի մարդասիրութեան ամենաբարւոյն Աստուծոյ եղեն արժանիք»: Տես առ այս Ն. 447. Վարդանեան, Բառաքնն. Դիտ. Ա. 14—15:
19 ժողովել. IJ ժողովեալ: Ակ:
20 IJ խորհուրդսն:
20 եւ ի գիրս. R եւ գիրս S ի գիւտ:
20 նշանագրոյ C նշանագրաց տալ IJ նշանագրացն:

Զ. 1 հարցփորձի IJS հարցափորձի. հմմտ. Վարդանեան, Նիւթեր, 60—61:
1 B եւ քննութիւնն:
1 պարապեցուցեալ. IJ սահմանեալ: Նախընտրեցի այս ընթերցուածը: Պարապեցուցանել կիրարկած են դասականf հազուադէպ անգամ. հմմտ. Կոչումն Ընծ. 6. «Ի դատարկ բանից բազմաց պարապեցո զանձն քո (զոր Յովհ. Մանդակունի վերածած է «զանձինս դատարկ բանից պարապեցուցանեն», էջ 152), Եւթաղ, 362. «Զի զամենեցուն զձեռս պարապեցուցէ ի սպանութիւն: Ուշ ժամանակէ է Կորիւն Թ. 7 եւ A «ի վարժս վարդապետութեան պարապեցուցեալ» (զՄամիկոնեան որեարն). բայց խընդրառութիւնը պիտի պահանջէր «ի հարց եւ ի փորձ եւ ի քննութիւն»:
3 եւ (բազում) չունին IJ:
3 ապա եւ: IJ յնուհետեւ:
3 IJ իւրեանց՝ թագաւորին իւրեանց Հայոց:
4 E անունն:
4 IJ կոչիւր:
5 B որում I ուրումն:
5 H առաքինւոյ. կարդա Ազձնականի կամ Արձնականի (Արձնի), տես Ծան. 15:

*Դանիէլ*[15] *անուն կոչեցելոյ, որոյ յանկուցեալ իմն էր նշանագիր գրեալս աղփաբետաց հայերէն լեզուին: Եւ իբրեւ պատմեցաւ նոցա յարքայէ վասն գրելոցն Դանիէլի, յաւժարեցին զարքայ փոյթ առնել վասն պիտոյիցն այնոցիկ:*

2. *Եւ նա առաքէր զոմն Վահրիճ անուն, (Խադունի ազգաւ)* [16], *հանդերձ հրովարտակաւք առ այր մի երէց, որում անուն *Հաբէլ*[17] *կոչէին, որ էր մերձաւոր Դանիէլի եպիսկոպոսի: Իսկ *Հաբէլի զայն լուեալ՝ փութանակի հասանէր առ (եպիսկոպոսն) Դանիէլ: Եւ նախ անդէն ի նմին Դանիէլէ ինքն տեղեկանայր նշանագրացն եւ ապա առեալ ի նմանէ առ արքայն երկրին Հայոց, ի հինգերորդ ամի թագաւորութեան նորին, հասուցանէր:*

6 *որոյ յանկարծ ուրեմն նշանագիրս.* C կ'աւելցնէ ի լուսանցս՝ *էր գրեալ*: TS կ'ուղղեն *գտեալ*. IJ *որոյ յանկարծ ուրեմն գրեալ նչ.*: Ուղղեցի *որոյ յանկուցեալ իմն էր նշանագիր գրեալս*. հմմտ. *Ոսկ. Մատթ.* 1. «*պարտ եւ պատշաճ է մեզ ոչ կարօտանալ նշանագիր (տպ. ի նշանագիրս) գրելոցն օգնականութեան*» (յն. γράμματα, *նշանագիրք*:

7 IJH *ալփափետաց*. յն. ἀλφάβητα, այն է *այբ(ու)բենից*:

7 *լեզուի*: CIJ:

8 *վասն գրելոյն*. S *գտելոյն*: Ակ:

8 *ի Դանիէլէ*: IJ *Դանիէլի*:

8 *յօժարեցին* ունին բոլոր օրինակները. *Փարպ.* 14. կը կարդայ *փութացուցանէին զնա* եւ *Մ. Խոր. Գ.* 52. «*թախանձէին զնա փոյթ զայնպիսեացն առնել պիտոյից*». *յօժարեմ* իբրեւ *յօժարեցուցանեմ* հազուադէպ է հայցական խնդրով. հոս թերեւս կարդալու է *յորդորեցին*:

10 D *վաճիճ*. *Փարպ. զվահրիճ ոմն անուն*. *Մ. Խոր. Գ.* 52. «*առաքեաց հրեշտակութեամբ զայր մի պատուական եւ հաւատարիմ իւր Խադունի ազգաւ Վահրիճ անուն*». *Խոր.* աղբիւրն է *Կորիւն*. հաւանօրէն սկզբնագրէն է «*Խադունի ազգաւ*»:

11 *հանդերձ* չունին: IJ *Փարպ.* 14:

11 *Փարպ. հրովարտակաւ*:

11 DIJ *այր* չունին:

11 *որոյ*. IJ *որում Հաբէլ կոչէին*:

11 չունին *անուն*: *Փ.* «*առ այր մի երէց Հաբէլ անուն*:

11 *Հաբէլ* իմացիր *Հիրա(ս)*. տես Ծան. 17:

12 *Դանիէլի ասորւոյ*. IJ *Փ. Դանիէլ եպիսկոպոսի*. S *Դանիէլ ասորւոյ եպիսկոպոսի*:

12 IJ *իսկ Աբեղայն* փոխ. *Հաբելին*:

14 *առ Դանիէլն* չունին *եպիսկոպոս*: *Փարպ.*:

14/16 այս տողերը *Փարպեցի* գրեթէ բառ առ բառ օրինակած է սկզբնագրէն եւ կու տայ մեզի հնարաւորութիւն բնագիրը վերակազմելու: *Փարպ.* կը գրէ. «*Եւ երանելոյն Հաբելի.. լուեալ զիրսն՝ փութանակի հասանէր առ [սքանչելի[ եպիսկոպոսն Դանիէլ: Եւ նախ անդէն ի նմին Դանիէլէ ինքն տեղեկանայր [զկարգ] նշանագրացն, եւ առեալ ի նմանէ առ թագաւորն [եւ առ սուրբ հայրապետն Հայոց Սահակ եւ առ երանելին Մաշտոց] հասուցանէր*» (էջ 13—14):

14 *Նախ ինքն տեղեկանայր ի Դանիէլէ նշանագրոյն* (S *նշանագրացն*). *Փ.* կը լրացնէ. «*նախ անդէն ի նմին Դանիէլի ինքն տեղեկանայր նշանագրացն*»: «*Տեղեկանամ իմիք*». հմմտ. *Ոսկ. Մատթ.* 444, 547, 676 եւն:

15 *առաքէր (առ արքայն)*. չունին IJ*Փ*:

15 IJ *արքայ*. *Փ. թագաւորն*:

15 *յերկիրն* IJ *յերկիրն*. չունի *Փարպ.*:

15 *յերկիրն Հայոց* կը թուի եկամուտ, ինչպէս նաեւ Փարպ. «*եւ առ սուրբ — Մաշտոց*», որոնք կը խանգարեն նախադասութեան ընթացքը:

16 *ի հինգերորդի ամի թագաւորութեան նորա ի նա հ.*: IJ *ի հինգերորդ ամի թագ. նորին*. չունին *ի*

Հանդ. Ամս. 1949, Թ. 4—12:

3․ Իսկ արքային (Հայոց) հանդերձ միաբանելովքն Սահակաւ եւ Մաշտոցիւ ընկալեալ զնշանագիրսն ի *Հաբէլէ ուրախ լինէին։ Իսկ իբրեւ հասին ի վերայ, թէ չեն բաւական այն նշանագիրք ողջ ածել զփւղոբայս եւ զկապս հայերէն լեզուիս, մանաւանդ զի եւ նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց քաղեալք եւ մուրացեալք դիպեցան 18, յետ այնորիկ դարձեալ կրկին անգամ ի նոյն հոգս դառնային եւ նմին ելս խնդրէին ժամանակս ինչ։

է․ ԳԻՒՏ ՆՇԱՆԱԳՐԱՑ ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ

1․ Վասն որոյ առեալ երանելւոյն Մաշտոցի դաս մի մանկտւոյ հրամանաւ արքունի եւ միաբանութեամբ սրբոյն Սահակայ եւ հրաժարեալք ի միմեանց համբուրիւ սրբութեան՝ խաղայր գնայր ի հինգերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց։ Եւ երթեալ հասանէր ի կողմանս Արամայ 19, ի քաղաքս երկուց Ասորւոց, որոյ առաջնոյն Եդեսիա (անուն) կոչէին եւ երկրորդին Ամիդ ա–

(իմացիր առ) նա։ Հմմտ․ Փարպ․ 13, տ․ 20․ «մինչեւ ցամս (իմացիր յամի) հինգերորդ(ի) արքային Հայոց Վռամշապհոյ եղբօր Խոսրովու», որ կորիւնի յիշեալ տեղիքը կ'ակնարկէ։

17 արքայն․ B արքայի Փ․ արքային Հայոց։

17 հ․ միաբան սրբովք․ S միաբան սրբովքն։ Ն․ 74․ հ․ միաբանութեամբ սրբովք․ Փ․ չունի․ ուղղեցի հ․ միաբանելովքն սա․։

18 C Սահակայ եւ Մաշտոցի․ Փ․ սուրբ կաթողիկոսաւն Սահակաւ եւ երանելեաւն Մաշտոցիւ։

18 D նշանագիրսն։

18 ի Հաբէլէն․ Ա յԱբելայ։ Փ․։

19 * Ձեռագիրը թղթերու եռեւառաջութեան կամ այլ պատճառաւ այս տեղ զետեղած է «Ապա առեալ — տանէր (տպ․ էջ 17, տ․ 19—27)․ զոր փոխադրեցի Թ․ 1։

19 իսկ իբրեւ ի վերայ հասեալ։ Ա։

19 այն չունին։ Ա։

19 նշանագիրքն։ Ա։

20 Հմմտ․ Եւթաղ, 145․ «զորոյ զնկարագիրն ողջ ածէ»․ Ոսկ․ Մեկն․ Մատթ․ 14․ «յերկրորդում մասինն ոչ ածէ ողջ զթիւն»։ Ն․ 167։

20 Ա զփիղոբէ․ յն․ συλλαβή․ «եւ զկապս» թարգմանութիւնն է յոյն բառին։

20 եւ զկ․ չունի S։

20 լեզւոյն․ Ա լեզուի H զի ոչ բերէր զբառս եւ զբանս այլափետացն ըստ հայերէն լեզուիս։ Ակ։

21 եւ նշանագիրքն իսկ չունին Ա։

21 յայլոց Ա ի յայլոց։

21 թաղեալք․ Ա քաղեալք։

21—22 յարուցեալք այսպէս բոլոր օրինակները։ Մ․ Խոր․ Գ․ 52․ «մուրացածոյին այնուիկ գծագրութեամբ» թոյլ կու տայ ուղղել մուրացեալք․ հմմտ․ Նհ․ 159, ուր յանկուցեալ կ'առաջարկուի։

23 ելս] Ա եւս։

է․ 1 հմմտ․ Ավ 237․ «դաս մի զինուորաց»։

2 արքայի։ Ա արքունի։

3 Ա համբուրեալ։

3 սրբութեանն․ Ա սրբութեամբ։ Հմմտ․ Ս․ Բարսղի Պատարագի «ողջոյն տուք միմեանց ի համբոյր սրբութեան»․ Սրբազան Պատարագամատոյց Հայոց․ 124։ Ակ։

4 Ա Վռամշապուհ։

5 արամի․ Ա արամա։

5 B չունի ի քաղաքս։

5 Sն (75) կ'ուղղեն երկուս։ Տես Ծան․ 19։

6 որոց B յորոց Ա որոյ։

6 առաջինն։ Ակ։

6 անուն չունին։ Ակ։

6 կոչի։ Ակ։

6 երկրորդն։ BԱS երկրորդին։

նուն [20]: Անդ դէպ լինէր սրբոց եպիսկոպոսացն, որոյ առաջնոյն Պակիդաս [21] անուն էր եւ երկրորդին Ակակիոս [22], հանդերձ կղերականաւք եւ իշխանաւք քաղաքացն պատահել. եւ բազում մեծարանս ցուցեալ հասելոցն՝ ընդունէին (զնոսա) հոգաբարձութեամբ ըստ Քրիստոսի անուանելոցն կարգի [23]:

2. Իսկ աշակերտասէր վարդապետին զտարեալսն ընդ իւր յերկուս բաժանեալ՝ զոմանս յասորի դպրութիւնն կարգէր եւ զոմանս ի յունականն: [Եւ անտի ի Սամուսատական քաղաքն գումարէր [24]:] Եւ նորա իւրում անձին զսովորականն առաջի եդեալ իւրովքն անդուստ ածելովքն հաւասարօքն՝ զպահս եւ զաղաւթս եւ զտքնութիւնս, զպաղատանս արտասուալիցս, զխստամբերութիւնս, զհոգս աշխարհահեծս, յիշելով զասացեալսն հոգեպատում մարգարէին, եթէ «Յորժամ դարձցիս եւ հեծեծեսցես,

7 DE չունին անուն:

7 ընդդէմ: IJՆ (75):

7 սուրբ. IJ երանելի: Ակ:

7 որոց. BC յորոց IJ որոյ:

7 B յառաջագոյն IJ առաջնուն:

8 Բաբիլաս IJ Բաբիդաս RՆ Բաբիլաս. Մ. Խոր. Գ. 33. Բաբիլոս (այլ ձեռագիրք՝ Բաբեղոս, Բաբոս): Ուղղեցի Պակիդաս. տես Ծան. 21:

8 Չունին էր. IJ անուանէր: Ակ:

9 կղերականօքն եւ իշխանօքն: IJ:

9 Յն. χληρικός, «ժառանգաւոր» (հմմտ. Կորիւն, Ժ. 2. «ի ժառանգաւորաց»). «կղերիկոս», Փաւստ. Դ. 3: եւ A 419. իսկ Փաւստ. Դ. 8 «կղերք». Ն. 78:

9 քաղաքին. IJS քաղաքաց:

9 պատահեալ: Ն. 76:

11 BC անուանելոյն IJ անուանելոյ:

12 աշակերտասէրն վարդապետին: BCIJS:

13 B ասորի IJ յասորոց:

13 BDO դպրութեանն:

13 R չունի եւ:

14 չունին ի (յուն.): SՆ (79):

14 յունական. A ի հելլէն: Ակ: Կորիւն Բ. 1 կը գրէր «հելլենական դպրութեամբ». հաւանօրէն հոս ալ հելլէն գրած ըլլալու էր, ինչպէս ունի D:

14 կ'աւելցնեն դպրութիւնն. չունին IJA:

14 C եւ (անդ):

14 CIJ անդ:

14 IJ սամոստական այլf սամուսատական. Կորիւն Է. 4 ունի սամոսատացւոց, այն է Samosata. տես Ծան. 24: Ակ.

14—15 Ինձ կը թուի, թէ փակագծուած մասը յետսամուտ է. տես Ծան. 24:

15 եւ նորա. B ջնջած է. իսկ EIJ ունին եւ նա... եդեալ:

15—16 եւ նորա իւրովք հաւասարօք զսովորականն առաջի եդեալ զաղօթս. IJ եւ նա... առաջի եդեալ զպահս եւ զաղօթս. A եւ իւրում անձինն զսովորականն առաջի դնէր իւրայովքն (t իւրովքն) անդուստ ածելովքն հաւասարօքն զպահս: IJ երբ կը գրէր «եւ նա» կ'ենթադրէր անշուշտ դնէր. բնագիրը խանգարուած է. կը հետեւիմ Aի (432):

16 զպահս եւ չունին: IJA:

17 IJ զտքնութիւն: A:

17 կ'աւելցնեն եւ (զպ.): IJA:

17 արտասուալից. BH արտասուալիցս IJA (ԱԲ) արտասուաբերս (A այլ ձեռ. արտօսրաբերս): C զխստամբերութիւնսն եւ:

17—18 զաշխարհահեծս. DIJA աշխարհահեծս: ՆՀԲ աշխարահեծս:

18 յիշելով. A յուշ առնելով:

18 հոգեպատում չունին: A:

19 IJ մարգարէէն թէ:

19 IJ ապա փոխ. յայնժամ:

յայնժամ կեցցես»։ Եւ այնպէս բազում աշխատութեանց համբերեալ վասն համաշխարհին բարեաց ինչ աւճան գտանելոյ։

3. Որում եւ պարգեւէր իսկ վիճակ յամենաշնորհն Աստուծոյ՝ հայրական չափոյն ծնանել ծնունդ նորոգ եւ սքանչելի սուրբ աջովն իւրով, նշանագիրս հայերէն լեզուին։ Եւ անդէն վաղվաղակի նշանակեալ, անուանեալ եւ կարգեալ յաւրինէր սիղոբայիւք եւ կապովք եւ ձայնատուր նշանաւք։

4. Եւ ապա հրաժարեալ յեպիսկոպոսացն սրբոց հանդերձ աւգնականաւքն իւրովք՝ իջանէր ի քաղաքն Սամոստացւոց[25], յորում եւ մեծապատիւ իսկ յեպիսկոպոսէն եւ յեկեղեցւոյն մեծարեալ լինէր։ Եւ անդէն ի նմին քաղաքի գրիչ զոմն հելլենական դպրութեան, *Հռոփանոս[26] անուն, գտեալ, որով զամենայն ընտրութիւնս նշանագրացն՝ զնրբագոյնն եւ զլայնագոյնն, զկարճն եւ զերկայնն, զառանձինն եւ զկրկնաւորն միանգամայն յաւրինեալ եւ յանկուցեալ։

20 Այսպէս նաեւ A (432)։ Իսկ Ավ 150. «Յորժամ դարձցիս եւ հեծեծեսցես՝ յայնժամ կեցցես եւ գիտասցես թէ ո՛ւր իցես» եւ Փարպ. 57. «Յորժամ դարձցիս եւ հեծեծեսցես՝ յայնժամ կեցցես»։ Տեղիքս է Ես. Լ. 15. «Յորժամ դարձցիս եւ յոգւոց հանիցես, յայնժամ կեցցես, եւ գիտասցես, թէ ո՛ւր իցես»։

20 A չունի եւ։

20 A աշխատութեամբ տարեալ. հմմտ. նաեւ Կորիւն Զ. 1. «համբերեալ»։

21 վասն իւրոյ ազգին. A վասն համաշխարհին. հմմտ. Կորիւն, Ե. 1. «զհամաշխարհականս զոփալով»։

21 Մ չունին ինչ. ունի նաեւ A։

22 եւ չունին։ ՄA։

22 յամենաշնորհողէն։ ՄA։

23 չափուն. Մ չափոյ A (ոմանք չափուն), Փաւստ. Գ. 12. «հայրական չափոյն։

23 Մ ծնանիլ. այլք ծնեալ. F նմանեալ։ A։

23 ծնունդս. AՄF ծնունդ։

23 A սք. պարգեւաբաշխ սուրբ։

24 իւրով. հոս A կ'աւարտի։

24 D նշանագիր։

24 անդ Մ անդէն։

25 Մ նշանագրեալ, անուանագրեալ։

25 Մ եւ կարգեալ սիղոբայիւք յօրինէր եւ կապաւք։

26 S չունի եւ կ.։

26 D կապիւք. Մ կապաւք։

26 Մ կ'աւելցնէ եւ ձայնատուր նշանագրաւք (Տէր-Մկրտչեան, Արարատ 1912, էջ 510 կը կարդայ նշանաւք)։

27 E եւ հրաժարեալ ապա. Մ հրաժարեալք։

27 S յեպիսկոպոսէն սրբոյ։

28 Մ ազգականօք։

29 եւ ունին Մ։

30 Մ անդ փոխ. անդէն։

30 ոմն Մ զոմն։

31 EM դպրութեամբ. J դպրութիւնն։

31 Փարպ. Հռուփանոս. այն է Rufinos։

32 Մ նշանագրացն. այլք նշանագրոյն։

32 Մ զերկայն, զլանագոյն, առանձինն եւ զկրկնայար միանգամայն յօրինէր. այլք ունին զնրբագոյնսն, զկարճն եւ զերկայնն (B զերկարն), զառանձինն եւ զկրկենաւորն միանգամայն յօրինեալ եւ յանկուցեալ։ Մի կրկնայարը նոյն է հաւանօրէն Bի կրկնաւորի հետ. երկուքին միացումը տուի բնագրին մէջ։

34 Մ չունին եւ յանկուցեալ։

5. (Այնուհետեւ) ի թարգմանութիւն դառնայր հանդերձ արամբք երկուք աշակերտաւքն իւրովք, որոյ առաջնոյն Յովհան անուն կոչէին 27, յԵկեղեացական գաւառէն 28, եւ երկրորդին՝ Յովսէփ անուն ի Պաղնական տանէն 29: Եւ անդ եդեալ սկիզբն թարգմանելոյ գրոց Առակացն Սողոմոնի, որ ի սկզբանն իսկ ծանաւթս իմաստութեանն ընծայեցուցանէ լինել ասելովն թէ «Ճանաչել զիմաստութիւն եւ զխրատ, եւ իմանալ զբանս հանճարոյ»: Որ եւ գրեցաւ իսկ ձեռամբ գրչին այնորիկ [հանդերձ ուսուցանելով զմանկունս գրիչս նմին դպրութեան 30]:

6. Ապա յետ այնորիկ առնոյր թուղթս յեպիսկոպոսէ քաղաքին եւ հրաժարեալ ի նոցանէ հանդերձ ամենայն իւրայովք բերէր առ եպիսկոպոսն Ասորւոց, յո՛րոց նախընկալն եղեւ, առաջի արարեալ նոցա զնշանագիրսն աստուածատուրս: Վասն որոյ եւ բազում իսկ գովութիւնք յեպիսկոպոսաց եւ յամենայն եկեղեցեաց բարձրանային ի փառս Աստուծոյ: Եւ (լինէր) մխիթարութիւն աշխատելոցն ոչ սակաւ:

35 Այսպիսի ժամանակական մակբայ մը կ'ենթադրուի հոս:
35 *դառնայրն*. այսպէս ամէնն ալ. խօսքը Մաշտոցի մասին է, ինչպէս ցոյց կու տայ *իւրովք*:
36 IJ *երկու*:
36 IJ չունին *իւրովք*:
36 *որոց*. K *որոյ*. *Փարպ*. *որում*. IJ *յորոց*: K:
36 DE *յօհան*. *Փարպ*.՝ *առաջնոյն անուն էր Յոհան*:
37 IJ *յԵկեղացական դաւառէ*. այլք *յԵկեղեաց գաւառէն*: *Փարպ*. 15. *ի գաւառէն Եկեղեաց* (Զ *յԵկեղեաց*). *Խոր*. Գ. 53. *Յոհան Եկեղեցացին* (ձեռագիրք՝ *Եկեղեցեայն*, *Եկեղեցային*): Կը նախընտրեմ *յԵկեղեացական*:
38 E *Յովսէ*: IJ *Փարպ*. չունին *անուն*:
38 *ի պաղանական տ*. *Փարպ*. 15. *Պաղանական*. ձեռագիրը՝ *պաղատանէ*. կարդա՛ *Պաղ(ն)այ տանէ*. IJ *ի Պաղնական տ*. Խոր. *Պաղնացի*: IJ:
38/39 *եւ եդեալ սկիզբն նախ յԱռակացն*: IJ:
39 *Սողոմոնի* B *Սողովմոնի*. յն. *Σαλωμων* (*Հին Կտակարանի մէջ*), *Σολομων* (*Ն. Կտակարանի մէջ*): *Ակ*:
40 *ասելով եթէ*: IJ:

41 *իմանալ* IJ *եւ իմ*. յն. *νοῆσαι τε*
41 *Առակք Ա*. 1:
42 *գրեցաւ ձեռամբն այնորիկ գրչի*: IJ:
42 *մանկունս*: IJS:
42—43 *հանդերձ — դպրութեան* կը թուի յետսամուտ: Տես Ծան. 30:
44 *առնոյր թուղթս*: IJ *առեալ թուղթ*. A 421 «*Եւ յետ այսորիկ առնոյր զբազմութիւն հաւանելոցն... զօրուն հանդերձ... եւ ամենայն իւրայովքն*»:
45 IJ *իւրայովքն ամենայն*:
45 *իւրովքն*: BIJA:
45 IJ *եբեր*:
46 *եպիսկոպոսն*: *Ակ*:
46 *որ յորոց*: IJ:
46 *ա. արկեալ*: IJ:
47 *զնշանագիրն աստուածատուր*: IJS:
47 *եւ* ունին IJ:
48 IJ *զբազում*:
48 IJ *գովութիւնս իսկ*. F *Դ*. 13 *գոհութիւն*: *Ն*. 46:
48 *եպ*. *սրբոց*. չունին IJ:
48 R *ամենայն*:
49—50 *եւ ի մխիթարութիւն աշակերտելոցն ոչ սակաւք*: IJ:
49 IJ *մխիթարութիւնք*:

7. Յորոց հրաժարեալ այնուհետեւ եւ առեալ թուղթս աւետագիրս հանդերձ շնորհատուր պարգեւելովքն եւ ամենայն իւրայովքն յանձն եղեալ շնորհացն Աստուծոյ՝ ճանապարհորդ լինէր: Եւ այնպէս զբազում աւթեւանաւք անցեալ առողջութեամբ, յաջողութեամբ եւ հոգելից ուրախութեամբ՝ եկեալ հասանէր ի Հայաստան աշխարհն, ի կողմանս Այրարատեան գաւառին, առ սահմանաւք Նոր Քաղաքին[31], ի վեցերորդ ամի Վռամշապհոյ արքային Հայոց Մեծաց: (Եւ զաւգնականսն երկոսին զՅովհան եւ զՅովսէփ յառաջ արձակէին աւետաւորս առ արքայն եւ առ եպիսկոպոսն Սահակ:)

## Ը. ՀԱՄԵՄԱՏՈՒԹԻՒՆ ՄՈՎՍԻՍԻ ԵՒ ՄԱՇՏՈՑԻ

1. Եւ ոչ այնպէս մեծն Մովսէս զուրթագոյնս ցնծայր յէջս Սինէական լերինն. չասեմք թէ առելովքն պակասագոյն: Քանզի յԱստուծոյ առեալ եւ աստուածագիր հրամանք ի բազուկս այրն աստուածատես ի լեռնէն իջանէր: Այլ վասն վրիժագործ ժո-

51 IJ հրաժարեալք այնուհետեւ եւ չունին միւսները. A 421 հրաժարեալ այնուհետեւ:

52 շ. պարգեւօքն. A շնորհատուր (t շնորհագիւտ) պարգեւելովքն (abԱ պարգեւաւքն). Փաւստ. Գ. 10. «հանդերձ շնորհատուր պարգեւելովն»: Ակ:

53 ա. իւրայիւքն. C որայիւք. IJ ամենայն իրաւք. F իւրովքն A իւրայովքն: Ակ:

53 յանձն եղեալ չունին: IJ A:

53 ի շնորհացն Աստուծոյ. IJ Քրիստոսի շնորհացն: A:

54 BIJA եւ այնպէս զբազում (BAat բազում). չունին այլք:

54 զօթեւանօք: BA: Հմմտ. Ն. 88:

54 IJ ողջութեամբ A առողջութեամբ չունին միւսները:

55 աջողութեամբ IJA(b)R եւ յաջողութեամբ RA (ոմանք) չունին եւ:

55 IJ հոգալից:

56 AԱBt աշխարհ:

57 IJ ի վեցերորդի... արքայի:

57—60 Փակագծի մէջ լրացուցի պակաս մը, որ կ'երեւայ հոս, յեցած Փաւստոսի (Գ. 12) հետեւեալ տեղիքի վրայ. «Եւ զիշխանսն երկոսին... յառաջ արձակէին աւետաւորս առ արքայն»: Կորիւն Ը. 2 ակնարկութիւն մ'ունի «աւետաբերաց» մասին:

Ը. BCDEF(Գ. 10)IJ:

1 IJ Մովսէս մեծն:

1 Մովսէս զուարճանայր յէջս. FIJ զուարթագոյն (IJ զուարթագոյնս) ցընծայր յէջս F յէջսն):

2 F (ի) սինէական լեռնէն. միւսները սինէական լերինն:

2 Հմմտ. Ավ 213 ի գլուխ սինէական լերինն. 277 ի սինէականն լերին իջեալ ամպով. 159 ի վեր ի սինէական լերինն. 268 զէջս Հոգւոյն սրբոյ յերկնից»:

2 F չասէաք:

2 առաւելօքն. F առաւելովքն IJ առելովքն:

2 BC պակասագոյնք:

3 IJ քան չունին զի:

3 հրաման. F հրամանօքն: IJ:

3—4 F այր աստուածատեսիլ: Հմմտ. Ավ 149, 157 աստուածատես մարգարէք:

4 վրէժագործ: F:

4—9 Այլ վասն — թախծութիւն չունին IJ:

ղովրդեանն, որոց զթիկունս ի տէրունիսն եւ կործան յերեսս՝ տիրադրուժք իւրեանցակուռ ձուլածուին երկիր պագանէին եւ նովին զհրամանաբերն սրտառուչ, սրտաբեկ կացուցանէին: Քանզի ի տախտակացն խորտակելոց յայտնի երեւէր բերելեացն թախծութիւն:

2. Իսկ այսմ Երանելւոյ, վասն որոյ ճառեալքս յարդարին, ոչ ըստ այնմ աւրինակի որ անդն՝ գործեցաւ. այլ ինքն իւրովքն լցեալ հոգեւոր մխիթարութեամբ՝ կարծեալ զընդունելեացն զյաւժարութիւն եւ ընդունելոցն յուսով ուրախութեան դիտաւորութիւն ճանապարհացն աւետաբերաց:

3. Բայց մի ոք յանդգնագոյն վասն ասացելոցս զմեզ համարեսցի, թէ զիա՛րդ զայր մի խոնարհագոյն ընդ մեծին Մովսիսի ընդ աստուածախաւսին, սքանչելագործին նմանեցուցեալ հաւասարեցաք. որով թերեւս ստգտանիցիմք: Եւ կարեմք ա՛յլ

5 D որոյ:
5 թիկունք: F:
5 յերկիր: F:
5 Հմմտ. Եզեկ. Ը. 16. «Որոց զթիկունս ի տաճարն Տեառն դարձուցեալ էր եւ զերեսս ընդ արեւելս եւ երկիր պագանէին արեգականն»:
6 յիւրեանց կուռս: FRՆ 91:
6 F ձուելոյն: Հմմտ. Ելք ԼԲ. 4. «Որթ ձուլածոյ»:
7 զնորին զհրամանաբերն: F: Հմմտ. Ավ 168 «եւ ամենայն իսկ հրամանաբերքն՝ իբրեւ յերեսաց Տեառն եկեալ բարձրաբարբառ ընդհանուր աղաղակէին»:
7 LOP լացուցին. MDCR կացուցին: FՆ (92):
7 Հմմտ. Ավ 240. ողեսպառ սըրտաբեկ. իսկ սրտառուչ սրտաբեկ. Սեբեր. 120. Ոսկ. Պաւղ. Բ. 563: Ոսկ. Ես. 221:
8 F խորտակելոցն:
8 եղեալ տեսանէր: F:
8 բերելւոյն. BC բերելոցն DE բերելոյն: F:
9 թախծութիւնն. D թախծութեանն: F:
9 Հմմտ. Ա. Մակաբ. Գ. 16—17. «Զի տեսիլն եւ գոյն երեսացն ցուցանէր զսրտին թախծութիւն... յայնմ ամենայնէ յայտնի էր տեսանելեացն՝ [զ]սրտին տաղտուկ»:

10 այսր. F այս IJ այսմ:
10 F երանելւոյս:
11 IJ չունին ոչ:
11 F անդ DE անդէն IJ անդր:
11 գործեցան: FIJ:
11 IJ այլ եւ:
12 IJ ուրախութեամբ:
12 զընդունելոցն. R զընդունելւոցն. IJ ընդունելեացն: F: Հմմտ. Ավ 259. «ի չընդունելեացն թշնամանեալք»:
13 յօժարութիւնն. BC զյօժարութիւնն: IJ կարծել զյօժարութիւն ընդունելեացն: Հոս կ'ընդհատին IJ:
13 BCDE ընդունելոց: S ընդունելեաց. R ընդունելւոցն. F չունի եւ ընդունելոցն:
13 F չունի ուրախութեան:
13—14 դասաւորութիւն. B դատաւորութիւնն: F:
14 F զճանապարհաց: Հմմտ. A 415 «եւ հանդերձեցան դէտ ունել ճանապարհացն»:
14 աւետաբեր: F:
15 F չունի բայց — հաւատովք:
15 ասացելոցն: Ակ:
16 Մովսէսի: Ակ:
17 եւ չունին: Ակ:
17 B սքանչելագործի:
18 հաւասարեաց: Ակ:
18 ստգտանիցեմք. BC զգտանիցեմք: Նհ. 161:
18 B կերեմք C կրեմք:

ուելի հաւատովք. քանզի եւ չկայ ինչ ի վերայ՝ յայտնեւք եւ ծածկելովք զԱստուածականն խօսել. քանզի ի միոյն միայնոյն Աստուծոյ ամենազաւրէ առ ամենայն ազգս երկրածնաց շնորհք մատակարարին:

Թ. ՍԿԻԶԲՆ ԴՊՐՈՒԹԵԱՆ ՀԱՅՈՑ

1. Եւ արդ եկեալ Երանելւոյն մերձ ի Թագաւորական քաղաքն՝ ադդ լինէր Թագաւորին եւ սրբոյ Եպիսկոպոսին: Որոց առեալ զամենայն նախարարազունդ աւագանւոյն ամբոխ ի քաղաքէն ելեալ (ի դաշտն յայնկոյս Տափերական կամրջին ընդ առաջ լինէին նմա ամենայն բազմութեամբ. եւ) 32 պատահեալք Երանելւոյն զափամբ Ռահ գետոյն. եւ (ողջոյն) տուեալք զցանկալի ողջոյնն միմեանց՝ (անցեալ ընդ կամուրջն Տափերայ) բարբառովք ցնծութեան եւ երգովք հոգեւորաւք եւ բարձրագոյն աւրհնութեամբք ի քաղաքն դառնային. եւ զաւրն տաւնական ուրախութեամբ անցուցանէին *:

2. **Ապա առեալ երանելի հոգեբարձուացն զյանկարծագիւտն խնդրէին, հայցէին (այնուհետեւ) յարքայէ մանկունս մատաղս, որով զնշանագիրսն արծարծել մարթասցեն: Եւ յորժամ բա–

19 F չունի եւ չկայ ինչ ի վերայ:

20 LOP ծածկականօք BCDE ծածկանօք: MF:

20 քանզի միոյն (BC միայնոյն) Աստուծոյ ամենազօրի շնորհք մ.: F քանզի միոյն միայն յամենազօրէն առ ամենայն ա. ե. շնորհք մ.: Ակ: Հմմտ. Աւ 131. «վասն մեծի միոյ միայնոյ բարերարի»:

22 F մատակարարէին:

Թ. 1 յիշելին. բայն եկեալ կը պահանջէ սեռ. տէր բայի. ուստի յիշելւոյն. Կորիւն սովորաբար Երանելի կը յորջորջէ իր ուսուցիչը. ուղղեցի երանելւոյն:

2 E ի քաղաքն Թագաւորական:

3 BC ամբոխին քաղաքին:

5 պատահէին: Ակ:

6—8 եւ զցանկալի ողջոյնն միմեանց տուեալ, ուստի եւ բարբառօք ցնծութեան եւ երգօք: Ակ:

8 DE բարձրաձայն:

9 զաւուրս. ուղղեցի զաւրն:

10 Հմմտ. A 21. «ուրախութեամբ (զաւուրս) գրտաշունչ... սառնամանեացն անցուցանէին». Ն. 95:

10 * Այս տեղ զետեղուած է ձեռագրին մէջ (տպ. 21, տ. 23—22, տ. 2) հատուած մը, կ'ենթադրեմ թուղթի մ'եռեւառաջութեամբ, զոր կը փոխադրեմ ԺԱ. 4:

11 ** Այս Թ. 2 հատուածը ձեռագրին մէջ (տպ. 17, տ. 19—27) էր Զ. 1 հատուածին վերջը. կը փոխադրեմ այս տեղ, ինչպէս կը պահանջէ կարգը:

11 հոգարարձուացն. BC հոգիբարձուացն. IJ հոգեբարձացն: Բառս երեք ձեւով ալ գործածուած է նախնեաց քով, այս ինքն հոգաբարձ, հոգեբարձ, հոգաբարձու, հոգեբարձու, հոգաբարձեմ, հոգեբարձող, հոգաբարձութիւն, հոգեբարձութիւն: Ես կ'ընտրեմ հոգեբարձու:

11 BS զյանկարծագիւտ:

12 CS խնդրելին:

12 հ. եւս. չունին IJ:

13 որով. իմացիր զի նոյա:

13 բառ մը դուրս ինկած է հոս Bի մէջ. IJS ունին արծարծել:

13 մարթեսցեն IJ մարթասցեն:

զումք ի նոցանէ տեղեկանային (նշանագրացն). ապա հրաման տայր ամենայն ուրեք նովին (նշանագրաւք) կրթել: Որով եւ արժանի եղեւ երանելին յատուկ խսկ վարդապետութեան գեղեցիկ վարուք հասանել: Եւ իբրեւ ամս երկուս կարգեալ զվարդապետութիւն իւր նովին նշանագրաւք տանէր:

3. Եւ ի ձեռն առեալ այնուհետեւ (երանելի հոգեբարձուացն) աստուածապարգեւ մշակութեան զաւետարանական արուեստն. (եւտուն զանձինս ի գործ) ի թարգմանել, ի գրել եւ յուսուցանել: Մանաւանդ հայեցեալ եւս իբրեւ ի ցուցող հայելի՝ ի տեառնաբարբառ բարձրութիւն տուչութեան հրամանացն, որ առ երանելին Մովսէս եկեալ վասն ամենայն իրացն եղելոց եւ աստուածեղէն պատգամացն աւանդելոց, մատենագրել առ ի պահեստ յաւիտեանցն, որ գալոցն իցեն: Նոյնպիսիք եւ այլոց մարգարէիցն հրամայեալք. «Առ, ասէ, քարտէս նոր մեծ եւ գրեա ի նմա գրչաւ գրչի ճարտարի»: Եւ այլուր, թէ «Գրեա զտեսիլդ ի տախտակի

15 նովին լրացուցի նշանագրաւք. տե՛ս տ. 18:

15—16 որով եւ յատուկ խսկ վարդապետութեան գեղեցիկ (BCIJ կ'աւելցնեն վարուք) երանելին (չունին IJ) հասանէր. այս տեղւոյ յարասութիւնն է A 12 «որ արժանի եղեւ ի մեծ յեպիսկոպոսական աթոռն հասանել». ասկէ կը լրացնեմ. Որով եւ արժանի եղեւ երանելին յատուկ... հասանել:

17 երկու. BCDEIJ երկուս:

18 DELMOPRS ունին եւ (նովին):

18 նշանագրովք. այսպէս բոլորը փոխ. նշանագրաւք:

19 կը շարունակուի տպ. 22, 2:

20 BC մշակութեան, այլք մշակութեամբ. բնագիրը խանգարուած կ'երեւայ հոս. Ղ. Փարպ. ունի «սկիզբն առնել գործոյ մշակութեանս այսմիկ... եւ (Սահակ) զանձն ի գործ». տեղիքս թոյլ կու տայ բնագրին տալ այսպիսի իմաստ. վերականգնել այսպէս. «Եւ ի ձեռն առեալ այնուհետեւ (երանելի հոգեբարձացն) զաւետարանական արուեստն (սկիզբն առնել) աստուածապարգեւ մշակութեան, (տուեալ զանձինս ի գործ) ի թարգմանել...»: Փարպ. «Ետ զանձն ի գործ» կը գտնեմ նաեւ Եւթաղ. 193. «Ետու զանձն ի գործ»:

20 BC զաւ. արուեստին:

21 եւ չունին BC:

22 եւս չունին. հմմտ. Ակ 363. «մանաւանդ հայեցեալ եւս ի կատարումն եկեղեցեացն». այսպէս նաեւ Կորիւն, ժէ. 2: Ն. 98:

22 իբրեւ ի ցուցող հայելի չունին: A 469:

23/24 ի տեառնաբարբառ (A յաստուածագիր) հրամանացն բարձրութիւնն որ առ երանելին Մովսէս եկեալ: A:

24 եւ ա. BA. չունին միւսները:

24/25 յաստուածեղէն: BCA:

25 պ. բարձրութիւն. C բարձրութիւնն. չունի A:

25 աւանդելոցն. BA աւանդելոց:

25 առ (ի) չունի A:

26 էին. A են A(d) իցեն:

26 Հմմտ. Բ. Օր. ԼԱ. 19—24. «Եւ արդ գրեցէք զբանս օրհնութեան...»:

26 BC նոյնպիսիքն:

27 D համարեալք A հրամայեալ:

27 քարտէզ բոլորն եւ A: Եսայի չունի քարտէս այլ տոմս. հոս հետեւած է Երեմիայի:

28 չունին ճարտարի: A Ես.:

28 Հմմտ. Ես. Ը. 1. «Առ դու քեզ տոմս մի նոր մեծ եւ գրեա ի նմա գրչաւ առն ճարտարի»: Երեմ. ԼԶ. 2. «Առ դու քեզ քարտէս մատենի եւ գրեա ի նմա զամենայն զբանս, զոր հրաման ետու քեզ»:

*եւ ի գիրս հաստատեա. զի որ ընթեռնուն՝ համարձակ ընթեռնուցու»: Իսկ Դաւիթ յայտնագոյնս եւս վասն ամենայն ազգաց զվիճակ աստուածատուր Աւրինացն նշանակէ ասելովն, թէ «Գրեսցի այս յազգ յայլ». եւ թէ «Տէր պատմեսցէ գրովք ժողովրդոց»: Զոր եկեալ կատարեաց ամենափրկիչն Քրիստոս շնորհատուր հրամանաւն, եթէ «Ելէք ընդ ամենայն ազգս». եւ եթէ «Քարոզեսցի աւետարանս ընդ ամենայն տիեզերս»: Ուստի եւ երանելի հարցն մերոց համարձակութիւն առեալ՝ յուսալից փութով եւ երեւելի եւ արդիւնակատար ըստ աւետարանին զիւրեանց մշակութիւնն ցուցանէին:*

4. *Յայնմ ժամանակի երանելի եւ ցանկալի եւ անպայման սքանչելի լինէր երկիրս Հայոց. յորում յանկարծ ուրեմն Մովսէս աւրէնսուսոյց հեբրայական բանակին՝ ամենայն մարգարէական դասուն եւ յառաջադէմն Պաւղոս բովանդակ առաքելական դընդաւն՝ հանդերձ աշխարհակեցոյց Աւետարանաւն Քրիստոսի միանգամայն եկեալք, հասեալք եւ երեւեալք՝ ի ձեռն երկուց հա–*

29 չունին *զի — ընթեռնուցու*: A:

29 *Ամբ. Բ.* 3. «*Գրեա զտեսիլդ զայդ յայտնապէս ի տախտակս. զի որ ընթեռնուն՝ համարձակ ընթեռնուցու*»: *Ես. Լ.* 8. «*Արդ նիստ եւ գրեա ի տախտակի եւ ի գիրս. զի եղիցի այդ յաւուր խւրում եւ ի ժամանակս յաւիտենից*»: Հոս երկու տեղիքներս ի մի ձուլուած են:

30 *յայտնապէս*: A:

32 չունին *այս*: A: — BCA *այլ*: Aa:

32 *Սաղմ. ՃԱ.* 19. «*Գրեսցի այս յազգ յայլ*:

32—33 չունին *եւ թէ — ժողովրդոց*. ունի միայն A:

33 *Սաղմ. ՁԶ.* 6. «*Տէր պատմեսցէ գրովք ժողովրդեան*»:

34 A *թէ*:

34 Հմմտ. *Մատթ. ԻԸ.* 19. «*Գնացէք այսուհետեւ աշակերտեցէք զամենայն հեթանոսս*: Հմմտ. նաեւ *Ակ* 370. «*Ելէք ընդ ամենայն հեթանոսս*» (= *ազգս*.). եւ 342. «*Ելէք ընդ ամենայն աշխարհս, աշակերտեցէք զամենայն լեզուս*»:

35 *Մատթ. ԻԴ.* 14. «*Քարոզեսցի աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս*». հմմտ. նաեւ *Մատթ. ԻԶ.* 13. *Մարկ. ԺԴ.* 9:

37 A չունի *եւ եր.*:

38 *ցուցանեն*. A *ցուցանէր*. հմմտ. Ն. 168. *Վարդանեան*, *Եւթաղ*, 168:

39 *եւ* չունին: A:

40 Հմմտ. A. 378. «*տեսանել եւ լսել զանպայման սքանչելիս*» եւ Ն. 275:

40 *ցանկալի աշխարհս Հայոց անպ. սք. լինէր*: A 447:

40 *աշխարհս*. A *երկիրս*. հմմտ. տող 47 «*քանզի երկիր*»:

40 *անկարծ*: AS:

40 BC *որում*:

41 *օրէնուսոյց* (B *յօրէնս ուսոյց* E *օրէնսուսոյց* D *օրէնս ուսոյց*) *Մովսէս մ. դ.*: A:

41 չունին *հեբրայական բանակին ամենայն*: A:

42 A 447/48. «*Որպէս զՄովսէս, որ յանկարծ ուրեմն օրէնսուսոյց հեբրայական բանակին լինէր ամենայն մարգարէական դասուն եւ կամ իբրեւ զյառաջադէմն . . .*»:

42 Հմմտ. *Գործք Առ. Ա.* 14. «*յառաջադէմ էի ի հրէութեանն քան զբազում հասակակիցս իմ*». եւ *Փիլիպ. Գ.* 13.

43 *գնդովն*: A:

43 B *աւետարանաւ*:

44 *եկեալ, հասեալ*. չունին *երեւեալ*: A *եւ սա եկեալ հ. երեւեալ*: BC *հասեալք եւ երեւեալք* (չունի C): *Ակ*:

*ւսաարելոցն Հայաբարբառք, Հայերէնախաւսք գտան: Անդ էր այնուհետեւ սրտալիր ուրախութիւն եւ ակնավայել տեսիլ Հայեցողացն: Քանզի երկիր — որ եւ Համբաւուցն անգամ աւտար էր կողմանցն այնոցիկ, յորում ամենայն աստուածագործ սքանչելիքն գործեցան, — առժամայն վաղվաղակի ամենայն իրացն եղելոց խելամուտ լինէր. ոչ միայն առ ժամանակաւն պաշտեցելոցն, այլ եւ յառաջակարգ յաւիտեանցն եւ առ յապա եկելոցն, ե՛ւ սկզբանն ե՛ւ կատարածի ե՛ւ ամենայն աստուածատուր աւանդութեանցն:*

5. *Իսկ իբրեւ զչափ առեալ զիրացն հաստատութեան, եւս համարձակագոյն եւ առաւելագոյն զաշակերտութիւն նորագիւտ վարդապետութեանն խմբէին՝ ուսուցանել եւ թեքել եւ պատրաստական քարոզութեանն անդէտ մարդկան յաւրինել: Որ եւ ինքեանք իսկ ի կողմանց կողմանց եւ ի գաւառաց գաւառաց Հայաստան աշխարհին յորդեալք եւ դրդեալք հասանէին ի բացեալ*

47 B *հայցելոյն* C *հայելոյ* S *հայելւոյն*. A (402) *հայեցելոցն* A այլ ձեռագիրք *հայեցելովքն*, *հայեցողաց*: Հմմտ. *Կիւրղ Կոչ. Ընծ.* 46. «*աչք հայեցող*»:

47 C *երկիրն*: — B չունի *որ*: — *Եւ* չունին (նաեւ Ab): A:

47 *Համբաւուցն*. CE *Համբաւուց*: A ոմանք *Համբաւուց*, այլք *Համբաւոյն*. բնագիրն *Համբաւուցն*: Բառս *Համբաւ* կը հոլովի *-ոյ* (*Գ. Թագ. Ժ.* 7. «*ամենայն Համբաւոյն*». *Ես. ԾԲ.* 7. «*Համբաւով նեղութեան*». *Ովս. Է.* 12. «*լուր Համբաւոյ*». *Եփրեմ, Բ.* 125: Կայ նաեւ *Սղմ. ՃԺԱ.* 7. «*ի Համբաւէ չարէ*». *Եզնիկ*, 257. «*բարւոք Համբաւաւ*». նաեւ *Ոսկ. Մատթ.* 54, 376: Իսկ յոգ. սեռ. բաց. *Երեմ. ԾԱ.* 46. «*ի Համբաւացն*». *Եւագր.* 81 «*բարի Համբաւացն* (ոմանք *Համբաւուցն*) *Համարք*». անդ, «*ի Համբաւուց* (այլք *-աց*), 92, *վասն Համբաւոց* (այլք *Համբաւաց*)» եւն: Կը պահեմ հոս եւ այլուր *Համբաւուցն*:

47 B *ակամ*:

49 *սքանչելագործութիւնք*: A: Համեմատէ *Ավ* 265. «*աստուածագործ սքանչելիք*»: Դասականք կը սիրեն *սքանչելիք*, նաեւ տեղ տեղ *սքանչելութիւն*. անսիրելի է *սքանչելագործութիւն*:

49 A չունի *ամենայն*:

50 *եղելոցն*: AՁ:

50 *լինէին*: A:

50 *ոչ միայն ժամանակաւ*. նաեւ AbԱԲ: A: Հմմտ. *Ավ* 300. «*առ Մովսիսեան դարին*»:

50 C *պաշտեցելոյն* A *պաշտելոյն*:

51 *յառաջագոյն յաւիտենիցն*: A: Հմմտ. *Ավ* 275. «*զխորհուրդ նախակարգ յաւիտեանցն*» եւ *Ն.* 99:

51 *եւ ապա եկելոցն*. B *ապա եկ սկզբանն* C չունի *ապա եկելոցն*. A *եւ յապա*: Հմմտ. *Եւթաղ*, 84, 167:

52 չունին *եւ* (*սկզբ.*): A:

52 BC *եւ ամէն*:

54 C *չափ*: A 402—403:

54 BC *հաստատութեանն*: Հմմտ. *Ա. Մակաբ. Բ.* 34. «*իբրեւ եհաս թագաւորն յիրացն հաստատութեան ի վերայ*»:

54 *եւս*] *եւ*. չունին AR: *ՆՀ.* 163:

55 *զաշակերտութիւնն*. նմանապէս A (ոմանք): AR:

56 B *հմբէին*:

56 A չունի *եւ*: — R *քարոզութեան*:

57 A *մարդկանն*:

57 *որոց* նաեւ A (ոմանք), At *որով եւ*: A (*ձձ.*):

58 DE չունին *իսկ*:

58 *կ. կողմանց, գ. գաւառաց* չունին: A:

59 B *գրեալք* C *գրկեալք*. փոխ. *դրդեալք*:

աղբիւրն գիտութեանն Քրիստոսի։ Քանզի յԱյրարատեան գաւառին, ի Թագաւորական կայանսն բղխեցին Հայոց 33, տանն Թորգոմայ, շնորհք պատուիրանացն Աստուծոյ։ Անդ էր յիշելի եւ մարգարէականն, եթէ «Եղիցի անդ աղբեւր բացեալ տանն Դաւթի»։

6. Որ եւ սկսան իսկ սուրբ եկեղեցւոյ միջամուխ ձեռամբ զգործ աւետարանչացն Քրիստոսի գործել. գումարել ի կողմանս կողմանս, ի գաւառս գաւառս, ի տեղիս տեղիս Հայաստան ազգին դասս դասս զաշակերտելոցն ճշմարտութեան, զհաստուցելոցն ի կատարումն գիտութեան, «բաւականս առնել զայլսն ուսուցանելոյ»։ Որոց կանոն եւ աւրինակ զիւրեանց անձանց արդասիս եդեալ եւ պատուիրեալ կալ ի նմին կանոնի։

7. [Եւ իւրեանց անձանց անդրէն փոյթ ի վերայ ունէին

60 Աստուծոյ։ A շնորհաց գիտութեանն Քրիստոսի. բայց A 402. «բացեալ լինէր աղբիւր գիտութեանն Քրիստոսի»։ Հմմտ. Ավ 201. «զի ինքնակամ դիմեսցեն ի բացեալ աղբիւրն կենաց»։

61 ի կայս (B ի կաս) թագաւորացն եւ (E չունի եւ) քահանայապետացն (D -տիցն). A ի թագաւորանիստ (այլ ձձ. ի թագաւորական) կայանսն։ A 88. «յարքայական կայանին (Ե կայենին), ի նմին թագաւորականին (այլք թագաւորացն) ի Վաղարշապատ քաղաքի»։

61—62 չունին տանն Թորգոմայ։ A։

62 A. շ. քարոզութեան աւետարանին պ. Աստուծոյ։ Հմմտ. F Գ. 5. «Զի լիցին նոքա ի լուսաւորութիւն գիտութեանն եւ աղբիւրք հոգեւոր իմաստութեան Հայաստան աշխարհիս. եւ ի նոցանէ բղխեսցեն շնորհք պատուիրանացն Աստուծոյ»։

63 Հմմտ. Ավ 188 ի մարգարէականսն հայեցեալ, 187, 196, 202, 230 «առ ի կատարելոյ զմարգարէականսն» եւն։

63 աղբիւր բղխեալ ի տան։ Ակ։

63 Զաք. ԺԳ. 1. «Եղիցի աղբիւր բացեալ տանն Դաւթի»։ Այլ ձեռագիրք կը կարդան. «Եղիցի ամենայն տեղի բացեալ տանն Դաւթի աղբիւր։ Հոս աղբիւր Որոգինեան յուսանցագրութիւն մըն է «ամենայն տեղի» բառերուն դիմաց, համաձայն Եբրայականին։ Յամենայն դէպս անհարազատ է «բխեալ ի տան» ընթերցուածը. տե՛ս վերը տող 60։

64 հմմտ. Գաղատ. Բ. 9. «Որ կարծեալ սիւնքն էին». Ա. Տիմոթ. Գ. 15. «Սիւն եւ հաստատութիւն ճշմարտութեան». Ավ 353—354. «Առաքեալքն, բուն սիւնքն հաստատունք... արդ բուն սիւնքն, առաքեալքն, ամոլքն»։

64 BC ի միամուխ։

65 B աւետարանչաց։

66 ի կողմանս, ի գաւառս։ Ակ։

67 BCLS դասս դասս. միւսները դաս դաս։

67 զաշակերտեալսն ճշմարտութեանն։ Ակ։

67 զհաստուցելոցս։ C։

68 ի կատարումն։ Ակ։

68 B գիտութեանցն։

68 BC բաւականսն R բաւական։

68 բ. եւ առ ի։ Ակ։

68 զեկուցանելոյ։ Անգամ մը միայն (Գործք Առ. ԻԵ. 14. «Փեստոս զեկոյց արքային») գործածուած դասական գրականութեան մէջ զգացուցանել իմաստով, հոս անտեղի։ Ակ։

68 հմմտ. Բ. Տիմոթ. Բ. 2. «Որք բաւական իցեն եւ զայլս ուսուցանելոյ»։ Ավ 343. «բաւական լիցին ուսուցանել զհրամանս Աստուածութեանն»։

71—78 անհարազատ կ'երեւայ։ Տես Ծան. 34։

71 Եւ իւրեանց անդէն (BCDՁ անդրէն) զառընթերակաց. չունին անձանց փոյթ ի վերայ ունէին։ Հմմտ. A 412. «Եւ յայնմհետէ փոյթ ի վերայ ունէր (Գրիգոր)... վարդապետել». եւ 441. «փոյթ ուսման ի վերայ ու-

զաւրնթերակաց արքունիսն հանդերձ մեծամեծ աւագանւովն եւ ամենայն ազատագունդ բանակաւն աստուածեղէն իմաստութեամբն վարդապետել: Առեալ երանելւոյն Սահակայ զՄամիկոնեան որեարն՝ ի վարժս վարդապետութեանն պարապեցուցեալ· որոյ առաջնոյն Վարդ(ան) անուն էր, որ եւ Վարդական կոչէր 34: Նոյնպէս եւ զամենայն ոգի ջանայր յերկիւրել, «հաստւցանել ի գիտութիւն ճշմարտութեան»:]

ԺԱ· ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԸՆԹԱՑՔ ՄԱՇՏՈՑԻ Ի ԳՈՂԹՆ ԵՒ Ի ՍԻՒՆԻՍ

1· Յետ այնորիկ առնոյր խորհուրդ հաւանութեան երանելին Մաշտոց, որպէս զի տէրն Եպիսկոպոսն ի կայենականսն 35 եւ նա ի սփիւռս հեթանոսաց զբանն կենաց սերմանիցեն: Եւ հրաժարեալ ի նոցանէն հանդերձ այլովք եւս աւգնականաւքն, որոց առաջնումն Տիրայր անուն ի Խորձենական գաւառէն 36, եւ երկրորդին

նէր... սնուցանել»· F Գ· 5· «ուսմանց գրոց փոյթ ի վերայ կալան ուսուցանել»· հետեւողութեամբ Կորիւնի, Ժ· 2· «եւ այնչափ փոյթ ի վերայ ունէր առ ի դայեկաբար սնուցանել»:

72 BC արգունսն փոխ· արքունիսն:

73 Հ· ամենայն ազատագունդ բանակիւն (BC բանակին) աստ·: չունին մեծամեծ աւագանւովն եւ ամենայն: A:

74 վարդապետեալ· A վարդապետէր:

74 առեալ· A առնոյր: Ն· 76:

75 B Մամիկոնեան:

75 D վարդապետութեան:

76 որոց· BC որոյ· A ոմանք՝ որոց, այլք՝ որոյ:

76 BC Վարդ կոչիւր: ԺԸ· 2· «դուստր, որ էր կին Վարդանայ, զոր ի վերոյն յիշեցաք»:

76 Վարդկան· B Վարդական CD Վարդան:

77 BC ջանալ: Հմմտ· Ոսկ· Մատթ· 261· «վասն այնորիկ եդ զայն ամենայն երանութիւնսն՝ առ ի յորդորել եւ յերկիւրել զմիտս լսողին»:

76/77 B ի գիտութիւնն:

78 հմմտ· Ա· Տիմ· Բ· 4· «ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն»· անդ, Գ· 7· «եւ երբեք ի գիտութիւն ճշմարտութեան ոչ հասանեն»:

Ժ· 1 առնոյր հաւանութիւն: A 403· «առնոյր այնուհետեւ խորհուրդ հաւանութեան (Գրիգոր) ընդ թագաւորին»· 459· «Տրդատ խորհուրդ առնոյր վասն ճանապարհացն այնոցիկ»· նաեւ Ակ 155· «ազգին բազմացելոյ խորհուրդ առեալ... աշտարակ շինելոյ»: Ակ:

2 D չունի զի: — տէր· BC տէրն: Հմմտ· Փաւստ· Զ· 9· «Օրհնեա, տէր եպիսկոպոս»· եւ Դ· 51· «խօսել սկսան ընդ Ներսէսի եւ ասեն· Դու, Տէր, քեղէն գիտես...»:

3 B սերմանեցին· C ուղղած սերմանիցէ:

3 հմմտ· Գաղատ· Բ· 9· «Յակոբոս եւ Կեփաս եւ Յովհաննէս... ձեռն ետուն հաւանութեան ինձ եւ Բառնաբայ, զի մեք ի հեթանոսս եւ նոքա ի թլփատութեան» զբանն կենաց սերմանիցեմք· եւ Յովհ· Է· 35· «Միթէ ի սփիւռս հեթանոսաց երթիցէ եւ ուսուցանիցէ զհեթանոսս»:

3 D հրաժարեալք:

4 B այլօք: — եւս] D եւ: — S չունի այլովք եւս:

5 C հորձենական· Փարպ·՝ Տէր ի Խորձենոյ:

Մուշէ անուն ի նահանգէ Տարաւնոյ[37], որք էին սուրբք եւ զուարթագոյնք, հանդերձ այլովք եւս սպասաւորաւք աւետարանին, զորս չէ ոք բաւական ըստ իւրաքանչիւր անուանց նշանակել։ Որովք յանձն եղեալ Երանելին շնորհացն Աստուծոյ՝ երթեալ իջանէր յուոստաստակն Գողթան[38], յառաջին դաստակերտն իւր։ Եւ անդ ընդելական սովորութեամբն ի կիր արկեալ զվարդապետութիւնն՝ հաւաստրութեամբն բարեպաշտին Շաբիթայ, լի առնէր զգաւառն ողջունիւ աւետարանին Քրիստոսի։ Եւ կարգէր յամենայն գեւղս գաւառին դասս դասս վանականաց։ Որում եւ հասեալ ժամանեալ հաւրաբարուին Գտայ, որդւոյ Շաբիթայ, առն քրիստոսասիրի, բազում սպասաւորութիւնս իբրեւ հաւասար որդւոյ՝ Վարդապետին տանէր։

2. Ապա յետ այնորիկ ի սահմանկից ի Սիւնական աշխարհն[39] ելանէր։ Եւ անդ աստուածասէր հնազանդութեամբ ընկալեալ զնա իշխանին Սիւնեաց, որում Վաղինակ անուն[39]։ Բազում աւգնականութիւնս գտեալ ի նմանէ վասն իրացն առաջի արկելոց, մինչեւ հասանել նմա բովանդակ ի վերայ սահմանացն Սիւնեաց։ Եւ ժողովեալ մանկունս առ ի նիւթ վարդապետու-

6 CL Մուշեղ. Փարպ.՝ Մուշէ ի Տարօնոյ։ — R նահանգէն։ — Տարօնոյ։ Փարպ. եւ RS տարօնոյ։

7 հմմտ. Գործք Առ. ԺԱ. 24. «Զի էր (Բառնաբաս) այր զուարթամիտ եւ լի Հոգւով սրբով եւ հաւատովք»։

7 BC այլօք։

8 զոր Aáá զոր եւ զորս։

8 չեմք բաւական ըստ անուանցն։ A 427։ Հմմտ. վերը Բ. 6։

9 որով. AS որովք։

10 առ ոտս տանն. BC առ ոտստակն R առ ոստանն AS յՌոստաստակն։ Տես Ծան. 38։

11 A 432 իսկ նա անդէն եւ անդ։

11 A ի գործ արկեալ։

12 Aáá հաւաստրութեամբ եւ միաբանութեամբ։

12 A բարեպաշտ արքային Տրդատայ։

12 B շաբաթա C շաբաթու։ Ակ։ Հմմտ. Դ. 1։

13 A 427. որ ընդ պատահելն իսկ լի առնէր զամենեսեան ողջունիւ աւետարանին Քրիստոսի։

14 դասս սրբոց վ.։

15 հայրաբարուին։ Հմմտ. Ավ 299. «Եցոյց նոցա հայր շնորհաց զծնողն իւր, եւ եդ բանս ի բերան՝ հայր կոչել զնա անձանց. եւ եցոյց զբարերարութիւն Հօր իւրոյ նոցա, զի հաւրաբարոյ բարերարութեամբն լիցին արժանի ճշմարիտ Որդւոյն եղբայր անուանել»․ եւ Փաւստ. Դ. 4. «արդարեւ հայրաբարոյ (կարդա՛ հաւրաբարոյ) գտանէր ամենաբարի»․ այսպէս նաեւ հաւրամոյն։ Ակ։ Հմմտ. Ն 104 եւ 289—290։

15 շաբաթայ. տե՛ս տող 12։

16 սպասաւորութիւն։ Ակ։

16 հաւասարի ո. C ուղղած է հաւատարիմ։ Ուղղեցի հաւասար. իմացիր նման որդւոյ, որպէս որդի։

17 սպասաւորութիւն... տանէր։ Այլուր չէ գործածուած այս ասացուածքը. կ'առաջարկեմ տանէր ուղղել հարկանէր, ինչպէս երկիցս կիրարկած է Կորիւն, եւ կամ մատուցանէր։

18 սահմանակիցս։ A 409։

21 որ էր Վ. անուն։ Ակ։ Տես Ծան. 39։

21 օգնականութիւն։ DE։

21 ի նմանէն։ Ակ։

21—22 արկելոցն։ R։

22 սահմանաց։ A 436։

23 B ժողովել։

*թեանն. եւ առեալ զգազանամիտ, զվայրենագոյն, զճիւաղաբարոյ կողմանցն զաշխարհաբնակսն իւր զառաջեաւասունս, ձեռնասունս առնէր: Եւ այնչափ փոյթ ուսման ի վերայ ունէր առ ի դայեկաբար սնուցանել եւ խրատել, մինչեւ ի նոցունց իսկ ի վայրենեացն եպիսկոպոս, տեսուչս*[40] *եկեղեցւոյն Սիւնեաց կարգել, որոյ առաջնոյն անուն կոչէր Անանիաս*[41], *այր սուրբ եւ երեւելի ի հաւրաբարոյ ժառանգաւորաց եկեղեցւոյ: Ապա եւ զերկիրն ամենայն Սիւնեաց դասուք վանականաց լնոյր**:

### ԺԱ. ՄԱՇՏՈՑ ՅԱՂՈՒԱՆՍ ԵՒ Ի ԿՈՂՄԱՆՍ ՄԱՐԱՑ

1. *Եւ ապա յետ այնորիկ հրաժարեալ (ի նոցանէ)՝ գնալ ի կողմանս Աղուանից. եւ երթեալ իջանէր յաշխարհն (Աղուանից): Եւ հասեալ ի թագաւորական տեղիսն*[42]*՝ տեսանէր զսուրբ եպիսկոպոսն Աղուանից, որում անուն Երեմիա կոչէին, եւ զնոցին թագաւոր, որում Արսվաղէն անուն, ամենայն ազատաւք հանդերձ: Որոց առաւել հպատակութեամբ ընկալեալ վասն անուանն Քրիստոսի:*

24 A 437· «*զի ի գաւառաց գաւառաց եւ ի կողմանց կողմանց ի տեղիս տեղիս ժողովեսցեն բազմութիւն մանկտւոյ առ ի նիւթ վարդապետութեան, զգազանամիտ...*»:

24 *առաւել*. A 441 *եւ առեալ*:

25 *զճ. կողմանցն*. չունին *զաշխարհաբնակսն*: A Ն. 278:

25 չունին *իւր — առնէր*: A:

25 A ոմանք *զառաջեաւասունս*, այլք *զառաջասունս*: *Փաւստ*. Գ. 5· «*որք սնան զառաջեաւ թագաւորին*»:

25 A ոմանք *ձեռնասունս*, այլք *ձեռասունս*, *ձերբասունս*: A 75/76 *ձեռասունք* եւ *ձեռնասունք*:

26 չունին *ուսման*. հմմտ. A 441· *Փաւստ*. Գ. 5· «*Եւ ուսման [գրոց] փոյթ ի վերայ կալան ուսուցանել գնսա*»:

26 *ունելով եւ դայեկաբար*: A 441: Հմմտ. Գ. *Մակ*. Բ. 9· «*իբրեւ դայեկաբար սնուցանել զամենայն կողմանս*»:

29 չունին *առաջնոյն*: A:

29 *անունն*. A 441 *որոյ առաջնոյն Ա. անուն*:

29 D չունի *սուրբ*: — չունին *ի*: Ն. 78:

29 *հայրաբարոյ*. B *հայրաբարւոյ*: Տե՛ս վերը տող 15:

30 BC *ամենայն*. միւսները չունին:

31 BD *վանականացն*. R *Սիւնեաց վանականօք*, չունի *դասուք*:

* Ձեռագրին մէջ կա՛մ թղթերու ետեւառաջութեամբ եւ կամ Վասակ Սիւնւոյ վերաբերեալ հատուածը Սիւնեաց առաքելութեան մաս համարելով հոս բերուած է. «Յորում ժամանակի — ի գործ բերէր» (*տղ*. 25, 1—9): Իսկ էջ 24 ստ. 1 տողին շարունակութիւնն է 30, տ. 16—32, 4 (*Ար*. 70, 13) Մաշտոց Սիւնեաց աշխարհէն Աղուանք կը մեկնի: Տես Ներածութիւն:

5 *ԺԱ*. 5 *Արսվաղ էր անուն*. DEM *արսվաղէ անուն*. R *արսվաղէ*: *Մ. Խոր*. Գ. 54· «*առ Արսվաղէն թագաւոր*». *Մ. Դասխուրանցի Ա*. 15 *Եսուաղէն*: Ն. 112:

6 *որոյ առաւել*: *Ակ*:

2. Ապա հարցեալ ի նոցանէ՝ (ցուցանէր) զառաջի եդեալն, վասն որոյ եկեալն էր։ Եւ նոցա երկոցունց զուգականացն եպիսկոպոսին եւ թագաւորին՝ յանձն առեալ զպրութեանն հնազանդել։ Տային եւս հրաման ի գաւառաց գաւառաց եւ ի տեղեաց տեղեաց իշխանութեանն իւրեանց բազմութիւն մանկանց յարուեստ դպրութեան ածել, ժողովել, գումարել ըստ արժանաւոր եւ պատեհ տեղեաց՝ դասս դասս, եւ դարմանս եւ ռոճիկս կարգել։ Իսկ իբրեւ հրամանն այն արդեամբք եւ գործովք յանկ ելանէր, ապա այնուհետեւ երանելոյն Երեմիայի եպիսկոպոսի ի ձեռն առեալ վաղվաղակի զաստուածեղէն Գրոց թարգմանութիւնս՝ ի գործ արկանէր։ Որով անդէն յական թաւթափել վայրենամիտ եւ դատարկասուն եւ անասնաբարոյ աշխարհաբնակքն Աղուանից մարգարէագէտք եւ առաքելածանաւթք եւ աւետարանաժառանգք լինէին եւ ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ իւիք անտեղեակք։

3. Դարձեալ առաւել եւս երկեւղածն յԱստուծոյ արքայն Աղուանից միամիտ փութով հրաման տայր սատանայակուր եւ դիւամոլ ազգացն կողմանցն այնոցիկ 43 մեծասաստ իշխանութեամբ՝ թափել, գերծանել յունայնավար հնացելոցն սնոտիազգործ պաշտամանցն եւ հնազանդել ընդ ամենահեշտ լծովն Քրիստոսի։

8 առաջի եդեալ։ Աէ։ Հմմտ. ԺԳ. 1. «որ գիրս առաջի եդեալս գրով ցուցանէր կայսեր». եւ Ավ 229. «զի ցուցցէ թէ միակամ ընդ հօր զառաջի եդեալն գործէ». տես Ն. 41։

9 զուգացելոցն. Տ զուգակցելոց, ուղղեցինք զուգականացն, հմմտ. վերը Ա. 6. «զերկոցունց զուգականացն»։

10 հնազանդելոյ։ Աէ։

11 ի գաւառաց եւ ի տեղեաց։ A 437։

13 դպրութեանն։ A։

13 չունին ժողովել։ A։

14 B տեղաց։ A յարժանաւոր տեղիս։

14 դասս դասս դպրոցաց եւ ռոճիկս կարգել ի դարմանս։ Ն. 79 R դպրոցաց կը կարդան դպրաց։ A 437 դասս դասս եւ դարման ռոճկաց կարգել։ F Դ. 4 եւ H ունին դարմանս եւ ռոճիկս կարգել։ Հմմտ. Ն. 152։ Դպրոցաց հաւանօրէն աղաւաղումն է դարմանս բառին, որուն անդրադարձած է ապա գրիչը եւ ուղղած ի դարմանս։ Աէ։

17 զաստուածային գրոց։ Աէ։

18 վայրենամիտ. BC վայրենամարդք. A վայրենամիտքն։

19 դատարկասուն. BC դատարկասունք A –սունքն։

19 աշխարհն. A աշխարհաբնակքն (այլ ձձ. աշխարհքն)։ Ն. 278։

20 հմմտ. Ավ 200. «միանգամայն տիրագէտ եւ հրեշտակածանօթ եղեալ»։

21 հմմտ. Ավ 232. «զի գիտակ էր Որդին ոչ միայն... այլ եւ... զալստեանն իւրում ոչ իւիք անտեղեակ. եւ 148. ծանօթ էին Աստուծոյ, մինչեւ ոտնաձայնին անգամ չլինել անտեղեակ։ Հմմտ. նաեւ A 9 եւ 438։ Ն. 113։

23 սատանայակեր. B սատանակեր. A 410 սատանայակուր։

24 ազգին սաստիւ. A արքայն մեծասաստ իշխանութեամբ տայր հրաման սատանայակուր եւ դիւամոլ ազգացն կողմանցն այնոցիկ թափել եւ գերծանել...։ Աէ։

25 BC յունայնավայր հնացելոյն։

26 եւ հնազանդ լինել (AԱԲ հնազանդել) ամենահեշտ լծոյն (A լծոյ ծառայութեանն) Քրիստոսի։ Իսկ A 59 «զի հնազանդեսցին ընդ ամենահեշտ լծով քով» (այլ տեղիքներ Ն. 113—114)։ Աէ։

4․ * Յայնժամ վաղվաղակի հրաման առեալ ի Թագաւորէն (փութացեալ հասանէր անդր Երանելին, առ ի) սկիզբն առնելոյ (եւ անդ լինել զառաքելական քարոզութեանն զարուեստ մշակութեանն երկովք, աշակերտելով) զխուժադուժ կողմանսն Մարաց 45, որք ոչ միայն վասն դիւական, սատանայակիր բարուցն ճիւաղութեան, այլ եւ վասն խեցբեկագոյն եւ խոշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին առ ի յարդարել: Եւ զնոցա հայրենական հարանցամոյն ծնունդս առեալ պարզախաւսս, հռետորաբանս, կրթեալս, աստուածատուր իմաստութեանն ընդելս եւ ծանաւթս կացուցանէր: Եւ այնպէս միջամուխ եղեալ ի հնազամանս աւրինապատում պատգամացն, մինչեւ բնաւ արտաքոյ իւրեանց հայրենի բնակացն զերծանել:

5․ Եւ յորժամ զայն արարեալ հաւասարութեամբ (երանելի եպիսկոպոսին եւ Թագաւորին) եւ առ հասարակ լցեալ զպիտոյս

* Այս հատուածը «Յայնժամ — զերծանել» զետեղած էր Տպ․ 21, տ․ 23—22, տ․ 2: Փոխադրեցի այս տեղ:

28—30 Այս տեղ տողերու անկում կը տեսնուի․ A 411 ունի ապա փութացեալ հասանէր ի գաւառն Դերջան, զի եւ անդ յառաջասցի լինել զառաքելական քարոզութեանն զարուեստ մշակութեանն երկովք եւ զերծուցանել զնոսա ի գարշելի դիւցական... բարուցն ճիւաղութենէ․ զխուժադուժ կողմանսն աշակերտելով (այլ ձձ․ աշակերտելոյ): Ասկէ հանուած են փակագծի մէջ առնուած տեղիքները․ փոխ․ ի գաւառն Դերջան դրի անդր․ որով իմանալու է հաւանօրէն կա՛մ ի Բաղասական եւ կամ ի Մարաց կողմանս: Տես Ծան․ 47:

31 A դիւցական (նաեւ դիւցապաշտ): Իսկ A 408 սատանայական դիւական:

31 CAձձ սատանական:

33 DM դժուարենամատոյք․ չիք A:

33 R զնոսա:

34 հարուստ ամացն․ MR հարանց ամացն․ B հարանցամոյն C հարանց ամսոյն: Հմմտ․ Գ․ Տէր-Մկրտչեան, Ագաթանգեղոսի աղբիւրներից․ 18—19․ եւ Նորայր, էջ ԻԴ եւ 290: A 404․ «զի զյառաջագոյն զհայրենական հնամեացն նախնեացն... աստուածսն: Բառիս հարանցամոյն եզ․ ձեւն է հօրամոյն․ Ա․ Մակաբ․ Զ․ 17․ Բ․ Մակ․ Ժ․ 10․ A 10:

35 չունին ընդելս, նաեւ A 411 (ոմանք, իսկ այլք ծանօթս եւ ընդելս)․ հմմտ․ նաեւ A 377․ հոգեպատում պատգամացն ընդելս եւ ծանօթս կացուցանէր․ եւ Ավ 355․ «զամենայն ոք աստուածպաշտութեան ծանօթս կացուցանել»:

36 կացուցանէին: A 377:

36 C միջախումբ:

36—37 հանդամանօք․ B հանդատանօք C հանդանօք․ հմմտ․ վերը Բ․ 2․ «Թեւակոխ միջամուխ եղեալ... հրամանացն ի հանգամանս»: Ակ:

37 օրինապատգամացն: Ն․ 50:

37 D չունի բնաւ:

38 իւրեանց բնականութեանն զ․: BM բնականք եթէ զ․ C բնականացն: Հմմտ․ Բ․ Մակաբ․ ԺԵ․ 18․ «ի վերայ դայեկաց բնակաց տոհմային քաղաքացւոց»:

39 A 410 եւ յորժամ անդ եւս զայս արարեալ:

39—40 հաւասարութեամբ կը պահանջէ հոս աշխատակիցներ․ A ունի հ․ ամենեցուն․ կը լրացնեմ այսպէս:

40 չունին առ հասարակ: A:

40/41 եւ լցեալ զպիտոյն իւրեանց եւ․ A լցեալ զպիտոյս քարոզութեանն: Ակ:

Հանդ․ Ամս․ 1949, Թ․ 4—12: 16

*կողմանցն եւ զկամացն զյաւժարութիւն: Ջեռնտու եւս եղեալ նմա ի սրբամատոյց վարդապետութեանն ի Բաղասական կողմանս՝ սրբոյ եպիսկոպոսին, որում Մուշեղն կոչէին* 46:

6․ *Հրաժարեալ ապա եւ ի թագաւորէն եւ յեպիսկոպոսացն եւ յամենայն եկեղեցւոյն Աղուանից: Եւ զոմանս յիւրոց աշակերտացն վերակացուս կողմանցն կացուցանէր՝ հանդերձ ոմամբ քահանայիւ արքունական Դրանն, որում անուն Յովնաթան կոչէին* 47, *որոյ բազում մխիթարութիւն ի վարդապետութենէն էր գտեալ: Եւ յանձն արարեալ զնոսա եւ զանձն ամենապահ շնորհացն Աստուծոյ՝ խաղացեալ գայր ի կողմանցն Աղուանից՝ անցանել յաշխարհն Վրաց:*

ԺԲ․ ՄԱՇՏՈՑ Ի ԳԱՐԴՄԱՆՍ ԵՒ Ի ԿՈՂՄԱՆՍ ՎՐԱՑ

1․ *Եւ հասեալ գայր ի հանդէպ Գարդմանական Ձորոյն* 48: *Ընդառաջ լինէր նմա իշխանն Գարդմանից, որում Խուրսն կոչէին,*

41 *յօժարութիւն․* B *զյօժարութիւնն* C *յօժարութիւնն: Ակ:*

41 *ձեռնատու․* M *ձեռնտու:* Հմմտ. *Ա․ Մակ․ Գ․* 2․ *«ձեռնտու օգնական եղեն նմա»․* անդ, *Ժ․* 74․ *«Շմաւոն ձեռնտու լինէր նմա յօգնականութիւն» եւն:*

42 չունին *ի* (*որբ․*)․ այսինքն *յընթացս ս․ քարոզութեանն:*

42 BC *ստամատոյց:* A 79 *սրբամատոյց կանայք:*

42 BC *վարդապետութեամբն:*

43 *որում* S *որում անուն:*

43 *Մուշեղ: Ակ:*

44 *Հրաժարէր: Ակ:*

44 R չունի (*ապա*) *եւ:*

46 *իւրեանց* փոխ․ *կողմանցն․* հմմտ. A 441 *որ ապա կողմանցն Եփրատական գետոյն լինէր վերակացու: Ակ:*

46 *արամբ* փոխ․ *ոմամբ: Ակ:*

47 *անունն: Ակ:*

48 *յօժարութիւն* փոխ․ *մխիթարութիւն* (կամ թերեւս *ախորժութիւն․* հմմտ. *Ոսկ․ Պաւղ․ Ա․* 679․ *«իսկ հաճութիւն զամենայն զկամս սաէ, զառաւել ախորժութիւնն, որպէս եւ մեզ ինչ լինի»․* տե՛ս եւ անդ էջ 534)*: Ակ:*

49 *առնելով․* A 407․ *«եւ ապա յանձն արարեալ զնոսա ամենապահ շնորհացն Աստուծոյ եւ ինքն առեալ զթագաւորն խաղայր գնացեալ երթայր, զի եւ յայլ կողմանս...»: Փոխառութիւն Կորիւնէն: Իսկ ամենապահ շնորհք, անդ,* 398:

50 հմմտ. *Գործք Առ․ Ի․* 32․ *«Յանձն առնեմ զձեզ Աստուծոյ եւ բանի շնորհաց նորա»:*

*ԺԲ․* [1] *հանդէպ հասեալ գայր Գ․ Ձորոյն․* եթէ Կորիւն նկատի ունէր *Գործք Առ․ ԻԱ․* 1․ *«Ի մեկնել ի նոցանէ՝ հանդէպ գնացեալ՝ եկաք ի Կով»,* պէտք է ըսէր նոյնպէս *եւ հանդէպ գնացեալ հասեալ գայր ի Գ․ Ձորն* կամ *ի գաւառն Գ․ Ձորոյն: Եզնիկ* (18) ունի *«ուշ եղեալ ի հանդէպ երեւացն եւեթ արշաւէն»․ այսպէս նաեւ Յեսու Զ․* 5․ *«եւ մտցէ ամենայն ժողովուրդն դիմեալ իւրաքանչիւր հանդէպ երեւացն իւրոց* (κατὰ πρόσωπον) *ի քաղաքն* (*Երիքով*)․ *«եւ ել ամենայն ժողովուրդն հանդէպ իւր»* (*Զ․* 20)*:* Իսկ անդ *Ժ․* 12—13 *կ՚ըսուի․ «Կացցէ արեգակն հանդէպ Գաբաւոնի եւ լուսին հանդէպ ձորոյն Եղոնայ»․* տեղիքս Եզնիկ ունի... *«հանդէպ ձորոյն Գաբաւոնի եւ լուսին (հան)դէպ դաշտին Եղոնայ»* (*յն․* κατὰ φάραγγα, *հանդէպ ձորոյն*)*:* Քանի որ *Կորիւն* կը գրէ *Գ․ Ձորոյն,* լաւագոյն է կարդալ *«հասեալ գայր*

*եւ ապնջական եղեալ նմա աստուածասէր երկիւղածութեամբ՝ առաջի դնէր զանձն Վարդապետին հանդերձ իշխանութեամբն իւրով: Առաւելագոյն իսկ վայելեալ ի հիւթ եւ ի պարարտութեան վարդապետութեանն՝ յուղարկէր զՆրանելին ուր եւ երթալոցն էր:*

2. *Իսկ նորա անցեալ դիմեալ ի կողմանսն Վրաց* [49]: * *Յորում ժամանակի պարգեւեալ յԱստուծոյ հասանէր ի գլուխ իշխանութեանն Կողմանցն Վրաց քաջն* * *Սիւականն Վասակ* [50], *այր խորհրդական եւ հանճարեղ եւ յառաջիմաց՝ չնորհատուր իմաստութեամբն Աստուծոյ: Բազում ինչ նպաստաւորութիւն ընծայեցուցեալ աւետարանագործ վարդապետութեանն, իբրեւ հաւասար որդւոյ առ հայր հպատակութիւն ցուցեալ եւ ծառայեալ ըստ աւետարանին վայելչութեան, մինչ ի վախճան զհրամայեալսն ի գործ բերէր:*

ԺԳ. ՄԱՇՏՈՑ ՑԱՇԽԱՐՀԻՆ ՎՐԱՑ

1. *Դարձեալ յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ հոգ ի միտ արկանէր Սիրելին Քրիստոսի եւ վասն բարբարոսական կողմանն* [51]: *Եւ առնյր կարգել նշանագիրս վրացերէն լեզուին ըստ*

*հանդէպ Գ. Զօրոյն».* հմմտ. *Թիւք ԼԳ. 8. չուեցին հանդէպ Եպիրովթայ:*

² *որում Խուրս.* Տ կ'աւելցնէ *ո. անուն Խ.:* Ուղղեցի *Խուրսն:*

⁴ CE *վարդապետութեան:*

⁵ *պարարտութիւն:* Հմմտ. *Ավ* 292/3. *վայելէին ի պարարտութեան* (այլ ձեռագիրք *ի պարարտութենէ*) *խնամոցն Աստուծոյ:* Ն. 115:

⁶ *յուղարկէ:* Հմմտ. *Ա. Կորն. ԺԶ. 7. «Զի դուք յուղարկիցէք զիս՝ ուր եւ երթալոցն իցեմ:*

⁷ չունին *Վրաց:*

⁷ * Այս հատուածը՝ «*Յորում — բերէր*» (*տ.* 7—15) Bի մէջ զետեղուած է ԺԺ. 2 հատուածին իբրեւ շարունակութիւն (տպ. 25, տ. 1—25) կա՛մ թղթերու ետեւառաջութեան պատճառաւ եւ կամ Սիւնի Վասակին նուիրուած հատուածս Սիւնեաց աշխարհի քարոզութեան մաս համարելով: Տես Ներած. եւ Ծան. 49:

⁸ *իշխանութեանն.* իմացիր *մարզպանութեանն կողմանցն Վրաց:*

⁹ *Սիւնեաց.* ուղղեցի *Կողմանցն Վրաց:*

⁹ CE *քաջ:*

⁹ *Սիւականն* փոխ. *Սիւնին* կամ *Սիւնականն.* տե՛ս Ծան. 50:

¹⁰ հմմտ. *Բ. Օր.* 13 եւ 15. «*Տուք ի ձէնջ ձեզ արս իմաստունս եւ խորհրդականս եւ հանճարեղս ի վերայ ցեղից ձերոց*»:

¹¹ *նպաստութիւն ցուցանէր.* A 455 «*բազում ... նպաստաւորութիւն ընծայեցուցեալ աւետարանագործ* (այլ ձձ *աւետարանական*) *վարդապետութեանն հնազանդութեամբ հպատակութիւն ցուցեալ եւ ծառայեալ ըստ աւետարանին վայելչութեան* (*տպ.—թեամբ*)»: Բառս *նպաստութիւն* միայն հոս եւ *Ա. Եզր. Զ.* 29 (այլ ձձ *նպաստաւորութիւն*) գործածուած է. ճշդագոյնն է *նպաստաւորութիւն. Ա. Եզր. Ե.* 45, *Զ.* 29, *Ը.* 15:

¹² *իբրեւ որդւոյ.* լրացուցի *իբրեւ հաւասար որդւոյ:*

¹⁴ C *վայելչութեանն.* A *վայելչութեամբ:*

¹⁵ A 432 *եւ զհրամայեալն* (այլ ձձ *զհրամայեալսն*) *ի գործ արկանել* (t *բերել*):

*ԺԳ. տպ.* 25, *տ.* 10—26, *տ.* 25:

¹ *Հ. ի միտ արկանէր:* Ն. 105:

²⁻³ *կողմանն.* իմացիր *կողմանցն Վրաց աշխարհին,* այն է *Քարթլի,* բուն Վրաստան: Տե՛ս Ծան. 51:

³ *կարգեալ.* C *զկարգեալ:* Ն. 105:

*չնորհացն տուելոց նմա ի Տեառնէ. գրէր, կարգէր եւ աւրինաւք յարդարէր: Եւ առնոյր ընդ իւր զոմանս լաւագոյնս յաշակերտաց իւրոց, յարուցեալ գնայր իջանել ի կողմանս Վրաց: Եւ երթեալ յանդիման լինէր Թագաւորին, որում անուն էր Բակուր*[52]*, եւ եպիսկոպոսի աշխարհին, որում անուն Մովսէս կարգացեալ*[53]*: Եւ առաւելագոյն հնազանդեալ նմա ըստ աւրինացն Աստուծոյ՝ Թագաւորին եւ զաւրացն հանդերձ ամենայն գաւառաւքն: Եւ նորա զիւր արուեստն առաջի արկեալ՝ խրատէր յորդորելով: Զորոյ եւ յանձն առեալ ամենեցուն զխնդրելին կատարել:*

*2. Եւ գտեալ զայր մի Թարգման վրացերէն լեզուին, որ անուանեալ կոչէր Ջաղայ*[54]*. այր գրագէտ եւ ճշմարտահաւատ: Հրաման տայր այնուհետեւ արքայն Վրաց ի կողմանց կողմանց եւ ի խառնաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ ժողովել մանկունս եւ տալ ի ձեռն Վարդապետին: Զորս առեալ արկանէր ի բովս վարդապետութեանն եւ հոգեւոր սիրոյն եռանդմամբ զաղտ եւ զժանգ գշարաւահոտ դիւացն եւ զնոտխագործ պաշտամանցն ի բաց քերէր: Եւ այնչափ անջատանէր ի հայրենեացն բնակացն իւրեանց եւ անյիշատակ առնէր, ջնջէր ի միջոյ, մինչեւ ասել նոցա, թէ «Մոռացայ զժողովուրդ իմ եւ զտուն հաւր իմոյ»:*

4 *չնորհեցելոյ*, նաեւ C. իսկ B *չնորհելոյ*. չունին *տուելոց*. ուղղեցի ըստ *չնորհացն տուելոց*. հմմտ. A 12 *աստուածատուր չնորհօքն տուելովք*:

5 հմմտ. *Ավ* 399. «*հանդերձեցին, զարդարեցին եւ օրհնօք յարդարեցին*»:

6 E *իջանէր*:

7 C *զոր* ապա ուղղուած *զորում* փոխ. *որում*:

8 *աշ. Մովսէս եւ*: լրացուցի ըստ *Ավ* 132. «*որում անուն Մովսէս կարգացեալ*». եւ 154 «*որում անուն Նոյ կարգացեալ*»:

8 A 432 *ըստ հրամանացն*:

11 *յորում*. A *որոց*, այլ ձձ *որում, որով*: Ուղղեցի *զորոյ*, այսինքն *զՄաշտոցի*:

14 *Մ. Խոր. Գ.* 54. «*հանդերձ Ջաղայիւ ումամբ Թարգմանաւ հելլէն եւ հայ լեզուի*». *Վարդան պատմիչ*. 51. «*ի ձեռն Ջաղելի ումեմն, որ աշակերտեցաւ նմա*»: Տե՛ս Ծան. 54:

16 DO *խառնիճաղանջ*: Բառս յաճախ կը գործածուի *խառնաղանջ, -անճ* եւ *խառնիճաղանջ (-անճ)* գրչութեամբ:

17 *եւ (տալ)* ունի միայն C: — *զոր*: A:

18 C *սիրոյն եւ ե.*:

19 B *ժանդ*: — *շարաւահոտ*: A 437:

19 *պաշտամանն*: A Ն106:

20 *քերէր* չունին. R *քերեալ*: BCA Ն106: Հմմտ. *Ավ* 161. «*զի քերեսցէ ի նոցանէ զաղտն հնացեալ*»:

20 չունին *եւ (այնչափ)*: A:

20 *անջատեալ*. A (*ԱԲ*) *անջատանէր*. այլ ձձ. *անջատէր*: Հմմտ. *Նորայր, Յուշարձան*, 166:

20 *հայրենեաց*: A:

20 չունին *բնակացն*: A:

21 *ցուցանել*. հմմտ. A 404. *Թագաւոր* «*գործ ի ձեռն տայր երանելւոյն Գրիգորի, զի զյառաջագոյն զհայրենական հնամեացն նախնեացն եւ զիւր կարծեալ աստուածսն... անյիշատակ առնել, ջնջել* (Ab *առնէր, ջնջէր*) *ի միջոյ*: Եւ *Ավ* 288. «*ողողէ եւ անյիշատակ ջնջէ*»:

22 BC *մինչ*: — չունին *նոցա*: A:

23 E չունի *իմ*:

23 *Սաղմ. ԽԴ.* 11. «*Մոռա զժողովուրդ քո եւ զտուն հօր քոյ*»:

3. *Եւ արդ զնոսա, որ յայնչափ ի մասնաւոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով աստուածաբարբառ պատգամաւք մի ազգ կատարեալ՝ փառաւորիչս միոյ Աստուծոյ յաւրինէր: Յորոց եւ ոմանց արժանի եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակել*[55]. *որոյ առաջնոյն Սամուէլ անուն*[56], *այր սուրբ եւ բարեպաշտաւն, եպիսկոպոս կացեալ տանն * արքունականի*[57]:

4. *Իսկ իբրեւ ընդ ամենայն տեղիս Վրաց կարգեալ զգործ աստուածպաշտութեանն, այնուհետեւ հրաժարեալ ի նոցանէ՝ դառնայր յերկիրն Հայոց: Եւ պատահեալ Սահակայ սրբոյ եպիսկոպոսին Հայոց՝ պատմէր նմա զաջողութեանցն եղելոց, եւ միանգամայն փառաւոր առնելով զսուրբ եւ զմեծ անունն Քրիստոսի* *:

### ԺԴ. ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆ ՄԱՇՏՈՑԻ ԱՌ ԿԷՍ ԱԶԳՆ ՀԱՅՈՑ

1. *Եւ յորժամ այնպէս զամենայն տեղիս լի առնէր զսուրբ աւետարանն Տեառն եւ ամենեցուն զգուշացուցեալ անմեղութեամբ զկենաց ճանապարհն վարելոյ, խորհուրդ առնոյր այնու-*

24 B *այնչափ*:

25 *պատգամօքն*: A 456:

26 *կայեալ*. A *կատարեալ*:

26 *փառաբանիչք*. C ուղղած *փառաբանիչս*. A *փառաւորիչ միոյ Աստուծոյ լինել*: Հմմտ. Ն. 106 եւ *Վարդանեան, Բառաքնն. դիտ. Ա.* 112:

27 *յորոց եւ իմ անարժանիս եղեալ* (R *ելեալ*) *ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ*. S *եւ գտան արժանիք ելեալ... վիճակ*: *Ակ*: Տե՛ս Ծանօ. 55:

28 *որոց առաջինն*: *Ակ*: Հմմտ. Ն. 75—77:

28 DE չունին *անուն*:

28. *Տանն արքունականի*. խօսքը Տաշիրք գաւառի եպիսկոպոսի մասին է: Տես Ծանօ. 57:

32 *պատահեալ Սահակայ կաթուղիկոսի* (DS *կաթուղիկոսին*) *Հայոց*: R դուրս ձգած է: *Ակ*:

33 *զաջողութենէ եղելոցն*: *Ակ*:

33—34 CS *միանգամայն եւ*: *Ակ*:

34 C *առնելոյ*:

34 *փ. առնելով զԱստուած զմեծանունն* (B *զմեծն անուն*) *Քրիստոս*: Հմմտ. A 390. *սուրբ անունն Քրիստոսի փառաւոր լիցի* եւ 459. *զիւր սուրբ անունն փառաւոր առնէր*: *Ակ*:

* Տպ. 26, տ. 26—28, տես ԺԵ. 1:

*ԺԴ. Տպ. 26, տ. 27*:

1 *ընդ ամենայն*. նաեւ A 407: *Ակ*:

2 *աւետարան*: A 407:

2 հմմտ. *Հռոմ. ԺԵ. 19. «Որպէս ինձ յԵրուսաղեմէ մինչեւ ի կողմանս Լիւրիկեցւոց լնուլ զաւետարանն Քրիստոսի»*: Իսկ Ավ 306 ունի. *«ՅԵրուսաղեմէ մինչեւ ի Լիւրիկիա ինձ եհաս լի առնել զաւետարանն Քրիստոսի»*: Առ այս կը գրէ Ս. Եփրեմ (Գ. 49) մեկնողօրէն. *«Այլ զի նովաւ հաս ինձ շրջել յԵրուսաղեմէ մինչեւ ի կողմանս Լիւրիկեցւոց՝ լի առնել զամենայն աշխարհս զաւետարանն Քրիստոսի»* Եփրեմի ընթերցուածին ծանօթ կ'երեւայ Կորիւն:

2 DM *զգուշացեալ*:

2 չունին *անմեղութեամբ*: A:

3 A *զճանապարհն կենաց*: Հմմտ. *Երեմ. ԻԱ. 8. «Ահաւադիկ ես եդի առաջի երեսաց ձերոց զճանապարհս կենաց եւ զճանապարհ մահու»*:

3 D *վարելոց*:

3 MS *առնէր*:

Հետեւ եւ վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ թագաւորին Հոռովմոց[58]: Եւ խաղայր գնայր հանդերձ աշակերտաւք բազմաւք՝ անցանել ի կողմանս Յունաց: Եւ վասն առաւելագոյն բարեգործ համբաւուցն յառաջագոյն զնմանէ անդր ի հիւսիսական կողմանց հռչակելոց՝ առաւել միամտութեամբ ընտանեբար յեպիսկոպոսաց աշխարհին եւ յիշխանաց եւ ի գաւառականացն պատուեալ լինէր, մանաւանդ ի սպարապետէն աշխարհին, որ անուանեալ կոչէր Անատողիոս[59], ի մուտս ճանապարհին: Որ զիրս առաջի եղեալս գրով ցուցանէր կայսերն, որում անուն Թէոդոս կոչէին, որդի Արկադեայ կայսեր[60]: Ուստի եւ հրաման ելանէր՝ վայելուչ մեծարանաւք զՍուրբն յարքունիս յուղարկելոյ:

2. Իսկ նորա զբազմութիւն աշակերտացն տարեալ ի քաղաքն Մելիտենացւոց, յանձն առնէր սրբոյ եպիսկոպոսի քաղաքին, որում Ակակիոսն[61] կոչէին: Եւ գլխաւոր աշակերտացն թողոյր զայն, որում Ղեւոնդիոսն կոչէին[62], այր հաւատարիմ եւ ճշմարտապաշտ:

3. Եւ առեալ Երանելւոյն զպատուական եպիսկոպոսն Դերջանայ, որում անուն կոչէր Գինթ[63], եւ զսակաւս յաշակերտաց

4 եւ (վասն) չունին: B:
4 DE չունին ընդ:
5 հոռոմոց. B հոռովմոց:
5 եւ փութացեալ գնայր. A 460. եւ բազում մեծամեծօք... հանդերձ գնայր... անցանել ի սահմանս Յունաց: «Խաղայր գնայր» Ավ 162 եւ A 24, 29, 404 եւն: Ակ:
7 համբաւուց. E համբաւոցն: Ակ:
7 անդ փոխ. անդր:
8 BC հռչակելոյ:
10 չունին լինէր. BCS:
10 ի սպայապետէն. իսկ վարը տ. 46 սպարապետին:
11 LR անտիոխ M անտիսի E անտեսիս D անտիոք BC անատող O անատոլիս S անատողիս. Մ. Խոր. Գ. 57—58 Անատոլիս, Անատոլիոս, սեռ. Անատոլեայ. Փարպ. 74. սեռ. Անատոլեայ. ուղիղն է Անատողիոս, Anatolios:
11 ի մուտ. B զմուտս C որ զմուտ. տես Մ. Խոր. Գ. 58. «գտին զզօրավարն Անատոլ հուպ ի մեր եկեալ սահման»:
12 եղեալ: Ն. 41:
12 C որոյ փոխ. որ:
12 PR չունին անուն:
13 Արկադու. Խոր. Գ. 41, 50 Արկադեայ. Arcadios:
14 զսուրբն ակումիտ անուն կոչելոյ. Խոր. Գ. 57 (տե՛ս H). «արժանապէս առաքել... եւ բարեփառութեամբ զնոսա յուղարկէ» ի Բիւզանդիոն: Հ. Յ. Թորոսեան, Բազմավէպ, 1931, 473:
16 մելիտինացւոց. C մելիտոնացոցն. յն. Μελίτηνή, Melitene, այժմ Մալաթիա: Ակ:
16 E եպիսկոպոսին:
17 որ փոխ. որում: Ակ:
18 ղեւոնդէոսն H Ղեւոնդ, յն. Leontios: Ակ:
20—21 դերջանոյ B թերջանոյ. Խոր. Գ. 57 Դերջանու, Անաստաս վրդ. (Հայապատում, Բ. 228) Դերջանայ, այսպէս նաեւ Ստ. Ասողնիկ, 251: Ակ:
21 որոյ փոխ. որում. հմմտ. Եւս. Քրոն. Ա. 13. «որում անուն կոչէր Ովդիական». A 461 որում անուն կոչէր Եւսեբիոս:
21 թերեւս լաւագոյն զսակաւս ոմանս:

անտի, եւ ելեալ յարքունատուր դեսպակս[64] եւ բազում պատիւս ըստ քաղաքաց քաղաքաց դիպելոց եւ իշխանաց իշխանաց պատահելոց գտեալ՝ հասանէր ի թագաւորականց Քաղաքն Կոստանդինական: Զորմէ խկոյն պատմէին յարքունիսն: Եւ մտեալ առաջի պատուակալ աթոռոցն՝ յանդիման լինէր աստուածակարգ թագաւորացն եւ [Հայրապետին] որքոյ կաթողիկոսին աշխարհամուտ Դրանն, որում Ատտիկոսն կոչէին[65]: Յորոց եւ գտեալ շնորհս՝ հրամայեալ լինէր ժամանակս ինչ անդէն ի տիեզերական քաղաքին դադարել դարմանաւք կարգելովք, մեծարեալ յեկեղեցւոյն եւ յարքունեաց եւ ի պատուական իշխանաց քաղաքին:

4. Եւ ապա յետ Պասեքին կատարելոյ[66] ցուցեալ Կայսերն զպիտոյիցն զհանգամանս: Եւ առեալ զանընդդիմակաց հրամանն հանդերձ սակերաւք, կայսերագիր նշանակաւք[67], վասն մանկաւոյն յաշակերտութիւն առ ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ եւ վասն ժանտագործ ազգին Բորբորիանոսաց[68] եւ վասն եկեղեցեաց հաստատութեանն: Վասն որոց հաւանեցուցեալ ճշմարտին զարքունիսն՝ եւ ոչ զմի ինչ անընկալ թողոյր: Եւ մեծամեծ պար-

21 Մ. Խոր. Գ. 57, 60 Գնիթ. հմմտ. Փաւստ. Զ. 16. Գինդ Տարոնեցի:

22 եւ ելեալ յանարւոյն (S յանդրուարն) դիմոսական. հմմտ. վարք տ. 42. ելանէին ի դեսպակս, ի կառս արքունատուրս. կը կարդամ յանարւոյն = յարքունատուր, իսկ դիմոսական = դեսպակս:

22—23 բազում պատիւս գտեալ. կը լրացնեմ ըստ A 460. «եւ բազում պատիւս [պատրաստութեան հպատակութեան] ըստ քաղաքաց քաղաքաց դիպելոց եւ իշխանաց իշխանաց պատահելոց գտանէին [մեծարանս ընդունելութեան]:

24 հասանէին: Աl:

24 A 460 ad ձեռագիրք ի թագաւորակայ ք. միւս ձձ. ի թագաւորական:

25 A յարքունական պաղատանն:

26 պատուական ա. A պատուակալ. հմմտ. Փաւստ. Գ. 12. «զծերութեան պատիւն պատուակալ պատուականութեանն»:

26 աթոռոյն. A աթոռոցն:

27 A Հայրապետին մեծ արքեպիսկոպոսին:

27—28 կաթուղիկոսին: R չունի կաթողիկոսին աշխարհամուտ դրանն:

28 ատտիկոս: Աl:

30 մեծարել (դարմանօք). B մեծարեալ փոխ. դադարել:

30 չունին մեծարեալ յեկ.: A:

32 C լցուցեալ փոխ. ցուցեալ:

33 OR զպիտոյից:

33 BC հանգամանսն R հանգամանս:

34 նշանակելովք: Աl: Տե՛ս Ծան. 67:

35 յաշակերտութիւնն: Աl:

35 B ազգին:

36 բարբարոսաց S բարբարիանոսաց:

36 չունին վասն եկ.: Աl:

37 հաստատութեան. C հաստատութեանն:

37 Հ. եւ մեծամեծ պարգեւօք պատուեալ (S պատուելոյ) սխալմամբ հոս զետեղուած. տե՛ս վարը տող 38—39:

37 Վ. որոյ փոխ. որոց:

37 ճշմարտին. C կ'ուղղէ ճշմարտասիրին. կասկածելի է ընթերցուածս. պէտք է իմանալ երանելւոյն:

38 զարքունիսն անընկալ. բնագիրը հոս թերոյթ մ'ունի. լրացուցի եւ ոչ զմի ինչ: Բառս անընկալ լինիմ երիցս գործածուած է Աl 178, 201:

գեւաւք պատուեալ եւ երկիր պագեալ ծիրանափառ Աւգոստականացն եւ սրբոյ կաթողիկոսին եւ ընկալեալ ողջոյն յեկեղեցւոյն եւ յերեւելի իշխանաց քաղաքին եւ ամենայն իրաւք յաջողելովք ելանէին ի դեսպակս, ի կառս արքունատուրս: Եւ մեծաւ շքով եւ բազում վայելչութեամբ ունէին զճանապարհս արքունականս: Եւ ամենայն քաղաքաց պատահելոց պայծառագոյն երեւեալ եւ մեծամեծ պատիւս գտեալ գային հասանէին ի ժամադիր կողմանս:

5· Եւ անդէն վաղվաղակի պատահեալք սպարապետին *Հայոց՝ հանդերձ սակերաւք, կայսերագիր նշանակաւք, յանդիման լինէին: Եւ նորա առեալ զսակերսն, զկայսերագիր նշանակսն, փութայր վաղվաղակի զհրամանն կատարել: Եւ հրեշտակս արձակեալ այնուհետեւ ի գաւառս գաւառս կէս ազգին Հայոց, որ ընդ իշխանութեամբն Կայսեր, զի բազմութիւն մանկտւոյ ժողովել ի պատեհագոյն տեղիս եւ նոցին դարմանս եւ ռոճիկս կարգել յարքունուստ: Յորս եւ Երանելւոյն զվարդապետութիւնն իւր ի գործ արկեալ եւ ժողովելոցն քաղցրացուցանէր:

6· Ապա յետ այնորիկ ձեռն արկանէր զդժպատեհ եւ զկամակոր

38—39 այս տեղ կը զետեղեմ «եւ մեծամեծ պարգեւօք պատուեալ» (տե՛ս վերը տող 37բ) ինչպէս ունի A 464 եւ մեծամեծ պատարագօք եւ երեւելի պարգեւօք պատուեալ սիրով:
40 B սրբոյն:
40 կաթուղիկոսին:
41 իշխանացն· BS իշխանաց:
41 իւրայովքն (BC իւրայօքն) յաջողեալք· A իրօք յաջողելովք:
42 DS եւ (ի կառս):
44 քաղաքացն պատահելով ի քաղաքին պ·: A:
45 պարգեւս· A պատիւս:
45 E ժամադիրս:
46 պատահեալ: Ակ:
46 Հայոց, պէտք է իմանալ անշուշտ Հոռոմոց:
47 հ· սակերօք կայսեր: DE չունին հանդերձ· B հանդերձ սակերօք հանդերձ կայսեր: Ակ:
48 ա· սակերս կայսերական նշանօք: Ակ:
50 ի գաւառս կ· A ի գաւառաց գաւառաց: Ակ:
50—51 յիշխանութեանն· B իշխանութեանն· H որ ընդ իշխանութեամբն:
51 չունին զի: Ն· 206—208:
51 HՆՀB ժողովեալ· A զի... ժողովեսցեն:
52 ժողովել եւ նոցին ռոճիկս կարգել ի պատեհագոյն (B պատեհագւոյն) տեղիս· H ժողովեալ բազմութիւն մանկտւոյ ի տեղիս տեղիս եւ դարմանս եւ ռոճիկս կարգէր յարքունուստ· հմմտ· նաեւ A 437 զի ի գաւառաց գաւառաց եւ կողմանց կողմանց ի տեղիս տեղիս ժողովեսցեն բազմութիւն մանկտւոյ· եւ Փաւստ· Դ· 4 (65 Պատկ·)· կարգէր եւ ի տեղիս տեղիս դպրոցս: Ակ:
53 երանելւոյն: A 436:
53 H զլուսաւոր վ·:
54 B քաղցացուցանէր· A առ ընդունել քաղցրացուցեալ:
55 զդժպատեհ· H զժպիրհ: Բառս դժպատեհ աւելի մեղմ նշանակութեամբ ունինք Եւագր, 16· «պարտ եւ պատշաճ է ոչ խոժոռ եւ ոչ տրտում եւ դժպատեհ լինել գիտնականին»· Ոսկ· Մեկն· Մատթ· 540 «դժպատեհ իրք»· եւ Գործք Առ· Իէ· 12 «դժպատեհ իմն թուէր նաւահանգիստն առ ի ձմերել»: Hի ժպիրհ ընթերցուածը ծանօթ է «յանդուգն, լիրբ» իմաստով, այսպէս «ազգ ժպիրհ երեսօք» Բ· Օր· ԻԸ· 50, Ժող· Ը· 1

*Բորբորիանոսաց աղանդն քննելոյ։ Եւ իբրեւ ոչինչ գտանէր հնարս (զնոսա) յուղղութիւն ածելոյ՝ առեալ ի գործ արկանէր զԹշուառացուցիչ զաւազանն՝ ծանրագոյն պատուհասիւք խոշտանգել ի բանդս, ի տանջանս, ի գելարանս։ Իսկ յորժամ այնու եւս պակասեալք ի փրկութենէն գտանէին խորտակեալքն, ապա խանձեալս, մրեալս եւ գունակ գունակ խայտառակեալս յաշխարհէն մերժէին։*

7. *Իսկ Երանելոյն զիւր վարդապետութեանն պայման արարեալ՝ սկսեալ եւ վճարեալ, եւ բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ՝ ծովացուցանէր զվարդապետութեանն զխորութիւն եւ լցեալ զեղոյր ամենայն հոգեւորն բարութեամբք*[79]։

8. *Ցայնմ ժամանակի եկեալ դիպէր նմա այր մի երէց, Աղուան յազգէ, Բենիամին անուն* 69։ *Եւ նորա հարցեալ եւ քննեալ զբարբառոս զբանս աղուաներէն լեզուին՝ առնէր ապա նշանագիրս ըստ վերնապարգեւ կորովի սովորութեան իւրում։ Եւ յաջողութեամբ Քրիստոսի շնորհացն կարգեալ եւ հաստատեալ կշռէր։*

(այլ օր. *լիրբ*), *Դան. Ը.* 25. *ժպիրհ ակն*, *Ա. Թագ. Բ.* 29. *ազգ ժպիրհ եւ անողորմ. Երեմ. Զ.* 23 *եւն*։ *Դժպատեհ* եւ *ժպիրհ* ընթերցուածները կը յիշեցնեն Գ. Մակ. Ե. 22. «ազգն *դժպատեհ*», զոր այլ ձեռ կը կարդան «*ազգ ժպիրհ*». եւ «*զազգն դժպիրհ*» (*ՆՀԲ*)։ *Դժպիրհ* ձեւին գոյութիւնը կը հաստատեն դժպհութիւն (*Զգօն*, 286. «*խոտորնակ դժպհութիւն*, *Սեբեր.* 85 *դժպհութիւնք իրաց*). եւ *դժպհի* բառերը. ինծի կը թուի, թէ նաեւ Կորիւնի տեղիքը ուղղելու է *դժպիրհ*։

55 B *կամարակոր*։

56 *բարբարիանոս աղանդն* (B *աղանդ*). C *բարբարոսական ա.* H *ա. բորբորիանոսացն. Մ. Խոր. Գ.* 58 *քննել զԺանդագործ բորբորիտոնսն*։ Տե՛ս Ծան. 68։

58 BC *գազանն* փոխ. *գաւազանն*։

58 EM *ծայրագոյն* H *սաստկագոյն*։

58 չունին *խոշտանգել*. H *սաստկագոյն խոշտանգանօք պատուհասէին*։ *Ակ*։

59 C *եւ* (*ի գել.*)։ — B *ի գլորանս իսկ որժամ*։

60 *խորտակեալս*. C *խորտակեալք*. թերեւս *խոշտանգեալքն*. H *Աստուծոյ ատելիքն*։ *Ակ*։

60/61 O *ապախանձեալս*. B *խանձեալք*։

61 E *մրեալ*։ Հմմտ. *Կանոնք Շահապիվանի. ԺԶ. Ածղնեայք* «*կրկին զան արբցեն, խանձեսցին, մրեսցին*»։

61 B *խայտառակեալ*։

61 *եւ* (*յաշխարհէն*). չունի C։ *Ակ*։

62 *կորզէին* փոխ. *մերժէին*. H *հալածէին յաշխարհէն*. *ՆՀԲ* (*ը. բ. մրեմ*) *կորնչէին*։ *Ակ*։

64 *սակեալ*. H *սկսեալ*։

65 H *զհարց*։

66 *լցեալ զեղոյր ամենայն բարութեամբք*. A 436 *եւ լցեալ զեղեալ ամենայն հոգեւոր* (ոմանք *հոգեւորն*) *բ.* H *լ. զեղոյր զամենեքումբք ի բնակիչս աշխարհին հոգեւոր վայելչութեամբ*։ H։

67 M *եղեալ* փոխ. *եկեալ*։

68 *ազգով*. CS *ազգաւ*։ *Ակ*։

68 *բենիամէն* R *բէնիամէն*. *Մ. Խոր. Գ.* 54. «*կոչեցեալ զԲենիամին ոմն շնորհաւոր թարգման*»։

70 հմմտ. *Ավ* 156. *Աբրահամ* «*ըստ աստուածապաշտ սովորութեանցն… համբերութիւն յանձն իւր կրէր*»։

71 B *յակողութեամբ*։ – R չունի *եւ*։

9· *Յետ այնորիկ հրաժարեալ յեպիսկոպոսաց եւ յիշխանաց աշխարհին եւ յամենայն եկեղեցեաց։ Առ որս թողեալ վերակացուս հաւատացելոցն զերկուս ոմանս յիւրոց աշակերտացն, որոյ առաջնոյն Ենովք անուն էր եւ երկրորդին Դանան*[70]*, արք կրաւնաւորք եւ յառաջադէմք յաւետարանական սպասաւորութեանն. զորս յանձն արարեալ ամենապահ շնորհացն Աստուծոյ՝ անդէն զետեղէր։*

10· *Եւ ինքն բազում աշակերտաւք գայր անցանէր ի կողմանս Հայոց Մեծաց։ Եւ հասեալ ի Նոր Քաղաքն՝ յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին*[71]*, եւ ամենայն բանակին։ Եւ պատմեալ նոցա զգործոց կողմանցն այնոցիկ ըստ յաջողութեան շնորհացն Աստուծոյ՝ դադարէր անդ աւուրս ինչ վասն մխիթարութեան եւ վասն պհոգեւոր զանձուկն սփռելոյ։*

ԺԵ· ԵՐԿՐՈՐԴ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՄԱՇՏՈՑԻ Ի ՎԻՐՍ

1· **Ապա դարձեալ ելանէր, շրջէր զտեղեւքն կարգելովք եւ զգաւառաւքն աշակերտելովք աշխարհին Վրաց, զուարթացուցանել, զաւրացուցանել, նորոգել եւ հաստատել։*

2· **Առ որով ժամանակաւ Արձիւղ*[72] *անուն թագաւորեալ Վրաց. վասն որոյ առաւելապէս պայծառացուցեալ ծաղկեցուցանէր զվարդապետութիւնն։ Եւ նորա շրջեալ զամենայն աշակերտելովք, պատուիրեալ կալ ի ճշմարտութեանն։*

73 չունին *եւ* (*յիշ.*) BCD *եւ իշխանաց*: *Ակ*:

74 B *եկեղեցայց*:

75 *որ*. C *որոյ* S *որոց*:

76 B *անուանէր*:

78 չունին *ամենապահ*: H: Հմմտ. Ն. 114:

80 *զգործս*: *Ակ*: — BE *կողմանց*:

84 *յաջողութեանց* S *աջողութեանց*: R:

85 *մխիթարէր* (B *մխիթարեալ*) *վասն* A 342 *եւ դադարեաց անդ յետ այսորիկ աւուրս եօթն վասն հոգեւոր մխիթարութեան*:

85 չունին *եւ* A 431 *առաւել զհոգեւոր սիրոյն* (ոմանք չունին *սիրոյն*) *զանձուկն* (ոմանք *զանձուկսն*) *սփռէին*: Հմմտ. *Ավ* 342. «*զանձուկ նոցա զոր առ Տէրն ունէին՝ լցեալ*»:

* *ԺԵ*. [1] Տպ. 26, տ. 24—26:

[1] *զտեղօքն կարգելեօք*. RS *զտեղեօք կարգելովք*. A. հմմտ. *Բ. Մակ*. *Գ*. 8. «*զաշակերտութեամբ շրջել*. *Փաւստ*. *Դ*. 14. *զիւրով իշխանութեամբն շրջել*:

[1] հմմտ. *Գործք Առ*. *ԺԵ*. 36. «*Շրջեսցուք զեղբարբք ըստ ամենայն քաղաքաց, յորս քարոզեցաք զբանն Տեառն, թէ որպէս ունիցին*:

[2] *աշխարհին Հայոց*: *Ակ*:

[3] չունին *զօրացուցանել*: A: — *եւ*: ACS:

* *ԺԵ*. 2—3. *Տպ*. 32, *տ*. 5—23: Տես Ներածութիւն:

[4] հմմտ. *Մ. Խոր*. *Գ*. 61. «*առ որով ժամանակաւ Արձիլ ոմն էր կացեալ թագաւոր Վրաց*: Տես Ծան. 72:

[5] չունին *վասն*: *Ակ*:

[6—7] *աշակերտօք*. BDES *աշակերտօքն* C *աշակերտելօքն*: A:

[7] CDE *ճշմարտութեան*:

3․ *Յայնժամ իշխանին Տաշրացւոց, առն պատուականի եւ աստուածասիրի, որ անուանեալ կոչէր Աշուշայ* 73, *ի ձեռն տուեալ նմա զանձն (հանդերձ) ամենայն գաւառաւն իւրով։ Եւ նորա զիւր ամենասփիւռ վարդապետութիւնն ոչինչ պակասութեամբ քան զայլոցն գաւառաց եւ անդ ցուցեալ եւ յանձն արարեալ զնոսա սրբոյ եպիսկոպոսին Սամուէլի, այնմ, զոր ի վերոյն նշանակեցաք* 74, *ինքն դառնայր ի կողմանս Հայոց Մեծաց։ Եւ եկեալ ի Թագաւորական տեղին՝ զընդելական ողջոյնն սրբոյն Սահակայ եւ ամենայն պատահելոցն տուեալ՝ պատմէր նոցա վասն այնր եւս նորագործ իրացն։ Որք իբրեւ լուանն՝ առաւել գոհանային զնորոգատուր պարգեւացն տուելոց նոցա յԱստուծոյ։*

ԺԶ․ ՄՇԱԿՈՒԹԻՒՆ ՀԱՅԵՐԷՆ ԴՊՐՈՒԹԵԱՆ

1․ *Յետ այնորիկ ուշ եդեալ երկոցունց երանելեացն զիւրեանց ազգին զդպրութիւն առաւելուլ, յարդել եւ ծաղկեցուցանել։ Ջեռն ի գործ արկանէին ի թարգմանել եւ ի գրել՝ ըստ յառաջագոյն սովորութեանն։*

2․ *Որոց դարձեալ դէպ լինէր եղբարս երկուս յաշակերտացն յուղարկել ի կողմանս Ասորւոց, ի քաղաքն Եդեսացւոց, զՅովսէփ, զոր ի վերոյն յիշեցաք, եւ երկրորդին Եզնիկ անուն, յԱյրա-*

9 *տայր* փոխ․ *տուեալ*։ *Ակ*։
10 *գաւառօքն*։ *Ակ*։
11 *եւ նորա ամենասփիւռ* (C *զիւր ա*․ DE *զամենասփիւռ*․ ՕՆՀԲ *ամէնսփիւռ*) *վարդապետութիւնն* (DER *վարդապետութեանն*)։ A 426 *եւ նա ամենասփիւռ վարդապետութեամբն ամենեցուն սերմանէր զբանն կենաց*։
11 B *պակասութիւն* C *պակասագոյն* D *պակասութեամբք*։
12 *եւ* (*անդ*) չունին։ A։ Հմմտ․ Ն․ 115։
12 *անցուցեալ* C կ'ուղղէ *ցուցեալ*։ Ն․ 115։
13 *ի վերոյ*։ *Ակ*։
15 *ի սովորական տ*․։ Տե՛ս վերը *ԺԱ*․ 1։ *Ակ*։
16 B չունի *եւս*։
17 BC *որոց* փոխ․ *որք*։ *Որոց* կը պահանջէ *լուեալ*։
17 *լուան*։ *Ակ*։
18 *գոհանային զպարգեւացն Աստուծոյ*․ H *միաբան օրհնեցին զԱստուած ի վերայ նորոգատուր պարգեւացն տուելոց նոցա ի վերուստ*։ *Ակ*։

*ԺԶ*․ 1—13 = *Տպ*․ 32, 23—33, 7։
1 B *երկոցունցն*։
2 *ազգին զդպրութիւն*․ H *ազգի զդպրութիւնն*։ Հմմտ․ *Ավ* 344․ «*զի նախ անդէն իւրեանց ազգին ետուն զգիտութիւն*»։
2 *առաւել յարդել, դիւրացուցանել* (B *դպրացուցանել*)․ H *առատացուցանել եւ առաւելուլ*․ կ'ուղղեմ *առաւելուլ, յարդել եւ ծաղկեցուցանել*։ Հմմտ․ *Բ*․ *Կոր*․ *Թ*․ 8․ «*զամենայն շնորհս առաւելուլ ի ձեզ*»։
3—4 *արկանէր ի թարգմանել եւ ի գրել մեծն Իսահակ*․ E *ա*․ *մեծն Իսահակ ի գրել եւ ի թ*․ H չունի։ Հմմտ․ *Մ*․ *Խոր*․ *Գ*․ 61 «*Մեծն Սահակ*»։ Ցետսամուտ յաւելուած կը համարիմ «մեծն Իսահակ»․ խօսքը *երկոցունց երանելեաց* մասին է։
5 B *եղբայրս*։
7 *երկրորդն*։ *Ակ*։

*րատեան գաւառէն, ի Կողբ գեղջէ*[74], *զի յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս ի հայերէն գրելս դարձուցեն։ Իսկ թարգմանչացն հասեալ ուր առաքեցանն եւ կատարեալ զհրամանսն եւ առ պատուական հարսն առաքեալ՝ անցեալ գնային ի կողմանս Յունաց։ Ուր եւ ուսեալք եւ տեղեկացեալք՝ թարգմանիչք կարգէին ըստ հելլենական լեզուին։*

3․ * [*Յայնմ*[75] *ժամանակի բերեալ երեւեցան ի Հայաստան աշխարհին գիրք սուտապատումք, ընդունայնախաւսք, աւանդութիւնք առն ուրումն հոռոմի, որում Թէոդորոս անուն*[76]*։ Վասն որոյ սիւնհոդոսական հայրապետացն եկեղեցեաց սրբոց նշանակեալ ազդ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ եւ Մաշտոցի։ Եւ նոցա ճշմարտասէր փութով զայն ի միջոյ բարձեալ՝ աշխարհահալած արտաքոյ իւրեանց սահմանացն մերժեցին, զի մի ի լուսաւոր վարդապետութիւնն ծուխ ինչ սատանայական յարիցէ*։]

4․ *Ապա յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ դէպ լինէր եղբարց ոմանց ի Հայաստան աշխարհէս դիմել իջանել ի կողմանս Յունաց․ որոյ առաջնոյն Ղեւոնդիոս անուն էր եւ երկրորդին՝ Կո–*

8 A *յասորի*։
9 *ի* (*հայ*․) չունին։ *Ակ*։
10 B *դարձուցին*։
11 H *զհրամայեալս եւ ի ձեռն հաւատարիմ եղբարց առ*․․․։
12 ER *գնացին*։
13 *թարգմանիչս*։ *Ակ*։
*ԺՁ*․ 3 = *Տպ*․ 40, տ․ 16—41, տ․ 5։
14 *ի հ*․ չունին։ IJS *Ն*․ 116։
14—15 *աշխարհին*։ *Ակ*։
15 *ընդունայնախօս*։ BIJ։
15/16 J *աղանդութիւնք*։
16 B *որում*․ IJ չունին։
16 հմմտ․ *Փաւստ*․ *Զ*․ 6․ «*ազգաւ հոռոմ*»։
16 *թէոդիոս*․ H *որում անուն էր Թէոդորոս*․ *Մ*․ *Խոր*․ *Գ*․ 61․ «*զգիրս Թէոդորոսի Մամուեստացւոյ*»։ RS։
17 հմմտ․ *Ավ* 362․ «*սիւնհոդոսական հրամանաւ առաքելոցն*»․ *յն*․ *σύνοδικος*. տես *Ն*․ 124։
17 C *կանոնին հայրապետացն*։
17 *եկեղեցեացն*․ IJ *եկեղեցւոյ սրբոյ*։ BC։
18 IJ *Մեսրոբայ*։ — H *ճշմարտապէս*։
20 IJ *աշխարհալած*․ H *ի բաց հալածեալ յիւրեանց աշխարհէն*։ Բառս միայն այս տեղ գործածուած է եւ շատ կասկածելի է հարազատութիւնը․ իմաստն է հալածեալ յաշխարհէ․ բայց բարդութեան ձեւը կը պարտադրէ իմանալ հալածել զաշխարհ․ հմմտ․ *այսահալած*, *դիւահալած*, *ինքնահալած*, *խաւարահալած* եւն։
20 չունին *սահմանացն* հմմտ․ *Փաւստ*․ *Դ*․ 29․ *զսինլքորսն արտաքոյ իւրեանց սահմանացն հալածեալ տանէին*․ տես *Ն*․ 156։
20 *մերժեցին*․ B *մերժեսցին*․ IJ *մերժէին*։
21 H *զի մի ինչ*։
21 IJ չունին *ինչ*։
21/22 B *սատանական*․ հմմտ․ *Ավ* 347․ «*լուանալ յաղտոյն ի սատանայական ծխոյն*։ *Ն*․ 124—125։
22 *յարիցէ*․ *Զ յարեսցի*․ H *մերձեսցի*։ *Ն*․ 124։
*ԺՁ*․ 4—7 = *Տպ*․ 33, 8—35, 12։
23 B *անցելւոյ* H *անցանելոյ*։
24 *ոմանց եղբարց*։ H։
24 B *դիմեալ իջանէր*։
25/26 *որ եւ ղեւոնդիոս* (B *ղեւոնդէս*) *առաջնոյն անուն էր* (B *անուանէր*) *եւ երկրորդին* (ES *երկրորդն*) *Կորիւնս* (BC *Կորիմինոս*)։ H կը հա–

րիւն[77]: Որք եւ մատուցեալք յարէին յԵզնիկն իբրեւ առ ընտանեգոյն սննդակից՝ ի Կոստանդինական Քաղաքին: Եւ անդէն միաբանութեամբ զհոգեւոր պիտոյից զխնդիրն վճարէին[77]: Որք յետ այնորիկ հաստատուն աւրինակաւք աստուածատուր Գրոցն եւ բազում շնորհագիր հարցն աւանդութեամբք եւ Նիկիական եւ Եփեսոսական կանոնաւք[78] գային երեւեալ յաշխարհս Հայոց: Եւ առաջի դնէին հարցն զբերեալ Կտակարանսն եկեղեցւոյ սրբոյ:

5. Իսկ երանելւոյն Սահակայ [զեկեղեցական գրոց զգումարութիւնն կանխաւ ի յունական բարբառոյն ի հայերէն (գրեալս) դարձուցեալ եւ զբազում եւս զհայրապետացն սրբոց զճշմարտապատում զիմաստութիւնս: Դարձեալ յետ այնորիկ] առեալ հանդերձ Եզնկաւ զյառաջագոյն, զյանկարծագիւտ, զփութանակի զթարգմանութիւնսն՝ հաստատէր ճշմարիտ աւրինակաւքն բերելովք: [Եւ շատ եւս այլ մեկնութիւնս Գրոց սրբոց թարգմանէին:]

6. Եւ այնպէս զամենայն ժամանակս իւրեանց ընթերցուածոց

մառօտէ *որոց անուանքն էին միումն Ղեւոնդ եւ միւսումն Կորիւն*: Բնագիրը թեթեւ խանգարում մը կրած է. *որ եւ* կը կարդամ ըստ Hի *որոց* եւ կ'ուղղեմ *որոյ*. *Կորիմինոս* աղաւաղութիւնն է անշուշտ *Կորիւն* անուան:

26 *որք* (*եւ*) չունին: *Ակ*:

26 *մատուցեալ*. B *մատուցեալք* H *երթեալք*:

27 BC *քաղաքէն*:

28 *անդ*: H:

29 *հոգեւոր պիտոյից զխնդիրն*. H *զհոգեւոր պ. խնդիրն* R *հ. պիտոյիցն զխնդիր*: *Ակ*:

30 *որոյ*. H *յորոց* RS *որոց*. բայց դիմաւոր *գային* բայը կը պահանջէ հոս *որք*:

30 BC *հայոց* փոխ. *հարց*. H *հայրապետացն*:

30 *հարցն յետ այնր* (BC *այն*) աւ. հաւանօրէն կրկնութիւնն է տ. 29ի *յետ այնորիկ*ի:

31/32 *գային երեւելով աշխարհին Հայոց*. A 465/66 ունի *գայր... երեւեալ* (ոմանք *երեւի*) *ի Հայաստան երկիրս* (այլք *երկրին*): H *դարձեալ լինէին յաշխարհն Հայոց*: Հմմտ. *Ավ* 169 *յայլ սահմանս երեւեալ գայցէ*. 173/74 *գայր երեւել որդին յաշխարհ*. 370 *գայցէ երեւել* (*Փաւստ*. Դ. 5 *երեւեալ*) եւ այլն: *Ակ*:

34 *գումարութիւնն*. H *զգրոց զգումարութիւնն*:

35 B *ի յն*. միւսները չունին:

36 *բազում եւս զհայրապետաց*. H *զբազումս եւ զհայրապետացն*:

36/37 *զճշմարիտ*. H *ճշմարտապատում*:

37 *զիմաստութիւն* RS *իմաստութիւնն* H *իմաստութիւնս*:

38 *Եզնակաւ*. H *Եզնկաւ*:

38/39 C *զփոխանակի*:

39 *զթարգմանութիւնս*. H *զթարգմանեալսն*:

39 B *զճշմարիտ* C *զճշմարիտն* H *ճշմարիտ*:

39 B *օրինօք*. միւսները *օրինակօք* H *օրինակօքն*:

40 *բերելօք*: H:

40 B *շատ այլ եւս*. միւսները չունին *այլ*. H *շատ եւս այլ*:

40 *մեկնութիւն*. H *մեկնութիւնս*:

40 E *թարգմանէին գրոց*:

40 չունին *սրբոց*: H:

41 H կ'աւելցնէ *ըստ հայերէն նշանագրացն*:

42 *յընթերցուածս*: BCHA 467:

Գրոց պարապէին հարքն զտիւ եւ զգիշեր· եւ նովիմբ ծաղկեալք եւ չահաւետեալք՝ աւրինակ բարեաց ուսումնասէր առընթերակայիցն լինէին: Մանաւանդ զի ունէին եւս պատուիրակս զգուշացուցիչս զաստուածակարգ պատգամաւորացն, յորոց առաջինն հրամայէ, թէ «Յաւրէնս Տեառն խորհեսցի նա ի տուէ եւ ի գիշերի»· եւ երկրորդն զհամագունակն պատուիրէ, թէ «Միտ դիր ընթերցուածոց մխիթարութեան վարդապետութեան· մի անփոյթ առներ զշնորհացդ որ ի քեզ են· յայդ խորհեաց եւ ի դոյն կանխեսջիր· զի քո յառաջադիմութիւնդ ամենեցուն յայտնի լիցի· զգոյշ լինիջիր անձինդ եւ վարդապետութեանդ եւ ի դմին յամեսջիր· զայդ եթէ առնիցես ե՛ւ զանձն ապրեցուսցես եւ զայնոսիկ որ քեզն լսիցեն»:

7· Ապա յետ այնպիսի գործոց դարձեալ առաւել եւ բարձրագոյն վարդապետութեամբ սկսեալ երանելւոյն Մաշտոցի ճառս

43 ծախէին (նաեւ BA). H ը. գ. սրբոց պարապէին երանելի հ.: Դասականք գիտեն ծախել յինչ եւ պարապել իմիք կամ յինչ:

44 R չահաւէտեալք:

44 առընթերակայից B առընթերակաց C ընթերակացիցն H առընթերակացն A 467 առընթերակցացն, առընթերակայիցն, առընթերակաց: Դասականք կը գործածեն գոյականաբար առընթերակայ եւ ածականաբար առընթերակաց. իսկ կը սպասուէր կամ առընթերակաց ուսումնասիրաց եւ կամ ուսումնասէր առընթերակայիցն: Ակ:

45 չունին եւս: AH:

45 պատուիրանս. H զպատուիրակն. A ոմանք պատուիրակս, մին զպատուիրանս, ուրիշներ պատուիրանս: Հմմտ. Ավ 153. «նաեւ ամենայն նահապետացն չատակեաց եղեալ ...զի որք Աստուծոյն ստացան՝ պատմեցին հարք որդւոց, զի իբրեւ պատուիրանք (կարդա՛ պատուիրակք) զգուշացուցիչք լինիցին առ ի ծանօթս առնելոյ զնոսա Աստուծոյ»:

45 C զգուշացուցիչս. H զգուշացուցիչսն:

46 յաստուածակարգ, նաեւ H. իսկ A յաստուածակարգ, ոմանք զաստուածակարգ, նաեւ -ակարգ:

46 E պատգամաւորաց:

46 B յորոցն Aad յորոց. միւսները որոց:

46 B առաջին. A առաջինն եւ զառաջինն:

47 խորհեսցիս, նաեւ A ոմանք, չունին նա: A:

47 Սաղմ. Ա. 2. «Յօրէնս Տեառն խորհեսցի նա ի տուէ եւ ի գիշերի»:

48 հանգոյն. չունին ամին. ունի C նմին. H չունի հանգոյն ամին. A զհամգունակն, զհամագունակն, b նման ամին: Համագունակ (համգունակ, հանգունակ) հազուադէպ է հին մատենագրութեան մէջ. կան սակայն նոյնգունակ, այնգունակ եւ այլն: Բնագրին մէջ կ'առնեմ զհամագունակն:

49 B մխիթարութեանն:

49 առնել: AHR:

50 խորհեա: AH:

51—52 չունին կանխեսջիր — ի դմին: AH:

53 BC ապրեցուցանես:

53 C որք:

54 Ա. Տիմոթ. Դ. 13—16:

55 ապա յետ (S այնորիկ) դարձեալ այնպիսի առաւել. C յետս դարձեալ. I ապա յետ այնպիսի առաւել. HR ապա դարձեալ յետ այնպիսի լուսաւոր (R առաւել). A 466 ապա յետ այսպիսի գործոց դարձեալ առաւել: A:

55 R չունի եւ:

56 վարդապետութեամբն BHR վարդապետութեանն IJ վարդապետութեան A վարդապետութեամբ:

56 Մաշթոցի. IJ Մեսրովբայ:

*յաճախագոյնս, դժուարապատումս, առակս խորհմացս, դիւրալուրս, շնորհագիւտս, բազմադիմիս ի զաւրութենէ եւ ի հիւթոյ Գրոց մարգարէականաց կարգել եւ յաւրինել, լի ամենայն ճաշակաւք աւետարանական հաւատոցն ճշմարտութեան: Յորս բազում նմանութիւնս եւ աւրինակս ի յանցաւորացս աստի, առաւելագոյն վասն յարութենական յուսոյն առ հանդերձեալսն յերիւրեալ եւ կազմեալ. զի հեշտընկալք եւ դիւրահասոյցք տխմարագունիցն եւ մարմնական իրաւք զբաղելոցն լինիցին՝ առ ի սթափել եւ զուարթացուցանել եւ հաստահիմն առ խոստացեալ աւետիսն քաջալերել*[79]:

ԺԷ. ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԳՆԱՑՔ ԵՒ ՀՈԳԵԿՐԱՒՆ ԱՐՈՒԵՍՏ ՄԱՇՏՈՑԻ

1. *Եւ այսպէս ընդ ամենայն կողմանս Հայոց եւ Վրաց եւ Աղուանից՝ զամենայն ժամանակս կենաց իւրոց, զամառն եւ զձմեռն, զտիւ եւ զգիշեր, անվեհեր եւ առանց յապաղելոյ զնորոգագիր վարդապետութիւնն ուսուցանէր: Եւ իւրով իսկ աւետարանական եւ ողջունապատում գնացիւքն առաջի թագաւորաց եւ իշխանաց եւ ամենայն հեթանոսաց՝ անընդդիմակաց ի հակառա-*

57 B *յաջախագոյնս*:
57 չունին, նաեւ H, *դժուարապատումս, առակս խորհմացս*: A:
57 *դիւրապատումս* (B *եւ*) չ. նաեւ HIJ. իսկ A *դիւրալուրս* բ. չ.:
58 *շնորհագիրս*. նաեւ AH. *իսկ* IJ *շնորհագիւտս*:
58 A *դ. բազմադիմիս շնորհագիրս յարդարեալս ի գ.*:
58 *ի լուսաւորութենէ* փոխ. *ի զօրութենէ*: AHIJ:
59 IJH *կարգեալ եւ յօրինեալ*. A *լի ամենայն ճաշակօք կարգեալս եւ յօրինեալս*:
60 IJ չունին *ճաշակօք աւետարանական*:
60 B *ճշմարտութեանն*:
60—66 չունին IJ *յորս — քաջալերել*:
61 BA *յանցաւորաց*:
62 *յարութենական*: A: Տես Ն. 117—119: — *առ ի հ.*: A:
63 B *կազմի*:
63 *ախմարագունիցն*. BAS *տխմարագունիցն* H *տխմարագունացն*:
64 B *զբաղելոցս*:
64 BH *եւ ի զ.* չունին միւսները:
65 *զարթուցանել*: AH:
65 *առ ի խ.* եւ H: A: Հմմտ. Ակ 186. *առ խոստացեալսն քաջալերեսցէ*:

*ԺԷ.* 1 *այնպէս*: BHA 439:
1 *զամենայն*: RS *յամենայն*: AH:
1 A *երկիրն Հայոց ի ծագաց մինչեւ ի ծագս*...:
1 *եւ* (*վրաց*) չունին: HIJ:
2 IJ *աւուրս* փոխ. *ժամանակս*:
3 EA չունին *եւ* (*առանց*):
3—4 *զնորոգագիր վարդապետութիւնն ուսուցանէր* ունի միայն H: Հմմտ. վերը Թ. 5, տ. 55 *զաշակերտութիւն նորագիւտ վարդապետութեանն*:
4 *իսկ իւրով*. AIJ *իւրով իսկ*. H *եւ իւրով իսկ*:
5 *ողջապատում*. H *ողջապատումն բանիւ*. A *ողջունապատում*. IJ *ողջունատու*:
6 IJ չունին *եւ* (*ամենայն*):
6 *հեթանոսաց*: C չունի. H *ռամկաց*:
6 *եւ*. չունին CHA:
6 *ի* (*հակ.*). չունին IJ:
6 C *ընդդիմակաց*. E *անընդդիմակացն* H *անընդդիմաց*:

*կորդաց զամենափրկիչ զանունն Յիսուսի կրեաց յանձին: Եւ զամենայն ոգի քրիստոսազգեստս եւ ոգեզէնս վառեաց: Եւ բազում բանդականաց եւ կալանաւորաց եւ տագնապելոց ի բռնաւորաց՝ փրկութիւն արարեալ կորզեաց զնոսա ահաւորութեամբ զաւրութեան փառացն Քրիստոսի: Եւ բազում մուրհակս արփինագիրս զանիրաւութեան պատառեաց: Եւ բազում սգաւորաց եւ կարճամտելոց մխիթարական վարդապետութեամբն «զակնկալութիւն յուսոյն ըստ յայտնութեան փառաց մեծին Աստուծոյ եւ փկրչին Յիսուսի Քրիստոսի» նուաճեաց: Եւ զամենայն միանգամայն յաստուածպաշտութեան պայման անդր փոխեաց:*

7 *զամենափրկչին*. միայն Ab *զամենափրկիչ*:

7 *զա. Յիսուսի անունն*. BCAIJ *զա. զանունն Յիսուսի*:

7 HIJ չունին *կրեաց*:

7 A չունի *յանձին*:

8 *քրիստոսազգեստ*. A *աստուածազգեստս* (այլ ձձ *քրիստոսազգեստս*), H *քրիստոսասէրս*:

8 *հոգեզէն*. H *ոգեզէնս* A *ոգեզէնս* (բնագրին մէջ ըստ Կոր. *ոգեզէնս*) R *հոգեզէն* IJ *հոգեզէնս*:

8 IJ չունին *եւ* (*բազում*):

9 *կալանաւորաց*. նաեւ Abt. իսկ IJA(ԱԲ) *կալականաց* HA (ոմանք) *կալանականաց*:

9 IJ չունին *ի բռնաւորաց*:

10 *թողութիւն*. AHIJ *փրկութիւն*:

10 IJ չունին *կորզեաց զնոսա ահաւորութեամբ*:

10 *կորզելով*. LO *կորզեալ*: Աէ:

10 *ահաւոր զօրութեամբն*. H *ահաւորութեամբ զօրութեամբ* A ոմանք *ահաւորութեամբ զօրութեան* (t *զօրութեամբ*), այլք *ահիւ զօրութեանն*. *Փաւստ*. Դ. 4. *ահիւ քարոզութեան* (կարդա *զօրութեան*) *փառացն Քրիստոսի*:

11 J չունի *զօրութեան*:

11 չունին *փառացն*: AFH:

11 IJ չունին *եւ բ.*: DE չունին *եւ բազում*:

11/12 *մ. անիրաւութեան պ.* այսպէս նաեւ Aβad. իսկ HAԱԲ *անիրաւագիրս պ.* եւ Abt *անիրաւագիրս զանիրաւութեան*. բայց IJ *արփինագիրս զանիրաւութեան*: Վերջինս կը նախընտրեմ. *անիրաւագիրս* հաւանօրէն սխալագրութիւն է *զանիրաւութեան* բառին ազդեցութեան տակ:

13 *զակնկալ*. H *ակնկալութեամբ* AS *զակնկալութիւն*:

14 IJ չունին *ըստ — Աստուծոյ*:

14 *եւ փ.* չունին: AH:

15 *փրկչին մերոյ*. A *ամենափրկչին*: H:

15 հմմտ. *Տիտ. Բ.* 13 14. «*Եւ ակնկալցուք երանելի յուսոյն եւ յայտնութեան փառաց մեծին Աստուծոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի*»:

15 *նօթճեաց*, նաեւ DEA(t). իսկ BCAHIJ *նուաճեաց*. զոր առի բնագրին մէջ: Բառն *նաւթճեմ* անգամ մը միայն գործածուած է դասական մատենագրութեան մէջ *աւետեմ* իմաստով. *Ոսկ. Մատթ.* 319. «*եւ միւսոյն զխոր խաղաղութեանն տուեալ զաւետիս ... եւ միւսն նօթճէր Երուսաղեմի, եթէ Ուրախ լեր ...*»: Հոս *նուաճեմ*, յն. προσάγω բային իմաստն ունի, այն է *ածեմ, մատուցանեմ, մերձեցուցանեմ, ընծայեմ, ընծայեցուցանեմ* եւ այլն. ասկէ՝ προσαγωγὴ, որ *Եփես. Բ.* 18 եւ *Գ.* 12 թարգմանուած է *նուաճութիւն*. իսկ *Հռոմ. Ե.* 2 *ընծայութիւն*: *Կորիւն* կ'երեւայ թէ նկատի ունեցած է երկրորդ տեղիքը. «*որով ունիմք զհամարձակութիւն եւ զնուաճութիւն յուսով ի ձեռն հաւատոց նորա*»:

16 *անդ*, նաեւ DE. իսկ B *անդի* C *անտի*. A չունի. IJHRS *անդր*:

16 հմմտ. *Եւթաղ* 83. «*ի պատգամաւորութեան պայման փոխեաց*»:

2. Եւ դարձեալ բազում եւ անհամար գունդս գունդս վանականաց ի շէնս եւ յանշէնս՝ շինակեացս, դաշտականս եւ լեռնականս, անձաւամուտս եւ արգելականս բնակեցուցեալ հաստատէր: Որոց ընդ ժամանակս ժամանակս ինքեամբ իւրով իսկ անձամբն աւրինակ ցուցանէր: Առեալ զոմանս ոմանս յաշակերտացն յիւրաքանչիւր մենաստանաց եւ երթեալք լեռնակեաց, մենակեաց, սորամուտ, ծառախիթ եղեալք՝ զառաւրեակն խոտաբուտ ճաշակաւք վճարէին: Եւ այնպէս վշտակեաց տկարութեան զանձինս տուեալ. մանաւանդ որոց հայեցեալ եւս ի մխիթարութիւն առաքելական բանիցն, թէ «Յորժամ վասն Քրիստոսի տկարանամ, յայնժամ զաւրացեալ լինիմ». եւ թէ «Լաւ եւս լիցի պարծել տկարութեամբս, զի բնակեսցէ յիս զաւրութիւնն Քրիստոսի»:

3. Անդ էր ապա չարբենալ գինւով, այլ առաւելուլ հոգւով

17 IJ չունին եւ անհամար:

17 ա. գունդս վ.: AHIJ գունդս գունդս:

18 շինակեացս չունին, նաեւ H: A:

18/19 լեռնականս, նաեւ H եւ A ոմանք. A (ձձ.) լեառնականս, լեառնակեացս: Հմմտ. Ն. 119—120:

19 A չունի բնակեցուցեալ:

20 զորս. IJ զոր: Ակ:

20 ինքեամբ չունին, նաեւ HIJ: A:

20/21 իւրով մարմնովն իսկ օրինակ ցուցեալ: H այլ եւ արդեամբք զանձն օրինակ կացուցանէր միաձանց. A (ԱԲg) որ ինքամբ իսկ իւրովին (ԱԲ եւ իւրով) անձամբն (g անձամբ) օր. ց.: A(b) ուր եւ ինքեամբ իւրով անձամբ օր. ց.: At որ եւ ինքեամբ... անձամբ. A (ձձ.) որով (որ եւ) ինքեան (եւ ինքեան) իւրով (եւ իւրով) իսկ անձամբն օր. ց.: IJS ժ. իւրով իսկ անձամբն օ. ցուցանէր: Ակ:

21 չունին զոմանս: AIJ:

21 յաշակերտաց: AIJE:

22 մենաստանացն. C մենաստանեացն: Ակ:

22 երթեալ բոլորը: Ակ:

22 լեռնակեաց (սորամուտ). H չունի. At լեառնակեաց:

22/23 չունին մենակեաց. A(ԱԲ) միայնակեաց: A:

23 ծակախիթ եւ HA: ՋAb ծակախիտ. BC ծառախիթ. A(ձձ) ծակամուտ: Հմմտ. Ավ 147 ծառախիտ, հրատարակչէն ուղղ. ծառախիթ: Տե՛ս Ն. 121—122:

23 եղեալ: Ակ:

23 զառօրէական զկերակուրն: H եւ զառօրեայ զկեանսն. IJ զառօրեայ զկենցաղս. BCA (ոմանք) զառաւրեակն, A(ԱԲbgt) զառօրէական զկերակուրն (bt չունին զկերակուրն):

24 ճաշակօքն. HA ոմանք ճաշակօք. այլք ճարակօք, ճարակօքն: Հմմտ. Ն. 121:

24 HA(g) վճարէր A(ԱԲt) վճարել A այլք վճարեալ:

24 չունին եւ: AHSՋ:

24 C տկարութեանն:

24/25 զանձն տային. B զանձնանային. H զանձն իւր տուեալ. AIJ զանձինս տուեալ:

25 IJ որոյ:

25 չունին եւս: A:

25 C մխիթարութիւնն:

26 տկար եմ վասն Քրիստոսի: AH:

27 IJ չունին յայնժամ:

27 հմմտ. Բ. Կորն. ԺԲ. 10. «Հաճեալ եմ ընդ տկարութիւնս... վասն Քրիստոսի. զի յորժամ տկարանամ, յայնժամ զօրանամ»:

27 IJ չունին լաւ եւս — Քրիստոսի:

28 Բ. Կորն. ԺԲ. 9. «Լաւ եւս լիցի պարծել ի տկարութիւնս, զի բնակեսցէ յիս զօրութիւնն Քրիստոսի»:

29 այնուհետեւ փոխ. ապա: AIJ:

29 հմմտ. Հռոմ. ԺԵ. 13. «Առաւելուլ ձեզ յուսով զօրութեամբ Հոգւոյն սրբոյ»:

*եւ պատրաստել զսիրտս երգովք հոգեւորաւք ի փառս եւ ի գովութիւն Աստուծոյ։ Անդ կրթութիւն քաղցրուսոյց ընթերցուածոց հոգեպատումն Գրոց։ Անդ քաջալերութիւն յորդորական լուսաւոր վարդապետութեանն առ ի յառաջադէմ ընտրութիւն պսակահամբար քրիստոսադիր կիտին։ Անդ եռալ հոգւով աստուածապաշտ ծառայութեամբ։ Անդ աղաւթք աղերսալիք եւ պաղատանք փարելիք եւ խնդրուածք հաշտեցուցիչք վասն ամենեցուն կենաց առ մարդասէրն Աստուած։*

4. *Եւ նովին հոգեկրաւն արուեստիւ հանէր աւուրս բազումս յանապատ տեղիս, մինչեւ ազդ լինէր իրաց իրաց ինչ աւգտակարաց եկեղեցեաց կողմանցն այնոցիկ հասանել յաւգնականութիւն շնորհաւքն Աստուծոյ։ Եւ նորա առանց իրիք զբաղելոյ, հանդերձ գործակցաւք իջեալ ի թիկունս դիպացն պատահելոց եւ վճարեալ զաւրութեամբն Աստուծոյ։ Եւ յորդորագոյնս եւ պարարտագոյնս եւ անփակ բերանով զվաստակս վարդապետութեանն ի սիրտս սերմանելեացն ծաւալեցուցանէր։ Եւ զայս առնէր զամենայն ժամանակս իւր՝ վասն անձին եւ վասն աշխարհի։*

30 հմմտ. *Սիրաք Բ. 20. «Որք երկնչին ի Տեառնէ՝ պատրաստեսցեն զսիրտս իւրեանց»*։

30 *երգօք*։ AIJ։

30—31 B *ի գովութիւն* M *ի գոհութիւն*։

31 IJ չունին *Աստուծոյ*։

31 B *կրթութիւնն*։

31 հմմտ. *Եւթաղ* 168. «*քաղցրուսոյց ընթերցուածոց վաճառաշահութիւն*» եւ *Ավ* 239 *քաղցրուսոյց վարդապետութիւն*։ *Ն*. 170։

32 *հոգեպատում*։ IJ։

32 BC *քաջալերութիւնն*։ — C *յորդորականն*։

33 չունին *լուսաւոր*։ AHIJ։

33 *վարդապետութեան*. BC *վարդապետութիւնն*. IJ *վարդապետութեանն*։

33 *ընտրութեանն*։ AIJ։

34 *պսակահաս*։ AHIJ։

34 B *առեալ* փոխ. *եռալ* C *առաւելեալ*։

35 IJ չունին *աղաւթք աղերսալիք եւ*։

36 չունին *պաղատանք փարելիք*։ AHIJ։

36 C *հեշտացուցիչք*։

36 BDE *եւ վասն*։

38 *նորին*։ AIJS։

38 *արուեստին*։ BCIJ։

39 IJ *տեղիսն*։ — H *մինչ*։

39 BCDM *ազատ* փոխ. *ազդ*։

39 *լինել*։ HIJS։

39 *յերիցանց իրաց ինչ*. IJ *իրացն ինչ* H *իրաց ինչ* A *իրաց իրաց*։ Հմմտ. *Ավ* 242.. *ըստ իրաց իրաց ինչ ընծայելոց*։

40 D *օգտակարեաց* IJ *հոգեւորաց* A *պիտոյից օգտակարաց*։ H։

40 A *ամենայն եկեղեցեացն* H *ի կողմանս կողմանս յաշակերտեալսն*. IJ չունին *կ. այնոցիկ*։

41 *Քրիստոսի*. AIJ *Աստուծոյ*։

41—43 IJ չունին *եւ նորա — պարարտագոյնս*։

41 A *առանց յապաղելոյ*, (*առանց իրիք զբաղելոյ*). այս յաւելուածը չունին βadԱԲ ձեռագիրք։

41/42 AH չունին *հանդերձ գործակցօք*։

42 BC *իջանել*. AH *իջանէր . . . վճարէր*։

42 A *դիպաց դիպաց պ.*։ H չունի։

43 *զվտակս*. BCAb *զվաստակս*. HIJDEA(*ԱԲ*) *զվտակս*։

45 *լսողացն ծաւ*. A *լսողացն սերմանեալ ծաւ.*։ HIJ։

45 A *արարեալ*։

46 IJ չունին *իւր*։

5. *Քանզի սովոր իսկ են ճշմարիտ վարդապետք զանձանց առաքինութիւնս կանոն աշակերտելոցն դնել. եւ մանաւանդ յուշ առնելով զտէրունականն զմիոյ միայնոյ զիմաստնոյն Աստուծոյ. «Քանզի սկսաւ, ասէ, Յիսուս առնել եւ ուսուցանել»: Որոյ բազում անգամ առեալ զաշակերտսն ուրոյն եւ աննիազական անձամբն աւրինակ կատարելոցն լինէր. յորժամ ի Թաբովրական լերինն... զաւետեաց երանութիւնն տայր. եւ կամ յորժամ ի նմին լերինն զկանոնական զաղաւթսն առնէր, մինչդեռ աշակերտքն ի Տիբերական ծովուն նաւէին* 80: *Եւ դարձեալ յաւուրս Բաղարջակերացն աւրինական տաւնին զգիշերոյն աղաւթս երիցս անգամ ի Ձիթաստանեաց լերինն առանձինն մատուցանէր:*

6. **Կամ որպէս նոյն իսկ Պաւղոս բարեաց գործոց նախանձաւորս լինել ամենեցուն ստիպէ ասելովն, եթէ «Զհետ երթայք*

47 C *սովորութիւն ճ. վարդապետաց*: BA 444. *Կնիք հաւատոյ* (= Կ) 303:

48 AH *առաքինութիւն*:

48 H *կանոնս աշակերտացն* (նաեւ Ab) *առնել*:

48 hամտ. *Տիտ. Բ.* 7. «*Ամենեցուն զանձն օրինակ ցուցանել գործոց բարութեան*». եւ *Փիլիպ. Գ.* 16 17. «*Նմին կանոնի միաբան լինել. Նմանողք ինձ եղիջիք... որպէս ունիք զմեզ օրինակ*»:

48 չունին *եւ* (*մանաւանդ*) : *Կ*. 303:

49 I *զտեառն հրամանն* J *զհրամանն տեառն*,

49 *զմիոյ միայնոյ իմաստնոյն Աստուծոյ*. BC *զմիոյ միայն ի*. IJ չունին. A 444. *զմիոյն զմիայնոյն*. ձձ. *զմիոյ զմիայնոյ*. *զմիոյն* (*զմիոյ*) *զմիայնին*: Հմմտ. *Ավ* 174. «*վասն միայնոյն իմաստնոյն Աստուծոյ*». եւ *Հռոմ. ԺԶ*. 26. «*միայնոյ ի. ա.*»: *Ակ*:

50 (*քանզի*) *սկսաւ* (*Յիսուս*). H *սկսաւ ասէ* AR *ք. ասէ. սկսաւ*:

50 *Գործք Առ. Ա.* 1:

51 *որոյ*. A *որ եւ* (այլ ձձ. *որոյ*, *որոյ եւ*, *որով*) *Կ. ուր եւ*:

51—108 IJ չունին *որոյ* — *բարձրացուցանէին*:

51/52 B *աննեզնական* C *աննեղական* E *աննիազ* A *աննիազական*:

52 *կարօտելոցն*. A *կատարելոցն*:

52/53 *Թաբօրական*. A *Թաբովրական*, *Թափովրական*, *Թափորական*. Ս. Գրքի մէջ *Թաբովր*:

53 *զաւետեաց երանութիւնն*: A *զաւետեացն զերանութիւն*: *Աւետեաց* կարդա՞լ *զանտեաց*:

54 CA *լերինն*: — *զաղօթս*: A:

55 D *աշակերտս*:

55 hամտ. *Մարկ. Զ.* 46: *Ավ* 245. «*երեւեալ աշակերտացն առ Տիբերական ծովուն*»: *Ն*. 123:

56 *յօրինական* (*տօնին*). նոյնպէս A: *Ակ*: Հմմտ. *Ավ* 229. «*Եւ ի տօնական աւուրն օրինականաց, զայ աշակերտօքն կատարել զօրէնսն*»:

56 *աղօթքն եւ ցայգոյ*. AR *զգիշերոյն աղօթս երիցս անգամ*: Հմմտ. *Ն*. 123:

57 hամտ. *Ղուկ. ԻԲ.* 1, 39. *Մատթ. ԻԶ.* 36. *Մարկ. ԺԴ.* 32: *Ավ* 231. «*ի Ձիթաստանեաց լերինն*»: *Ն*. 123:

*ԺԷ*. 6. Այս հատուածը, որ զետեղուած էր B ձեռագրին մէջ Ա. 9 հատուածին վերջը, այն է տպ. 12—13, կը փոխադրեմ այս տեղ: Նոյնը փոխառութեամբ ունի նաեւ Փաւստոս, *Դ*. 4 (*էջ* 66—67 *Պատկ*.):

58 *որպէս ի նոյն իսկ զի* (BC *զիս*. DEM չունին). R *որպէս զի նոյն իսկ բ.*: F:

58/59 BCDE *նախանձաւոր*:

59 hամտ. *Տիտ. Բ.* 14. «*Նախանձաւոր գործոց բարութեան*»: եւ *Գ*. 8, 14. «*Բարեաց գործոց վերակացու լինել*: *Ն*. 59:

59 *թէ*. F *եթէ*:

սիրոյ եւ նախանձաւոր լերուք հոգեւորացն»: Որոյ զյաւժարութիւն Աքայեցւոցն վասն պաշտաման սրբոցն ի Մակեդոնիա, պատմեալ՝ նախանձեցուցեալս յորդորեաց: Այլ եւ համարձակութիւն իսկ տայ անխափան ի բարեացն առաքինութիւնս, թէ «Լաւ է յամենայն ժամ նախանձել ի բարիս»: Այլ եւ նմանող իւր եւ Տեառն ստիպէ լինել: Դարձեալ փութայ ամենեքումբք հանդերձ ըստ Քրիստոսի հետոցն վարել. «Հայեցարուք, ասէ, ի զաւրագլուխն հաւատոց եւ ի կատարիչն Յիսուս. * որ փոխանակ ուրախութեանն որ նմա առաջի կայր, յանձն առ զխաչն, արհամարհեաց զամօթն»: Եւ զի՞նչ ընդ այսր վշտաց համուցումն [ցուցանի հաւատացեալ ի Քրիստոս Յիսուս]. «Նստաւ, ասէ, ընդ աջմէ մեծութեանն ի բարձունս. աղէ ածէք զմտաւ որ զայսպիսի համբերութիւն վասն մեր կրեաց. զի մի աշխատ լինիցիմք եւ լքանիցիմք» [ի վարս առաքինութեան]: ** Ուստի եւ յայտ իսկ է եւ առանց հետազաւտելոյ, եթէ ոչ վասն անձին Ամենատէրն, այլ համաշխարհի յուսումն զայն գործէր, որ է աւրինակ ամենայն հնազանդելոց: Վասն որոյ եւ ասէր իսկ, թէ «Արթուն կացէք, յաղաւթս կացէք, զի մի մտանիցէք ի փորձութիւն»:

60 EM հոգեւորականացն:
60 Ա. Կոր. ԺԴ. 1:
60 որոց. FR որոյ:
61 աքայեցւոց. B աքայեցւոյն: CF:
62 նախանձեցուցեալ: BCF:
62 հմմտ. Բ. Կոր. Թ. 1—2:
63 առաքինութիւն. D առաքինութեան: F: Կոմիտաս կաթ. «եւ համարձակութիւն տայ... ի բարեաց գործոցն առաքինութիւնս անխափան»:
64 Գաղատ. Դ. 18. «Լաւ է նախանձաւոր լինել ի բարիս յամենայն ժամ»:
65 հմմտ. Ա. Կոր. ԺԱ. 1. «Նմանողք ինձ եղերուք, որպէս եւ ես Քրիստոսի»:
66 BC հետոյն:
67 E հաւատոցն: — Քրիստոս. BF Յիսուս:
67—91 F չունի որ փոխանակ — կենաց բանին:
* 67 Կը սկսի H. 38, տ. 11—16 ինքը միայն ունի տ. 66—73:
68 H չունի նմա: — H էառ:
69 H ընդ այս: Ակ:
69—70 եւ 73 փակագծուածները կը թուին Hի յաւելուածներ:
71 H այսպիսի:
** 73 հոս կը շարունակուին Տպ. էջ 38, տ. 22: Եւ A:
73—74 չունի H ուստի — եթէ (ոչ):
73 յայտնի. A յայտ իսկ էր:
73 խուզելոյ. B առաւելոյ. C առաւելլոյ A առանց վեհերելոյ. A ձձ. ա. հետազօտելոյ. հետեւելոյ ուստի B կարդալու է առան(ոց հետազաւտ)ելոյ: Ակ:
74 C համայն աշխարհի:
74 H զի փոխ. եթէ:
74 H ամենատէրն զայս առնէր, այլ վասն համաշխարհական փրկութեանն, յուսումն աստուածասիրաց... որ են օրինակ ամենայն հաւատացելոց ի Քրիստոս: Չունի տ. 76—77 վասն — փորձութիւն:
76 A ասէրն:
76 չունին թէ: A:
76 չունին յաղօթս կացէք: BCA:
77 զի մի ի փորձութիւն (B փորձութիւնն) մտ.: A:
77 Մարկ. ԺԴ. 38. «Արթուն կացէք եւ յաղօթս կացէք, զի մի մտջիք (Ղուկ. ԻԲ. 46 մտանիցէք) ի փորձութիւն:

7. Իսկ արդ, եթէ թեթեւագոյն արուեստից պակասագոյն ի գիտութենէ են ազգք երկրածնացս, որչափ եւս այնմ արուեստի ոք համարեսցի անգիտանալ, որ ընդ աստուածախօսն կատարի. որում երանելին Պաւղոս ամենեցուն տգիտանալ ասէ: Վասն որոյ եւ զամենակեցոյց «Հոգին ի թիկունս հասանել անմռունչ հեծութեամբ բարեխաւս» գիտէ: Իսկ արդ յորժամ լսիցեմք, եթէ «Սկսաւ Յիսուս առնել եւ ուսուցանել», ապաքէն «առնելն» զի ուսուցէ եւ ոչ եթէ զի պարգեւեսցէ իմանալի է: Եւ «բարեխաւսելն» Նորա «վասն սրբոց» եւ «բարեխաւսելն Հոգւոյն սրբոյ» առ ի վարդապետելոյ մեզ, զի ընդ միմեանց բարեխաւս իցեմք եւ ոչ եթէ առ բարձրագոյն ոք Միածնին կամ Հոգւոյն սրբոյ «բարեխաւսել»ն գիտելի է. քանզի միապատիւ է Աստուածականն եւ ոչ բազմաբար:

8. * Այլ եւ յուշ առնէ դարձեալ [զառաջնորդս կենաց բանին,] թէ «Յիշեցէք զառաջնորդս ձեր, որ խաւսեցան ձեզ զբանն Աստու-

ԺԷ. 7. Տպ. 39. A 445. H 39:

78 EMH ի թեթեւագոյն:

78—79 պակասագոյն են ի գիտութենէ: A:

79 DEM ի գիտութեան: AԱ ի գիտութեանն:

79 A երկրածնաց: Հմմտ. Ավ 176. «ազգք երկրածնաց»:

79 չունին եւս. նաեւ A ոմանք: ACS:

80 A համարիցի:

80 եւ անգիտանալ. D անգիտանալ: BCAH:

80 Aβad որչափ եւս առաւել այնմ արուեստի տգէտք են. H տգիտանամք:

80 որ ընդ Աստուած զխօսսն կատարէ. BC աստուածախօսն E զխօսն AHԿ որ ընդ աստուածախօսսն (βad աստուածախօսն) կատարի (At կատարեսցէ. βadԿ կատարի բան) H կատարէ:

81 որով նաեւ AԱԲ. At որով եւ. AbH որում:

81 հմմտ. Ա. Կորն. ԺԴ. 36—38:

82 չունին եւ: A:

83 հմմտ. Հռոմ. Ը. 26—27. «Նոյնպէս եւ Հոգին ի թիկունս հասանէ տկարութեանս մերում, զի զոր կամքն յաղօթս, որպէս արժան իցէ՝ ոչ գիտեմք, այլ (ոմանք զի) ինքն Հոգին վասն մեր բարեխօս լինի ի հեծութիւնս անմռունչս: Բայց որ քննէ զսիրտս՝ գիտէ զինչ խորհուրդ է Հոգւոյն. զի ըստ Աստուծոյ բարեխօսէ վասն սրբոց». իսկ անդ Ը. 34. «Քրիստոս Յիսուս որ մեռաւն, մանաւանդ թէ յարուցեալ իսկ է եւ է ընդ աջմէ Աստուծոյ, որ եւ բարեխօս իսկ է վասն մեր»: Հմմտ. նաեւ Եբր. Է. 25. Յովհ. Բ. 1:

84 Գործք Առ. Ա. 1:

84 առնէ եւ ուսուցանէ. C եւս առնէ: A:

85 A պարգեւեսցի:

86 բարեխօսել Նորա... բարեխօսել հոգւոյն: AβadԿ:

86 D Նոցա: AβadԿ որ ինչ:

89 զի ընդ միմեանց բարեխօսելն. ուստի ինկած է բարեխօս իցեմք — սրբոյ: A:

90 BC բազմաբեր:

* ԺԷ. 8. Տպ. 12—13. Փաւստ. Դ. 4. H 39:

91 Եւ դարձեալ թէ, նաեւ F. իսկ H այլ եւ յուշ առնէ դարձեալ:

92 H չունի թէ յիշեցէք... Աստուծոյ. բայց ունի զառաջնորդս կենաց բանին, համաձայն Fի զառաջնորդս... զբանն կենաց»:

92 չունին ձեզ: FR:

92 F կ'աւելցնէ եւ զվերակացուս ձեր ի Տէր:

92 F որք.. կենաց փոխ. Աստուծոյ:

*ծոյ. հայեցեալք ասէ, յելս գնացից նոցա՝ նմանողք եղերուք հաւատոցն. յուսմունս պէսպէս եւ յաւտարաձայնս մի դանդաչէք»: Եւ միանգամայն, եթէ «Զայս խորհեսցի իւրաքանչիւր ոք ի ձէնջ որ եւ ի Քրիստոս Յիսուս»: Հանգոյն սմին եւ Ղուկաս սկիզբն Առաքելագործ Մատենին դնէ, թէ «Սկսաւ Յիսուս առնել եւ ուսուցանել»: Իսկ ցանկալի տեառնեղբայրն Յակոբոս զհամաւրէն իսկ զգունդս սրբոցն հանդերձ սրբասէր Տերամբն յաւրինակ առեալ ի Թղթին իւրում՝ ասէ, թէ «Աւրինակ առէք, եղբարք, չարչարանաց եւ երկայնմտութեան զմարգարէսն, որ խաւսեցան յանուն Տեառն. զհամբերութիւն Յոբայ լուարուք եւ զկատարումն Տեառն տեսէք»:*

9. *Իսկ երանելի առաքելոցն ընկալեալ ի վարդապետութենէ ճշմարտութեանն՝ նախ կարաւտական անձանցն յաւգուտ մատակարարէին եւ ապա աւրինակ աշակերտելոցն բարձեալ տանէին, երբեմն առանձինն եւ երբեմն ժողովովքն գումարելովք զփառսն Քրիստոսի աւրհնելով բարձրացուցանէին: Քանզի առաւել աւգտա-*

93 *հայեցեալ յելս.* F *հայեցարուք յելս:* HR *հայեցեալք:*
93 *եղերուք հաւատոց նոցա: Աէ:*
94 չունին, նաեւ F *յուսմունս... դանդաչէք:* H:
94 H կ'ընդհատի հոս եւ կ'անցնի յաջորդ հատուածին:
94 *Եբր. ԺԳ.* 7—9. *Յիշեցէք զառաջնորդս ձեր, որ խօսեցան ձեզ զբանն Աստուծոյ. հայեցեալք յելս գնացից նոցա՝ նմանողք եղերուք հաւատոցն... յուսմունս պէսպէս եւ յօտարաձայնս մի դանդաչէք:*
95 F *թէ:*
96 F չունի *եւ:*
96 *Փիլիպ. Բ.* 5:
96—97 F փոխ. *հանգոյն — դնէ* ունի եւ *դարձեալ թէ:*
96 *յսկիզբն.* BC *սկիզբն:* Հմմտ. *Աւ* 247. «*Ղուկաս... սկիզբն դնէ Առաքելագործ Գրոյն... Սկսաւ...*». եւ էջ 201, 232 *յԱռաքելագործ Մատենին: Ն.* 59—60:
97—98 չունին *թէ — ուսուցանել:* F:
98 *Գործք Առ. Ա.* 1:
99 R չունի *իսկ:*
99 *զգունդն սրբոց.* R *զգունդս սրբոց:* F: Հմմտ. *Եւթաղ,* 193. «*Համօրէն զամենայն մարդիկ... սրբոց գնդիւքն»:*
100 չունին *եղբարք:* F:
100/1 C *զչարչարանաց:*
101 *յերկայնմտութեան:* BC:
102 R *զհամբերութիւնն:*
103 *Յակոբ. Ե.* 10: Հմմտ. *Աւ* 356. «*առաւել եւս զօրինակս տուեալ համբերութեանցն, եւ այլոցն եւս տային թղթովք զառաջնոցն վարսն իբրեւ կաղապար արկանէին, թէ Օրինակ առէք, եղբարք...»:*
103 F հոս կը վերջանայ:
*Ժէ.* 9—10. *Տպ.* 39—40. A 446—447. H 39—40:
105 չունին *յօգուտ. A օգուտ.* այլ ձձ. *իւրեանց անձանցն օգտութեան: Աէ:*
106 A չունի *մատակարարէին:*
106 չունին *օրինակ:* AH:
106 *աշակերտացն.* BCAH *աշակերտելոցն:*
107 *ժողովրդովքն.* D *ժողովուրդք* H *ի ժողովս բազմամբոխս:* A:
107 *առաքելովքն.* A *առնելով, առնելովք,* իսկ βadt չունին. H *զփառս Քրիստոսի շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն բարձրացուցանէին: Ն.* 123 կ'ուղղէ *առաւելովքն,* զոր ընդունած են S եւ Ազաք-ի հրատարակիչները: Թերեւս լաւագոյն՝ *աւրհնելով: «Բարձրացուցանել զփառս Քրիստոսի Տեառն» Աւ* 144, 365:
108 IJ *քանզի եւ:*

կար իսկ է յամենայն աշխարհակիր զբաւսանաց առանձինն սահմանել եւ միայն աստուածպաշտութեան պարապել. զոր եւ մարգարէքն յառաջագոյն գործէին. որք ի լերինս եւ յանապատս եւ յայրս եւ ի փապարս վիմաց զաստուածեղէն կրաւնիցն զծառայութիւն հարկանէին: Նոյնպէս եւ ամենայն հարքն, որք յաջորդեցան՝ յառաքելական կանոնացն կրեալ անձամբք զլաւութիւնս՝ բերէին վերջնոցս աւրինակ:

10. Ուստի եւ Երանելիս այս բարձեալ տանէր զաւանդելոցն պատիւ եւ ամենայն մատուցելոց առ նա զնոյն պատուիրեալ զուշակէր: Եւ այնպէս յառաջադէմ ամենայն աստուածեղէն գանձուցն վայելչութեամբք լցեալք, պարարտացեալք եւ ամեթացեալք, խաղացեալք գային ի բազում ժամանակս եւ նովին ի նոյն կանխեալք եւ ի նմին հանապազորդեալք:

### ԺԸ. ՄԱՀ ՍՐԲՈՑՆ ՍԱՀԱԿԱՅ

1. Յետ այնորիկ դէպ լինէր նովին ճշմարտութեամբ, լցեալ աւուրբք եւ երկայնակեաց ժամանակաւք եւ վայելեալ աստուա–

109 BC *ամենայն*:
109 B *սբօսանաց* IJ *սբաւսանաց աշխարհի*:
110 IJ *սահմանել զկիրս եւ*:
110 C *յաստուածպաշտութիւն* IJS *աստուածպաշտութեանն*:
111 չունին *յառաջագոյն*: AHIJ:
111 BC *կոչէին* փոխ. *գործէին*:
112 չունին *եւ յայրս*: AHIJ:
112 A չունի *եւ* (*յայրս*): Տե՛ս Ն. 378/9:
113 Համմտ. *Եբր. ԺԱ.* 38. *յանապատի եւ ի լերինս եւ ի յայրս եւ ի փապարս երկրի*:
112 IJ *աստուածեղէն*:
112 *զծառայութիւնսն*: A:
113 IJ *որ* փոխ. *որք*:
114 C *առաքելական*:
114 *կանոնաց*. AIJ *կանոնացն*:
114 *կ. կրեալ անձամբք զլ.* A(βad) *յառաքելական կրօնսն եւ իւրեանց անձամբք* (չունին *զլաւութիւնս*). A (bԱԲt) *կ. կ.* (bԱԲ չունին *կրեալ*) *ինքեանք անձամբ* (bt *յանձանց*):
115 BC *ի վերջնոցս* D *ի վերջնոյս* AIJ *վերջնոցս*:
*ԺԷ.* 10. BAH:
116 չունին *եւ*: IJ:
116 B *բարձեալ է* H *բ. բերէր*: AIJ;
116 այս տեղ կ'ընդհատին IJ:
118 *յառաջ.* H *յառաջադէմ* A չունի:
119 A *լցեալ*: — H *պատրաստեալք* A *պարարտացեալք*:
119/20 չունին *եւ ամեթացեալք*. A *ամեթութեամբք զամենեսեան*. H *եւ ամեթացեալք ի բազում ժամանակս աշակերտեալք առ ի նմանէ*: Համմտ. *Վարք Հարանց, Ա.* 266. «*Տեսաք զՆաւգրիոս, այր իմաստուն... որ փորձ էր ամենայն իրօք ամեթացեալ*»:
120 H չունի *խաղացեալք* (M *խաղաղացեալք*) *գային* (C *գնացին* E *գնային*):
120 չունին *եւ*: A:
121 չունին *եւ* (*ի նմին*): EAH:
121 H կ'աւելցնէ *ի փառս ամենասուրբ Երրորդութեանն*:
*ԺԸ. Տպ. էջ* 41—42. H 41—42. IJK:
1 *ճ. երանելւոյն Սահակայ լ.* նաեւ IJ. իսկ H *դ. լ. փոխել յաշխարհէս ե. սրբոյն Ս. հայրապետին Հայոց ճշմարիտ վարուք եւ ուղղափառ հաւատով լ.*:
2 չունին, նաեւ IJ *եւ եր.*: H:
2 *երկայն.* HIJ *երկայնակեաց*: Համմտ. *Ավ* 152—153. «*երկայնակեացս իսկ արարեալ զհարսն... վասն այնորիկ երկայնակեացք*»:

ծարեր պտղոյն բարութեամբք, յառաջնում ամի[81] Երկրորդ Յազկերտի, որդւոյ Վռամայ, Թագաւորի կացելոյ Պարսից աշխարհի, ի Բագրեւանդ գաւառին, ի գեւղն Բլրացւոց[82], ի կատարել ամսոյն Նաւասարդի, որպէս եւ զաւր ծննդեանն զնոյն համարեալ յիշէին, յերկրորդ ժամու աւուրն, ի պաշտաման անուշահոտ եւղոյն հանդերձ աստուածահաճոյ աղաւթիւք՝ ծերունւոյն (Սահակայ Հայոց եպիսկոպոսի) զհոգին ի Քրիստոս աւանդել. հայեցեալ ի բան մարգարէին, որ ասէն. «Ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ». եւ ըստ Ստեփանոսի երանելւոյն, որ ասէն. «Տէր Յիսուս, ընկալ զհոգի իմ». ըստ նմին աւրինակի եւ նորա ապպարեալ զանձն եւ զմնացեալսն ամենապահ շնորհացն Աստուծոյ:

2. Զոր եւ առեալ վաղվաղակի եւ պարսպեալ ամենայն հանդերձանաւք ձեռնասուն աստուածասէր պաշտաւնէիցն իւրոց —

2 Հմմտ. Սաղմ. Խ. 20. «Երկայն աւուրբք լցուցից»:

2 վայելչացեալ (H «վայելչացուցեալ զամենայն աշխարհ Հայոց») դասակաճաց անձանօթ. IJ եւ վայելեալք:

2—3 IJ յաստուածեղէն քաղցրութեամբ: Հմմտ. Ակ 146. «որ հմուտ եւ տեղեակ էր աստուածաբեր խորհրդոցն»:

3 BC յառաջնումն ամին H յառաջնում ամի:

3 չունին երկրորդ: H:

4 E արքայի:

4 ի Պարսից: IJ: Հմմտ. A 12 յամս աստուածասէրն Կոստանդեայ թագաւորի կացելոյ Յունաց եւ Հռոմայեցւոց աշխարհին: Ն. 125:

5 Բագրաւանդ: HIJ:

5 գաւառի, նաեւ HIJ: Փարպ. գաւառին:

5 ի գեւղ. IJ գեօղ H Փարպ. գեւղն. ճշդագոյն ի գեղջն:

5 Բլրոցաց. H Բլուր Փ. 37. Մ: Խոր. Գ. 67. ի գեւղն որ անուանեալ կոչի Բլուր. IJ ի գեօղ Բլրացւոցն:

5 E կատարեալ: — ամսեանն: HIJ:

6 որպէս եւ զօր ծննդեան (BCH ծննդեանն) երանելոյն յիշէին. IJ որպէս զօր ծ. եր. զնոյն համարեալ յիշէին. H որ եւ զօր ծննդեանն ի նոյն աւուր (չունի յիշէին). Փ. որ եւ զօր ծ. սրբոյն ի ստոյգ գիտողաց ի Պատմութենէ երանելւոյ առն Կորեան՝ հաստատեալ գիտացաք լինել նոյն օր ծ. սրբոյն, ի նմին ամսեան:

7 IJM երրորդ H յերրորդն BCDEL Փ. յերկրորդ:

7 IJ չունին ի:

7 IJ զանուշոգին հոտ հանդերձ (չունի իւղոյն):

7 իւղոյն:

9 չունին զհոգին. H եւ այնպէս... աղօթիւք ծերունւոյն աւանդեալ զհոգին ի Քրիստոս:

9 աւանդեալ (նաեւ H). R աւանդել E հանգուցեալ:

9 չունին ի բան (նաեւ BCD): E:

10 R ի ձեռն: — Սաղմ. Լ. 6:

11 եւ ստեփանոսի երանելոյ. H ըստ նախավկային բանի:

12 Գործք Առ. Է. 58:

12 IJ չունի ըստ նմին — յիշատակ:

12 ապապրեալ: ՀՆՀԲ:

13 զմնացեալս: H:

14 զոր եւ առեալ վաղվաղակի ամենայն հանդերձելովք. H զոր ա. վաղվաղակի պարսպէին հանդերձանօք ըստ խորհրդածութեան քահանայապետութեան թաղմանն: Հմմտ. Վարք Հարանց Ա. 252. «հանդերձեաց պատեաց զնա» (զմեռեալ եղբայրն) եւ էջ 254. «զարդարէր պատէր զնա ըստ օրինին եւ յուղարկէր ի գերեզման անդր»:

15 H իւր իսկ ձեռնասուն աշակերտքն:

որոց գլխաւորին Երեմիա անուն ճանաչէր, այր սուրբ եւ բարեպաշտաւն — [Հանդերձ աստուածասէր իշխանականաւ միով, որ անուանեալ կոչէր Դուստր, որ էր կին Վարդանայ, զոր ի վերոյն յիշեցաք] 34 — եւ բազմամբոխ սրբոց ժողովելոցն բարձեալ զմարմին սրբոյն սաղմոսիւք եւ աւրհնութեամբ եւ հոգեւոր բարբառովք, յետ սակաւ ինչ աւուրց ընդ տիւ եւ ընդ գիշեր ի Տարաւն (գաւառն) հասուցանէին, մինչ ի բուն իսկ գեւղն յՕշտիշատ 83: Եւ անդ ի մարտիրոսական խորանին յարկեղս սրբոցն հանդերձ ամենայն անուշահոտ խնկովք եդեալ եւ կնքեալ քրիստոսանշան կնքովն եւ զաւրինաւոր յիշատակն ի վերայ կատարեալ՝ այնուհետեւ յիւրաքանչիւրսն դառնային: Զորոյ եւ նոյնպէս ամի ամի ժողովովք գումարելովք ի նմին ամսեան զնորին զաւր յիշատակի տաւնախմբեն:

ԺԹ· ՀԱՆԳԻՍՏ ԵՐԱՆԵԼԻՈՅՆ ՄԱՇՏՈՑԻ

1· Իսկ երանելի զուգականին զայս լուեալ, զսուրբ վարդապետէն՝ զՄաշտոցէ ասեմ, բազում անձկայրեաց տրտմութեամբք

16 որոյ նաեւ BDEH. իսկ CS որոց: Հմմտ· Ն. 156:
17 R չունի աստուածասէր: — B իշխանականաւ:
18 ի վերնոյն: Ակ: Կ'ակնարկուի Թ. 7· ամբողջը կը համարիմ օտար գրչէ· շարունակութիւնը սեռական հոլովով է:
19 զսուրբն. H բարձեալ զմարմին երանելւոյն բազում ամբոխիւ: Հմմտ. Փաւստ. Ե· 25 «զմարմին սրբոյն»: Փարպ. 37· «զնշխարս սրբոյն»:
19 բազում ամբոխից (ամբոխիւ) սրբոց ժողովոց: Կ'առաջարկեմ կարդալ բազմամբոխ սրբոց ժողովելոցն: Հմմտ. A «եւ ամենայն հրապարակք բազմամբոխ ժողովրդոց»· «բազմամբոխ մարդիկ» 74, 90, 380:
20 R օրհնութեամբք:
20—21 բարբառով. B բարբառովն H երգօք հոգեւորօք: R:
22 չունին գաւառ: H գաւառ:
22 B գիւղ:
23 BCS սրբոյն: — յարկեղ: HA 374: Ն. 126:
24/25 LP քրիստոսական M քրիստոսադրոշ OE քրիստոսադրոշմ:
26 իւրաքանչիւրն. H յիւրաքանչիւրսն:
26 BC որոյ, այլք որոց. H զորոյ:
27 չունին ժողովովք. H բազում ժողովովք:
27 ի նոյն:
27/28 զնոյն յիշատակն C ի նոյն յիշատակսն H զորոյ եւ զտօն յիշատակի սրբոյն:
28 B տօնախմբել H տօնախմբեն յլ. նաւասարդ ամսեանն բազում ժողովովք: Հմմտ. Եւթաղ, 88· «ամի ամի զօր յիշատակի նորա տօնախմբեն»· Փաւստ. Գ. 6· «զօր տօնին յիշատակի նոցա... խմբեալ ցնծային»: Ն. 127:
ԺԹ. 1· 1 երանելի H երանելւոյ:
1 B զոգականին. H եւ այլք զուգականին: Բառս գործածուած է դասականներու քով «նման, համապատիւ, հանգիտապատիւ, զուգապատիւ» իմաստով, այսպէս Ոսկ. Մեկն. Մատթ. էջ 469 «կամիս զարդարել... եւ այնպիսի կին ոչ միայն յիւրոց զուգականաց» (տպ. յիւրոյ զուգականէն. յն. τὰς ὁμοτίμους): Հոս «զուգական» կրնայ նկատուիլ իբրեւ մէկը «զուգանքը, ամոլքը» կազմողներէն. համեմատէ յն. ζυγός, յգ. συγά եւ ζεῦγος:
1 չունին զայս... զսուրբ վարդապետէն: H:
2 B անձկարեաց C անձկալեաց IJ իսկ երանելւոյն Մեսրովբայ բազում ա·: Հմմտ. Փաւստ. Գ. 11· «որք

եւ արտաւսրակաթ ողբովք եւ ծանրաթախիծ հոգովք պաշարեալ դնէր։ Զի թէ Առաքեալն սուրբ ոչ գտեալ առժամայն զընդելակիցն զՏիտոս՝ անհանգիստ զհոգւոյն ասէ, ո՛րչափ եւս առաւել զմիանգամայն զհրաժարելոցն սաստիկ կարիս մնացելոցն է համարել։ Բայց թէպէտ եւ միայնաւորութեանն տրտմութիւն չթողոյր զուարթանալ, սակայն զաւետարանական ընթացսն եւ զվերակացութիւնն եկեղեցւոյ սրբոյ շնորհաւքն Աստուծոյ առանց պակասութեան տանէր։ Եւ առաւել փութայր գոլն եղեալ՝ զամենեսեան յորդորել առ բարեացն քաջութիւն։ Եւ զցայգ եւ զցերեկ պահաւք եւ աղաւթիւք եւ ուժգին խնդրուածովք եւ բարձրագոյն բարբառովք զաստուածադիր պատուիրանացն զհրամանս յուշ առնելով զգուշացուցանէր ամենայն մարդոյ խոտամբերութեամբ, պահաւք եւ սրբութեամբ, տքնական հսկմամբ եւ անձանձրոյթ աղաւթիցն ջերմութեամբ առ Աստուած կանխելոյ. մինչեւ բազ-

բազում անձկայրեաց տրտմութեամբք եւ արտասուակաթ ողբովք եւ ծանրաթախիծ հոգով, մեծաւ կոծովք եւ անհնարին աշխարանօք պաշարեալք, զգնացելոցն կարիս մնացելոցն համարեալ սգային»։

2 տրտմութեամբ։ F։

3 արտաւսրագութ. F արտասուակաթ IJ արտաւսրակաթ։

3 սգովք. BIJH հոգովք DE ողւով F հոգով F կ'աւելցնէ մեծաւ կոծովք եւ անհնարին աշխարանօք։

4 IJ չունին զի թէ — համարել։

5 զՏիմոթէոս. հմմտ. Բ. Կոր. Բ. 13. «Ոչ եղեւ հանգիստ հոգւոյ իմում. քանզի ոչ գտի ես անդ զՏիտոս զեղբայրն իմ». եւ Բ. Կոր. Է. 7. «Այլ որ մխիթարէն զխոնարհս, մխիթարեաց զմեզ Աստուած ի գալստեան Տիտոսի»։ Ն. R։ Հաւանօրէն B ձեռագրի մէջ սխալագրութիւն, փոխ. Տիտոսի Տիմոթէոս գրուած։

6 միանգամայն. չունի F։

6 B հրաժարելոյն. F զգնացելոցն։

6 կիրս. F զգնացելոցն կարիս։ F։ Հմմտ. Ն. 375։

6 B մնացելոյն։

7 է համարեալ. F համարեալ սգային։

7 BC միայնաւորութիւնն IJ մենաւորութեան։

7 IJ տրտմութիւնն։

8 R զընթացսն։

9 զվ. սրբոյ եկեղեցւոյ. IJAF զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ։

9 E շնորհօք։ — B պակասութեանն։

10 IJ չունին եւ — քաջութիւն։

10 F տ. առաւել եւս փ.։ H չունի։

10/11 յ. զամենեսեան. նաեւ F. R զամենեսին A զամենայն ոք H զամենայն աշակերտեալսն։

11 յորդորելով. H յորդորէր։ Ակ։

11 F առ ի բ.։

11 H քաջութիւնսն AF քաջալերութիւն։

11 AF չունին եւ։

12 IJ չունին պահօք եւ։

13 IJ բարբառով։

13 աստուածադիր. IJ զաստուածադիր։

13 IJ չունին պատուիրանացն։

13—14 հրամանս. A զհրամանսն։

14 LMOP ուշ առնելով։

14 H յուշ առնէր ամենայն անձին։

14 զգուշացուցանելով. IJAS զգուշացուցանէր H զգուշանալ ամենայն անձին։

14—17 Բնագիրը հոս խանգարում կրած է. զ. ամենայն մարդոյ. մինչեւ բազմագոյնս եւ զդժուարագոյն (C դժ.) վարուց կրթութիւնն (S կ–թիւնս)։ IJ մ. բազմաց խստագոյն համարեալ ծանրաբեռն զվարուցն կրթութիւն. H մինչ բազմաց խիստ եւ ծանր եւ դժուար համարեալ զվա–

մաց խստագոյն եւ դժուարագոյն համարել զծանրաբեռն վարուցն կրթութիւնս: Իբրեւ զպատերազմասէր նահատակ միշտ զանձն ի կրթութիւնս եւ ի պատրաստութեան ունէր ամենայն փորձութեանց եւ վշտաց: Մանաւանդ զի եւ զմտաւ խոկ ածէր ծերունական հասակին զաւր վախճանին. «չտայր քուն աչաց եւ ոչ նինջ արտեւանանց եւ ոչ հանգիստ իրանացն, մինչեւ հասանել ի հանգիստն Տեառն»:

2. Եւ մինչդեռ այնպէս բարձրակալ կատարման հաւատովքն մերձաւորացն առ ինքեւ եւ հեռաւորաց զհոգեւոր եռանդն ածէր եւ բազում թուղթս խրատագիրս եւ զգուշացուցիչս ընդ ամենայն գաւառս առաքէր, անդէն ի նմին ամի, յետ ամսոց վեցից անցելոց վախճանի երանելոյն Սահակայ, (դէպ) լինէր — (յորժամ) հանդերձ սրբով Վարդապետաւ բանակն 84 յոստանին Հայոց յԱյրա-

րուցն կրթութիւնսն. A չունի. F (Գ. 6). «խստագոյն եւ դժուարագոյն անհամարք (կարդա համարել) ծանրաբեռն վարուցն կրթութիւնք խստամբերութեանն պահօք սրբութեամբ, ոքնական հսկմամբ անձանձրոյթ աղօթիցն ջերմութեան առ Աստուած կանխելոյ վասն ամենայն մարդոյ»: Յեցած այս տեղիքներու վրայ վերակազմեցի բնագիրը:

17 O բազմագոյն PR բազմագոյնս: HIJ:

17 չունին խստագոյն. H խիստ: IJ:

17/18 IJ չունին դժուարագոյն H դժուար: BF:

18 չունին ծանրաբեռն. H ծանր: FIJ:

18 չունին համարել. F անհամարք: HIJ:

18 վարուց. F վարուցն HIJ զվարուցն:

18 կրթութիւն, նաեւ IJ. F կրթութիւնսն. RS կրթութիւնս:

18—20 իբրեւ — վշտաց առնուած է Փաւստոսէն (Գ. 6):

21 IJ չունին եւ... խոկ:

21 տէրունական. IJS ծերունական H ծերունի հասական:

21 BC զաւուր:

22 H ոչ տայր: — նիրհ: A:

22 արտեւանաց. նաեւ HIJ: A:

23 իրանացն չունին IJ:

23 ADER ի հանգիստ:

23 հմմտ. Սաղմ. ՃԼԱ. 4. «Թէ տաց քուն աչաց իմոց կամ նինջ արտեւանանց իմոց կամ հանգիստ իրանաց իմոց, մինչեւ գտից զտեղի յարկի Տեառն Աստուծոյ Յակոբայ»:

ԺԹ. 2. Տպ. 43/4 = Աբեղ. 90. H. 43/4. K:

24 հոս կը սկսի K հատակոտորը (տ. 31—65):

24 K ¹¹¹ ընդ ամենայն աշխարհս, եւ այնպէս... մինչ:

24 IJ չունին եւ բազում — առաքէր:

24/25 այնպէս մերձաւորացն առ ինքեւ զհոգ., նաեւ H (իւր եւ) IJK (առ ինքեւ): Իսկ F եւ բարձրական կատարման հաւատովք մերձաւորաց եւ հեռաւորաց զհոգեւոր եռանդն ածէր: Ակ:

25 H բորբոքէր փոխ. ածէր:

26 զգացուցիչս. BK զգուշացուցիչս:

26 H գաւառն:

27 D ի նոյն ամի K անդ ի նմին ամի:

27 IJ յետ ամաց: — K անցանելոյ:

27/28 K վախճանելոյ: Հմմտ. Վարք Հարանց, Ա. 18. «Զեւ ամիսք վեց անցեալ էին մահուանն ծնողացն» Անտոնի:

27 լինէր հանդերձ սրբով վարդապետով (IJS -աւ, K -տին) բանակն (IJ ի բանակն) Հայոց. նաեւ IJ: Իսկ K չունի լինէր բանակն Հայոց: Ակ:

27 դէպ չունին ձձ. ուղղեցի ի բանակին:

29 K միայն յոստանին հայւոց:

29 յԱյրարատեան. HK յԱյրարատ:

*րատեան (գաւառին) ի Նոր Քաղաքին էր — նովին հոգեկրաւն վարուք հասանել Սրբոյն ի քրիստոսակոչ կատարումին, յետ սակաւ ինչ աւուրց հիւանդութեան, յերեքտասաներորդի աւուր ամսոյն մեհեկանի:*

3․ *Եւ յորժամ որոշել ի միջոյ ձեռնասուն աշակերտացն եւ խառնել ի գունդն Քրիստոսի հասանէր, թեթեւացեալ եւ սթափեալ ի ցաւոցն՝ կանգնեալ նստաւ ի ժողովելոցն ի միջի: Եւ համբարձեալ զձեռսն հանապազատարածս յերկինս զամենայն զմնացեալսն յանձն առնէր ամենապահ շնորհացն Աստուծոյ եւ վասն նոցա աւգնականութիւն հայցէր:*

4․ *Եւ անուանք գլխաւորացն ժողովելոց աշակերտացն էին այսոքիկ․ առաջնումն Յովսէփ, զոր եւ ի սկզբանն գրեցաք, (որ էր ի գաւառէն Վայոց Ձորոյ, ի գեղջէն որում անուն էր Խողոցիմք)* 85, *եւ երկրորդին՝ Թադիկ, արք զգաստք եւ զգուշագոյնք վարդապետական հրամանացն: Իսկ (անուանք) զինուորա–*

29/30 H միայն՝ *գաւառի*:
30 *քաղաք*․ H *քաղաքն*: KR:
30 *եւ*․ ուղղեցի *էր*: — IJ *նորին*:
30 *հասանէր* ուղղեցի *–նել*:
31 K չունի *սրբոյն*: — IJK *ի քրիստոսակոչ*․ այլք չունին *ի*:
31 *կատարումն*: HK:
32 *հիւանդութեանն*․ K *հիւանդութեանց*: HR:
32 *յերեքտասաներորդում*․ O *–երրորդում*․ IK *երեք –դի*․ KP․ *յեր–դի*․ H *տասն եւ եւթն*:
32 K *Փարպ*․ *աւուր*․ միւսները չունին:
32 *ամսեանն*․ K *յամսոյն*․ *Փարպ*․ *ամսոյն*․ H *ի վեցերորդ ամսեանն ի ժէ․ մ․*:
33 K *Մեհէկանի*:
34 K չունի *եւ յորժ*․:
34 *որոշեալ*․ K չունի․ IJHR *որոշել*․ հմմտ․ Ն․ 126:
34 K *ի միջոցի* (կարդա *ի միջոյ ի ձ*․):
35 *աշակերտաց*․ HIJK *աշակերտացն*: Ն․ 126:
35 *խառնեալ*․ IJK *ի գունդն Քրիստոսի հասանէր խառնիլ* (IJ *խառնեալ*):
36 IJ *սթափեալ* H *սթափացեալ* K *սթափանացեալ*:
36 *ի ժողովոյն միջի*․ IJK *ի ժողովրդոցն* (IJ *ժողովոցն*) *ի միջի*: Ակ:
37 IJ *ամբարձեալ*:
37 IJ *զձեռն իւր* AF *զբազուկսն*: Ն․ 129:
37 *հանապազատարած*․ K *հ–ածսն* IJ *համատարած*: AFHR:
37 *զամէն*: AIJK:
38 K *արար* IJ *առնելոյ*:
38 H *ամենապահ շ*․ միւսները չունին:
38 K *Քրիստոսի*:
38 չունին *եւ*: K:
39 K *նոցին*:
40 *գլխաւորաց աշակերտացն ժովելոցն են այս*․ E *ժողովոյն* D *ժողովոցն*: IJK:
41 *առաջնում* նաեւ IJ: HK:
41 HIJK չունին *զոր — գրեցաք*․ կ'ակնարկէ Ա․ 1:
41 *ի սկզբան*: Ակ:
41—43 *որ էր — Խողոցիմք* առած են Փարպեցիէն (էջ 38) անշուշտ փոխառութիւն Կորիւնէ:
43 *եւ* ունի միայն H:
43 HK *Թոդիկ*․ *Մ*․ *Խոր*․ *Գ*․ 67 *Թաթիկ*․ հմմտ․ *Թաթիկ եպ*․ *Բասենոյ*․ *Փարպ*․ 44, 75, 88:
43 K *սգաստք*: — DHK *եւ զգու*․ միւսները չունին:
43/44 IJ *զգուշագոյնս*:
44 *հրամանաց վարդապետութեան*․ IJK *վարդապետական հրամանացն* (K *հրամանին*):
44 *ի զինուորական* (C *եւ ի զին*․) *կողմանն* (S *–նէն*)․ HIJK *իսկ ի* (K

*կան կողմանն՝ առաջնումն Վահան անուն կոչէին, յազգէն Ամատունեաց*[86], *որ էր հազարապետ Հայոց Մեծաց, եւ երկրորդին՝ Հմայեակ, ի Մամիկոնեան տոհմէն*[87], *արք պատուականք, երկիւղածք, աստուածասէրք եւ հրամանակատարք վարդապետական բանից։*

*5․ Եւ մինչդեռ ձեռք Սրբոյն ընդ երկինս կարկառեալ կային, տեսիլ սքանչելի, խաչանշան, լուսաւոր չողացեալ երեւէր ի վերայ ապարանիցն, յորում Երանելին վախճանէր, զոր ամենայն ուրուք ինքնատես եղեալ եւ ոչ առն յընկերէ պատմեալ։ Ապա Սրբոյն զսիրոյ եւ զմիաբանութեան պատուիրան աւանդեալ՝ զմերձաւորս եւ զհեռաւորս աւրհնութեամբ պսակէր։ Եւ զհաճոյական աղաւթսն հաստուցեալ՝ ի Քրիստոս հանգեաւ։*

*6․ Զոր առեալ Վահանայ եւ Հմայեկի կազմութեամբ վախճանելոյ՝ հանդերձ աշխարհակոյտ ամբոխին, սաղմոսիւք եւ աւրհնութեամբ եւ հոգեւոր ցնծութեամբք, կանթեղաւք վառելովք եւ մոմեղինաւք լուցելովք եւ ջահիւք բորբոքելովք եւ*

չունի *ի*) *զինուորացն․ Ն․* 131 կ'ուղղէ *ի գ․ կողմանէն* համեմատ A 459 «*եւ ի զինուորական կողմանէն*»․ պիտի նախընտրէի «*ի զինուորացն*» նմանութեամբ *ա․ գլխաւորացն*։

45 IJ *առաջինն*․ IJK չունին *անուն*։

45 K *յազգէ*։

46 K *Հայուոց*։ — K *երկրորդն*։

46 IJ *եւ երկ․*։

48 չունին *աստուածասէրք*։ BCIJK։

48 *եւ* (*հրամ․*) ունին *միայն* KR։

48 *հրամանակատարք*. հմմտ. Ն. 131։

49 *հրամանացն*․ IJ *բանից* K *բանին*։

50 K *սրբւոյն*։

50 IJ չունին *ընդ երկինս*։

50 *կ․ էին*․ H *կայր*․ K *կային*։

50 *կարկ․ կային ընդ երկինս*։

51 *խաչանման* (նաեւ *Յովհ․ Դրասխան․* 75)․ HIJK *Թովմ․ Արծր․* 75 *խաչանշան*․ տես նաեւ վարը։ Ն․ 132։

51 *չողաւոր ձեւ* (C *ձեւով*)․ H *չողաձեւ* IJK *չողացեալ* (IJ *չ․ ի վերայ*)․ *Խոր․ Գ․* 67 *չողապէս*։

51 IJK չունին *երեւէր*։

53 IJK *ա․ ոք* H *ա․ ուստեք*։

53 *եղեալ*․ H *լեալ* K *նկատեալ*։

53 *ոչ առ* (C *յառ*) *յընկերէ* (C *ընկ․*)․ HIJK *ոչ յընկերէ* (IJ *ի ընկ․*)։ Ն․ 132 «*եւ ոչ առն 'ընկերի*»․ հմմտ․ *Դատ․ Է․* 13․ «*այր պատմէր ընկերի իւրում*»։

53 IJ *պատմել*։

54 *եւ* (C *յետ*) *սորա սրբոցն* (BC *սրբոյն*)․ H *իսկ սրբոյն* K *ապա սրբոյն*․ Ն․ 133 «*եւ սոցա Սրբոյն*»։

54 IJK *զսիրոյ եւ*։

54 HIJK *զմիաբանութեան պատուիրան* (K չունի *պ․*)։

54/55 BCDIJ *եւ զմերձաւորս*։

55 HK *զհեռաւորս եւ զմերձաւորս*։

55 H *պսակեալ* IJ *պսակել* K *հաստատէր*։

56 K *աղաւթսն*․ միւսները *աղօթս*։

56 *հասուցեալ*․ HK *հաստուցեալ* I *հաստուցանել* J *մատուցանել*։

56 H *ի տէր*․ K չունի։

57 HK *հմայեկի եւ վահանայ*։

57 H *վախճանելոց*։ BKIJ։

58 *աշխարհական ամբոխիւ*․ H *աշխարհաժողով ա․* IJKA 426 *հ․ աշխարհակոյտ ամբոխին*։ Ն․ 313—314։

59 AR *օրհնութեամբք*։

59 K *ցնծութեամբ, կանթեղովք*։

59/60 BE *վառելօք* C *վարելեօք*։

60 չունին *եւ մոմեղինաւք լուցելովք*․ H *մոմեղինօք վառելովք* (չունի H *կանթեղօք — լուցելովք*)․ լրացուցի ըստ A 434․ հմմտ․ նաեւ F *Ե․* 31․ *սաղմոսիւք եւ օրհնութեամբ, կանթեղօք եւ մոմեղինօք լուցելովք զմեռեալսն յուղարկէին*։ Ն․ 158—159։

*խնկովք բուրելովք եւ ամենայն լուսաճաճանչ գնդիւն եւ այնու խաչանշան լուսովն յառաջ խաղացեալ՝ յԱւշականն ելանէին: Եւ անդ ի մարտիւրոսական բնակութիւնսն մատուցեալ եւ զաւրինաւոր յիշատակն Երանելւոյն կատարեալ, ապա նշանն անրեւոյթ լինէր: Եւ նոքա յիւրաքանչիւրսն դառնային:*

*7․ Իսկ յետ ամաց երից անցելոց ըստ յաջողելոյն Աստուծոյ Վահանայ Ամատունւոյ քրիստոսասէր փութով խորան սքանչելի կանգնեալ տաշածոյ վիմաւք քանդակելովք․ եւ ի ներքսագոյն խորանին զՍրբոյն հանգիստ յաւրինեալ: Որոյ ապաստ եւս վայելուչս, գունագոյնս, պայծառատեսիլս ոսկւով եւ արծաթով եւ ակամբք պատուականաւք ի յիշատակարան սեղանոյն կենդանարար մարմնոյ եւ արեանն Քրիստոսի պատրաստեալ: Եւ ամենայն սրբովքն ի միասին գումարելովք զխաչական վկայն Քրիստոսի՝ հանդերձ երանելեաւն Մաշտոցիւ ի հանգիստ խորանին փոխէր: Եւ զնորին աշակերտ, որում Թադիկ անուն էր, զայր զգաստ եւ*

61 միայն IJS ունին *խնկօք բուրելովք*: Ակ:

61 K *գնդիւք եւ այն խ․*:

62 *լուսաւոր*. IJK *լուսովն*: *Թովմ*. *Արծր*. 75 *եւ խաչանշան լուսով խաղացուցաննէն․․․*:

62 *առաջախաղաց նշանաւն*. KRS *յառաջախաղաց* IJ *յառաջ խաղացեալ յԱւ․*:

62 IJK չունին *նշանաւն*:

62 K *յուշականս էլանէին*. *Փարպ*. 38․ «*ի գեօղն որ անուանեալ կոչի Օշական*»:

63 *ի մարտիրոսարանն մ*. IJKA 399 *մարտիրոսական բնակութիւնս* (IJ *-թիւնսն* A *-թեան*) H *ի մարտիւրոսական յարկսն*:

63 *մատուցեալ*. IJKA *մատուցանէին* H *հանգուցանէին*:

63 չունին *եւ* (*զօրին*.) HIJ:

64 K *յիշատակս երանելոյն կ*. IJ *յիշատակն* H *եւ զօրինաւոր տօնս յիշատակի*:

64 չունին *երանելւոյն*: HIK:

65 *իւրաքանչիւր*. I *իւրաքանչիւրսն* J *յիւրաքանչիւրս* KR *յիւրաքանչիւրսն* H *յիւրաքանչիւր տեղիս* S *յիւրաքանչիւր դառնային տեղիսն*:

66 *յետ երից ամաց*. նաեւ IJ. իսկ BC *յետ ամաց երից* H *յետ ամսոց երից*: H:

66 *յաջողեցան* (Ն․ 99 *յաջողեցաւ*). IJ *յաջողելոյ* H *ըստ յաջողելոյն Աստուծոյ*:

67 IJ չունին *սքանչելի*:

68 *կանգնել* IJ *կանգնեալ*:

68 *քանդակելով* CS *քանդակելովք*:

69 IJ *յօրինէր*:

69 չունին *եւս*: IJ:

71 *ի յիշ*. IJ չունին *ի*. D *յիշատակին*:

71 H *կենարար*:

72 *պատրաստեաց*. IJS *պատրաստեալ*:

72 *եւ ամենայն — գումարելովք* չունին IJ. հմմտ․ *Եւթաղ* 193․ «*սրբոցն գնդիւք ի միասին գումարելովք*»:

72 *սրբովք*. B *սրբովքն*:

73 *խաչակրօն*. B *խաչակրա(ւն)*. C *զխաչակրօն* IJ *խաչական վկայն*. A 399․ «*եւ զամենայն սուրբսն ի միասին գումարեալ, զխաչական* (An = մեր J ձեռ․ *զխաչակրաւն*) *վկայն Քրիստոսի*». հմմտ․ եւ *Փաւստ*. Գ․ 3․ «*զտեառն զխաչական զփրկութեանն զպատարագն*»: AIJ:

74 C չունի *հանդերձ*:

74 IJ *մեսրոբաւ*:

74 *փոխէ*. IJS *փոխէր*:

75 H *աշակերտն*:

75 H *զԹոդիկ*. IJ *զԹադիկ*. լրացուցի *որում․․․ անուն էր*:

բարեպաշտաւն՝ հանդերձ եղբարբք (աշակերտելովք) երանու-թեանն հասելոց՝ սպասաւոր սրբոցն ի փառս Աստուծոյ կարգէին:

8․ Եւ գլխաւորս, վերակացուս, տեղապահս կատարելոց (կա-ցուցանէին) ըստ յառաջագոյն յայտնութեան սրբոց հարցն․ որոց առաջինն Յովսէփ, գլխաւոր ժողովոյն․ եւ երկրորդն, [այլ աշա-կերտ], որում Յովհան անուն 88, այր իսկ սուրբ, վարդապետասէր եւ ճշմարտապատում, վերակացու ժողովրդեանն: Որում դէպ լինէր յետ վախճանի Սրբոյն՝ բազում եւ ազգի ազգի փորձու-թեանց եւ կապանաւոր վշտաց, մենակուիւ, մենամարտիկ երկպա-տական ընութեան ի Տիզրոն 92 քաղաքի վասն Քրիստոսի յաղ-թութեամբ տարեալ համբերել — վասն որոյ եւ զխոստովանողա-կան անուն ժառանգեալ՝ այսրէն ի նոյն վերակացութիւն դառնայր յերկիրս Հայոց:

9․ Իսկ բարեացապարտն Վռամշապուհ յանկարծահաս կենացս ապնջական ցանկալի ամենայն սրբոց լինէր: Որ աշխարհածնունդ

76 IJ զբարեպաշտաւն:

77 հասելոց BS հասելոյ IJ հասա-նելով․ հմմտ․ Աւ 362․ «զան այնու-հետեւ երանութեան հասեալքն»: (Ն․ 134)․ լրացուցի աշակերտելովք:

77 CS սրբոյն BDE սրբոց H նորին IJ սպասաւորելով սրբոյն:

77 IJ չունին կարգէին: — Հոն կ՚աւարտին IJ:

78 տեղապահս․ դասականն կը կի-րարկեն տեղապահ (հմմտ․ Ն․ 159) եւ տեղակալ (Ա․ Եզր․ Գ․ 2):

79 L ըստ յառաջագոյն կատարելոյ վարդապետին․ MOPR հարցն կատա-րելոց BC կատարելոց ըստ յառաջա-գոյն որոց H ըստ յայտնութեան սուրբ հարցն: Աւ:

80 երկրորդն այլ աշակերտ Յով-հան (BC Յոփան DE Յօհան) անուն․ H եւ որ վերակացուս ժողովրդեանն․․ զՅովսէփ եւ զՅովհան կացուցանէին: Աւ:

81 հմմտ․ A 402 ճշմարտապատում վարդապետութիւն եւ 417 վարդապետ ճշմարտապատում: Ն․ 135:

83 H որոց: — սրբոցն:

84 կապանաւոր գործածուած է ա-ռաջին անգամ հոս․ ասկէ A 11:

84 չունին մենակուիւ: HA:

85 երկպատական․ A 11․ տե՛ս այս Բազմավէպ, 1909, 149․ Հանդ․ Ամս․, 1910, 250:

85 ընութեանն HA:

85 B Տիսբոն H Տիսպոն:

86 համբերեաց․ բայց դէպ լինէր կը պահանջէ համբերել․ հմմտ․ Եւ-թաղ, 86:

87 ժառանգեաց: HA:

87 չունին այսրէն, նաեւ H: A 11 հմմտ․ եւ 421:

87 վերակացութիւնն․ A վերակա-ցութիւն H վերակացութիւնս վարդա-պետութեան:

88 յերկիրն․ HA յերկիրս:

89 բարեացապարտին․ D–պարտիք: HA:

89 Վահանայ․ H Վահան A Տրդատ․ ուղղեցի Վռամշապուհ:

89 յանկարծահաս․ նաեւ H․ իսկ A յանկածակամ:

89 կենաց, նաեւ H․ կենացն A․ ուղղեցի կենացս:

90 չունին ապնջական ցանկալի: HAU:

90 ամենեցուն, նաեւ A․ իսկ U սուրբ հաւատոցն: H:

90 աշխարհածնին: HAU:

*հայրենեացն սեպհական որդի գտեալ՝ շնորհաւքն Քրիստոսի ի մերձաւոր կենացս ի կեանս յաւիտենից վայելէր*[89]:

## Ի· ՀՈՒՍԿ ԲԱՆՔ

1· *Եւ արդ քանզի ըստ աւրինակի գրելոցս առ ի մէնջ՝ հարքն ի կատարումն դարձան, (աստէն եւ ես) ի կատարումն զբանս ածից: Ոչ եթէ ի հին համբաւուց ինչ տեղեկացեալ եւ մատենագրեալ զայս կարգեցաք, այլ որոց մեզէն իսկ ականատեսք եղեալ կերպարանացն եւ առընթերակացք հոգեւարական գործոցն եւ լուռք շնորհապատում վարդապետութեանն եւ նոցին արբանեակք ըստ աւետարանական հրամանացն:*

2· *Ոչ սուտապատում ճարտարախաւս եղեալ առ ի մերոց բանիցն զհամաւրէնն կարգեցաք, այլ զյաճախագոյնսն թողեալ եւ ի նշանաւոր դրուակացն քաղելով զհամառաւտս կարգեցաք· որ*

91 AU չունին *սեպհական*: BH:
91 *ոդի*: HAU. Ն. 136:
91 AU *գտանէր*: BH:
91 AU *աստուծոյ*. B *Քրիստոսի Աստուծոյ մերոյ*, D չունի *մերոյ*: H:
91 BHAU չունին *ի*: Ակ:
92 A *եւ յաւիտենական*. բայց Abt *եւ* BHU *մերձաւոր*:
92 *կենակից*. A *կենաց* AbHU *կենացն*. ուղղեցի *կենացս*:
92 *ի կեանս* չունին BHAU: Ակ:
92 *յաւիտենից* չունին BAU. հմմտ. A *եւ յաւիտենական կենացն մերձաւոր լինէր*: H:
92 HA(ձձ) *լինէր*. U *լինելով*: HA(bt):

*Ի*. BHA:

1 *եւ զի*. H *եւ արդ*: A:
2 LOP *ի կափարումս*. MD *ի կատարումս*. H չունի: A 470 RS:
2 *աստէն եւ ես* կ'աւելցնեմ ես:
2 *ի կատարումն զբանս* (H *զբանս*) *ածից* ունի միայն H: Հմմտ. Ավ 361. «*որով ածեալ ի կատարումն զառաջապատում պատգամս Եսայեայ*»:
3 BH չունին *ինչ*: Ab:
4 B *մեր*: HA:
5 *ականատես* (նաեւ H): BCA:
5 H չունի *եղեալ*:
5 *առընթերակաց*. նաեւ HA: Ակ:
5 *գործոց*. H *գործոց սրբոցն*: BDEA:
5 *լուռ*: HA:
6 D *վարդապետութեան*:
6 *արբանեակ*: BA:
7 հմմտ. *Փաւստ*. Գ. 5. «*աւետարանական հրամանացն սպասաւորել*»:
8 PD *սուտապատումն*: BAHS:
8 R չունի *ճարտարախօս*:
9 *բանից*. A(ձձ.) *բանիցն*:
9 *զհօրէն իմոյ կ*. H *զհայրենիսն յարգելով*. A չունի: Ուղղեցի *զհամաւրէնն կ.*:
9 *զյաճախագոյնն*: AH:
10 *ի նշանակագիմակացն*. կը բաժնեմ *նշանակա դիմակացն*. առաջին մասը՝ HA կը կարդան *նշանաւոր*. իսկ *դիմակացն*՝ *գիտակացն*. A ունի նաեւ *պիտանացն* ընթերցուածը. ինձ կը թուի թէ հարազատագոյնն է *դրուակացն*:
10 *քակելով*. AR *քաղելով* H *պատմելով*:
10 *զհամառուրսն*. H *զհամառօտս* AR *զհամառօտսն* Aabt *զհամառօտն*:
10 *որք ոչ միայն մեզ*... *յայտնի է*. Aab *որք ոչ մեզ միայն* (այլք *միայնոյ*). H *որք ոչ մեզ է չահս*... *յայտնեսցի*: Կը տեսնուի թէ *որք* նախնաբար *որ* էր:

ոչ միայն մեզ, այլ եւ որ զմատեանս ընթեռնուն, յայտնի է։ Քանզի չէաք իսկ հանդուրժողք զամենայն արարեալս Սրբոցն գտակաւ զիւրաքանչիւրսն նշանակել. այլ ի դիւրագոյն եւ ի հեշտագոյն յառաքելական անդր զանձինս պատսպարեցաք։ Վասն որոյ զանցեալ զբազմախուռն արգասեւք Սրբոցն առ ի մանրակրկիտ առնելոյ՝ զկարեւորագոյնսն պատմելոյ զհանգամանսն ասացաք ըստ մերում կարի։ Ոչ ի պատիւ ինչ Ընտրելոցն Աստուծոյ, որք ամենապարծ եւ կենդանատուր խաչիւն ծանուցեալք յարգեցան, այլ յաւրինակ քաջալերիչ հոգեւոր ծննդոց իւրեանց եւ որոց նոքաւք աշակերտելոցն իցեն յազգս ազգաց։

ԻԱ. ՀԱՄԱՐ ԱՄԱՑ ՀԱՒԱՏՈՑՆ ԵՐԱՆԵԼԻՈՑՆ

Եւ արդ լինի համար ամաց հաւատոց Երանելւոյն ամք ԽԵ։ Եւ ի դպրութենէն Հայոց մինչեւ ցվախճան Սրբոյն՝ ամք ԼԲ։ Որք համարին այսպէս. Թագաւորեալ Կրմանայ Պարսից արքայի ամս վեց.

11 այլ եւ որ զատեանսն. B զյատեանս CDE զմատեանսն A զմատեանդ HS զմատեանս։

11 ընթեռնուն. A ընթեռնուցուն։

12 H ոչ իսկ հանդուրժէաք A հանդուրժող։

12 արարեալսն (նաեւ Aa)։ AH։

12 չունին սրբոցն։ HA։

13 կտակաւ, նաեւ AS. իսկ BC կտակաւսն H գրով. At գիտակաւ Aa գտակաւ։ A։

13 Aabt զիւրաքանչիւր։

13 չունին նշանակել։ AHS։

13 H ի դիւրագոյնսն RS ի դիւրագոյնս։ BA։

13/14 H ի հեշտագոյնսն R ի հեշտագոյնս։ BA։

14 BC առաքելականն AԱԲ առաքելական At յառաքելականդ։ OPAab։

14 E անդ։

14 H պարապեսցուք AavԱԲ ապսպարեցաք At ապաստանեցաք։ BAb։

14 չունին վասն։ Աև։

15 որոյ. A(ձձ.) RSD որոց Ab որոյ C ի լուս. որ եւ։

15 անցեալ (նաեւ Ab). HA(ձձ.) զանցեալ։

15/16 մանրակտիտ (նաեւ Av). BCSAat մանրակրկիտ H մանրակրկիտսն AԱԲ մարմնակտիտ։

16 զկարեւորագոյնս։ BCEAH։

16 A կ'աւելցնէ եւ զօգտակարագոյնսն։

16 զհանգամանս. BA զհանգամանսն։

17 չունին ըստ մերում կարի։ H։

17 HA չունին ինչ։

17 սրբոցն. A ընտրելոց H ընտրելոցն։

18 H որք ամենապայծառ հաւատով եւ վարուք ծանուցեալք. S տեղիխս բնագրի մէջ առած է, անկէ վտարեւով ամենապարծ եւ կենդանատուր խաչիւն։

18 կենդանատուր. հմմտ. Ն. 137—138։

20 որք (նաեւ A)։ HAa։

20 աշակերտելոց (նաեւ AH)։ Aa։

20 A էին BHAa իցեն։

20 B ազգս։

ԻԱ.

1 չունին ամաց։ BCS։

1 քառասուն եւ հինգ։ Աև։

2 BC եւ դպրութեանն։

2 երեսուն եւ հինգ։

3 Դիմոնայ։ ՆRS։

*եւ Յազկերտի՝ ամս ԻԱ. եւ Վռամայ՝ ամս ԺԹ. եւ յառաջնում ամի Երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ վախճանեցաւ Երանելին: Եւ արդ առնու համար ամաց Սրբոյն հաւատոց ի չորրորդ ամէն Կրմանայ արքայի մինչեւ ցառաջին ամն Երկրորդ Յազկերտի որդւոյ Վռամայ. եւ դպրութեանն Հայոց յութերորդ ամէ (Առաջնոյ) Յազկերտի առեալ սկիզբն 90:*

*Եւ Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս. ամէն:*

4 չունին *եւ Վռամայ ամս ԺԹ*: Ն:
4 *յառաջնումն*. B *եւ յառաջնումն*:
6 R չունի *ամաց*:
6 *սրբոց*: Ն:
6 *չորրորդում*: Ակ:
7 R *կրման* BC *կոմանայ*:
7 DR *յառաջին*:
10 B *որում փառք*:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Ազքանազեան ազգ եւ Թորգոմայ ազգ: — *Ձեռագիրներն եւ տպագիրները միայն ունին «ՁԱզքանազեան ազգին». ուղղեցի «զԹորգոմայ ազգին»: Մինչեւ Ժ. դար անծանօթ է հայ գրականութեան Թորգոմայ ազգին «Ասքանազեան» յորջորջումը: Ս. Գրքի ազգացանկի համաձայն են «որդիք Գամերայ Ասքանազ եւ Րիփաթ եւ Թորգոմ» (Ծնն. Ժ. 3, Ա. Մնաց. Ա. 5). ուստի Ասքանազ, ինչպէս եւ Րիփաթ թէպէտ եւ Թորգոմի եղբայրներն են, բայց իւրաքանչիւր եղբայր իրենց կարգին եղած են նախահայրեր այլ եւ այլ ազգերու: Երեմիա (ԾԱ. 27) ունի տեղիքս. «Պատուէր տուր, ասէ, Այրարատեան թագաւորութեանն եւ Ասքանազեան գնդին»: Մ. Խորենացի, որ յառաջ բերած է տեղիքս, կը չեշտէ միայն առաջինը. «եւ այս հաւաստի՝ գոլոյ մերոյ թագաւորութեանն առ այնու ժամանակաւ» (Ա. 22), աննկատ թողլով «ազքանազեան գնդին»: Առաջին անգամ Յովհ. Դրասխանակերտցին է (930ին), որ կը ծանրանայ «Ասքանազեան» ցեղ անուան վրայ եւ զայն կը մերձեցնէ Հայոց: «Իսկ որդիք Թիրասայ Ասքանազ, յորմէ Սարմատք, եւ Րիփատ, յորմէ Սորամատք, եւ Թորգոմ, որ ըստ Երեմիայ զԱսքանազեանս գունդ յիւր անուն նուաճէր, տուն Թորգոմայ. զի նախ Ասքանազ իսկ էր յիւր անուն սահմանեալ զմերազնեայսս ըստ երիցութեանն սակի. զոր յետոյ Հայկ յիւրում տեղւոջ ասացից» (էջ 16): Իրօք ալ քիչ յետոյ վերադառնալով այս հարցին կը գրէ. «Թիրաս, որ երրորդ էր Յաբեթէ, ծնաւ երիս որդիս՝ զԱսքանազ, զՐիփատ եւ զԹորգոմ. եւ վասն զի զԹրակացիս յինքեան անձին առանձին Թիրաս պայազատէր... եւ Ասքանազեայ, որ նախ զմերազնեայսս յիւր անուն Ասքանազեան անուանեաց, զՍարմատս նմա պայազատէր. իսկ Րիփատայ՝ զՍորմատս. իսկ Թորգոմայ՝ զմերազնեայսս սեպհականեալ, յորում տիրեալ՝ զԱսքանազեանն նախ անուանեալ՝ յիւր անուն նուաճէր տուն Թորգոմայ: Արդ այսպէս իմա Ասքանազեան զմեզ եւ տուն Թորգոմայ: Եւ այսպէս քեզ հաւատարմացին որ վասն նահապետութեան ազգիս մերոյ է բան. թէպէտ ոմանք այլազգաբար եւ ոմանք այլաբանաբար զրուցաց վէպս տան» (էջ17—18): Վերջին տեղիքի մէջ Սեբէոսի Պատմութիւնը կ'ակնարկուի:*

*Յովհ. Կաթողիկոս իրեն առաջնորդ ունեցած է հոս Հիպպողիտոսի Ժամանակագրութիւնը, ուր կ'ըսուի. «Որդիք Թիրասայ՝ Ասքանազ եւ ի նմանէ Սարմատք. եւ Րիփատ եւ ի նմանէ Սովրոմատք. եւ Թորգոմա եւ ի նմանէ Հայք»: Ասքանազեան գնդի տիրապետութիւնը այրարատեան թագաւորութեան եւ ասկէ հանուած հետեւութիւնները կը միան ստացուածք պատմաբան կաթողիկոսին, որ չի խորշիր իր Պատմութեան ընթացքին «Ասքանազեան ազգ», Ասքանազեանս գրոհ եւն կոչելու հայերը, ասկէ «Ասքանազեան զաւակ» (Մովսէս Դասխուրանցի, Ա. 119):*

*Նորագոյն քննութիւններու համաձայն «Ասքանազ» կը նոյնանայ «Սկիւթ» անուան եւ ազգին հետ, տես այս մասին Հ. Վ. Ինգլիզեան, Հայաստան Ս. Գրքի մէջ. Վիեննա 1947, էջ 190—209:*

*Ըստ այսմ «Ազքանազեան» մուտ գտած ըլլալու է Կորիւնի բնագրին մէջ 930էն ետքը: «Թորգոմայ տուն» յաճախ կը հանդիպի Փաւստոսի քով. ունի նաեւ Ագաթանգեղոս (էջ 415. «ի մէջ Հայաստան աշխարհի տանն Թորգոմայ». ասկէ՞ Կանոնք Շահապիվանի ժողովոյն... «յաշխարհիս Հայոց ի մէջ տանս Թորգոմայ») եւ Կորիւն Թ. 5 «ի թագաւորական կայանսն բղխեցին Հայոց*

տանն Թորգոմայ շնորհք պատուիրանացն Աստուծոյ» (տակէ Ագաթ. 403) եւ եւ Ա. 1 «զԹորգոմայ ազգիս» (տակէ Ագաթ. 12 «ընԹերցեալ զԹորգոմայ ազգիս եւ զՀայաստան աշխարհիս զաստուածապարգեւ աւետեացն...»):

Հայ ազգին Թորգոմական ծագումը կը յիշուի առաջին անգամ Հիպպոլիտոսի ժամանակագրուԹեան մէջ. «Եւ Թորգոմա եւ ի նմանէ Հայք»: Առ այս հմմտ. Ինգլիզեան, անդ, էջ 210—233:

2. Յովսէփ, «այր պատուական», Մաշտոցի աշակերտներէն է, որ կարգուած է Հայոց Եկեղեցւոյն գլուխ կամ «գլխաւոր ժողովոյն». տե՛ս Ծան. 85:

3. Այս տեղ համառօտուած կ'երեւայ Կորիւնի «Նախակարգ Բանի վերջաւորուԹիւնը: Ինձ կը Թուի, Թէ անկէ քաղուածքներ ունի ԱգաԹանգեղոս իր Յառաջաբանին մէջ, ուր կը տեսնուին ուրիշ մանր քաղուածքներ ալ նոյն Նախակարգ Բանէն: Նկատի ունիմ հատուածս (էջ 12, տ. 12—20).

«Արդ ելից ի մտաց երկմարն եւ յարմարեցից զասպարէզն հանճարոյ, ուղղեցից զնպատակն խորհրդոյ[1] եւ Թափ տաց ուժի[2] բազկօքս[3] եւ ձգեցից ի կորովս[4] գրչի մատանցս[5]. եւ լեզուաւս զխորհուրդս յուզեցից եւ[6] չրԹունքս[7] ի շշնջել[8] իմաստունս[9] կարասցեն, եւ կարգել հաստատական յեղյեղուկ[10], հոլովել զանիւ պատմուԹեան[11] բանիցս, [զի կամակարագոյնս նաւիցեմք զալեօք ժամանակագրական ծովուս[12],] պատմել [յազգ յայլ ժողովրդին ստացելոյ[13], որք օրհնեսցեն զՏէր] որք յետ այսր անցեալ ժամանակաց գալոցն իցեն. որք հարցեալ զհայրենական[14] մատեանսն[15]՝ պատմեսցի նոցա եւ զծրագիրս[16] կարգեալս եւ ասասցի նոցա[17]»:

Թէ հատուածիս մէջ ԽմբագրէՆ յաւելուածներ մուտ գտած են, անտարակուսելի է. Թէ նաեւ բառեր դուրս ձգուած են, կարելի է ենԹադրել: Երկու պարբերուԹիւններ առնուած են քառակուսի փակագծի մէջ, որոնք յաւելուած կ'երեւան, մին հանուած Կորիւնէն: Հոս ստորեւ ծանօԹուԹիւններու մէջ տուած եմ էջմիածնի ձեռագիրներու ընԹերցուածները. կցած եմ անոնց Վիեննայի կրկնագիր ԱգաԹանգեղոսի ընԹերցուածները (=Կ):

Այս հատուածէն ամփոփում մը զետեղած եմ փակագծի մէջ Կորիւնի Ա. 12 հատուածին մէջ:

---

[1] b խորհրդոց: — [2] bt ուշի: — [3] t բազկացս. Կ. բազկաւքս:

[4] «ի կորովս գրչի մատանցս» հաւանօրէն յարմարցուած ասուԹիւն մըն է. նախնիք գործածած են «ի կորովս» աղեղ իմաստով եւ «ի կորովս կապարճից» ուրոյն ասուԹեամբ. հմմտ. ՅուդիԹ Թ. 6. «յուսացան ի կորովս աղեղնաւորացն եւ պարսաւորացն». Եփրեմ, Ա. 84. «Ոչ առ նա յընչից Սոդոմայեցւոցն, զոր Թափեալ էր նա ի կորովս իւր». անդ, Ա. 116. «Տամ ես քեզ բաժին... զոր առի ես ի ձեռաց Ամուրհացւոց ի սուր սուսերի իմոյ եւ ի կորովս կապարճաց իմոց» (=Ծննդոց ԽԸ. 22. «սրով իմով եւ աղեղամբ»). «Արդ զօրուԹիւնն... կոչեաց կորով կապարճից... կարգաց սուր սուսերի եւ կորովս կապարճից»: Մովսէս Կաղանկատուացի էջ 18 (էմին) ունի. «ԵԹէ նետ ի կորովից քոց Թռչէր ուղղակի»:

[5] tԿ մատանց: — [6] Եւ կարդա՛ զի, ինչպէս կը պահանջէ կարասցեն բայը: — [7] tԿ չրԹունք, ac չրԹունքս:: — [8] t չրշնջել ac ի շշընջել b զշըշջել Կ զշջել: — [9] bԿ իմաստունսն:

[10] b ի կարգել հաստական ի յեղյեղուկ. Կ ի կարգել հաստատուն ի յեղյեղուլ:

[11] ac պատմուԹեանս (չունի բանիցս). Կ պատմուԹեանց:

[12] Կորիւն Ա. 1 «զի կամակարագոյնս... նաւիցեմք զհամատարած ալեւքն վարդապետական ծովուս»:

[13] Հմմտ. Սաղմ. ՃԱ. 19. «Գրեսցի այս յազգ յայլ, ժողովուրդ զոր ստացեալ է օրհնեսցէ զՏէր»:

[14] tԿ զհայրական: — [15] Կ մատեանս: — [16] Կ զծրագիրս:

[17] Հմմտ. Բ. Օր. ԼԲ. 7. «Իմացարուք զամս ազգաց յազգս, հարց զհարսն քո եւ պատմեսցեն քեզ եւ զծերս եւ ասասցեն քեզ»:

4· Յիշատակարանս խնդրեալ պատուաւորաց: B ձեռագիրը հոս աղաւաղուած ընթերցուածս կը ներկայացնէ «եւ հայրենակատար մեծարեալ պայմանաւ որ»: Փորձուած են այլ եւ այլ սրբագրութիւններ եւ մեկնութիւններ: Նկատի առելով, որ Կորիւն Ա· 1 կը խոստանար «յիշատակարանս ծաղկեցուցանել» եւ իրմէ խնդրողներն եղած են «պատուականն» Յովսէփ եւ իր աշակերտակիցները, կը համարիմ թէ լաւագոյն սրբագրութիւնն է եւ համապատասխան «նոցա... հրաման» նախադասութեան հետեւեալը· «եւ յիշատակարանս խնդրեալ պատուաւորաց առ ի մէնջ՝ հաճեսցի»: Երկու բնագիրներուս համեմատութիւնն է·

ԵՒ ՀԱՅՐԵՆԱԿԱՏԱՐ ՄԵԾԱՐԵԱԼ ՊԱՅՄԱՆԱՒՈՐ
ԵՒ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՍ ԽՆԴՐԵԱԼ ՊԱՏՈՒԱՒՈՐԱՑ

5· Այլ եւ այլ ուղղագրութեամբ աւանդուած է անունս հին գրականութեան մէջ, Մաժդոց, Մաշդոց, Մաշտոց եւ Մաշթոց· ընտրեցի յղկուած ձեւը՝ Մաշտոց: Ծագումը հաւանօրէն հին իրանեան mazdāh, իմաստուն (Ahura-Mazdah աստուածութեան անունէն է, իբրեւ Մաժդ-ա-դատ, Մաժդատուր (հմմտ· Տիրիդատ, Տրդատ եւ Տիրոց)· նոյն արմատը կը տեսնուի նաեւ Մաժդ-ակ (Mazdak) անունի մէջ: Ը· դարէն սկսած Մաշտոց վարդապետի անունը երեւան կու գայ Մաարովպ, Մեսրովպ, Մեսրոպ, Մեսրովբ եւ Մեսրոբ: Մաշտոց անունի մասին տես Ակինեան, Մաշտոց վարդապետ, էջ 95—96· իսկ Մեսրովպ անուան շուրջ՝ Յ· Թիրեաքեան, Հանդ· Ամս· 1914, էջ 245—246 եւ Ն· Ադոնց եւ Գ· Ֆնտգլեան, Հանդ· Ամս· 1927, էջ 274—279, 529—537:

Տարաւնական գաւառը, ուր կը գտնուի Հացեկաց գիւղը, կը յիշէ Կորիւն նաեւ Ժ· 1, Մուշէ «ի նահանգէ Տարաւնոյ» եւ ԺԸ· 2 Ս· Սահակի մարմինը կը տանին «ի Տարաւն գաւառ... ի բուն իսկ գեւղն յԱշտիշատ»: Փաւստոս յաճախ կը յիշատակէ զայն իբրեւ «Տարաւն գաւառ» (Ե· 3· Զ· 16), «Տարաւնոյ գաւառ», «Տարաւնոյ երկիր» (Գ· 14, 19· նաեւ Ագաթանգեղոս, 421) եւ նահանգ Տարաւնոյ (Գ· 13, յատկապէս Դ· 15· «Մրջիմնիկ երէց յԱրշամունեաց տեղեացն, ի նահանգէն Տարաւն գաւառէն», որ պարգեւ կ'ընդունի «զգեւղն, ուստի իսկ ինքն էր, ի նահանգէն Տարաւն գաւառէն, որում անուն Գոմկունք կոչին»):

Աշխարհացոյցի համաձայն Տարաւն գաւառն է Տուրուբերան նահանգն, ինչպէս նաեւ Արշամունեաց գաւառը, զոր Փաւստոս «տեղիք» կը կոչէ, նոյն նահանգի գաւառներէն մին է, Տարաւնի հիւսիսակողմը: Կ'երեւայ թէ Դ· եւ Ե· դարուն Տարաւն գաւառը, ունենալով իր մէջ զմայրն եկեղեցեաց Հայոց յԱշտիշատ, գլխաւոր նիստը նկատուած էր դատաւորութեան կամ վերակացութեան, գոնէ եկեղեցական իրաւասութեան տեսակէտէ· եւ այսպէս համարուած նաեւ «նահանգ»:

Տակիտոս, Տարեգիրք, ԺԴ· 24 գիտէ գաւառս Tauraunitium, «Տաւրաւնացւոց երկիր»· de Lagarde Ges. Abh. 46, ծան· 6 կ'ուղղէ Taraunitarum. Պրոկոպիոս, bell. Pers. 1, 267 կը յիշէ τὰ ἐπὶ Ταραύνων χωρία, իսկ Կոստանդին Ծիրանածին, de adm. imp., էջ 182 եւ չար· արդէն Ταρών արտասանութեամբ, ասկէ նաեւ Ταρωνίτης, անդ, 183 եւն: Արաբացի մատենագիրք, Բալադուրի եւ Եաքութ կ'ընծայեն Ṭarūn ձեւով (հմմտ· Հ· Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անունները· թարգմ· Հ· Բ· Պիլէզիկճեան, Վիեննա 1907, էջ 189), ճիշդ այսպէս ունի նաեւ Կեղծ-Ղազար Փարպ· 13· «ի գաւառէն Տարօնոյ» (այլուր՝ 15, 38, 44 «Տարօն»):

Հացեկաց գիւղ: Ասկէ նաեւ Ղ· Փարպ· 13· «Մաշտոց... որ էր ի գաւառէն Տարօնոյ, ի Հացեկաց գեղջէ»: Գիւղս կը յիշէ նաեւ Փաւստոս Գ· 19, էջ 42 (Պատկ·)· «Բայց Պապայ (որդւոյ Յուսկան) ի բուն կնոջէն ոչ մնաց (որդի), այլ էր նորա հարճ մի ի գաւառէն Տարաւնոյ ի Հացեկաց (տպ·

Հացեաց) գեղջէ կարճազատացն եւ մնաց որ ի հարճէ անտի ի Հացեկացւոյն, որում անուն իւր որդւոյ հարճին՝ Վրիկ կոչէր»: 1256ին ի Մսիս գրուած ձեռագրի մը մէջ կը կարդացուի յիշատակարանս. «Ես Յովհաննէս երէց, յերկրէ Տարաւնոյ, ի գեղջէ Հացեկաց»: Այժմ Հացիկ, Քրդերէն Խասիկ կոչուած: Տեղացիներուն համաձայն գիւղիս եկեղեցւոյ մէջ է Ս. Մաշտոցի գերեզմանը. «յայս եկեղեցի երդնուն մինչեւ ցայսօր, կը գրէ Հ. Ղ. Ինճիճեան, Քուրդք եւ Եէզիտիք չուրջանակի բնակեալք յերդմունս իւրեանց ասելով. զիաամ էլ Խասիկ. այս ինքն Ուխտ Հացեկայ. կամ Տէ՛ր էլ Խասիկ. այսինքն Եկեղեցի (Վանք) Հացեկայ. նաեւ տանին ընծայ եւ պարգեւ: Առ սովաւ է քարհան, ուր ելանէ քար կակուղ» (Ինճիճեան, Նոր Հայաստան, 191): Իսկ Հ. Ն. Սարգիսեան, Տեղագրութիւնք ի Փոքր եւ ի Մեծ Հայս, Վենետիկ 1864, էջ 234—235 կը գրէ. «Ընդ մենաստանս Մշոյ համարելի էր արդեօք եւ եկեղեցին սրբոյն Մեսրոպայ ի գիւղն Հացիկ ի հիւսիսակողմն Մեղրագետոյ, ի մէջ դաշտին, թէպէտ չիք այժմ կանգուն ոչ եկեղեցի եւ ոչ մատուռն մի փոքրիկ, այլ երեւի աւերակ նորա. եւ առ նմա քարընկէց մի հեռի այլ տեղի շրջապատեալ ի վարկպարագի քարանց, եւ ի միջի կոտորք գերեզմանաքարի բացօթեայ ի սպառ եւ պատուեալ ի բնակչաց: Թերեւս մասն մի ի նշխարաց սրբոյն ամփոփեալ իցէ ի տեղւոջն, կամ նախ աստէն թաղեալ ի հայրենի գիւղն իւր յորում ծնեալ էր, եւ ապա փոխադրեալ յՕշական գիւղ յԱրագածոտն գաւառի»: Ի հարկէ Ս. Մաշտոցի գերեզմանի մասին խօսք չի կրնար ըլլալ, բայց Եկեղեցին կարող է կանգնուած ըլլալ Մաշտոցի ծննդավայրին մէջ ի յիշատակ Մաշտոցի եւ այնպէս յարգուած իբրեւ ուխտատեղի:

Փաւստոսի «կարճազատ» բառը ենթադրել կու տայ, թէ Հացեկաց գիւղը ի չարս այն արքունի գիւղերուն էր, որոնք Հայր մարդպետի մարդպետութեան տակ կը գտնուէին (Փաւստ. Դ. 14, էջ 87 Պատկ.):

6. Կորիւն այսպէս կարճառօտիւ կը հաղորդէ Մաշտոցի ծագումի մասին. «որդի առն երեւելւոյ Վարդան անուն կոչեցելոյ». նոյնը կը կրկնէ Կեղծ-Ղազար Փարպեցի. «որդի առն, որում անուն էր Վարդան» (էջ 13) դուրս ձգելով «երեւելի»ն: Ուրիշ հին աղբիւր մը, Կայսերաց Գիրքը, կը տեղեկացնէ. «Մեսրովբ (այլ ձեռագիր մը՝ Մասրոպ) երանելի ի Հացեկաց Տարաւնոյ (այլ ձեռ. Տարաւնացի ի Հացեաց գեղջէ) յազատ տանէ» (Անանուն Ժամանակագրութիւն խմբագիր յօրինեալ յէ. դարու. հրտ. Հ. Բ. Սարգիսեան, Վենետիկ 1904, էջ 57. Անանիա Շիրակացու Մատենագրութիւնը. հրտ. Ա. Աբրահամեան, Երեւան 1944, էջ 389): Այս տեղ «յազատ տանէ» հաւանօրէն Կորիւնի Սկզբնագրէն առնուած է:

«Ի Հացեկաց գեղջէ յազատ տանէ» կը յիշեցնէ Փաւստոսի (Գ. 19) «ի Հացեկաց գեղջէ կարճազատացն»: Թէպէտ «կարճազատ» բառը մինչեւ ցայժմ չէ ստուգաբանուած, նաեւ չէ արժանացած Բառարաններու մէջ առնուելու, բայց ուշագրաւ է, եթէ նոյն իսկ բառի մը, կամ բառերու աղաւաղութիւն հարկ ըլլայ ենթադրել: «Կարճ» կարող է նախընթաց «հարճ մի» բառին ազդեցութեան տակ աղճատուած ըլլալ. հարճ=կարճ. բայց կարելի է նաեւ կարճ ածական մը նկատուիլ, ստորաբաժանող «ազատ»ներու դասակարգութեանց, ըստ որակին եւ ըստ իրաւանց. ի վերջոյ ենթադրել աղաւաղութիւնը «յազատ տանէ» կամ «հարճ յազատացն»:

Ինչպէս Այրարատեան գաւառի, նոյնպէս Տարաւն գաւառի մէջ կային թագաւորական կալուածներ, գիւղեր, որոնց բնակիչները ոստանիկ կամ ազատ կը նկատուէին: Կը պատմէ Փաւստոս, թէ Հայր մարդպետ «ելանէր շրջէր ընդ մարդպետութիւնն... էջ ...ի գաւառն Տարաւնոյ ընդ իւր գեւղսն տեսանել» (Դ. 14): Այդ գիւղերու թուին մէջ էր հաւանօրէն Հացեկացը: Կորիւնի հաւաստումը, թէ Վարդան «երեւելի» էր, առանց տարակուսի կ'ենթադրէ անոր «ազատ» ըլլալը, ինչպէս նաեւ Մաշտոցի ծառայութիւնը հայ բանակին եւ Հայոց Դիւանին մէջ, ցոյց կու տայ, թէ իր ծնողքը ազատներու դասակարգի մէջ գտնուած է: Հ. Յ. Գաթըրճեան նկատելով Մաշ-

տոցի հօր Վարդան յորջորջումը, որ Մամիկոնեանց յատուկ է, հետեւցուցած է, թէ ան Մամիկոնեան տոհմին կը պատկանէր։ Իսկ F. Justi, Iranisches Namenbuch, Marburg 1895, էջ 352, համարած է նոյն իսկ, թէ Վարդան նոյն ըլլայ Մամիկոնեաններու նահապետին, Վասակ սպարապետի եղբայր Վարդանի համանուն որդւոյն հետ. երբ Տայոց Երախանի բերդին մէջ կը սպանուէր Վարդան, իր կինը երեխայ աշխարհ կը բերէր, որ Վարդան անունը կ'ընդունի (Փաւստ. Դ. 18)։ Այս կը պատահէր մօտաւորապէս 310ին։ Բայց դժուար է մտածել թէ մանուկ Վարդանի մայրը Տայոց աշխարհէն Հացեկաց գիւղը գաղթած եւ հոն ապրած ըլլայ։

Աւելի հաւանական կը տեսնեմ Վարդան Հացեկացին նոյնացնել Վրիկ Հացեկացւոյ հետ, որ Ս. Յուսիկի թոռն էր, ապօրինի որդին Պապի։ Կը պատմէ Փաւստոս, որ Ս. Յուսիկ (288—295) ամուսնանալով Տիրան արքայորդւոյ, Խոսրով Բ.ի (272—283) որդւոյն դստեր հետ, ունեցաւ երկուորեակ, Պապ եւ Աթանագինէս անուն (ծն. իբր 285)։ Ասոնք կին առին «զքորս թագաւորին»։ Պապ՝ զՎարազդուխտ, եւ Աթանագինէս՝ զԲամբիշ։ Փաւստոսի Պատմութեան մէջ թագաւորներու շփոթութիւն կայ։ Եթէ Պապ եւ Աթանագինէս Տիրան արքայորդւոյն դստեր որդիներն էին, չէին կրնար անոնք Տիրան Ա. թագաւորի քոյրերը կնութեան առնել։ Տիրան վախճանեցաւ 295/297ին, իր յաջորդն եղաւ Արշակ Բ. (297—338). ուստի նաեւ Արշակի քոյրերը դստերք էին Տիրանի, ուրիշ խօսքով անոնց մօրաքոյրերը։ Կարող է հոս միայն Խոսրով Բ. նկատի առնուիլ, որուն աղջիկը (Տիրանի քոյրը) կրնար կին եղած ըլլալ Յուսիկի եւ Տիրանի դուստրներն կամ Արշակ Բ.ի քոյրերը՝ Պապի եւ Աթանագինէսի կին։ Ամէն պարագայի մէջ ազգախառն պսակներ, զորոնք պիտի չթոյլատրէր Եկեղեցին։

Այսպէս ընդունելով դէպքերը՝ կը ստանանք հետեւեալ ժամանակագրութիւնը։

Յուսիկ ամուսնացաւ իբր 285ին եւ ունեցաւ երկուորեակներ՝ Պապ եւ Աթանագինէս։

Ասոնք ամուսնացան իբր 300ին։

Աթանագինէս ունեցաւ զաւակ մը՝ Ներսէս, որ եպիսկոպոս ընտրուեցաւ 339ին եւ † 372ին։ Ներսէս թողուց ժառանգ մը, Ս. Սահակ, ծն. իբր 338 † 439։

Պապ չունեցաւ Վարազդուխտէն զաւակ. բայց Հացեկացի հարճ մը ծնաւ իրեն, իբր 320ին, որդի մը Վրիկ անուն։ Փաւստոսի խօսքերն են. «Պապայ ի բուն կնոջէն (Վարազդխտոյ) ոչ մնաց (որդի). այլ էր նորա հարճ մի ի գաւառէն Տարաւնոյ ի Հաց(եկ)աց գեղջէ կարճազատացն. եւ մնաց որ(դի) ի հարճէ անտի ի Հացեկացւոյն, որում անուն [իւր — որդւոյ հարճին] Վրիկ կոչէր» (Գ. 19)։

Պապ եւ Աթանագինէս վախճանեցան միաժամանակ արկածով Աշտիշատի եպիսկոպոսանոցը։ Փոքրիկն Վրիկ իր հացեկացի մօր հետ ապրեցաւ անշուշտ Հացեկաց գիւղը. իսկ Ներսէս իր մօր Բամբիշի հետ յԱրտաշատ։ Պատմագիրը կը յիշէ Ներսէսի եպիսկոպոսանալը. բայց կը լռէ Վրիկի անդրադոյն կեանքի մասին։ Վրիկ առանց տարակուսի փաղաքշական անուն մ'է, կրճատուած ձեւը Վարդան անուան։ Վրիկ ամուսնացաւ անշուշտ եւ ունեցաւ զաւակ յանձին Մաշտոցի (ծն. իբր 360ին)։ Հմմտ. առ այս Հանդ. Ամս. 1935, էջ 505 = իմ Մաշտոց վարդապետ, էջ 94, ծան. 4։ Այս կէտին անդրադարձած է նաեւ Ստ. Մալխասեանց, Էջմիածին ամսաթերթ, 1946, 3 (1946), 55—58։ Մաշտոցի ծնունդը Հ. Ց. Գաթըրճեան, Տիեզ. Պատմ. Բ. 523 կը դնէր 361ին, զոր կարելի է ճիշդ համարիլ, գոնէ մերձաւորապէս։

7. «Ի մանկութեան տիսն վարժեալ հելլենական դպրութեամբն»։ Կորիւն շատ հակիրճ ներկայացուցած է Մաշտոցի կրթական ընթացքը։ Չէ ըսուած թէ ո՞ւր ուսած է Մաշտոց հելլենական դպրութիւնը։ Եթէ ան հելլենական դպրութեամբ այնքան վարժած է, որ կարող է դիւանին մէջ պաշտօն վարել,

Ս. Գրոց ընթերցմամբ պարապիլ, անշուշտ հելլէն բնագրի վրայ, ենթադրել կու տայ, թէ ան Հայաստանէն դուրս, յոյն միջավայրի վրայ առած է իր ուսումը։ Այն պարագան, որ Թէոդորոս երէց Անտիոքացի (ապա եպ. Մոպսուեստիայի) Մաշտոցի խնդրանքով գրած է Պարսից Քեշին դէմ, ցոյց կու տայ թէ Մաշտոց ի մերձուստ ծանօթ եղած է Թէոդորոս երէցի հետ. թերեւս իբրեւ աշակերտակից մը անոր յԱնտիոք, ուր Լիբանիոս կը դասախօսէր։

Կ՚ըսուի, թէ եկաւ «ի Դուռն Արշակունեաց Թագաւորաց Հայոց Մեծաց», այսինքն ի Նոր քաղաք, «կացեալ յարքունական Դիւանին՝ լինել սպասաւոր արքայատուր հրամանացն»։ Հայոց Թագաւորին անունը չի յիշուիր, վասն զի Խոսրով Գ.ի մահէն ետքը (իբր 387 կամ 389ին) յաջորդ չէր նշանակած Պարսից Դուռը. պետութեան վարչութիւնը Առաւան Հազարապետի (մարզպանի) ձեռքն էր։ Մաշտոցի վերադարձը պէտք է դնել 389/90 տարւոյն։ Պաշտօն գտած է Մաշտոց Թագաւորաց Դիւանին մէջ, որովհետեւ էր գրագէտ, հմուտ յոյն լեզուին։ Զգիտենք, թէ ծանօ՞թ էր ան նաեւ պարսիկ լեզուին։ Մաշտոց կը հմտանայ նաեւ «աշխարհակեաց կարգաց». այս բացատրութեան հանդիպեցանք մենք վերագոյն (Ա. 5) «ըստ աշխարհակիր կարգաց», որով կ՚իմանայ Կորիւն պատերազմական եւ դիւանագիտական գիտութիւնները։ Կ՚աւելցնէ Կորիւն. «Ցանկալի եղեալ զինուորական արուեստին իւրոց զօրականաց», ուստի կատարած է նաեւ զինուորական հրահանգները, հետամուտ սպայութեան աստիճանի։

Այս դպրոցական, դիւանական եւ զինուորական հրահանգներն ու մարզանքները նպաստեցին իրեն երեւան գալու ուրիշ ասպարէզի վրայ աւելի լայն աշխարհահայեցողութեամբ,

8. «Ի դուռն Արշակունեաց Թագաւորացն Հայոց Մեծաց»։ — ա. «Ի դուռն Թագաւորաց» արեւելեան ժողովուրդներու յատուկ ասութիւն մըն է, արքունիք իմաստով. գործածած է զայն նաեւ Քսենոփոն, ἐπὶ ταῖς βασιλέως θύραις, ի դրունս (ի դուրս) Թագաւորի, երբ խօսած է Կիւրոսի արքունիքի մասին։ Կորիւն կիրարկած է զայն նաեւ Յունաց եւ Աղուանից արքունիքներու համար (ԺԱ. 6. «հանդերձ ըմամբ քահանայիւ արքունական Դրանն» Աղուանից. ԺԴ. 3. Ատտիկոս հայրապետ — կաթուղիկոս «աշխարհամուտ դրանն» կայսեր Յունաց). վկայութիւններ նախնեաց մատենագրութենէն հաւաքած է Նորայր, Կորիւն վարդապետ, էջ 62—65։

Դուռն Արշակունի Թագաւորներուն կը գտնուէր Նոր-քաղաքի, այն է Վաղարշապատի մէջ։

բ. «Արշակունեաց Թագաւորացն Հայոց Մեծաց»։ Արշակունի հարստութիւնը սկիզբ առաւ Հայոց քով յետ Քրիստոսի 53 տարւոյն, երբ Վողոգեսոս Ա. Պարթեւաց Թագաւորը իր եղբայրն Տրդատ Ա. հայ գահի վրայ բարձրացուց։ Հռանդէիայի դաշամբ (63) միաբանեցան Պարթեւք եւ Հռոմայեցիք, որ Հայոց Թագաւորը արշակունի տոհմէ ընտրուի եւ հաստատուի կայսեր կողմէ։ Տրդատ Ա.ի հարստութիւնը Աշխադար—Սանատրուկ—Վաղարշ—Խոսրով Ա., Տրդատ Բ. եւ յաջորդներու գծով հասաւ մինչեւ Պապ Թագաւոր († 374) եւ Արշակ Դ. (385)։ Նոր հարստութիւն սկսաւ Խոսրով Գ.ով 385ին. իր յաջորդներն եղան Վռամշապուհ եւ Արտաշէս վերջին։ Կորիւն ըսած է «ի դուռն Արշակունեաց Թագաւորացն», որովհետեւ այն տարւոյն հայկական գահը թափուր էր. երկիրը կը կառավարէր հազարապետ մը՝ Առաւան։

գ. «Հայոց Մեծաց»։ Ադրիանոս կայսեր օրով (117) Եփրատի արեւմտակողմը գտնուող աշխարհամասը Սատաղ (Satala) քաղաքով հռովմէական նահանգ հրատարակուեցաւ Armenia Minor անուամբ, որ Տիգրանի օրով Հայաստանի մաս էր, հայախօս ժողովուրդով։ Այս Փոքր Հայքէն զանազանելու համար Հայաստանը, կոչուեցաւ Մեծ Հայք. անուն մը, զոր կը գտնենք Բակուր Թագաւորի յունարէն մէկ արձանագրութեան մէջ երկրորդ դարու առաջին քառորդէն. հոս կ՚ըսուի. Ἀυρελιος Παχορος. βασιλευς Μεγαλης Αρμενίας (Corpus Inscriptionum Graecarum, 6559։ Հարկ եղաւ այնուհետեւ պահել «մեծ» որակումս

ոչ միայն զանազանելու համար Հայաստանը Փոքր Հայքէն, այլ եւ 385ին Հռոմայեցւոց անցած կէս բաժին Հայաստանէն: Յոյն եւ լատին պատմագիրք աւելի բացայայտ ընելու համար Մեծ Հայքը, կոչեցին Persarmenia, այսինքն Պարսից գերիշխանութեան տակ գտնուած Հայաստան կամ Περσικὴ Ἀρμενία, Թէոդորիտ:

«Հայոց Մեծաց» գործածած է Կորիւն նաեւ Է. 7 «Վռամշապուհ արքայ Հայոց Մեծաց» (Զ. 1 «Թագաւորն Հայոց»). Ե. 2 Սահակ «Կաթողիկոսն Հայոց Մեծաց». ԺԴ. 10 Մաշտոց գայր անցանէր ի կողմանս Հայոց Մեծաց». ԺԵ. 3 դառնայր ի կողմանս Հայոց Մեծաց». ԺԹ. 4 Վահան «հազարապետ Հայոց Մեծաց»: Այլ տեղիքներ Ագաթանգեղոսէն եւ Փաւստոսէն տե՛ս Նորայր, անդ, էջ 65—66:

9. Առաւան հազարապետ: — Փաւստոս Զ. 1 կը գրէ, թէ Թագաւորն Պարսից (Շապուհ Գ.) «գտանէր ի նմին (արշակունի) տոհմէ մանուկ մի անուն Խոսրով. եւ կապեաց թագ ի գլուխ նորա. եւ ետ նմա կին զքոյր իւր զԶրուանդուխտ. եւ արար ընդ նմա զամենայն զզօրս զօրութեան իւրոյ. եւ Զիկ նուիրակ դաստիարակ ետ արքային Խոսրովայ. եւ եկին հասին յաշխարհն Հայոց»: Արշակ Դ. տեղի կու տայ հզօրագոյն ուժին եւ կ'ապաստանի «ի սահմանս Յունաց»: Ապա Շապուհի եւ Թէոդոս Ա.ի պատգամաւորները կը միաբանին եւ Հայաստանը կը բաժնեն Պարսից եւ Յունաց մէջ (385): Պարսկական բաժնին կը թագաւորէ Խոսրով: Արքայացանկը կու տայ Խոսրովի ամս Գ. որ է 385/87 (Սեբէոս, 17), իսկ Մ. Խորենացի (Գ. 53) ամս Ե. (385—389): Թէ ի՞նչ մահուամբ վախճանեցաւ Խոսրով Գ., ծանօթ չէ: Գահին վրայ յաջորդ կ'ունենայ Խոսրով զՎռամշապուհ, որուն առաջին տարին է 400/401: Գահը թափուր մնացած է 387—400 տարիներուն: Պետութիւնը կառավարած է այս շրջանին, ինչպէս Կորիւնէն կ'իմացուի, Առաւան հազարապետ:

Սա հաւանօրէն նոյն է Զիկ նուիրակի հետ, որ Խոսրովի հետ ուղարկուած էր, ըստ Փաւստոսի, իբրեւ դաստիարակ: Զիկ, ինչպէս ծանօթ է այլուստ, յատուկ անուն չէ, այլ պատուանուն կամ պաշտօն:

Justi, 32, 156—157, կը կարծէ, թէ այս Առաւանը նոյնացնելու է Ամմիանոս Մարկեղոսի յիշած Artabannes (նաեւ Arabanis, Arrabanes, Arrabones գրչութեամբ), զոր Շապուհ Կիւղակ ներքինւոյ հետ Հայաստանի սատրապ նշանակեց 368ին, զորոնք Փաւստոս կ'անուանէ Կարէն եւ Զիկ: Այս անկարելի է, վասն զի ինչպէս Ամմիանոս եւ Փաւստոս կը հաստատեն, անոնք գլխատուեցան Պապի հրամանով կամ ըստ Փաւստոսի Մուշեղ զօրավարէն:

Արտաւանի տիտղոսը հազարապետ իմանալու է անշուշտ լայն իմաստով, այսինքն մարզպան: Հմմտ. Ակինեան, Մաշտոց վարդապետ, էջ 27—28:

10. Մաշտոցի ի հաւատս դարձի մասին շատ այլաբանական են Կորիւնի արտայայտութիւնները: Զինուորական ծառայութեան մէջ էր տակաւին Մաշտոց, երբ «անդէն ուշ եդեալ փութով ընթերցուածոց աստուածեղէն Գրոց, որով առժամայն լուսաւորեալ եւ թեւամուխ միջամուխ եղեալ յաստուածատուր հրամանացն հանգամանս եւ ամենայն պատրաստութեամբ զանձն զարդարեալ... եւ յետ այնորիկ ըստ աւետարանական չափուցն՝ ի ծառայութիւն Աստուծոյ մարդասիրին դարձեալ՝ մերկանայր զաշխարհակիր ցանկութիւնսն եւ առեալ զխաչն պարծանաց՝ ելանէր զկնի ամենակեցոյց Խաչելոյն. եւ հաճեալ հրամանացն՝ ի խաչակիր գունդն Քրիստոսի խառնէր...»: Ինձ կը թուի թէ այս խօսքերու միտքն է, թէ Մաշտոց հրաժարեցաւ զինուորութենէն. մկրտութեամբ ի գունդն Քրիստոսի խառնուեցաւ. ապա միայնակեաց եղաւ, ի վերջոյ քորեպիսկոպոս կարգուեցաւ: Կորիւն այս անցքը «հաւատք» կը կոչէ եւ կը հաշուէ «համար ամաց հաւատոցն» մինչեւ Մաշտոցի մահը ԽԷ տարի, ուստի այս հանգրուանը կը սկսի 392/3 տարւոյն: Հին կանոնագիրքերու մէջ «եթէ ոք ի հաւատս կացցէ» ըսելով կ'իմացուին անոնք, որոնք մկրտութեամբ եղած են քրիստոնեայ: Այս դարուն անսովոր բան չէր 30ամեայ մկրտութեան մատչիլ: Ռուփինոս Ակուիլէացի 25ամեայ էր երբ մկրտուեցաւ: Մաշտոց ընդունելով Եկեղեցական կոչումը, ձեռնադրուեցաւ

Ս. Սահակէն քորեպիսկոպոս, ինչպէս բացայայտ կը տեսնուի Թէոդորոս երէցի ի խնդրոյ Մաշտոցի գրած Ընդդէմ Քեշին Պարսից գրուածքին խորագրէն.

Θεοδώρου πρεσβυτέρου περὶ τῆς ἐν Περσίδι μαγικῆς καὶ τίς ἡ τῆς εὐσεβίας διαφορὰ ἐν λόγοις γ΄.... πρὸς Μαστούβιον ἐξ Ἀρμενίας ὁρμώμενον, χορεπίσκοπον δὲ τυγχάνοντα. այս ինքն «Թէոդորոսի երիցու վասն մոգակրօնիկ դենին Պարսից եւ եթէ զի՞նչ իցէ ճշմարիտ հաւատոցն խտիր, յերիս գիրս... (գրեալ) առ Մաշտոց, որ էր յաշխարհէն Հայոց, կարգեալ ի քորեպիսկոպոս(ութիւն»). 'Photii bibliotheca, 81 (Migne, Patrologia graeca, 103, էջ 281) Հմմտ. Ն. Ադոնց, Մաշտոց եւ նորա աշակերտները, էջ 7—8. Ակինեան, Մաշտոց վարդապետ, 102:

Քորեպիսկոպոսի պաշտօնն էր շրջիլ քաղաքներ եւ գիւղեր ուսուցանելով: Մաշտոց առած հետը իր աշակերտները՝ կը հասնի Գողթն գաւառ, որ Սիւնիքի եւ Աղուանից աշխարհին սահմանակից, կը նկատուէր ծայրագաւառ: Քրիստոնեայ էր աշխարհը, բայց խոր արմատ չէր ձգած քրիստոնէութիւնը գաւառին մէջ. կային հոն տակաւին հեթանոսներ. զայս կ'ակնարկէ Կորիւնի «յանկարգ եւ յանդարման տեղիս Գողթան» արտայայտութիւնը:

11. Գողթնի իշխանին անունն է Շաբիթ, ինչպէս ունին IJ ձեռագիրները. Կորիւն Ժ. 1 կ'անուանէ իշխանս Շաբաթ (սեռ. Շաբաթայ). K Շաբեթ, զոր կարդալու է անշուշտ Շաբիթ. այսպէս ունի նաեւ Մ. Խոր. Գ. 47 (Շաբիթ, այլ ձձ. Շամբիթ) եւ Գ. 60 (Շաբիթ-այ). H Շամբիթ, հաւանօրէն Մ. Խոր. ձեռագիրներու ընթերցուած. հմմտ. նաեւ Թովմ. Արծր. 45. Շամբիթ արծրունի (ենթադրեալ), որ Սմբատ անունի կեղծագրութիւնն է:

Մարաց կողմանք. տե'ս Ծան. 45:

12. «Նոյնպէս — զհամաշխարհականս զոփալով»: Տեղիքս ենթադրել կու տայ, թէ բնագիրը հոս աղաւաղում կամ կրճատում կրած ըլլայ: Համառօտն (H) ունի հոս. «Բայց զի ոչ էր գիր հայերէն լեզուիս՝ բազում պակասութիւն լինէր ճշմարտութեան աւանդիցն առ աշակերտեալսն. իսկ երանելի վարդապետն տարակուսեալ ի խորհուրդս իւր առ Աստուած ապաւինէր»:

Մաշտոց զգաց անշուշտ ի Գողթն քարոզութեան միջոցին դժուարութիւնները, զորոնք կը յարուցանէր լեզուին առանց դպրութեան ըլլալը: Անդրադէտ ժողովուրդին վրայ բերանացի քարոզութիւնը վաղանցուկ ազդեցութիւն միայն կրնար գործել. մինչ գրով սուէպ յեղյեղուած կրօնի վարդապետութիւնը՝ մանաւանդ մանուկ սերունդին ականջին, պիտի խորացնէր թէ ըմբռնումը եւ թէ յիշողութիւնը: Ասկէ գաղափար յղացաւ Մաշտոց հնարել հայ լեզուի համար սեպհական նշանագիրներ եւ Աստուածաշունչը հայերէն գրով դնել ժողովուրդի առջեւ, բանալ դպրոցներ եւ պատրաստել քարոզիչներ:

Այս նպատակով վերադարձաւ Մաշտոց Վաղարշապատ, խորհրդակցելու համար հայկական այբուբենի մասին:

Բառս «համաշխարհական» գործածուած է հայ գրականութեան մէջ ածականաբար. այսպէս Ավ. 155 «առ ի պատմելոյ ազգացն եկելոց զհամաշխարհական բարկութեանն պայմանն: 163 Դաւիթ զհ. տէրութիւնն երգեաց: 198 յարուցեալ թագաւոր համաշխարհական: 232 զհ. կատարածն պատմեաց: Ագաթ. 474 զհ. սուրբ կաթուղիկէ եկեղեցի»: Հմմտ. նաեւ Ավ. 175 «զհամաշխարհազործ զմեղսն»: Եւթաղ 177 «համաշխարհական սով», դարձեալ Ոսկ. Պաւղ. Ա. 263 «հ. յայտնութիւն». «Կանոն հ. է այս սահման». անդ, 550: Իսկ «համաշխարհ» տես Ն. 155—156, 340:

Աւելի ուղիղ պիտի ըլլար «զցաւս զաշխարհին իւրոյ կամ զհամաշխարհին զոփալով» (կամ սփոփելոյ):

«Զոփալ» քիչ անգամ գործածուած բայ է, զանազան զգածումներ արտայայտող:

13· Եպիսկոպոս, Կաթողիկոս, հայրապետ, քահանայապետ: *Սահակ, ըստ աւանդութեան որդի Մեծին Ներսէսի, յաջորդած էր գահին վրայ Ասպուրակէս «գլխաւոր եպիսկոպոսի»* 357/8*ին, Խոսրով Գ․ի օրով եւ վախճանած* 7 *սեպտ․* 439 (*տես Ծան․* 81):

*Կորիւն, որ կը գրէր Ս․ Մաշտոցի Վարքը, քիչ անգամ խօսք ըրած է Ս․ Սահակի մասին, երբ յորջորջած է զանիկա երիցս «եպիսկոպոս», երկու անգամ «կաթողիկոս», ութը անգամ ալ պարզապէս «սուրբն», «երանելին», «մեծն» Սահակ կամ լոկ «Սահակ»: Առաջին երկու տեղիքներն են․ Մաշտոց կ'երթայ «առ սուրբ կաթուղիկոսն Հայոց Մեծաց, որոյ անուն ճանաչէր Սահակ»* (*Ե․* 2)․ *«եւ պատահեալ Սահակայ կաթողիկոսի Հայոց»* (*Ը․* 10): *«Ազդ լինէր Թագաւորին եւ սրբոյ Եպիսկոպոսին»* (*Զ․* 2)․ *«որպէս զի տէր Եպիսկոպոսն ի Կայենականսն»* (*Ը․* 1)․ *«յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ»* (*Ժ․* 19):

*«Կաթողիկոս» տիտղոսի այս հազուադէպ կիրարութիւնը ի մասին Սահակայ կը բերէ զիս այն համոզումի, թէ «Հայոց եպիսկոպոսը» Ե․ դարու առաջին կէսին սովորութիւն չունէր ինքզինքը «կաթողիկոս» կոչելու. ուստի եւ յիշեալ երկու տեղիքները հարազատ չեն Կորիւնի Բնագրին մէջ, ուրիշ գրչէ են անոնք: «Հայոց եպիսկոպոսը» այլ եւ այլ տիտղոսներով պճնազարդել ուշ ժամանակի, յատկապէս Ե․ դարու վերջերը երեւան եկած սովորութիւն է: Այդ տիտղոսներու ծագումը եւ զարգացումը ժամանակագրօրէն ճշդելու համար չունինք աղբիւր․ վասն զի մեր ձեռքի տակ գտնուած պատմագիրները կամ Ե․ դարուն վերջերը գրուած են եւ կամ այդ շրջանին խմբագրուած․ այսպէս Ագաթանգեղոս, Փաւստոս եւ Ղ․ Փարպեցի, կը լռեմ Եղիշէի մասին: Եւ ճիշդ ատոնց քով է, որ կը տեսնուին այն բազմազան տիտղոսները․* եպիսկոպոսապետ, արքեպիսկոպոս, քահանայապետ, կաթողիկոս, հայրապետ *եւ այլն:*

ա․ Եպիսկոպոս: *Երբ Հայաստան բարի տրամադրութիւնն յայտնեց ընդունելու քրիստոնէութիւնը, Կեսարիոյ մետրապոլիտն ուղարկեց Հայոց Գրիգոր Եպիսկոպոսը* (219—249), *որ նկատուեցաւ «Հայոց Մեծաց Եպիսկոպոս»* (episcopus magnae Armeniae), *իրաւասութեամբ ձեռնադրելու եպիսկոպոսներ Հայաստանի համար, որքան կը պահանջէր անոր թեմական զարգացումը: Այս իրաւասութիւնը աթոռին հետ ժառանգական չէր, այլ պարտաւոր էր ամէն յաջորդ ստանալ ձեռնադրութեամբ Կեսարիոյ մետրապոլտէն: Այսպէս Կեսարիա առին իրենց ձեռնադրութիւնը Գրիգոր Ա․էն սկսեալ մինչեւ Ներսէս Մեծ* (219—372): *Անոնց պաշտօնական տիտղոսն էր «Եպիսկոպոս»․ Փաւստոս Դ․* 3 (*վերնագիր*) *կը գրէ, թէ Ներսէս ընտրուեցաւ «եպիսկոպոս լինել Հայոց աշխարհին»: Այսպէս անոնց նստոցը կը կոչուէր Եպիսկոպոսական Կայեան»* (*Դ․* 14) *կամ «Եպիսկոպոսանոց»* (*անդ*)․ *Ագաթանգեղոս կ'անուանէ «եպիսկոպոսական աթոռ»․ հմմտ․ Նորայր,* 177: *Հայոց Մեծաց եպիսկոպոսը ունէր ըստ այսմ իր ձեռքին տակ եպիսկոպոսներ, որոնց հանդէպ էր ինքը* գլխաւոր եպիսկոպոս *կամ* եպիսկոպոսապետ, *ուրիշ խօսքով* արքեպիսկոպոս *(ἀρχεπίσκοπος), զոր Փաւստոս կը թարգմանէ «յառաջեպիսկոպոս», բառ մը, որ կրկին իմաստով ալ կրնայ իմացուիլ «առաջին եպիսկոպոս» եւ «գլխաւոր եպիսկոպոս»: Հայոց եպիսկոպոսապետին պաշտօնն էր ոչ միայն հովուել եկեղեցին, այլ եւ օրհնել Թագաւորին սեղանը, ուստի եւ ընկերանալ Թագաւորին, ուր եւ երթայ ան իր բանակին հետ: Իբր* 360*ին, երբ Ներսէս Մեծ գժտեցաւ Արշակ Գ․ Թագաւորին հետ եւ հեռացաւ արքունիքէն, հարկ տեսաւ Թագաւորը հակաթոռ մ'անուանելու: Փաւստոս կը գրէ* (*Դ․*15)․ *«Փոխանակ Ներսիսի զՉունակ ոմն անուն կացուցին փոխանակ նորա գլուխ քրիստոնէութեանն․ ...ապա հրաման տայր Թագաւորն կոչել զամենայն եպիսկոպոսս Հայոց աշխարհին, զի եկեսցեն ձեռնադրեսցեն զՉունակն ի կաթողիկոսութիւն Հայոց: Եւ ոչ մի ոք ոչ հաւանեաց գալ․ բայց միայն Աղձնեաց եւ Կորդուաց եպիսկոպոսք եկին եւ զՉունակն ձեռնադրեցին ի կաթուղիկոսութիւն ըստ հրամանի Թագաւորին»: Առաջին դէպքն էր այս, որ «կաթողիկոս»*

մը առանց Կեսարիայի մետրապոլտին կը ձեռնադրուէր․ բայց Կեսարիա չբողոքեց, վասն զի տակաւին կենդանի էր Ներսէս։ Այս Զոնակ (Զունակ) անունը հաւանօրէն աղաւաղութիւնն է Շահակ անունին, որուն միւս հայկական ձեւն է Յուսիկ․ կը յիշուի սա Անտիոքի եպիսկոպոսներու առ Յովիանոս կայսր ուղղած թղթին մէջ 'Ισακόκις (Ισακικης, Ισαικις) 'Αρμενίας μεγάλης (ἐπίσκοπος), Սոկրատ, Պատմ․ Եկեղ․ Գ․ 25)։ Սա էր առանց տարակուսի այն «Յուսիկ եպիսկոպոսը», զոր Պապ թագաւոր միւսանգամ աթոռ հրաւիրեց Ներսէսի եպիսկոպոսի մահէն ետքը (372/3)։ Բայց այս անգամ լսելի ըրին Կեսարացիք իրենց բողոքը․ եւ ոչ միայն ապօրինի համարեցան Յուսիկի եպիսկոպոսապետութիւնը, այլ «եւ լուծին զիշխանութիւնն կաթողիկոսութեանն․ զի որ լիցին հայրապետ Հայոց, նա Դրանն արքունի իշխեսցէ զհացն օրհնել եւ մի իշխեսցէ ձեռնադրել զեպիսկոպոս(ս)ն Հայոց, որպէս սովորութիւն էր ի բնէ։ Եւ յայնմհետէ բարձաւ իշխանութիւնն Հայոց զեպիսկոպոսն ձեռնադրել․ այլ որ լինէին եպիսկոպոսք… երթային ի քաղաքն Կեսարացւոց եւ անդ լինէին եպիսկոպոսք․ …բայց որ լինէր աւագ եպիսկոպոսացն, ի վերոյ միայն նստէր եւ հաց օրհնէր թագաւորացն» (Փաւստ․ Ե․ 29)։ Այսպէս Յուսիկ Բ․էն մինչեւ Ասպուրակէս (373—387) «գլխաւոր եպիսկոպոս» տիտղոսը կը կրէին գահին յաջորդները։ Կրնանք հետեւցնել ասկէ եւ այն, որ Հայոց եպիսկոպոսապետները կ՚ընտրուէին հայ ժողովուրդէն եւ կը հաստատուէին Հայոց թագաւորէն (հմմտ․ Փաւստ․ Դ․ 3)։ Այս սովորութիւնը չարունակուեցաւ առանց տարակուսի, ցորքան թագաւոր կը բազմէր հայ արշակունի գահին վրայ։ Ուստի նաեւ Սահակ ընտրուեցաւ հայ ժողովուրդի կամքով եւ առաւ իր հաստատութիւնը Խոսրով Գ․էն։ Զենք գիտեր, սակայն, թէ նա իբրեւ «գլխաւո՞ր եպիսկոպոս» նստաւ գահը, թէ իբրեւ «եպիսկոպոս Մեծաց Հայոց», ընդունելով ձեռնադրութիւնը Կեսարիայէն, ինչպէս յառաջագոյն։ Վերջինս ենթադրել թոյլ չի տար Փաւստոսի վճռական խօսքը, թէ «եւ յայնմհետէ բարձաւ իշխանութիւնն Հայոց զեպիսկոպոսն ձեռնադրել», որ անփոփոխ պահուած է հայ թարգմանութեան մէջ եւ կը թուի թէ 387 տարիէն վերջն ալ նկատի ունի։ Յամենայն դէպս գիտենք, թէ Սահակի մահէն (439) վերջը բոլորովին ուրիշ կերպարանք առին իրերը։ Երբ Հայ ժողովուրդի կամքով Սահակի յաջորդ ընտրուեցաւ Յովսէփ երէց, չկար հայ թագաւոր․ ընտրութեան հաստատութիւնը հարկ էր Յազկերտ Բ․էն ստանալ եւ ապա խորհիլ անոր ձեռնադրութեան մասին։ Պարսիկը չտուաւ իր «վստահութիւնը»․ եւ Յովսէփ մինչեւ իր նահատակութիւնը (454) մնաց երէց, թէպէտ Ղ․ Փարպեցիէն նկատուած է «կաթողիկոս» (տես Ծան․ 85)։ Անոր յաջորդներուն համար կը գրէ Ղազար․ «Յետ կատարման սրբոյ կաթողիկոսին Յովսեփայ յաջորդեաց զկաթողիկոսութիւնն… տէր Մելիտէ… եւ զհետ նորա տէր Մովսէս… եւ ապա… յաջորդեաց տէր Գիւտ»։ Մելիտէ 450ին արդէն եպիսկոպոս էր․ նոյնպէս Գիւտ որ հաւանօրէն նոյն է Գադ, Վանանդայ եպիսկոպոսին հետ, յիշուած 450ի ժողովին մէջ (Փարպ․ 44)։ Թէ առաջին երկուքը առա՞ծ էին թագաւորին հաւանութիւնը, չենք գիտեր․ բայց Ղ․ Փարպեցիէն կը տեսնուի, որ Գիւտ չունէր նման հաստատութիւն․ Պերոզ թագաւոր կը մեղադրէ Գիւտ կաթողիկոսը․ «Մինչեւ ցայժմ քո զիշխանութիւնդ առանց իմ հրամանի կալեալ է․ եւ ծառայ մարդիկ են, որոց քեզ զայդպիսի մեծ գործ տուեալ է եւ ոչ յինէն ունիս վստահութիւն» (Փարպ․ 114)։ Գիւտ թէեւ ընտրուած էր Պարսից թագաւորի հպատակ հայ ժողովուրդէն, բայց չունէր թագաւորին «վստահութիւնն» կամ հաստատութիւնը, այս պատճառով ալ մերժուեցաւ աթոռէն։ Առանց տարակուսի նաեւ իր յաջորդը Յովհաննէս Ա․ կաթողիկոս ընդունած էր կաթողիկոսութիւնը ժողովուրդին ընտրութեամբ, Վահանի ապստամբութեան օրերուն։

Փոխուած էին այժմ ինչպէս քաղաքական կացութիւնը, նոյնպէս եկեղեցական հանգամանքները։ Պարսից Եկեղեցին, որ Անտիոքի Մետրապոլտին իրաւասութեան տակն էր, ինքնագլուխ եղած էր։ Ինքնագլուխ եղան ապա նաեւ Նեստորականները։ Անոնց օրինակին հետեւեցաւ նաեւ Հայոց եկեղեցին։

Գիւտ կաթողիկոս ունէր իրաւասութիւնը եպիսկոպոսներ ձեռնադրելու. ան, ինչպէս կը պատմէ Ղ. Փարպեցի, Հայոց կաթողիկոսական գահը կորսնցնելէ ետքը «կացեալ այնուհետեւ ի Դրան» ոմանք «ի քրիստոնէիցն կողմանցն այնոցիկ ցանկանային ի սուրբ աջոյ առն Աստուծոյ գտանել ձեռնադրութիւն. յորոց զոմանս ձեռնադրէր յեպիսկոպոսութիւն եւ զայլս բազումս յաստիճան երիցութեան կարգէր» (116): Գիւտ վերադարձաւ ապա Վանանդ եւ հոն ալ վախճանեցաւ: Այս փոփոխութիւնները տեղի ունեցան 454էն ետքը:

Ագաթանգեղոս եւ Փաւստոս խառն ի խուռն կը գործածեն Եպիսկոպոսապետ, արքեպիսկոպոս, քահանայապետ, հայրապետ եւ կաթողիկոս:

Քահանայապետ, որ թարգմանութիւնն է յն. ἀρχιερευς բառին, մուտ գտած է Հայոց քով հաւանօրէն Աստուածաշունչէն: Եւսեբիոսի Ժամանակագրութեան մէջ (էջ 36) «քահանայապետ» թարգմանուած է քրմապետը. իսկ Կիւրղի Երուսաղեմացւոյ Կոչ. Ընծ. 411, Եփրեմ, Բ. 81 «քահանայապետ» նոյնիմաստ է ժողովրդապետի (Նորայր, էջ 101): Շահապիվանի ժողովի Կանոններու մէջ «քահանայապետք» կը նկատուին եպիսկոպոսները, որոնք իրապէս լրացեալ քահանայութիւնն են եւ ունին իրենց ձեռքի տակ քահանաներ: Փաւստոսի քով գործածուած է բառս 40 անգամ. «առաջին» կամ «մեծ քահանայապետն Գրիգոր, քահանայապետն Վրթանէս, Յուսիկ, Ներսէս, նաեւ Յակոբ Մծբնացի. ասոր կից նաեւ քահանայապետութիւն: Նոյնը Ագաթանգեղոսի քով 10 անգամ: Ասոնց ազդեցութեան տակ մուտ գտած է Կորիւնի քով անգամ մը «ի կայս թագաւորացն եւ քահանայապետացն» (Թ. 5, Ծ. 61): Համեմատէ Նորայր, Կորիւն, 100—101:

Հայրապետ, Հայրապետութիւն, Հայրապետական աթոռ: Փաւստոսի քով աւելի քան 60 անգամ կը գտնենք բառերս, սակաւ թուով նաեւ Ագաթանգեղոսի քով. որոնք կը համապատասխանեն յն. πατριάρχης բառին: Այսպէս հայրապետն կամ մեծ հայրապետն Գրիգոր, Վրթանէս, հայրապետն Կեսարիայ, Հռոմայ. «զհայրապետութեանն զկաթողիկոսութիւնն», «հայրապետացն աթոռ», ի վերջոյ «աթոռ հայրապետական» (տե՛ս Նորայր, Կորիւն, էջ 177): Ունի անգամ մը նաեւ Կորիւն ԺԴ. 3. Մաշտոց «յանդիման լինէր (ի Կ. Պոլիս)... հայրապետին սրբոյ կաթողիկոսին աշխարհամուտ Դրանն, որում Ատտիկոս կոչէին». բայց քիչ յետոյ կ'ըսուի «երկիր պագեալ... սրբոյ կաթողիկոսին»: Ինծ կը թուի թէ յետոյ մուծուած է Կորիւնի մէջ «հայրապետ». նոյնը կը գտնենք Ագաթանգեղոսի քով փոխառութեամբ. «եւ հայրապետն (ad չունին) մեծ արքեպիսկոպոսն աշխարհամուտ դրանն (Հռոմայ), որում անուն կոչէր Եւսեբիոս» (էջ 461): Հայրապետ տիտղոսը Ե. դարու 20ամեակին կը պատշաճէր Հռոմայ եպիսկոպոսին, բայց ոչ Կ. Պոլսոյ եպիսկոպոսին, որ 451էն ետքը ստացած էր տիտղոսս: Կորիւն Ե. 2 «առ կաթուղիկոսն» H ունի «հայրապետն»:

Եպիսկոպոսապետ, արքեպիսկոպոս, արքեպիսկոպոսապետ: Փաւստոս 40 անգամ գործածած է եպիսկոպոսապետ բառը, նաեւ «մեծ» ածականով ճոխացուցած. «մեծ եպիսկոպոսապետն Վրթանէս, եպիսկոպոսապետն Եւսեբիոս, Բարսեղ, նաեւ Խադ: Բառս թարգմանութիւնն է յն. ἀρχεπίσκοπος ի, զոր նաեւ տառադարձութեամբ ունինք՝ արքեպիսկոպոս. Ագաթ. «մեծ արքեպիսկոպոսն Գրիգոր», «Ղեւոնդիոս արքեպիսկոպոս մետրապոլիտ մեգաղի Կեսարու», «հայրապետն մեծ արքեպիսկոպոսն» Եւսեբիոս Հռոմայ. եւ Փաւստ. Դ. 15, Ե. 4. «արքեպիսկոպոսապետն Ներսէս» (հմմտ. Նորայր, Կորիւն, էջ 271):

Կաթողիկոս, Կաթողիկոսութիւն: Փոխառութիւն է յն. ածական καθολικὸς բառին, «ընդհանրական» նշանակութեամբ, որուն իգական ձեւն է καθολική, որոնք տառադարձութեամբ առուած են կաթողիկոս, կաթողիկէ, ասկէ յառաջագայած են հայ. կաթողիկէական, կաթողիկոսութիւն եւն բառերը: Ինչպէս καθολική կ'ենթադրէ առընթեր ἐκκλησία, ἐπιστολή, նոյնպէս καθολικὸς ունէր առընթեր ἐπίσκοπος, ուստի կաթողիկոս եպիսկոպոս, այն է ընդհանրական տեսուչ, եպիսկոպոս. որ ապա գոյականաբար եղած է տիտ-

ղոս: Բառս փոխ առնուած է նախ յունարէնէ կաթողիկոս, կաթողիկէ տառադարձութեամբ. ապա փոխ առնուած է ասորերէնէ կաթուղիկոս տառադարձութեամբ, որ ժողովուրդի բերանը վերածուած է Կաթաղիկոսի:

Իբրեւ տիտղոս պաշտօնապէս գործածուած է արեւելեան, յատկապէս Պարսկաստանի քրիստոնեայ Ասորիներու քով, արդէն Ե. դարու առաջին տասնեակին, երբ այն կողման քրիստոնէից եպիսկոպոսապետը ինքզինքը ինքնագլուխ հռչակեց: 410, փետր. 1ին Տիզբոնի ժողովը, որ գումարուած է Իսահակ Պարսից քրիստոնեաներու գլխաւոր եպիսկոպոսի օրով, իր ԺԲ. կանոնին մէջ կը սահմանէ. «Մենք, Արեւելքի ամէն տեղերու եպիսկոպոսները եւ մեր յաջորդները կ'ուզենք Տիզբոնի եպիսկոպոս Կաթողիկոսի, եպիսկոպոսներու պետին, Մետրապոլիտին, այսինքն ամէն եպիսկոպոսի, որ կը նստի Կոկէի Եկեղեցւոյն մեծ աթոռին վրայ, կ'ուզենք հպատակ ըլլալ մինչեւ ցգալուստն Քրիստոսի, այն ամէն բանի մէջ, որ արդարապէս հրամայուի» (Braun, էջ 21): Տիզբոնի Յովսէփ կաթողիկոսը, որ գահ բարձրացաւ 552ին, կը սահմանէ. «Ինչպէս կաթողիկոսը առանց մետրապոլիտներու հաւանութեան եւ առանց անոնցմէ ձեռնադրութիւն ընդունելու չի կրնար պատրիարք կոչուիլ, այսպէս ալ մետրապոլիտ մը, որ չէ ձեռնադրուած պատրիարքէն, չի կրնար մետրապոլիտ անուանուիլ»: Հետաքրքրական է այս տեսակէտէ Կոզմաս Հնդկաչուի գրածը Մար Աբայի մասին, «որ բովանդակ Պարսկաստանի քահանայապետական գահը բարձրացաւ իբրեւ կաթողիկոս եպիսկոպոս» (անդ, էջ 383—384): Անոնց օրինակին հետեւեցան ապա Նեստորական Ասորիները, որոնց Եկեղեցւոյ գլուխը Բաբոյի անուանեց ինք զինքը «Բաբէ Ասորեստան կաթողիկոս» Գիրք Թղթոց, էջ 45):

Տիտղոսս «Կաթողիկոս», զոր յատկացուցած էր Տիզբոնի Եկեղեցին իր Մետրապոլիտին, բառին հետ նաեւ իմաստը փոխ առնուեցաւ Հայերէն: Այսպէս Հայոց Կանոնագրքի մէջ «կաթուղիկոս» թարգմանուած է յն. μητροπολίτος, մետրապոլիտը. այսպէս Նիկիոյ Կանոնաց Դ. «Բայց զպատիւն եւ զշնորհն գլխաւորին արժան է տալ, այսինքն կաթողիկոսին». Կան. Զ. «Թէ ոք ոչ կամօք կաթուղիկոսին լիցի եպիսկոպոս». իսկ Անտիոքի Թ. Կանոնին մէջ հայ խմբագրէն մուծուած է բառս. «մի՛ իշխեսցէ... ձեռնամուխ լինել արտաքս քան զկամս մայրաքաղաքի եպիսկոպոսին եւ ոչ [նմին կաթուղիկոսին] առանց (նորին) հաւասարութեան այլոց եպիսկոպոսացն գործել ինչ:

Այս ըմբռնումով անշուշտ կ'անուանէ Կորիւն (Թ. 3—4) Կ. Պոլսոյ Եպիսկոպոսն Ատտիկոս, որ ունէր իր ձեռքին տակ եպիսկոպոսական թեմեր, «կաթուղիկոս աշխարհամուտ դրանն» (ասկէ փոխ առած է Ագաթ. 464 «հրաժարեալ... ի սրբոյ կաթուղիկոսէն» Եւսեբեայ հռոմայեցւոյ): Ագաթանգեղոսի համար «կաթողիկոս» է նաեւ Ղեւոնդիոս Կեսարեայ (419). իսկ Փաւստոս (Դ. 4) Կեսարիոյ եպիսկոպոսը կ'անուանէ «կաթողիկոսաց կաթուղիկոս». Բարսեղ նստաւ «յաթոռ կաթուղիկոսութեանն Կեսարու» (Դ. 19). Գրիգորիս եպիսկոպոս, «որ կաթուղիկոսն էր կողմանցն Վրաց եւ Աղուանից» (Գ. 6): Ս. Գրիգոր էր «առաջին կաթուղիկոս» Հայոց (Գ. 10) եւն (տե՛ս Նորայր, անդ, էջ 68—71):

Թէ 440էն յառաջ գործածուա՞ծ է կաթողիկոս տիտղոսը Հայոց որ եւ է «գլխաւոր եպիսկոպոսէ», յատկապէս Ս. Սահակէն, չկայ որ եւ է նշմարանք: Հայոց Թուղթն առ Պրոկղոս գրուած է «ի Սահակայ եւ ի Մաշդոցէ» (Գիրք Թղթոց, 9), նոյնպէս առ Ակակ եպիսկոպոս Թուղթը «ի Սահակայ ի տէր ողջոյն» (անդ, 16): Կորիւն երբ կը յիշէ Յովսէփի ընտրութիւնը, կը գրէ. «եւ գլխաւորս, վերակացուս տեղապահս յայտ արարեալ հարցն կատարելոց, որոց առաջինն Յովսէփ գլխաւոր ժողովոյն». առանց մասնաւոր տիտղոսի: Բայց եւ այնպէս Ղ. Փարպեցի գիտէ թէ «սուրբն Յովսէփ, որ թէպէտ եւ զձեռնադրութիւն երիցութեան ունէր, սակայն յաթոռ կաթողիկոսութեանն էր վիճակեալ արժանաւորապէս (71. հմմտ. նաեւ 44, 70): Աւելի ճիշդ արտայայտուած է սակայն Ղեւոնդ երէց. «Սա, զոր տեսանէք, թէպէտ եւ մանկագոյն քան զին

*տեսանէք տիօք, այլ պատուով կարգեալ է արժանաւորապէս եւ գլուխ է ամենայն Հայոց քահանայութեանց»* (79)։

14․ Վռամշապուհ թագաւոր։ — *Այս անունով մէկ անձ միայն ծանօթ է Պատմութեան․ ըստ իմաստին է« Վռամը պատուող Շապուհ»* (Justi, 365)։ *Առանց տարակուսի Արշակունի տունէն էր Վռամշապուհ, այն ճիւղէն, ուսկից էր «մանուկն» Խոսրով Գ․, զոր թագաւորեցուցած էր Շապուհ Բ․* 385*ին, կին տալով անոր «զքոյր իւր զԶրուանդուխտ»* (*Փաւստ․ Զ․* 1)։ *Դժբախտաբար Կորիւն Վռամշապուհի ոչ հայրանունը յիշած է եւ ոչ թագաւորելու պարագաները։ Սուտ Ղազար Փարպեցի* (13) *եւ իրեն հետեւելով Մ․ Խորենացի* (*Գ․* 50) *կը գրեն թէ Խոսրով Գ․ վար առնուելով, անոր տեղ Պարսից Դուռը թագաւոր կը կարգէ «զՎռամշապուհ զեղբայր նորին Խոսրովու, յազգէն Արշակունեաց»* (*Փարպ․* 13)։ *Խոսրով թագաւորեց ըստ․ Մ․ Խոր․* 5 *տարի․ իսկ Վռամշապուհ ԻԱ տարի* (*Գ․* 55)․ *անոր մահէն ետքը Խոսրով միւսանգամ գահ կը բարձրանայ․ մինչ Սուտ Ղազար գիտէ թէ Վռամշապուհ նաեւ գրի գիւտէն* (407/8) *ետքը «եկաց… ամս բազումս եւ հասեալ յերկար ծերութիւն վախճանեցաւ»* (18) *ունենալով իրեն յաջորդ իր որդին Արտաշէս*։

*Արքայացանկի համաձայն Վռամշապուհ թագաւորած է Ա․ Յազկերտի Բ․ տարւոյն, այս ինքն* 400/401*ին եւ գահակալած է* 8 *տարի, վերջին տարին կը համապատասխանէ Բ․ Թէոդոսի Բ․ տարւոյն, այն է* 409։ *Այս հաշուին հետ ճիշդ կու գայ Կորիւնի զուգակշռութիւնը․ Զ․ ամ Վռամշապհոյ = Ը․ ամ Յազկերտի Ա․, այն է* 407/408․ *ուստի նաեւ Վռամշապուհի Ե․ տարին* (*այսպէս նաեւ Սուտ Ղազար, առնելով Կորիւնէն*) *կը զուգակշռուի* 406/407 *տարւոյն։ Վռամշապուհ վախճանեցաւ* 409/410 *տարւոյն։ Գահը ինչպէս դատարկ էր* 490—400 *տարիներուն, նոյնպէս դատարկ մնաց* 409/410—421 *տարիներուն։ Մ․ Խորենացի ուշադիր չէ եղած այս դատարկութեան տարիներուն։ Վռամշապուհ կը հանդիսանայ Պատմութեան մէջ իմաստուն, հայրենասէր եւ խաղաղասէր թագաւոր։ Կորիւն անուանած է զանիկա «բարեացապարտ»․ եւ գեղեցկօրէն հիւսած է անոր յիշատակին արձանական մը* (*ԺԹ․* 9)։ *Վռամշապուհի մասին տե՛ս իմ Մաշտոց վարդապետ, էջ* 28—30։

15․ Դանիէլ Եպիսկոպոս։ — *Տիզբոնի* 410*ի ժողովին Գործերու մէջ կը յիշուին «Դանիէլ եպիսկոպոս* Arzōni*ի եւ Սամուէլ եպիսկոպոս* Arzūn [dē baitā de wstn (*ոստան*) (Braun, Das Buch der Synhados, 32, 34)․ Arzūn *Հայոց Արզն* (*Արձն*) *գաւառն է Աղձնեաց նահանգին մէջ* (*հմմտ․ Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ* 167—169)։ *Հաւանօրէն այս Դանիէլն է Կորիւնի յիշած եպիսկոպոսը, ուստի հարկ է տեղիքս «վասն առն ուրումն* ազնուականի *Դանիէլ անուն կոչեցելոյ», իմանալ ոչ թէ* ազնուական *եպիսկոպոս, այլ եպիսկոպոս* արձնական *գաւառի․ Կորիւն կը սիրէ ըսել «Պաղնական, Խորձենական, Գարդմանական» եւն․ այսպէս նաեւ հոս* Արձնական, *որ աղաւաղուած՝ եղած է «ազնուական»։ Կայ նաեւ Աղձնեաց գաւառներու մէջ Արզնարզիւն գաւառ մ՚ալ, որ անհօլով է․ կարելի է եւ զայս նկատի առնել։*

*Դանիէլի ասորերէնը, որ յոյն եւ ասորի, թերեւս եւ այլ այբուբեններէ համադրութիւն մ՚եղած է, կարելի է համարիլ փորձ մը Աղձնիքի մէջ գտնուող հայ բնակչութիւնը գրագիտութեան մերձեցնելու։*

16․ Վահրիճ Խաղունի։ — *Մ․ Խորենացի, Գ․* 52, *ուր իրեն աղբիւր ունի Կորիւնը, կը գրէ․ Վռամշապուհ «առաքեաց հրեշտակութեամբ զայր մի պատուական յաշխարհէս եւ հաւատարիմ իւր, Խաղունի ազգաւ, Վահրիճ անուն, յոյժ փափագող նորին գործոյ, առ Հաբէլն այն»* (326)։ *Ինձ կը թուի, թէ Մ․ Խորենացի «Խաղունի ազգաւ» գտած է Կորիւնի բնագրին մէջ, որ ապա ինկած է* B *օրինակին մէջ․ այս համոզմամբ ներս կ՚առնեմ տեղիքս բնագրին մէջ։ Անունս Վահրիճ, ըստ Համզայի եւ Պրոկոպիոսի* (bell. pers. 1, 12, de aedif. 3, 7, *յիշելով Վահրիճ Բոէս յամի* 526 *կը գրէ․ Οὐαρίζην μὲν τὸ ἀξίωμα, Βόην δὲ ὄνομα*) *տիտղոս մ՚է ժառանգական ազնուականութեան։ Հմմտ․ Փաւստ․ Դ․* 30 *Վահրիճ ի Վահրիճան* (*տպ․ Վահրիճայ*) *պարսիկ զօրավար»․ եւ Սեբէոս «Շահր-Վահրիճ» կամ «Վահրիճ զօրավար»* (*իբր*

(իբր 600ին), դարձեալ Վահրիճ զօրավար, որ ընդ մէջ 562—572 տարիներուն Եմենը գրաւեց (Հիւբշման, Arm. Gram. 78)· այս շրջանին կը յիշուի նաեւ Վախրիճ (կարդա՛ Վահրիճ) Անձեւացեաց տէր», Թովմաս Արծր. 78):

«Խադունի ազգ», իմացիր տոհմ, սասանեան ազնուական տուներէ մին ըլլալու է· գտնուած է կնքաքար մը li Pērōč Xadūně breh zi Narsehě, այս ինքն «Ես Պերոզ Խադունի որդի Ներսեհի» ընթերցուածով (Հմմտ. Հ. Յ. Տաշեան, Արշակունի դրամներ, էջ 256—263): Կ'երեւայ թէ Վահրիճ Խադունի Վռամշապուհի ծառայութեան մէջ էր:

17. Հաբէլ երէց: — Թէ Կորիւն, թէ Սուտ Ղազար եւ թէ Մ. Խոր. միաբան կը կարդան այսպէս «Հաբէլ»· բայց կը թուի թէ դիտմամբ կամ պատահմամբ աղաւաղութիւնն է Հիբա (յն. Հբաս) անուան, ինչպէս կը կոչուէր Եդեսիոյ Պարսից Դպրոցի համբաւաւոր ուսուցիչը, բարեկամ Թէոդորոս Մոպսուեստացւոյ եւ անոր վարդապետութեան ջատագով, որ ապա Եդեսիոյ Ռաբուլա եպիսկոպոսի յաջորդն եղաւ: Այս մասին տես Մաշտոց վարդապետ, էջ 237—240 = Հանդ. Ամս. 1938, էջ 336—337:

18. Սիւղոբայք· Քաղեալք եւ Մուրացեալք: — Յն. συλλαβή (փաղառութիւն) բառին փոխառութիւնն է Սիւղոբա (ուղղագոյնս սիւղղաբէ), որ պէս պէս ուղղագրութեամբ հասած է մեզի· IJ կը կարդան սիղոբէ· Հմմտ. Ոսկ. Մատթ. 248· «Որպէս վարդապետ ոք յորժամ հեզգ աշակերտի սատիցէ, թէ որչափ ժամանակս ծախեցեր այդրէն ի սիղոբայսդ» (ի լուս. սողոբայսդ). Ոսկ. Պաւղ. Ա. 16· «Որպէս եւ ստիւք(ս) սողոբայիցն վասն մանկտւոյ գրեն· իսկ յորժամ զայն չափս կատարիցէ, այնուհետեւ ոչ նոքօք, այլ այլովքն եւս առաւել մտաց հմուտ լինիցի եւ ի կատարեալ ընթերցուածն ի կիր արկանիցէ զգիրն»· Ոսկ. Ճառք, 550· «Ոչ ասաց թէ ընկալար· յոյժ ընտրութիւն ունի յաւելուած կապոյն· զոր բազում անգամ ասացի սիրոյն ձերում՝ եւ վասն սիւղաբայիցն թէ պարտիմք եւ զայն քննել»· Եւս. Քրոնիկ. Ա. 37· «Ջաշտարակագործութենէն եւս Բազմավէպն միաբան ըստ Մովսիսի գրոյն յիշէ զայս ձեւ օրինակի մինչեւ ցսիղոբայս անգամ»· եւ անդ, 81· «Զայս գոյն օրինակի մինչեւ ի սողոբայս ապաստան»: Սիւղա-բա վերջաւորութիւնը կը գտնենք նաեւ լատ. syllaba, նկատի առնելու է նաեւ յն. յգ. հայց. ձեւը συλλάβας: Բառիս քով «եւ գկապս» յաւելուածը, որ կը կրկնուի նաեւ վարը, պէտք է նկատել «գսիւղոբայս»ի մեկնութիւնը վանկ, հեգ իմաստով, այս ինքն գրերը կապող: Հմմտ. Աճառեան, Արմատ. Բառարան, ը. բ. Սիղղոբայ:

Բնագրին «Թաղեալք եւ յարուցեալք» IJ կը կարդայ «քաղեալք եւ յ.»: Նկատի առնելով Մ. Խոր. Գ. 52 «մուրացածոյիւն այնուիկ գծագրութեամբ», ուղղած եմ յարուցեալք = մուրացեալք, այսինքն Դանիէլ եպիսկոպոսի կազմած հայերէն այբուբենը ոչ այլ ինչ էր, բայց եթէ յունարէնէ եւ ասորերէնէ առնուած, մուրացուած նշանագիրներու առընթերադրութիւն:

19. Կողմանք Արամայ: — Հին Կտակարանը Արամ կ'անուանէ Սեմի որդիներէն հինգերորդը (Ծնն. Ժ. 22), որ նախահայրն եղած է սեմական ժողովուրդներէն մէկուն· բաց ասկից այս անունը կապակցութեան կը դնէ Ասորիքի մանաւոր տեղեաց եւ կողմանց հետ, որոնք Եփրատի յայսկոյս եւ յայնկոյս կը գտնուին· Aram Dammesek (Դամասկոսի Արամացիք), Aram Soba (արամական թագաւորութիւն մը հաւանօրէն միջին Եփրատի հարաւարեւելեան կողմը), Aram Nahajim (Միջագետքի Արամացիք), Gaddan Aram (արեւելեան Միջագետքի հարթավայրը)· ասոնց լեզուն է aramit (արամերէն): Այս տեղիքները Եօթանասնից եւ Վուլգատա թարգմանութեանց մէջ ներկայացուած են Syria (հայն՝ Ասորիք), սիւրիերէն (ասորերէն)· բայց անփոփոխ պահուած են ասորական Պեշիթօ թարգմանութեան մէջ: Արամ Ասորիք, Ասորեստան, ասորերէն եղած է, վասն զի յիշեալ կողմանք յոյն եւ լատին թարգմանիչներուն Syria եւ Հայոց Ասորիք անունով ծանօթ եղած են:

Արամ սակայն ազգի անուն է եւ ոչ աշխարհագրական որ եւ է երկրամասի յորջորջում: Կը վկայէ Պոսիդոնիոս, թէ այն ժողովուրդը, զորոնք

*Ցոյները* Σύροι *կ'անուանեն, իսկ գինքը կը կոչէ* 'Αραμαῖοι *(տե. Ստրաբոնի)։ Անունս պահուած է* Beth-Aramaje *(Տուն Արամայ) գաւառի մէջ, որ կ'ընդգրկէ Տիգրոնի շրջակայքը։ Յետոյ միայն, երբ Արամաստան յունական եւ հռոմէական ազդեցութեան եւ քրիստոնէական աշխարհահայեցողութեան ենթարկուեցան, Արամացիք իւրացուցին Սիւրիացի (Ասորի) յորջորջումը, որ Ասորեստանեայ* (Assyria) *անուան կրճատուած ձեւը կը համարուի (հմմտ.* Th. Nöldeke, Die Namen der aramäischen Nation und Sprache *ի թերթին* Zeitschrift für Deutsche Morgenländische Gesellschaft, Bd. XXV, 1871, *էջ* 113—131).

*Կորիւն, որ կոչած է Միջագետքը «Արամայ կողմանք» պէտք է գտնուած ըլլայ Պեշիթոյի ազդեցութեան տակ։*

«Ի քաղաքս երկուց Ասորւոց»։ — *Նորայր եւ իրեն հետեւելով Աբեղեան ուղղած են «երկուս», համարելով թէ կ'ակնարկէ Եդեսիա եւ Ամիդ։ Լաւագոյն համարեցայ պահել անփոփոխ. Կորիւն կա՛մ զանազանած է Եփրատեան եւ Տիգրիսեան Ասորիք եւ կամ իրեն ծանօթ եղած ըլլալու է Թէոդոս Փոքրի բաժանումը* Syrja prima *եւ* Syria sequnda *(հմմտ.* V. Chapot, La frontière de l'Euphrate. Paris 1907, p. 165).

*Յիշեալ քաղաքներէն առաջնոյն անունը Եդեսիա յունական ձեւն է Ուռհա (այժմ Ուրֆա) ասորականին։ Դ. եւ Ե. դարերուն ծաղկեցաւ հոս ասորական գրականութիւնը եւ քաղաքս նկատուեցաւ քրիստոնէական մշակոյթի կեդրոն։ Յիշեցինք վերագոյն Պարսից Դպրոցը, ուր կը գործէր Ե. դարու սկիզբը անուանին Հիբա։ Մաշտոց զետեղեց հոս իր աշակերտներու երկրորդ խումբը ի հրահանգս ասորերէն դպրութեան։ Տես Մաշտոց վարդապետ, էջ* 175—182։

20. Ամիդ։ — *Փաւստոս (Գ. 10) եւ Ագաթ.* 439 *կ'անուանեն «Ամդացւոց քաղաք». Ամմիանոս Մարկեղինոս՝* Amida, *Աղձնիքի մէջ, յայսկոյս Տիգրիսի։ Անունս ուշ ժամանակի յիշատակարաններու մէջ կը գրուի նաեւ Համիդ։ Մատթէոս Ուռհայեցի կը գրէ յամի* 972. *զօրավարն Հոռոմոց Մլեհ Մելիտենէէն կը քալէ «ի վերայ Տիգրանակերտ քաղաքին, որ անուանեալ կոչի Ամիթ ի վերայ Տգլատ (Տիգրիս) գետոյ» (էջ* 15). *այս ըմբռնումով տարածուած է Հայոց քով կոչել Ամիդը Տիգրանակերտ. Արաբացիք անուանեցին քաղաքս* Diarbekir, *Թուրքերը կոչած են նաեւ Գարա-Ամիդ, քաղաքի պարիսպներու սեւ կարծր քարէ շինուած ըլլալուն պատճառաւ։*

*Քաղաքիս հնագոյն պատմութիւնը անծանօթ է։ Կոստանդիոս կայսր* 349*ին ամրացուց զայն իբրեւ բերդաքաղաք։* 359*ին եւ* 502*ին գրաւուեցաւ Պարսիկներէն կարճ ժամանակով։ Անաստաս եւ Յուստինիանոս վերստին շինեցին պարիսպները։*

*Ամիդ յունական քաղաք էր Հռոմայեցւոց տիրապետութեան տակ։* 297*ին Ծոփաց եւ Աղձնեաց հետ անցած էր Հռոմայեցւոց եւ հռոմէական մնացած էր* 361*էն ետքն ալ։*

*Մաշտոց հաւանօրէն Տարօնէն իջնալով այցելեց նախ Դանիէլ Ասորի եպիսկոպոսն յԱրձն, ինչպէս կ'ենթադրէ նաեւ Մ. Խորենացի, Գ.* 53. *«Մեսրոպ իջանէ ի Միջագետս... առ նոյն Դանիէլ եւ ոչ աւելի ինչ գտեալ քան զառաջինն՝ անցանէ եւ յԵդեսիա»։ Ամիդի մասին ակնարկութիւն չունի Խորենացի։ Իսկ Կորիւնի խօսքերը այնպէս իմանալու է, թէ նախ Ամիդ հանդիպեցաւ Մաշտոց եւ ապա Եդեսիա անցաւ։ Հոն կը թողու իր հետ բերած մասաղ աշակերտներու մէկ մասը յունարէն սորվելու։ Հաւանօրէն այս տեղ ուսում առած էր նաեւ Ղ. Փարպեցի, որ յետոյ, երբ հալածուեցաւ Աբեղաներէ, միւսանգամ այս քաղաքը ապաստան փնտռեց, ինչպէս կ'ըսուի Ղազարի թղթին նախաբանին մէջ (էջ* 185—186)։

*Կը համարիմ թէ Մաշտոց դարձեալ Ամիդի վրայէն վերադարձաւ Հայաստան։ Ամդայ եպիսկոպոսն էր Ակակ. տե՛ս ծան.* 22։

*Քաղաքիս մասին հմմտ.* Max van Berchem, *եւ* J. Strzygowski, Amida, Heidelberg 1910։

21․ Պակիդա եպիսկոպոս Եդեսիայ։ — Բոլոր ձեռագիրները կը կարդան եպիսկոպոսիս անունը Բաքիդաս․ այսպէս նաեւ Մ․ Խոր․ Գ․ 53։ Բայց Եդեսիա այս անուն եպիսկոպոս չէ ունեցած։ Այս շրջանի Եդեսիոյ եպիսկոպոսներն են․

Պակիդա(ս) 398 նոյեմբ․ 23—409 աւգ․ 1․
Դիոգենէս 409—411/12․
Ռաբուլա(ս) 413—435/36։

Նորայր (էջ 75) Բաքիլասը ուղղեց Բաքիլաս եւ իմացաւ Ռաբուլաս․ իրեն հետեւեցան ուրիշներ․ բայց Մարկուարտ ուշադիր ըրաւ, որ պաով ժամանակավրէպ մը կը գործուի Կորիւնի Վարքին մէջ եւ ուղղագոյն համարեցաւ նկատի առնել Ռաբուլայի նախորդը (էջ 58)։ Հ․ Յ․ Թորոսեան, Բազմավէպ, 1932, էջ 259—261, Կորիւնի ժամանակագրութեան աւելի համապատասխան գտաւ Պակիդա, Բաքիդաս տառադարձութեամբ։ Հանդ․ Ամս․ 1836, էջ 513—514 (=Մաշտոց վարդապետ, էջ 109—111) մանր քննութեան առնելով այս հարցը, եկայ այն եզրակացութեան որ Բաքիդաս սխալագրութիւնն է Պակիդաս անուան, ուր ձայնաւորները մնացած են անաղարտ, փոփոխութեան ենթարկուած են միայն բաղաձայնները, առանալու համար այլուստ քաջածանօթ անունը Բաքիդաս (Բաքեդաս)։

Ռաբուլա անուան կը պատահիմ Յովհաննէս Կամաւոր աղքատի Վարքին մէջ․ Ներքինապետը, որ ի խնդիր էր Յովհաննէսին յԵդեսիա, «մտանէր առ եպիսկոպոսն քաղաքին որում անուն էր Րապուլա» (Վարք Հարանց, Բ․, էջ 376, 388—390)։

22․ Ակակիոս եպիսկոպոս Ամդայ։ — Ակակ եպիսկոպոս ընտրուեցաւ Ամդայ աթոռին վրայ 9 մայիս 400, Մարաայէն առջը։ 409ին, երբ Նփրկերտի Մարութա եպիսկոպոս դեսպանութեամբ Յազկերտ Ա․ի արքունիքը պիտի մեկնէր, Անտիոքի Պորփիւր, Հալէպի Ակակ, Եդեսիոյ Պակիդա, Թելլայի Եւսեբիոս եւ Ամդայ Ակակ եպիսկոպոսները յանձնեցին իրեն թուղթ մը, որ ուղղուած էր թագաւորին, խնդրելու անոր բարեացակամութիւնը հանդէպ Պարսկաստանի քրիստոնեաներու (Braun, Das Buch der Synhados 9)։ 419/20ին նոյն թագաւորին ուղարկուեցաւ Թէոդոս Բ․ի կողմէ Ամդայ Ակակ եպիսկոպոսը բանակցելու խաղաղութեան մասին։ 421/22ին, երբ պատերազմը Մծբինի առաջ ի մնաս Պարսից վերջացաւ, Ակակ ծախեց իր եկեղեցւոյն մեծագին անօթները փրկանաւորելու համար այն իբր 7000 պարսիկ գերիները, որոնք Հռոմայեցւոց ձեռքը ինկած էին։ Այս բարեգործութիւնը շարժած է Վռամ Ե․ի հիացմունքը․ եւ կ՚ըսուի թէ թագաւորը զինքը երկրորդ անգամ արքունիք հրաւիրած ըլլայ, յայտնելու համար իր շնորհակալութիւնը (հմմտ․ Մաշտոց Վարդապետ, էջ 111—113)։

23․ Կորիւն իւրայատուկ ոճով կազմած է նախադասութիւններս․

ա․ Դ․ 1․ եւ աստնջական հիւրամեծար գտեալ բարեպաշտութեամբ սպասաւորեալ ըստ աշակերտական հաւատոցն ի Քրիստոս»։

բ․ Է․ 1․ ընդունէին հոգաբարձութեամբ ըստ Քրիստոսի անուանելոցն կարգի։

գ․ Ժ․ 2․ Աստուածասէր հնազանդութեամբ ընկալեալ զնա։

դ․ ԺԱ․ 1․ Որոց առաւել հպատակութեամբ ընկալեալ վասն անուանն Քրիստոսի։

ե․ եւ առաւելագոյն հնազանդեալ նմա ըստ օրինացն Աստուծոյ։

Վերջինիս հարազատութիւնը կասկածելի է․ կը սպասուէր «եւ առաւելագոյն հնազանդ(ութեամբ ընկալ)եալ զնա ըստ անուանն Քրիստոսի։

Ամէնն ալ կը յարաբերին Մատթ․ Ժ․ 40—42․ «Որ ընդունի զձեզ, զիս ընդունի․․․ եւ որ ընդունի զմարգարէ յանուն մարգարէի, զվարձս մարգարէի առցէ․ եւ որ արբուցանէ․․․ բաժակ մի ջուր ցուրտ միայն յանուն աշակերտի․․․»։

24. «Եւ անտի ի Սամուսատական քաղաքն գումարէր»: — Այս պարբերութիւնը օտար ձեռքէ յաւելուած կ'երեւայ, այն ձեռքէ, որ Ի. 5 մուծած է «հանդերձ ուսուցանելով զմանկունս գրիչս նմին դպրութեան»: Նորայր (էջ 79, հմմտ. նաեւ էջ 17, ծան. 1) կը գրէ. «Կորիւն ըսել կ'ուզէ՝ թէ Մաշտոց զոմանս յաշակերտաց իւրոց կը զետեղէ յԱմիդ, որպէս զի ասորերէն ուսանին եւ զայլս՝ յԱմդայ կը գումարէ, այսինքն կը յղէ, ի Սամոսատ յունական դպրոցս»: Ինձ կը թուի, թէ մասամբ աւելի ուղիղ իմացած էր Նորայր ի Քննասէր, պրակ Ա., էջ 15: Պարբերութեանս միտքն է. «անկէ (թէ՛ յԱմդայ եւ թէ՛ յԵդեսիայ) բերաւ հաւաքեց (զմանկունսն) ի Սամոսատ», որպէս զի անոնք Հռուփանոսէն գրչութեան արուեստի մէջ հրահանգուին: Պակասաւոր է պարբերութիւնը: «Անտի», ուրկէ՞, յԱմդա՞յ, յԵդեսիա՞յ, թէ երկու քաղաքներէն ալ. ո՞վ է բային տէրը. գումարէր ներգործակա՞ն թէ կրաւորական բայ է. եթէ ըստ Նորայրի ներգործական բայէ, «կը յղէ», կը պակսի բային խնդիրը: «Անտի գումարէր», եթէ Մաշտոց է որ «կը յղէ», ո՞ւր կը գտնուէր ինքը:

Մ. Խորենացի կարդացած էր յաւելուածս իր օրինակին մէջ սխալագրութեամբ. փոխ. Սամուսատականի Սամոսական քաղաք. եւ այնպէս հասկցած է թէ Մաշտոց իր աշակերտները Եդեսիա զետեղելով ինքը «անցեալ ընդ Փիւնիկէ ի Սամոս դիմէ», հանդիպելու համար Եպիփան Կիպրացւոյ աշակերտ Հռուփանոս գրչի, «որ ի Սամոս էր միայնացեալ»:

Նկատի առնելով պարբերութեանս այս անբացայայտ պատկերը, «անտի ի Սամուսատական քաղաքն գումարէր» առած էի այն իմաստով, որ Մաշտոց ինքն իր երկու հաւասարակիցներով գացած է Եդեսիայէն «ի Սամուսատական քաղաք». եւ որովհետեւ յետոյ կ'ըսուի, թէ Մաշտոց Սամուսատ գնաց գրի գիւտէն ետքը, ուստի չէր կրնար Մաշտոց Սամուսատէն ի Սամոսատ գացած ըլլալ. այլ պէտք է ենթադրել, թէ «Սամուսատական քաղաք» ուրիշ քաղաք մ'եղած ըլլալու է. եւ փոքր բանասիրական սրբագրութեամբ կարդացած էի «Մամուեստական ք.», այն է յունական հնչմամբ Մոպսուեստիա, ուր այն ժամանակ եպիսկոպոս էր Թէոդորոս, Մաշտոցի բարեկամը եւ ժամանակի հռչականուն գիտնականը (Հանդ. Ամս. 1936, էջ 515—517 = Մաշտոց Վարդապետ, էջ 113—114): Այժմ յետս կը կոչեմ այս տեսութիւնս, նկատելով պարբերութիւնը եկամուտ:

25. Սամոսատացւոց քաղաք: — Սամոսատ քաղաք, Samosata յոյն եւ լատ. մատենագիրներու, այժմ աս. Շամշատ, երբեմն Արտաշխեան հարստութեան մէկ ճիւղին թագաւորանիստ քաղաքը, կը գտնուի Եփրատի ափին: Քաղաքս եպիսկոպոսանիստ էր. այս շրջանին տեղւոյն եպիսկոպոսն էր հաւանօրէն Անդրէաս. վասն զի մեզի ծանօթ են Անտիոքոս 381ին, Անդրէաս 431—434ին եւ Ռուփինոս 449ին (հմմտ. Հանդ. Ամս. 1936, էջ 517 = Մաշտոց վարդապետ, էջ 116):

26. Հռոփանոս գրիչ: — Կորիւնի բոլոր օրինակներն ունին այսպէս «Հռոփանոս», նոյնպէս Մ. Խոր. Գ. 53, ձեռագիրներէն ոմանք նաեւ «Հռուփանոս»: Առանց տարակուսի աղաւաղուած ձեւն է այս ʽΡουφίνοσ, Rufinus անուան, որուն տառադարձութիւնն է Հռուփինոս: Սա կ'երեւայ համբաւուած էր իբրեւ անուանի գրիչ-գեղագիր ի Սամոսատ, որ Մաշտոց երկար ճանապարհը կը կարէ զինքը գտնելու համար: Որովհետեւ 449ի Եփեսոս գումարուած ժողովին մասնակից ժողովականներու մէջ կը յիշուի «Ռուփինոս եպիսկոպոս Սամոսատի», թերեւս կարելի ըլլայ նոյնացնել զինքը անոր հետ (տե՛ս Մաշտոց վարդապետ, էջ 117—118): Հռուփինոսի կը պարտի Մաշտոց հայ նշանագիրներու արտաքին վայելուչ ձեւը եւ ներքին կատարելութիւնը:

27. Յովհաննէս Եկեղեցացի: — Սա մին էր Մաշտոցի այն աշակերտներէն, որոնք «հաւատացեալք», «օգնականք» եւ «հաւասարք» կ'անուանուին Կորիւնէն: Ասոնք յարեցան Մաշտոցի, երբ ան կրօնաւորեցաւ եւ ապա սկսաւ

հրջիլ քարոզութեամբ հայկական գաւառները: Յովհաննէս Եկեղեաց գաւառէն էր, հաւանօրէն ծանօթ յոյն լեզուին: Իր մասին երկրորդ անգամ խօսք չէ ըրած Կորիւն: Հաւանօրէն գործեց իբրեւ ուսուցիչ նոր բացուած դպրոցներու մէջ եւ իբրեւ օգնական Ս. Սահակի: Ստոյգ է, թէ ինքը չէ այն Յովհանը, զոր Կորիւն «այր խիկ սուրբ եւ վարդապետասէր» կը կոչէ, եւ որ Մաշտոցի մահէն ետքը «վերակացու» կարգուեցաւ. թէեւ առ հասարակ կը նոյնացուին այս երկուքը (հմմտ. Մաշտոց Վարդապետ, էջ 185) եւ կամ վերջինս նոյն կը համարուի Յովհ. Կաթողիկոսի, այսպէս կոչուած Մանդակունւոյ հետ:

28. Եկեղեացական գաւառ: — Բարձր Հայոց նահանգին մէկ գաւառն էր Եկեղեաց, զոր Ստրաբոն 'Αχιλισηνὴ եւ Պրոկոպիոս 'Εχελεσηνή կ'անուանեն: Գաւառս կոչուած է նաեւ ἡ Αναΐτις Χώρα (Դիոն Կասիոս) եւ լատ. Anaitica (Պլինիոս), այն է Անահտական, որ հայ գրականութեան մէջ չէ գործածուած: Եկեղեաց կամ Եկեղեաց գաւառ թէ ուղղական եւ թէ սեռական հոլով է, անփոփոխ ձեւի մէջ: Այս պատճառաւ ալ Կորիւն կերտած է ասկէ Եկեղեացական ձեւը նմանութեամբ Խորձենական, Պաղնական եւն անուններու: Այս ձեւը միայն Կորիւնի քով երեւան կու գայ: Այս գաւառին մէջ են հաւանօրէն Երէզ որ յետոյ Երզնկան, արաբ. Arzanjan կոչուած է, Թիլ, Խախ, Վասակերտ եւն աւանները (հմմտ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 129—131): Գաւառս 385ին անցաւ Հռոմայեցւոց:

29. Յովսէփ ի Պաղնական տանէն: — Պաղին Դ. Հայոց գաւառներէն մէկն է համանուն բերդով, զոր Գէորգ Կիպրացի կը կոչէ χλίμα Παλινῆς· կ'ըսուի նաեւ Պաղնատուն (Աշխարհացոյց ընծայուած Մ. Խորենացւոյ, էջ 607. Ստ. Ասողնիկ, 263). ըստ այսմ սխալ է B ձեռագրին եւ անկէ ծագած օրինակներու Պաղանական տուն ընթերցուածն եւ Սուտ Ղ. Փարպեցւոյ (էջ 15) «ի Պաղատանէն (այսպէս Զ., տպ. ունի Պաղանական տ.) ընթերցուածները: Ճիշդ ձեւը կը վերականգնեմ՝ Պաղնական տանէն. հմմտ. նաեւ Մ. Խոր. Գ. 53 Պաղնացի: Պաղնատան մասին տե՛ս Հիւբշման, անդ, էջ 140—142:

Յովսէփ Մաշտոցի օգնականներէն էր Յովհաննէսին հետ. հմուտ էր ասորի եւ յոյն լեզուներուն. իբր 428/29ին ուղարկուեցաւ «ի կողմանս Ասորւոց ի քաղաքն Եդեսացւոց» Եզնիկի հետ, որպէս զի «յասորական բարբառոյն զնոցին հարցն սրբոց զաւանդութիւնս ի հայերէն գրեալս դարձուսցեն»: Անոնք ապա Կ.Պոլիս մեկնեցան, յոյն Հայրերու գործերը թարգմանելու (ԺԶ. 2):

30. «Հանդերձ ուսուցանելով զմանկունս գրիչս նմին դպրութեան»: — Արդէն Ծան. 24 ակնարկուեցաւ, թէ ուրիշ ձեռքի յաւելուած է պարբերութիւնս, ինչպէս արտայայտութեան ձեւն ալ ցոյց կու տայ թէ Կորիւնի գրչէն չէ այս:

31. Այրարատեան գաւառ: — Կորիւն երեք անգամ յիշած է գաւառս «Այրարատեան» յորջորջմամբ (Է. 7. ի կողմանս Այրարատեան գաւառին. Թ. 5. յԱ. գաւառին (=Ագաթ. 403, ԺԶ. 2. յԱ. գաւառէն): Փաւստոս եւ Ագաթանգեղոս ունին Այրարատեան գ., Այրարատ գ. նաեւ «գ. Այրարատու» եւն: Ինձ կը թուի թէ Ե. դարու Ա. կէսին գաւառին պաշտօնական անունն էր Այրարատեան գաւառ:

Նոր-քաղաք: — Խօսքը Վաղարշապատ քաղաքի մասին է: Զարմանալի է արդարեւ, որ Կորիւն եւ ոչ մէկ անգամ յիշատակած է «Վաղարշապատ» քաղաքը, մինչ երիցս անուանած է նոյնը «Նոր-քաղաք» (Է. 7. «առ սահմանօքն Նոր քաղաքին». ԺԴ. 20. «հասեալ ի Նոր ք-ն». ԺԹ. 2. «ի Նոր ք-ի»):

Երբ Հռոմայեցիք կործանեցին Արտաշատը, փոխարէն կառուցին (163ին), Արտաշատէն ոչ շատ հեռու Καινὴ πολις, այն է Նոր քաղաք, հաւանօրէն Վաղարշ Հայոց թագաւորէն շինուած Վաղարշապատ քաղաքի հողամասի վրայ (Մարկուարտ, Հանդ. Ամս. 1906, էջ 38), որ եւ մայրաքաղաք

հռչակուեցաւ։ Փաւստոսի անծանօթ է Նոր քաղաք, որ երկիցս յիշատակած է անոր տեղ Վաղարշապատ (Գ· 7 եւ Դ· 55)։ Ագաթանգեղոս Գրիգորի Վարքին մէջ կիրարկած է քանիցս «Վաղարշապատ», անգամ մը միայն, Հռիփսիմեանց Վկայաբանութեան մէջ կ'ըսուի· «Գային հասանէին (Հռիփսիմեանք) յերկիրն Հայոց, յԱյրարատ գաւառ, ի Վաղարշապատ քաղաք, զոր եւ Նոր քաղաքն (ձեռագիրներէն ոմանք «Նորաքաղաքն») կոչեն, ի նիստ թագաւորացն Հայոց» (էջ 85)։ Սուտն Ղ· Փարպեցի (38) Կորիւնի ազդեցութեան տակ գրած է անգամ մը «վախճանեցաւ երանելին Մաշտոց ի Վաղարշապատ քաղաքի, զոր եւ Նոր քաղաք անուանեն», այլուր կիրարկած է յաճախ «Վաղարշապատ»· իսկ Ղ· Փարպեցի ունի «երանելի երէցն Երեմիա ի Նոր քաղաքէ» (58)· «գային ի քաղաքն Վաղարշապատ, որ այժմ անուանի Նոր քաղաք» (176)· Վահան «շնորհէր (Ղազարու) զհոյակապ եւ զականաւոր տեղին ի Նոր քաղաքի, որում անուն էր Սուրբ Կաթողիկէ Եկեղեցի» (Նախադրութիւն Թղթոյն, էջ 186)։ Երկու անգամ ալ լոկ Վաղարշապատ (էջ 141, 157)։

Փարպեցւոյ տեղիքը, թէ Վաղարշապատ «այժմ անուանի Նոր քաղաք», յայտնապէս ցոյց կու տայ, թէ Վաղարշապատ վաղուց հնացած, պատմական յորջորջումն է Նոր քաղաքին։ Այդ այժմը կ'արժէր ոչ միայն Ղ· Փարպեցւոյ, այլ եւ աւելի վաղ Կորիւնի օրով։ Ինծ կը թուի, թէ Վաղարշապատ անունը իր վերածնունդը ապրեցաւ շնորհիւ Ագաթանգեղոսի· Զ· դարէն ետքը հազուադէպ է տեսնել «Նոր քաղաք» յորջորջումը։

Ի Զ· ամի Վռամշապհոյ։ — Այսպէս «Զ· ամ Վռամշապհոյ» գիտէ նաեւ Սուտն Ղ· Փարպեցի· որ կը համապատասխանէ Յազկերտ Ա·ի (399—419) Ը· տարւոյն (Կոր· ԻԱ), ուստի 406/7ին տեղի ունեցաւ գրի գիւտն եւ հայ գրականութեան սկզբնաւորութիւնը, Կորիւնի խօսքով· «Եւ գպրութեանն Հայոց յԸ· ամէ (Ա·) Յազկերտի առեալ սկիզբն»։ Այս տեղիքը ամէն կասկած կը կը բառնայ նկատմամբ թէ Վռամշապհոյ թագաւորութեան տարիներու եւ թէ Գրի գիւտի թուականին։

Հատուածիս վերջաւորութիւնը կը թուի ինծ, թէ կրճատուած կրած է· Կորիւն Ը· 2 ակնարկութիւն ունի «աւետաբերաց» մասին· եւ Թ· 1 կ'ըսուի «ազդ լինէր թագաւորին եւ սրբոյ Եպիսկոպոսին»· այս տեղիքները կ'ենթադրեն, թէ Մաշտոց փութացած էր աւետաբերներ ուղարկել թագաւորին եւ Եպիսկոպոսին։ Փաւստոսի Գ· 12 մեծ նմանութիւններ ունի Կորիւնի այս եւ յետագայ հատուածներու հետ· եւ կը թուի ինծ, որ հոն քաղուածքներ կան Կորիւնէն։ Յատկապէս նկատի ունիմ Յուսիկի վերադարձը Կեսարիայէն· «եւ դարձաւ անդրէն մեծաւ խնդութեամբ, եկեալք առողջութեամբ, յաջողեալք (այլ ձձ· աջողութեամբ յաջողեալք) հասանէին յԱյրարատեան աշխարհն եւ զիշխանսն երկոսին [եւ] նոցուն Ծոփացն յառաջ արձակէին աւետաւորս առ արքայն (չարունակութիւնը տես վարը Ծան· 32)։ Ընդգծուած տողերը կը համարիմ փոխ առնուած Կորիւնէն, զոր վերակազմելով առած եմ Բնագրին մէջ այսպէս· Եւ զաւգնականսն երկոսին զՅովհան եւ զՅովսէփ յառաջ արձակէին աւետաւորս առ արքայն եւ առ եպիսկոպոսն։

32· Կորիւնի Բնագիրը նաեւ հոս կրճատուած կ'երեւայ։ Աչքի առաջ ունենալով Փաւստոսն (Գ· 21) եւ մասամբ Ագաթանգեղոսն (էջ 426—427) կարելի է վերականգնել սկզբնագիրը մերձաւորապէս։ Փաւստոսի տեղիքն է·

Կորիւն Թ· 1·

Եւ արդ եկեալ յիշելին մերձ ի թագաւորական քաղաքն՝ ազդ լինէր թագաւորին եւ սրբոյ Եպիսկոպոսին։ Որոց առեալ զամենայն նախարարազունդ աւագանւոյն ամբոխ՝ ի քաղաքէն ելեալ պատահէին Երանելւոյն զա-

Փաւստոս (Գ· 21)·

Ապա իբրեւ լուաւ արքայն (Տիրան)՝ ընդ առաջ ելանէր նմա ի դաշտն յայնկոյս գետոյն Տափերն կամրջի ամենայն բանակօք բազմութեամբք· ապա ողջոյն տուեալ զցանկալի ողջոյնն միմեանց՝ անցեալ ընդ կամուրջն Տա-

փամբ Ոահ գետոյն. եւ տուեալք զցանկալի ողջոյն միմեանց՝ բարբառովք ցնծութեան եւ երգովք հոգեւորօք եւ բարձրագոյն օրհնութեամբք ի քաղաքն դառնային եւ զաւուրս տաւնական ուրախութեամբ անցուցանէին:

Վերակազմուած բնագիր.

Եւ արդ եկեալ Երանելոյն[1] մերձ ի թագաւորական քաղաքն ազդ լինէր եկն նորա[2] Թագաւորին եւ սրբոյ Եպիսկոպոսին: Որոց առեալ զամենայն նախարարազունդ աւագանին[3] եւ զաշխարհակոյտ ամբոխ ի քաղաքէն ելեալ ի դաշտն յայնկոյս Տափերականն[4] կամիջին՝ ընդ առաջ լինէին նմա ամենայն բազմութեամբ եւ պատահեալք Երանելոյն զափամբ Ոահ գետոյն եւ ողջոյն տուեալք զցանկալի ողջոյն միմեանց՝ անցեալ ընդ կամուրջն Տափերայ բարբառովք ցնծութեան եւ երգովք հոգեւորօք եւ բարձրագոյն օրհնութեամբ ի քաղաքն դառնային եւ զաւուրն տօնական ուրախութեամբ անցուցանէին:

փերայ, մտեալ ի քաղաքն մեծ՝ յեկեղեցին դառնային:

ԱԳԱԹ. 426—427. Լուաւ ապա եւ մեծ թագաւորն Տրդատ, եթէ Գրիգոր եկեալ հասեալ է յերկիրս Հայոց: Առ զզօրս իւր եւ զԱշխէն տիկին... եւ չու արարեալ յԱյրարատեան գաւառէն, ի Վաղարշապատ քաղաքէ, ընդ առաջ Գրիգորի...: Ապա գայր հասանէր (Գրիգոր)... ամենայն մեծամեծօքն եւ զօրօքն եւ աշխարհակոյտ ամբոխիւն... ընդ առաջ ելանէր նմա թագաւորն ամենայն զօրօքն հանդերձ, առ ափն Եփրատ գետոյն. որ եւ ընդ պատահելն իսկ լի առնէր զամենեսեան ողջունիւ աւետարանին Քրիստոսի. եւ բազում ցնծութեամբ եւ ուրախութեամբ յաւանն դառնային:

Թէ Փաւստոսի այս հատուածը սերտիւ կապ ունի Կորիւնի Թ. 1ի հետ. դիւրաւ կարելի է տեսնել. թէ նաեւ «ի դաշտն յայնկոյս Տափերական (Փ. Տափերն) կամրջին ընդ առաջ լինէին նմա ամենայն բազմութեամբ... եւ անցեալ ընդ կամուրջն Տափերայ» Փաւստոս Կորիւնէն փոխ առած է, դժուար է ժխտել:

Ոահ գետ: — Այս տեղ միայն կը հանդիպինք գետիս յիշատակութեան: Առանց տարակուսի խօսքը Երասխի մասին է: Զարմանալի է, որ նաեւ Երասխ մեր հին աղբիւրներու մէջ երեք անգամ միայն յիշուած է. Ագաթ. 23. «գետն Երասխ յարուցեալ գայր դարիւ եւ դարիւ». Փարպ. 121 «ի գետեզերն Երասխայ» եւ 144, «Զամիհր Հազարաւուխտ սաստիկ եւ բազում այրընտիր

[1] BO փոխանակ Երանելոյն ունին յիշելին, բայց եկեալ կը պահանջէ հոս սեռական տէր բայի, ուստի յիշելոյն. իսկ յիշելի իբրեւ գոյական չէ գործածուած դասական գրականութեան մէջ, կայ միայն սեղիքս Ոսկ. Եսայեայ, 421. «անուանի էր Պաւղոս, այլ ի բարի եւ յօգուտ յիշելեացն»: Կորիւն կ'անուանէ իր Վարդապետն առ հասարակ երանելի, ինչպէս նաեւ քիչ յետոյ:

[2] Ագաթ. 426 ունի. «լուաւ... եթէ Գրիգոր(ի) եկեալ հասեալ է յերկիրս Հայոց». բայց հմմտ. Փաւստոս Դ. 15. «ազդ լինէր թագաւորին եկն նորա» եւ Դ. 18. «խաղաղութիւն է եկն նորա»:

[3] «Նախարարազունդ աւագանւոյն ամբոխ» շատ կասկածելի է. «Նախարարազունդ որեար» ունի նաեւ Սուտ-Ղազար Փարպ. 11: Փաւստոս եւ Ագաթ. գիտեն «նախարարակոյտ զօրք» (Փաւստ. 23, Ագ. 421), այլուր «աւագախումբ (ազատախո՞ւմբ) մեծամեծ նախարարք» (Փաւստ. 17), «հանդերձ ամենայն ազատազունդ բանակաւն» (Կորիւն, Թ. 7). աւելէ Ագաթ. 412. «հանդերձ մեծամեծ. աւագանւոյն եւ ամենայն ազատազունդ բանակաւն»), հմմտ. նաեւ Փարպ. 20 «ամենայն ազատազունդք աշխարհիս Հայոց... ոմանք յազատ աւագանւոյն աշխարհիս Հայոց»: Տարօրինակ կը հնչէ «աւագանւոյն ամբոխ»: Աւագանի բառին շուրջը հմմտ. Նորայր, Կորիւն, էջ 93. իսկ «ամբոխ» տես Ագաթ. 18, 90, 104, 118, 378, 426 եւն (ամբոխ բազմութեան գնդի, ամբոխ մարդկան, խառնաղանճ ամբոխ. աշխարհակոյտ ամբոխ):

[4] Հմմտ. Ագաթ. 23 «ի Տափերական կամրջացն»:

զօրօք դիմեալ անցանէր ստիպով ընդ կամուրջ գետոյն Երասխայ եւ ի գիւղաքաղաքին որ կոչի Արտաշատ, բանակէր այն օր»։ Կը յիշուի նաեւ Հիպպողիտոսի Ժամանակագրութեան մէջ «Երասխ» (Անանուն Ժամանակագրութիւն, էջ 12)։ Ստրաբոն, Պտղոմէոս կ'անուանեն գետս 'Αράξης, Վրացիք Ռախսի կամ Արազի. Արաբք ar-Rass, որոնք կ'ենթադրեն *րախս հնագոյն ձեւ մը (հմմտ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 340)։ Որովհետեւ Կորիւնի Ռահ ընթերցուածը կը համապատասխանէ Երասխ գետի, կարելի է զայն ուղղել Ռահս, որ հնաձեւ *Րախսի եւ վրական Ռախսիի մօտաւոր կը հնչէ, եթէ չուզենք Երասխ կարդալ։

Տափեր կամուրջը, որ ձգուած էր Երասխի վրայ, կը կապէր Արտաշատը յայնկոյս գետին գտնուած տափերու, դաշտային հողամասերու հետ։ Փաւստոս Դ. 55 կը պատմէ, թէ 362/63ին Շապուհի զօրքերը Արտաշատ հաւաքուած գերիները «անցուցին ըստ Տափերն կամուրջ»։ Ագաթանգեղոս (23) իր կարգին կը գրէ թէ Անակը հետապնդող Հայերը «անցեալ ընդ կամուրջն Վաղարշապատ քաղաքի, զոր եւ կամուրջ Մեծամօրի կոչեն, աճապարէին հասանել յառաջ մի ի խելս կամրջին Արտաշատու, ի կիրճս ճանապարհացն արգելին զնոսա, ի մէջ արարեալ զնոսա ի Տափերական կամրջացն գետավէժ առնէին զնոսա. եւ ինքեանք անդրէն դարձեալ (ի քաղաքն) վայիւք, ճչովք եւ ողբովք»։ Ղ. Փարպեցի էջ 144 չի տար կամուրջին անունը։

33. Ձեռագիրներն ունին հոս «յԱյրարատեան գաւառին, ի կայս թագաւորացն եւ քահանայապետիցն, բղխեցին...»։ Ագաթ. 403 կը կարդայ. «ի Թագաւորանիստ (βad ձեռագիրք «Թագաւորական») կայեանսն բ.»։ Կայք բառը չի գործածուիր այս իմաստով դասականներու քով։ Իսկ «քահանայապետիցն», որով Հայոց կաթողիկոսները կ'ակնարկուին, կասկածելի է։ Հետեւեցայ Ագաթանգեղոսի ընթերցուածին։ Կորիւնի յատուկ է «Թագաւորական քաղաք» (Ը. 2), «Թ. տեղիք» (ԺԱ. 1)։

34. Այս ամբողջ հատուածը կը թուի ինձ, թէ ուրիշ ձեռքէ մուծուած է հոս, յամենայն դէպս 492էն յառաջ. Ագաթանգեղոսի խմբագիրը գտած էր զայն Կորիւնի բնագրին մէջ։ Եթէ ուզենք իսկ առաջին եւ վերջին պարբերութիւնները հարազատ համարել, ամէն դէպքին միջինը անհարազատ հարկ է նկատել։ Նոյն գրիչն է, որ ԺԸ. 2 հատուածին մէջ ալ այս յարաբերութեամբ ներմուծած է «հանդերձ աստուածասէր իշխանակնաւ միով, որ անուանեալ կոչէր Դուստր, որ էր կին Վարդանայ, զոր ի վերնոյն յիշեցաք»։ Ընդմիջարկութիւնը զգալի է, եթէ միտ դնենք, որ առկէ յառաջ եւ ետքը եկած բառերը սեռականով են։

Կ'ուզուի վերհանել Սահակի եւ Մաշտոցի հոգածութիւնը արքունիքի եւ բանակի, յատկապէս նախարարական տանց նոր սերունդի մասին, անոնց ալ մերձեցնելու նոր գրականութիւնը։ Վարդանի յանուանէ յիշատակութիւնը կը թուի ինձ թէ կապ ունի Ղ. Փարպեցւոյ այժմեան Բ. Դրուագի այն տեղիքին հետ, ուր կ'ըսուի նախ, թէ նախարարներէն ոմանք, «որք տեղեկացոյնք էին գրոց սուրբ եկեղեցւոյ», «ի սուրբ Գրոց առակս դիպողս» կը դնէին Վարդան Մամիկոնեանի առաջ, համոզելու զանիկա, որ առ երեսս ուրանայ քրիստոնէութիւնը եւ Յազկերտի սպառնալիքներու տեղի տայ. «յիշեցուցանելով նմա, որպէս առն ուսելոյ եւ տեղեկի, քանզի յոյժ հմուտ էր եւ ընդել գրոց վարդապետութեան, ուսեալ եւ խրատեալ ի սուրբ հայրապետէն Սահակայ ի հաւոյն իւրմէ» (էջ 52), ապա Վարդանի բերանը կը դրուի. «Ես ոչ ուրացայ... եւ ոչ զվարդապետութիւն եւ զհաւատս սրբոյ Աւետարանին, զոր ուսոյց եւ հաստատեաց յիս ճշմարիտ հաւն իմ տէր Սահակ, մերժեցի յինէն» (էջ 57)։ Եւ Ս. Շուշանիկի վկայութեան մէջ կ'ըսուի, թէ Վազգէն բդեաշխ «կին ունէր զդուստր Վարդանայ Հայոց սպարապետի Մամիկոնէի, թոռն (կարդա «թոռին») սրբոյն Սահակայ [Պարթեւի եւ Հայոց հայրապետի] ի դստերէն Սահականուշայ. եւ անուն նորա Վարդենի ի ծնողացն կոչեցեալ եւ Շուշանիկ յորջորջանօք յետոյ անուանեալ» (Սոփերք Հայկականք, Թ., էջ 11)։

*Կորիւնի բնագիրը հոս թերակատար է. պակասը կարելի է լրացնել Ագաթանգեղոսէն: Դէմ առ դէմ կը դնեմ երկու բնագիրները.*

Կոր.

*Եւ իւրեանց անդէն* զառընթերակաց արքունիսն, հանդերձ ամենայն ազատագունդ բանակիւն՝ աստուածեղէն իմաստութեամբն վարդապետեալ:

Առ[աւ]ե(ա)լ *երանելոյն Սահակայ զՄամիկոնեան* որեարն ի վարժս վարդապետութեան պարապեցուցեալ. որոց առաջնոյն *Վարդան* անուն *էր*, որ եւ *Վարդկան կոչէր*: Նոյնպէս եւ զամենայն ոգի ջանայր յերիւրել հաւսուցանել ի գիտութիւն ճշմարտութեան:

Ագաթ.

412. *Եւ յայնմհետէ փոյթ ի վերայ ունէր* զառընթերակաց արքունիսն հանդերձ *մեծամեծ աւագանւոյն եւ* ամենայն ազատագունդ բանակաւն աստուածեղէն իմաստութեամբն վարդապետել:

407. Առնոյր *այնուհետեւ զԱրշակունեաց տոհմի* որեարն ի վարժս վարդապետութեան պարապեցուցեալ. *որոց առաջնոյն Տրդատ* անուն որ եւ *թագաւորն իսկ էր, ամենայն տամբ իւրով*: Նոյնպէս եւ զամենայն ոգի ջանայր յերիւրել հաստուցանել ի գիտութիւն ճշմարտութեան:

ա. *«Եւ իւրեանց անդէն» չունի Ագաթ. իսկ Կորիւնի կը պակսին «եւ յայնմհետէ փոյթ ի վերայ ունէին»* (*Ագ.* ունէր, *այսինքն Գրիգոր*): *Ասութիւնս չենք գտներ դասական գրականութեան մէջ. յամենայն դէպս կը սպասուէր «փոյթ անձին ի վերայ ունէր» եւ կամ վերականգնելով Կորիւնը՝ «իւրեանց* անձանց *փոյթ ի վերայ ունէին»*:

բ. *Կորիւնի «վարդապետեալ» պէտք է ուղղել «վարդապետել»*:

գ. *Կորիւնի «առաւել» հարկ է կարդալ «առեալ». Ագաթ. վերածած է դիմաւոր բայի «առնոյր»*:

դ. *Վերագոյն խօսքը Սահակի եւ Մաշտոցի մասին էր. հոս միայն Սահակի մասին կը խօսուի. «առեալ երանելւոյն Սահակայ»: Կորիւն զՍահակ երբեք «երանելի» չէ կոչած, իրեն համար Սահակ «սուրբ» է*:

ե. *«ԶՄամիկոնեան որեարն». դասական մատենագրութեան մէջ աւելի քան 10 անգամ գործածուած է* որեար *բառը, բայց «Մամիկոնեան որեար»* (*Ագ. «Արշակունի տոհմի որեար»*) *իբրեւ Մամիկոնեան տոհմի սեպուհներ միայն հոս կը գտնենք. Կեղծ–Ղազար Փարպեցի ունի անգամ մը «նախարարագունդ որեար»* (*էջ* 11), *իսկ Ղ. Փարպ. գիտէ* (*էջ* 49, 97) *«ազատորեար»*:

զ. *«Ի վարժս». բառս* վարժք *գործածուած է հետեւեալ դէպքերու մէջ. Ոսկ. Պաւղ. Ա. 75. «խակ եւ ամեհի է մանկութիւն եւ բազում վարդապետաց կարօտ... քանզի պիտոյ է այնպիսի վարժիւք վարել». Բարսղի Վեցօրեայք. 35. «մօտ եւ ընտանի էր (այրս) վարժից ճշմարիտ վարդապետութեանն». անդ, 164. «առանց ուսման եւ վարժից յաջողութեան մարդկան են» (մեղուք). անդ, 190. «չուն զայս գիւտս յիւրոց բնութեանց վարժից ստացեալ ունի»: «Ի վարժս դպրութեան» ուշ ժամանակ կ'ենթադրէ*:

է. *«Պարապեցուցեալ». բառս ունինք Կիւրղի Կոչ. Ընծ., էջ 6. «ի դատարկ բանից բազմաց պարապեցո՛ զանձն քո» (ասկէ Յաճախապատում, 152. «զանձինս դատարկ բանից պարապեցուցանեն»). Եւթաղ, էջ 80. «զի զամենեցուն զձեռս պարապեցուսցէ ի սպանութիւնն»: Հոս «ի վարժս դպրութեան պարապեցուցանել», ուսուցանել իմաստով, բառին իմաստի ընդլայնումը կ'ենթադրէ*:

ը. *«Զամենայն ոգի» գործածած է նաեւ Կորիւն, ԺԷ. 1. «զամենայն ոգի ոգեղէնս... վառեաց» (Նոյնը Ագ. 440)*:

թ. *«Ջանայր» անշուշտ պէտք է սրբագրել «ջանալ»*:

*Ժ. Յերիւրել հաստուցանել. հմմտ. Կոր. ԺՁ. 7 (Աց. 466). «առ հան-դերձեալսն յերիւրեալ եւ կազմեալ»:*

35. Ի კაჲენაკანნ: — *Սահակ եւ Մաշտոց խորհրդի կը նստին. կ'որո-շեն, որ Սահակ, «Տէրն եպիսկոպոսն», իր հոգաբարձութեան տակ առնէ հայ գրականութեան մշակութիւնը «ի կայենականս», իսկ Մաշտոց շրջի «ի սփիւռս հեթանոսաց» եւ տարածէ նորագիւտ դպրութիւնը: Այդ «սփիւռք հեթանոսաց», ինչպէս Մաշտոցի ուղեգնացութենէն կը տեսնուի, են Գողթն, Սիւնիք, Աղուանից աշխարհն եւ դրացի երկիրները, Գարդմանք, կողմանք Վրաց եւ Վրաստան, ի վերջոյ Հռոմէական Հայաստան: Ասկէ կրնանք հետեւցնել, թէ Այրարատեան գաւառ, Տարօն, Բզնունիք եւ այլ գա-ւառներ կ'իյնային «ի Կայենականսն», այսինքն Ս. Սահակի գործունէութեան ասպարէզի մէջ: Այս պատճառաւ ալ Կորիւն, որ Մաշտոցի Վարքը կը գրէր, որ եւ է խօսք չէ ըրած Տարօնի եւ այլ գաւառներու մէջ Մաշտոցի գոր-ծունէութեան մասին:*

*Հ. Յ. Թորոսեան (Բ ա զ մ ա վ է պ, 1931, էջ 466—469) կ'առաջարկէ «ի «Կայենականսն» կարդալ «ի հայրենականսն», այսինքն «ի հայրենի կողմանսն, տեղիսն» եւ կամ «ի կայս արքունականս»: Գ. Ֆնտգլեան (Կորիւն, էջ ԺԴ—ԺԵ, 27—28)* კაჲენაკანი *արմատը կը համարի պահլ.* kai, კაჲ, *«թագաւոր», որմէ յառաջացած է* კაჲან *կամ* კაჲენ, *«թագաւորական, արքունի», զոր կը մերժեն Թորոսեան (անդ) եւ Ո. Մ. (Ս ի ո ն, 1932, էջ 314): Վերջինս պարսկ.* კეაჰ, *«ժամ, տեղի» բառին հետ կը համեմատէ իբրեւ կայ թագա-ւորականին: Մ. Աբեղեան, Կորիւն, էջ 112—113, նկատի կ'առնէ նախ Կայե-նոյ գաւառ, աշխարհ, բերդ, որմէ դիւրաւ կարող էր կազմուիլ Կայեն-ական. «բայց անբացատրելի է մնում, թէ ինչո՞ւ պէտք է Կայենոյ գաւառն առանձնա-ցուէր միւս հեթանոսական շրջաններից»: Աւելի հաւանական կը տեսնէ, թէ «*კაჲენაკანი *նշանակում է արքունի զորակայեաններում մի տեղ հաւա-քուածները, լինին* ռամիկ *զօրք, թէ ազատախումբ բանակ»:*

*Ինձ կը թուի թէ այս մեկնութիւններէն եւ ոչ մին ընդունելի է:*

*Փաւստոս (Դ. 14) կը գրէ. «Զայնու ժամանակաւ սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնսն. զի ԺԵ. գաւառ զայն ձեռական իշխա-նութեան ունէին, իբրեւ սեպհական ի բնէ առանձին առոչոգի նոցա էր կար-գեալ: Եւ յայն գաւառ(ս) գլխաւոր գաւառք այս էին. Այրարատ, Դարա-նաղէ, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք եւ որ ընդ մէջ նոցա եւ որ շուրջ զնոքօք»: Այս մասին ակնարկութիւն կայ նաեւ Գ. 14. «Աշակերտ եղեալ էր սա (Դանիէլ ասորի) մեծին Գրիգորի, վերակացու եւ գլխաւոր եկեղ(եց)եաց նահանգին Տարօնոյ, Գրիգորի ձեռական իշխանութեանն կողման մասին գոր-ծակալութեանն մեծի դատաւորութեանն. ունէր զիշխանութիւնն զայն առան-ձինն. այլ վերակացու եւ հրամա(նա)տար տեսուչ եւ հոգաբարձու ամենայն եկեղեցեացն Հայոց մեծաց»:*

*Փաւստոսի այս տեղիքները աղճատուած կերպարանքի տակ պահուած են. կը խօսուի 297էն յառաջ պատահած դէպքերու վրայ: Մեզի համար կարեւոր է հոս այն միայն, որ ի վաղուց հետէ Հայոց եպիսկոպոսապետին շնորհուած են 15 գաւառներ (յատկապէս այդ գաւառներու մէջ եղած Եկեղեցիներու) առաջնորդութիւնն ու դատաւորութիւնը: 297ին եւ 385ին, երբ Մեծ Հայաս-տանէն խլուեցան այլ եւ այլ նահանգներ այդ ձեռական իշխանութեան 15 գա-ւառներու թիւն ալ նուազեցաւ. այսպէս Եկեղեաց, Դարանաղիք 385ին եւ Ծոփաց գաւառները 297ին Հռոմայեցւոց անցած էին: 410ին Սահակի ձեռա-կան իշխանութեան տակ էին ապահովապէս Այրարատեան, Տարօնական եւ Բզնունիք գաւառներն «եւ որ շուրջ զնոքօք»:*

*Թէ Ե. դարուն այս գաւառները «Կայենականք» կը կոչուէին, գիտենք միայն Կորիւնի վկայութեամբ: Բայց խնդիր կրնայ ըլլալ, թէ այս տեղ ԿԱՅԵՆ-ականք հարազա՞տ ընթերցուածը կ'ընծայէ, թէ աղաւաղումը ՁԵՌ(Ն)-ական բառին: Փաւստոս երկիցս գործածած է բառս կից «սեպհա-կան» եւ «առոչոգի» (առաչոգի, առուչոգի) հոմանիշներու. կը գտնենք նոյնը*

նաեւ Ագաթ. Վարդապետութեան մէջ «ժողովուրդ ձեռական (Ա. խումբի ձեռագիրք՝ ձեռնական ե սեպհական) անուանեցան Աստուծոյ (Եբրայեցիք. էջ 294). իսկ էջ 132 կ'ըսուի նոյն իմաստով «ժողովուրդ առաջին եւ սեպհական անուանեալ»։ Հմմտ. նաեւ Ոսկ. Պաւղ. Ա. 899 «որ ինչ իմ ձեռական իցէ» (իսկ էջ 887 «թէ իւր սեպհական իցէ»)։ Այս իմաստով կարելի է նաեւ «հայրենական» նկատի առնուիլ, իբրեւ ի հօրէ կամ ի նախնեաց ժառանգուած ձեռական իշխանութիւն։

36. Խորձենական կամ Խորձեան Դ. Հայոց գաւառներէն էր. «այս գաւառը Կթուճի (Հաշտենից մէջ) եւ Թէոդոսուպոլսոյ (Կարնոյ) մէջ տեղն էր եւ երեք օրուան ճամբայ տարածութիւն ունէր եւ Պարսկահայքէն բնական սահմանով մը (լճով, գետով, լեռով) չէր բաժնուած. այս գաւառին դրեթէ կենդրոնը կ'իյնար Արտաղեսոն, զոր Յուստինիանոս ամրացնելով Դուքսի կայանն ըրաւ» (Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 137—138)։

Տիրայր այլուստ ծանօթ չէ։

37. Տարաւն գաւառի կամ նահանգի մասին տես Ծան. 4։ — Փաւստոս, Զ. 16, կը յիշէ զՄուշէ մանուկն ձեռասուն, որ աշակերտած էր Փոքր Գինդ անապատաւորին ի Տարօն (387էն յառաջ)։

38. Ռոտաստակ։ — Կորիւնի B ձեռագիրը կը կարդայ առոտաստակն, Ագաթ. ԱԲ ձեռագիրք յըռոտաստակն, իսկ βabd յռոդաստակն, յռոդաստան. կը վերականգնեմ յռոտաստակ-ն, համաձայն պհլ. rōtastākh, «երկիր, բնակելու տեղ». լայնաբար գաւառի կամ նահանգի գլխաւոր քաղաք. ուստի հոս Գողթն գաւառի գլխաւոր քաղաքը։ Բառիս շուրջ հմմտ. Հ. Ա. Վարդանեան, Բառաքննական Դիտողութիւններ, Գ. (Վիեննա 1921, էջ 55—60 = Հանդ. Ամս. 1921, էջ 332—335). Հ. Աճառեան, Հայերէն արմատական Բառարան, Ե., էջ 1282—1285։

Բառիս կցուած «յառաջին դաստակերտն իւր» իմանալու չէ՞ արդեօք ռոտաստակ բառին բացատրութիւնը. այս դէպքին «իւր» աւելադրութիւն է։ Դաստակերտ, պհլ. dastk(e)rt, «աւան, գիւղ» (հմմտ. Աճառեան, անդ, Բ., 420—421)։

39. Սիւնական աշխարհ։ — Կորիւն հատուածիս մէջ ունի «Սիւնական աշխարհ», «Երկիր Սիւնեաց», «Իշխան Սիւնեաց». իսկ ԺԲ. 2. «քաջն Սիսականն Վասակ», մինչ Փաւստ. Գ. 9 եւ 11, աստ փոխարէն գիտէ Վաղինակ, Անդովկ Սիւնի (Գ. 9, 16)։ Կորիւնի յատուկ է «Սիւն-ական»։ Ուշ ժամանակ, երբ Ժ. դարուն մուտ գտած է հայ գրականութեան մէջ Սիսական, որ ինչպէս Մ. Խորենացի կը վկայէ, Պարսիկներու քով ընդունուած կոչում մըն է, եւ զոր ինքը հարազատագոյնը կը համարի, վասն զի Սիւնեաց նախահայրը Սիսակ կ'ենթադրէ. «Աստ (առ Երասխայ) բնակեալ Սիսակ՝ ...եւ զաշխարհն կոչէ իւրով անուամբն Սիւնիք. այլ Պարսք յստակագոյնս եւս Սիսական կոչեն» (Խոր. Ա. 12)։ Պարսից ազդեցութեան տակ նաեւ Ասորիք Sisagan եւ Արաբները Sisajian կ'անուանեն Սիւնեաց աշխարհը. հմմտ. Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 95—99։

Վաղինակ իշխան Սիւնեաց։ — Սիւնեաց յատուկ է Վաղինակ անունը. Փաւստոս (Գ. 9) կը յիշէ Խոսրով Բ.ի (272—284) օրով Վաղինակ Սիւնեաց իշխանը, որ յետոյ Աղձնիքի Բդեաշխ եղաւ։ Իսկ Ե. 42 կը պատմէ, թէ երբ 383/84ին «եկին ապա մնացորդք ի տանէն Սիւնեաց պատանեակ(ք) երեք... եւ անուանք նոցա միումն Բաբիկ եւ միւսումն Սամ, միւսումն Վաղինակ։ Եւ ընկալաւ զնոսա զօրավարն Հայոց Մանուէլ եւ եղեւ նոցա օգնական, եւ դարձ արար նոցա յերկիրն իւրեանց. եւ կացոյց տէր՝ զԲաբիկ ի վերայ երկրին, եւ զերկուսն եւս ըստ իւրաքանչիւր չափու»։ Հաւանօրէն հոս յիշուած Վաղինակ նոյն է Սիւնեաց իշխանին հետ, զոր կը յիշատակէ Կորիւն։ Մաշտոցի այցելութիւնն ի Սիւնիս պէտք է ենթադրել երբ 415ին։

40. Եպիսկոպոս տեսուչ։ — Յունարէն բառ է Եպիսկոպոս (ἐπίσκος) որուն հայերէն թարգմանութիւնն է տեսուչ. ճիշդ այսպէս փոխառութեամբ կը գտնենք բառերս Ագաթ. 572. «տեսուչք եպիսկոպոսք». իսկ էջ 637.

«տեսուչս եպիսկոպոս», նոյնպէս Փաւստ. Ե. 21: Նորայր կը սրբագրէ «տեսուչ եպիսկոպոս». Կորիւնի միտքն է սակայն չատերու մասին, թէպէտ ինքը յանուանէ մէկը միայն յիշած է:

41. Անանիաս եպիսկոպոս Սիւնեաց կը յիշուի նաեւ Արտաշատի 450ի ժողովին մէջ. Փարպ. 44. «տէր Անանիա Սիւնեաց եպիսկոպոս»: Կորիւն կը սիրէ յունական ձեւով ներկայացնել անունները. «Անանիաս, Ղեւոնդիոս» են:

42. Աղուանից աշխարհ: — Այս տեղ նկատի կ'առնուին յատկապէս Աղուանից աշխարհի երկու նահանգները՝ Ուտի եւ Արցախ, որոնք մինչեւ
297 Մեծ Հայաստանի մասերը, կը կազմէին եւ Հայոց հետ ընդունած էին քրիստոնէութիւնը Ս. Գրիգորի քարոզութեամբ: Թէպէտ բազմալեզու էին այս կողմերը, բայց հասարակաց լեզու ունէին հայերէնը: Քաղաքականապէս անկախ էին, բայց պարսկական գերիշխանութեան տակ: Ունէին իրենց սեպհական թագաւորը, այս ժամանակ (իբր 415) կը թագաւորէր Արսվաղէն. Աղուանից Պատմագիրքը կ'անուանէ զանիկա Եըսվաղէն: Այլուստ անծանօթ:

Թագաւորական տեղին: — Աղուանից թագաւորանիստ քաղաքն էր այս ժամանակ Կապաղակ: Արաբացւոց տիրապետութեան ժամանակ փոխադրուեցաւ գահը Պարտաւ:

Երեմիա Եպիսկոպոս: — Եկեղեցականապէս կը գտնուէր Աղուանից եկեղեցին Հայոց եպիսկոպոսապետի իրաւասութեան տակ, այն իմաստով, որ Աղուանից գլխաւոր եպիսկոպոսը իր ձեռնադրութիւնը կ'ընդունէր Հայոց եպիսկոպոսապետէն: Այսպէս կ'ենթադրենք Զ. դարու հանգամանքները նկատի առնելով. Դ. եւ Ե. դարու պայմաններու մասին չունինք տեղեկութիւններ:

Մաշտոց համոզեց թագաւորն եւ եպիսկոպոսը, որ հայախօս եւ առանց դպրութեան ժողովուրդը գրականութեան մերձեցնելու համար ընդունին հայերէն այբուբենը, նորակերտ գրականութիւնը, դպրոցներ բացուին են: Կարճ ժամանակի մէջ լուսաւորուեցաւ Աղուանից աշխարհը:

43. Վարդան Արեւելցի կը պատմէ, թէ Աղուանից աշխարհի Գագ անուն ամուր բերդը շինած է Գագիկ թագաւոր. «ուր, կ'ըսէ, կայ հռչակաւոր եւ սուրբ ուխտն Խաչ եւ եկեղեցի յանուն սրբոյն Սարգսի զօրավարին, օրհնեալ ի սրբոյն Մեսրովբայ վարդապետէն եւ թարգմանչէն Հայոց, որ կայ ի գլուխ Գագայ եւ հայի ի դաշտն լայնանիստ եւ երկայնատարած» (Վարդան, Պատմութիւն, էջ 145): Աւանդութիւն մը, որ կը յիշեցնէ Մաշտոցի այցելութիւնն յԱղուանս:

44. Խօսքը Աղուանից աշխարհի, Ուտի եւ Արցախ նահանգներէ դուրս հեթանոս ազգերու մասին է, զորոնք Մաշտոց քրիստոնէութեան պիտի շահէր եւ նոր գրականութեան պիտի աշակերտէր, յատկապէս մասաղ սերունդը: Դժբախտաբար Կորիւն այդ ազգերը յանուանէ չէ թուած:

45. Մարաց կողմանն: — Տեղակորոյս հատուած մըն է այս, ձեռագրին մէջ զետեղուած Թ. 1 հատուածին կից, բոլորովին անյարիր տեղւոյն: Կը թուի ինձ, թէ անոր պատշաճագոյն տեղն է հոս: Ակնարկուած թագաւորն է առանց տարակուսի Արսվաղէն: Իսկ «կողմանք Մարաց» փնտռելու է Բաղասականի դրացութեան մէջ:

Կորիւն (Դ. 2) կը պատմէր, թէ Մաշտոցի առաջին քարոզութեան ի Գողթն «դեւք կերպակերպ նմանութեամբք» կը փախչէին «ի կողմանս Մարաց», իմէ առեալ նաեւ Մ. Խոր. Գ. 47: Նոյնը կը գտնենք Մ. Խորենացւոյ ընծայուած Հռիփսիմեանց ուղեգնացութեան մէջ (էջ 302). Հռիփսիմեանք կանգուարէն կը մեկնին դէպի Վարագ ուղղութեամբ. ճանապարհին կը տեսնեն, թէ «ի բազնացն փախուցեալք դեւք անկանէին յերկիրն Մարաց»: Ագաթանգեղոս Գրիգորի պատմութեան մէջ փոխ առնելով Կորիւնի յիշեալ տեղիքը, փոխանակ Մարաց դրած է «դեւացն (ի մեհենէն Թորդանայ) փախստական լինելով անկանէին ի կողմանս Խաղտեաց» (409). կ'երեւայ թէ Մարաց կողմանք հեռու էին անոնց համար:

Այս Մարաց կողմանք պէտք չէ չփոթել «Մարաց ամուր աշխարհին հետ»: Ուշագրաւ է, որ Մարաց լեզուն կը նկարագրուի «խեցբեկագոյն եւ խո-

չորագոյն», ուստի եւ «դժուարամատոյցք» էին Մարք ուսանելու Հայ լեզուն եւ Հայ գրականութիւնը, բայց եւ այնպէս յաջողած է Մաշտոց մատչելի ընելու անոնց հայերէն Աստուածաշունչը։ Ասոնք հաւանօրէն Մ․ Խորենացւոյ (Գ․ 54) յիշած Գարգարացիներն են․ Մաշտոց յԱղուանս գտնուած ժամանակ «սաեղծ գնչանագիրս կոկորդախօս, աղխազուր, խժական խեցբեկագունին այնորիկ Գարգարացւոց լեզուին»։

46․ Բաղասական կողմանք։ — Մասքթաց Սանեսան արքային երբ յառաջացաւ մինչեւ Հայաստանի միջնաշխարհը, ունէր իր բանակին մէջ «Բաղասճաց» զօրաւիդ զօրքն ալ (Փաւստ․ Գ․ 7)։ Սանեսանի բանակը խորտակուեցաւ․ մնացածները փախան «յաշխարհն Բաղասճաց»։ Անունիս մէջ տեսնուած –ին պահլ․ տեղանունական մասնիկ է, որ հայերէնի մէջ –ական ով կ'արտայայտուի․ ուստի «Բաղասական», որ առաջին անգամ Կորիւնի քով երեւան կու գայ։ Եղիշէ (էջ 58) կը յիշէ «Թագաւորազունք ոմանք Բաղասական արքայի» եւ էջ 104 երկիցս «Բաղասական արքայ»։ Մ․ Խորենացի (Գ․ 60) ընդլայնելով Կորիւնի այս տեղիքը կը գրէ, թէ Մաշտոց «տեղեկանայր եւս, եթէ չարեաց վարդապետացն նախագոյնք ի Բաղասականն են կողմանս․ որ երթեալ զբազումս յուղղութիւն ածէ եւ զսակաւս անդարձս յիշխանութիւն Հոնաց հալածականս առնէ»։ Մովսէս Խորենացւոյ ընծայուած Աշխարհացոյցն (էջ 606), թուելով Աղուանից գաւառները, գաւառս կը յիշէ պարսկական ձեւով․ «Դաշտ–ի Բալասանական»։ Արաբ հեղինակները կը հաղորդեն թէ գաւառս կը գտնուի Բարզանդի ճանապարհին վրայ Բոլգարու չայի երեք գետառաջներէն միջինին մէջ, Արդաբիլէն դէպ ի Վարդանակերտ 14 փարսախ հեռաւորութեան վրայ (Marquart, Eranšahr, 120)։ Զաքարիա Հռետորի ընծայուած Եկեղեցական Պատմութեան մէջ կ'ըսուի․ «Երկիրն Բաղասական (աս․ Bazgūn) սեպհական լեզուով, որ կը տարածուի մինչեւ Կասպից ծովի դռները, որոնք Հոնաց երկրին մէջ են» (Die sogenannte Kirchengeschichte des Zacharias Rhetor. Leipzig 1899, էջ 253)։

Բաղասական կողմանք Կորիւնի օրով քրիստոնեայ էին, ունէին Մուշեղ անուն եպիսկոպոս․ որ նպաստամատոյց եղած է Մաշտոցի քարոզութեան։ Թէպէտ կ'ըսուի, թէ Բաղասականք իրենց սեպհական լեզուն ունեցած են, բայց երկրին գրական լեզուն հայերէնը եղած է։

47․ Յովնաթան, որ արքայական Դրան քահանան էր, ազգաւ աղուան էր անշուշտ, եւ յօժարութեամբ հետեւող մը Մաշտոցի վարդապետութեան, այսինքն գրագիտութեան դասախօսութիւններուն։

48․ Գարդմանական Ձոր։ — Ուտի նահանգին գաւառներէն է Գարդմանից (նաեւ Գարդմանաց, Գարդմանայ) ձոր (Փաւստոս (Դ․ 17․ «իշխանն Գարդմանաց ձորոյն»․ Դ․ 50․ «Գարդմանաձորոյ տէրն»․ Ե․ 13․ «ձորն Գարդմանայ»), Գարդման ամրոցով Շամքոր չայի արեւելեան մէկ բազկի վրայ։ Գարդմանից իշխանն է Խուրս․ այսպէս կը կոչուի նաեւ Ներսէս Կամսարականի դայեկորդին Արշամունեաց գաւառէն 480ին (Փարպ․ 149)։

49—50․ Կողմանք Վրաց եւ Վասակ Սիւնի։ — Մաշտոցի ուղեգիծն էր Վաղարշապատ—(Երասխի ընթացքով) Գողթն—Սիւնիք—Աղուանից աշխարհ—Բաղասական—Մարաց կողմանք (յայնկոյս Կուրի)—Գարդմանական Ձոր (յայսկոյս Կուրի)—Տփղիս․ վասն զի նպատակ ունէր «անցանել յաշխարհն Վրաց» (ԺԱ․ 6)։ Ըստ այսմ կարելի չէ մտածել, թէ Մաշտոց Գարդմանքէն միւսանգամ Սիւնիք գացած ըլլայ եւ անկէ ի կողմանս Վրաց։ Պէտք է հոս Կորիւնի Բնագրին մէջ թղթերու եռեւառաջութիւն տեղի ունեցած ըլլայ, թերեւս դիտմամբ՝ Վասակ սիւնին ի Սիւնիս ենթադրելով։ Վերականգնելով բնագիրը կը ստանանք․ «Իսկ նորա (ի Գարդմանաց Ձորոյն) անցեալ դիմեալ ի կողմանս <Վրաց>․ յորում ժամանակի պարգեւեալ յԱստուծոյ՝ հասանէր ի գլուխ իշխանութեանն Վրաց (Զ․ Սիւնեաց) քաջն Սիւնականն (Զ․ Սիսականն) Վասակ»։ «Կողմանք Վրաց» հոս Տփղիսէն մինչեւ Կասպից Դրունք (Դերբենդ) միջոցն է, յայնկոյս Կուրի, ուր Դ․ դարու վերջերը առանձին մարզպանա–

*կան շրջան հաստատուած էր։ Կորիւնի բացատրութիւնն «հասանէր ի գլուխ իշխանութեանն» պէտք է ըստ այսմ իմանալ «ի գլուխ մարզպանութեանն» կողմանցն Վրաց։ Վասակ ինքնին կ'ըսէ Ղ. Փարպեցւոյ քով. «Ես մինչ Վրաց մարզպանն էի եւ Դուռն Աղուանից յիմում ձեռին էր, բազում զօրագլուխք Հոնաց ընդ իս բարեկամացան ուխտիւ եւ երդմամբ. եւ այսօր նովին երդմամբ երթեւեկեն առ իս» (Փարպ. 264. Հմմտ. Ակինեան, Եղիշէ վարդապետ եւ իր Պատմութիւնն Հայոց պատերազմին, Բ., էջ 412—413)։ Ո՞ր տարւոյն կարգուած էր Վասակ Վրաց մարզպան. չգիտենք. բայց Կորիւնի յիշեալ տեղիքը. «յորում ժամանակի... հասանէր», յայտնապէս ցոյց կու տայ, թէ իր իշխանութեան հասանիլը Մաշտոցի հանդիպումէն ոչ շատ յառաջ տեղի ունեցած է, ուստի մերձաւորապէս 414/15ին։ Վասակ 444ին արդէն Հայոց մարզպան էր, Շահապիվանի ժողովին գումարումէն յառաջ։ Նա նոր պաշտօնի կոչուած պէտք է ըլլայ Արտաշէս Թագաւորի (իբր 426), հաւանօրէն նաեւ Մաշտոցի (440) մահէն ետքը։ Կորիւն, որ կ'աւարտէր իր Վարքը իբր 442ին, որ եւ է կերպով չէ ողջունած զինքը իբրեւ Հայոց մարզպան։*

*Մարզպանը, որ Վիրոյ = Աղուանից Դուռն իր ձեռին ունէր, կը նստէր Տփղիս։ 518ին այս «հիւսիսային կողմանց» մարզպանն էր Գրիգոր Մանաճիհր ռաժիկ, կոչուած Պիրան Գուշնասպ, որուն յաջորդն եղաւ Երուանդ Վշնասպ, որոնք տիտղոս կը կրէին «մարզպան Վրաց* (Gurzan) *եւ Աղուանից* (Arran) *եւ նստոցն ունէին ի Տփղիս (տես իմ Եղիշէ վարդապետ, Բ., էջ* 419, 588—560)։ *Մարզպանութեան պաշտօնն էր հսկել Կասպից (Աղուանից) Դրան, ուսկից ասպատակութեան կ'իջնային Հոները եւ այլ լեռնականք։*

*Մաշտոց ժամանակ մը դեգերեցաւ «ի կողմանս Վրաց», յատկապէս այսրկուրեան գաւառներու մէջ, որոնք 297էն յառաջ Մեծ Հայոց կը վերաբերէին եւ ապա խլուած՝ միացուած էին Վրաստանի։ Քրիստոնեայ էր այս կողմերու բնակչութիւնը եւ մեծաւ մասամբ հայերէնախօս։ Վասակ ամէն դիւրութիւն մատուց Մաշտոցի այս կողմերը տարածելու համար նորագիւտ հայերէն այբուբենը եւ հայ գրականութիւնը։*

51. Բարբարոսական կողմանք Վրաց։ — *Ձեռագիրն ունի հոս «Բարբարոսական կողմանն», բայց քիչ յետոյ կ'ըսուի «գնայր իջանել ի կողմանս Վրաց». Հմմտ. նաեւ Ագաթ. Վարդապետութիւն, էջ* 361. *«առաքեալքն ի բարբարոսական կողմանսն գործէին»։ Մաշտոց վարդապետ, էջ* 133 *ուղղած էի այս տեղիքը «Բարբառոյ (հիւսի)սական». բայց պէտք է պահել բնագիրը անփոփոխ։ Բառս կազմուած է յն. βαρβαρος, «բարբարոս» (Կորիւն, ԺԴ. 8. «զբարբարոս զբանս». Ոսկ. Մատթ. 416. «Եթովպացին խուժադուժ մի էր բարբարոս», 571 եւ այլն) եւ* –ական *մասնիկով. այսպէս նաեւ «բարբարոսիկ» Եւս. Քրոնիկ. 94. մինչ Ոսկ. Ես. 221 ունի «ըստ բարբարիկ վայրենական մտաց»։ «Բարբարոսական ազգ» կայ նաեւ Ոսկ. Ծառք, 531։*

*Բարբարոսք են Յունաց քով բոլոր ոչ-հելլեն ժողովուրդք. Հայոց քով բոլոր խուժդուժ ոչ քրիստոնեայ ազգեր։ Այստեղ Մաշտոց կը գտնուի յայսկոյս Կուր գետի նախկին հայկական գաւառներու մէջ, որոնք քրիստոնեայ են։ Կը խորհի Մաշտոց «վասն բարբարոսական կողմանն». այսինքն Կուրի յայնկոյս գտնուող Վրաստանի մասին, զոր Կորիւն «Բարբարոսական կողմ» կ'անուանէ, վասն զի այն կողման ժողովուրդները թէ այլալեզու են եւ թէ ըստ մեծի մասին ոչ-քրիստոնեայ։*

*Երկիրը կը կոչուէր բնիկներէն Քարթլի. որուն մայրաքաղաքն էր Մծխիթա, թագաւորը Բակուր եւ Եպիսկոպոսը՝ Մովսէս։*

*Որպէս զի աւելի արդիւնաւոր ըլլայ իր քարոզութիւնը՝ կը պատրաստէ վրացերէն լեզուի համար ուրոյն այբուբեն 36 նշանագիրներով։ Այս այբուբենի մասին տես Մաշտոց վարդապետ, էջ* 271—293։

52. Բակուր թագաւոր։ — *Հաւանօրէն Սաւրոմակ Թագաւորին որդին էր Բակուր. որ պատանի հասակին Կայսեր պալատը ղրկուած իբրեւ պատանդ, առաւ զինուորական կրթութիւն, նաեւ հելլենական ուսմանց հետեւող եղաւ։*

Պատմութեան մէջ կը յիշուի իր անունը 378ին, իբրեւ տրիբուն աղեղնաւորաց Վաղէսի բանակին մէջ Ադրիանուպոլսի առջեւ։ Ան կը մասնակցի նաեւ Թէոդոս Ա.ի ընդդէմ Եւգինեայ կռուին (394)։ Ամմիանոս Մարկեղինոս (ԻԱ. 12) զինքը «ոմն Բակուր վրացի» կը կոչէ. իսկ Զոսիմոս (Դ. 57) «Բակուր, ծննդեամբ Հայաստանցի, այր բարեացակամ եւ ռազմագէտ»։ Հաւանօրէն իբրեւ դուքս Պաղեստինի բերաւ իր մասնակցութիւնը 394ի պատերազմին։ 391—392 տարիներուն տեսակցութիւն կ'ունենայ Լիբանիոս ճարտասանին հետ եւ կ'ընդունի անկէ թուղթ մը (Libanii opera, XI, 1043—1044 եւ 1060)։ Կ'երեւայ թէ տակաւին հեթանոս էր Բակուր եւ քրիստոնէութիւնը ընդունած է 393—394 տարիներուն Երուսաղէմ։ Հոս տեսակցութիւններ կ'ունենայ Գեղասիոս Կեսարացւոյ եւ Ռուփինոս Ակուլէիացւոյ հետ. առաջինը գիտէ զինքը. արքայազարմ վրացի, երկրորդը՝ թագաւոր Վրաց։ Այս առթիւ կը հարցուի իրեն Վրաստանի քրիստոնէութեան դարձի մասին եւ Բակուր կը գոհացնէ անոնց հարցասիրութիւնը։ Իր հաղորդած տեղեկութիւնները, զորոնք գրի առած են Գեղասիոս եւ Ռուփինոս, կը հային Հայաստանի դարձին։ 395էն սկսալ կ'անյայտանայ անոր անձը արեւմուտք։ Հաւանօրէն այս տարւոյն վերադարձած էր Բակուր Վրաստան, ժառանգելու հայրենի գահը։ Եւ իրօք իբր 415ին կը յայտնուի ան պատմութեան իբրեւ թագաւոր Վրաց (Կորիւն)։ Իր զարմիկն Պետրոս Մայումայի եպիսկոպոսը ի ձեռն իր կենսագրին կը հաւաստէ մեզի թէ Բակուր առաջին քրիստոնեայ թագաւորն էր Վրաց թագաւորներու գահին վրայ։ Բակուր իրեն յաջորդ կ'ունենայ իր եղբայրը Արչիլ։ Բակուրի մասին ընդարձակ տես Ակինեան, Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան, էջ 1—52։

53. Մովսէս Եպիսկոպոս բովանդակ Վրաստանի գլխաւոր եպիսկոպոսն էր (իբր 415)։ Իր մասին անդրագոյն տեղեկութիւններ կը պակսին։ Յաջորդ ունեցաւ հաւանօրէն այն «Երեմիա եպիսկոպոսն Վրաց կողմանցն Պարսից» (Ieremia Iberos partium Persidis) որ կը յիշուի այն եպիսկոպոսներու թուին մէջ, որոնք չէին ժամանած Եփեսոս մասնակցելու ժողովին, բայց յետոյ՝ 13 ուգոստոս 431 տուած էին գրով իրենց համաձայնութիւնը Ս. Կիւրղի կողման. տե՛ս Ed. Schwartz, Acta conciliorum oecumenicorum, tomus I. Concilium universale Ephesinum, vol. III. (Berolini, 1929) p. 140—141. P. Peeters, Jéremie, evêque de l'Iberie perse: Analecta Bollandiana 51 (1935) 5—33.

Անշուշտ Iberos անուան կից partium Persidis շեշտուած է զանազանել տալու համար սպանիական Iberiaէն։ Ե. դարուն ինչպէս Հայաստան, նոյնպէս Վրաստան եւ Աղուանից աշխարհ կը գտնուէին Պարսից իշխանութեան տակ։ Տարբեր անձ է Երեմիա Աղուանից եպիսկոպոս, յիշուած 415ին։

54. Ջաղայ թարգմանն։ — Կորիւն կը ներկայացնէ զանիկա իբրեւ «այր գրագէտ եւ ճշմարտահաւատ», որ Մաշտոցի քով թարգմանի պաշտօնը կը կատարէ։ Ան հմուտ էր անշուշտ հայերէն եւ վրացերէն լեզուներու. թէ նաեւ հելլենագէտ եւ ասորագէտ էր, չգիտենք։ Գրագէտ էր, այսինքն ուսած էր հայ դպրութիւնը, նկատի առնելով, որ առաջին վրացերէն թարգմանութիւնները կատարուած են հայերէն բնագիրներու վրայէն. խօսքս Աստուածաշունչի մասին է։

Ջաղայ առանց տարակուսի վրահայ էր եւ մօտ էր Մաշտոց վարդապետի, երբ սա կը յօրինէր վրացերէն նշանագիրները։ Մեծ եղած պիտի ըլլայ իր երախտիքը Վրաց գրականութեան սկզբնաւորութեան թէ իբրեւ թարգմանիչ եւ թէ իբրեւ ուսուցիչ նոր բացուած դպրոցներու մէջ։

Ջաղայ անունը պահուած է անաղարտ. այսպէս կը կարդան թէ Կորիւնի մեզ ծանօթ ձեռագիրն եւ թէ Մովսէս Խորենացի (Գ. 54). վերջինս ունի «հանդերձ Ջաղայիւ ոմամբ թարգմանաւ հելլեն եւ հայ լեզուի»։ Վրիպակ ընթերցուած պէտք է համարել «Ջաղել» ընթերցուածը, զոր ունի Վարդան Պատմիչ (51. «Մեսրոպ անցեալ ի Վիրս՝ առնէ եւ նոցա գիրս ի ձեռն Ջաղելի ումեմն [կարդա՛՝ ուրումն], որ աշակերտեցաւ նմա»)։ Ա. Սարուխան հետեւցուց ասկէ թէ Ջաղայ ծագած ըլլայ «Ջաղելի» ընթերցուածէն, որ կը

նշանակէ վրացերէնի մէջ «Ջաղեցի»․ Հմմտ․ Ա․ Սարուխան, Վրաստան եւ Հայերը, Ա․, Վիեննա 1939, էջ 209—210։

55․ Բնագիրն ունի «յորոց եւ իմ անարժանիս՝ եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ»։ Այս ընթերցուածը մոլորցուցած է գՀ․ Մ․ Զամչեան, համարելու թէ Կորիւն կարգուած է Վրաց եպիսկոպոս․ «Կորիւն ձեռնադրեցաւ ի սրբոյն Սահակայ յեպիսկոպոսութիւն միոյ կողման Վրաց աշխարհին ի վերայ Հայոց եղելոց անդ․ ըստ որում յիշատակէ եւ ինքն» (Ա․ 537)։ Այս ըմբռնումը իշխեց երկար ժամանակ։ Առաջին անգամ Նորայր (385—386) կասկածեցաւ բնագրի հարազատութեան վրայ եւ առաջարկեց ուղղել․ «յորոց եւ գտան արժանիք ելանել ի կարգ եպիսկոպոսութեան վիճակի»։ Թադէոս Աւգալբեգեան, Անյայտ աղանդաւորներ, էջ 47—52, փորձեց կարդալ «Յորոց եւ (գ)ոմանս արժանիս եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակ»․ սրբագրութիւն մը, զոր պիտի չհանդուրժէր Կորիւն իր էջերուն մէջ։ Հանդ․ Ամս․ 1936, էջ 528 առաջարկած եմ․ «յորոց եւ ոմանք արժանի եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակեցան» եւ կամ «յորոց եւ ոմանք արժանի ի կ․ ե․ վիճակի»։ Մ․ Աբեղեան, Կորիւն, էջ 64 (Հմմտ․ նաեւ 115) հետեւած է Նորայրի, փոփոխելով միայն «ելեալ ··· վիճակ»։ Այժմ ուղղագոյն կը թուի ինծ կարդալ․ «Յորոց եւ ոմանց արժանի եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակել»։ Տես նաեւ Ներածութիւն։

56—57․ Սամուէլ եպիսկոպոս։ — Կորիւն կը գրէ․ «Սամուէլ ··· այր սուրբ եւ բարեպաշտօն, եպիսկոպոս կացեալ տանն արքունականի»։ Ուրիշ տեղ կրկին անդրադառնալով իրեն կ'ըսէ․ Մաշտոց կ'այցելէ Տաշիրք․ երկրին իշխանն է Աշուշայ, որ կը տրամադրէ Վարդապետին ինքզինքը եւ իր բովանդակ գաւառը։ Մաշտոց մեկնելու պահուն «յանձն արարեալ զնոսա սրբոյ եպիսկոպոսին Սամուէլի, այնմ զոր ի վերոյ նշանակեցաք» (ԺԵ․ 3)։

Այս տեղ «տանն արքունականի» չի կրնար Վրաց թագաւորի արքունիքը նշանակել, այլ միայն Տաշիրքի տիրոջ, Աշուշայ բդեշխի արքունիքը։ Հանդ․ Ամս․ 1936, էջ 529 առաջարկած էի կարդալ «Տանն Արշուշայ իշխանի»։ Արշուշայի մասին տե՛ս վարը Ծան․ 73։ Աշուշայ բդեշխի արքունիքը կը գտնուէր Ցուրտաւ քաղաքին մէջ․ որ նաեւ Սամուէլի աթոռանիստ քաղաքն էր։ Ցանկ մը Ցուրտաւի եպիսկոպոսներու «ի Ս․ Շուշանկանէ եւ այսր» տուած է Կիւրիոն Կաթ․ իր առ Աբրահամ Կաթ․ թղթին մէջ (Գիրք Թղթոց, 178)։

58․ Կէս ազգ Հայոց։ — 385ին բաժնուեցաւ Հայաստան Պարսից (Շապուհ Գ․) եւ Հռոմայեցւոց (Թէոդոս Ա․) մէջ։ Պարսից Բաժնին թագաւոր կարգուած էր արշակունին Խոսրով Գ․, որ ստացաւ երկրին չորս հինգերորդական մասը․ Հռոմայեցւոց Բաժնին թագաւոր մնաց Պապի որդին Արշակ Դ․, որ ստացաւ երկրին մէկ հինգերորդական մասը։ Այս մասը, զոր Հռոմայեցիք անուանեցին Armenia magna (Մեծ Հայաստան) կը բաղկանար Անտիտաւրոսի եւ Արածանի գետին հիւսիսային կողմը գտնուող հետեւեալ բարձրագաւառներէն․ Եկեղեաց, Դերջան, Խորձեան, Կարին եւ այլն։ Սեւ ծովէն բաժնուած էր Պողեմոնեան Պոնտոս գաւառով, Փոքր Հայքէն՝ Եփրատով, Երասխի Ջրաբաշխը դէպի Պարսկահայաստան սահմանն էր, սակայն բաց էր եւ անպաշտպան։ Հարաւէն քանի մը գաւառներ կտրուած եւ արդէն գոյութիւն ունեցող հռոմէական սատրապութեանց կցուած էին (Հմմտ․ Կ․ Գիւտերբոք, Հռովմէական Հայաստան եւ հռոմէական սատրապութիւնները, Վիեննա 1914, էջ 30—31․ Հիւբշման, Տեղւոյ անուններ, էջ 33—36)։

Հռոմէական Հայաստանը այնուհետեւ նկատեցին Հայերը «Կէս բաժին Հայոց», ինչպէս երիցս կոչած է Կորիւն (ԺԴ․ 1, 4—5)․ «վասն կէս ազգին Հայոց, որ էր ընդ իշխանութեամբ թագաւորին Հոռոմոց», «վասն ··· յաշակերտութիւն առ ի կէս ազգէն Հայոց ժողովելոյ»․ «ի գաւառս կէս ազգին Հայոց»։ Ասութիւնս կը գտնենք նաեւ Փաւստոսի քով, Զ․ 1 (Խոստաբանութիւն)․ «Յաղագս ընդ երկու բաժանելոյ աշխարհին Հայոց․ զի կէս ազգին Հայոց թագաւորեաց (տպ․ թագաւորեալ) Արշակ հրամանաւ թագաւորին

Յունաց, եւ կէս ազգին՝ թագաւորեաց (տպ. թագաւորեալ) Խոսրով հրամանաւ թագաւորին Պարսից»:

59. Անատոլիոս սպարապետ: — Մաշտոց այս ճանապարհորդութեան ձեռնարկած էր իբր 420ին: Այս շրջանին հռոմէական արեւելեան բանակին սպարապետը (militum per Orientem magister) իր նիստն ունէր Անտիոք: Մեզի անծանօթ են ընդհանրապէս 410—436 տարիներու արեւելեան սպարապետները յանուանէ, եւ մասնաւորապէս Անատոլիոսի սպարապետութեան առաջին տարին: Պրոկոպիոս (վասն Պարսկ. Պատ. Ա. 2) խօսելով 421/22ի Հռոմայեցւոց եւ Պարսից մէջ ծագած կռուոյ մը մասին, կը գրէ թէ Անատոլիոս իր հնարամտութեամբ վերջ տուաւ պատերազմին: Այս շրջանին էր, որ Անատոլիոս ասպնջականութիւն շնորհեց Ասպահապետին, որ Վռամ Ե.ի հալածանքին տեղի տալով Հռոմայեցւոց քով ապաստան խնդրած էր, ինչպէս կը պատմուի Ս. Եւթիմիոսի վարքին մէջ: Գիտենք, որ Անատոլիոս 438ին Magister utriusque militiae per orientem կարգուեցաւ, ըստ Մարկեղղինոսի 441ին հրամանատարն էր Պարսից դէմ գրգռուած կռուի մը, որ վերջ գտաւ միամեայ զինադադարով. 446ին պատրիկ եւ magister militum praesentalis անուանուեցաւ, երկիցս դեսպանութեամբ Ատտիղայի առաքուեցաւ եւ 451ին ներկայ էր Քաղկեդոնի ժողովին: Հմմտ. Seeck: Pauly-Wissowa, Realenzyklopädie II (1896) էջ 2072 եւ R. Aigrain: Dictionnaire d'histoire et de géographie ecclésiastiques II (Paris 1914) 1496—1497. Ակինեան, Եղիշէ վարդապետ, Ա., 261—270:

«Ի մուտս ճանապարհին»: — Մաշտոց Հռոմէական Հայաստանի եպիսկոպոսներէն, իշխաններէն, գաւառականներէն եւ ի վերջոյ սպարապետէն պատիւներ կը գտնէ: Կը տեսնուի ասկէ, թէ Մաշտոց Անատոլիոսի պատահած է գաւառներ կտրելէ ետքը, բայց Մելիտենէ հասնելէ յառաջ: Միւս կողմէ ծանօթ եղած է Դերջանի եպիսկոպոսին: Արդ կը հարցնենք. ո՞ւր պատահեցաւ Մաշտոց Սպարապետին եւ ո՞ւր սպասեց Կայսեր պատասխանին. ի՞նչ իմանալու է «ի մուտս ճանապարհին»: Հ. Յ. Թորոսեան (Բազմավէպ, 1931, էջ 469—471, կ'առաջարկէ տեղիքս կարդալ «Անատոլիս ի քաղաքին Անտիոք. խոստանայր լինել ձեռնտու ճանապարհին»: 1936ին փորձած էի Բնագրին

Ի ՄՈՒՏՃԱՆ ԱՊԱՐՀԻՆ ուղղել
Ի ԴԵՐ ՋԱՆ ԳԱՒԱՌԻՆ

այս ինքն Մաշտոց Պարսկական-Հայաստանի սահմանէն անցնելով մտաւ Հռոմէական Հայաստան, հասաւ Կարին եւ յառաջացաւ մինչեւ Դերջան եւ գաւառ առաւ. թերեւս նաեւ հոս տեսակցութիւն ունեցաւ Անատոլիոսի հետ: Դերջան սահմանակից է Սատաղ քաղաքին, որ Փոքր Հայոց կը վերաբերի եւ կրնայ նկատուիլ նաեւ «մուտք ճանապարհին» դէպի անձուկ իմաստով Հռոմէական հող, ուսկից ռազմավիրական ճանապարհը կ'իջնայ դէպի Մելիտենէ: Արդեամբք ալ երբ կը հասնի Կայսերական հրամանը, Մաշտոց իր աշակերտներու եւ Դերջանի Գինդ եպիսկոպոսի հետ կը մեկնի Մելիտենէ եւ ապա նոյն եպիսկոպոսին ընկերակցութեամբ դէպի Կ. Պոլիս:

60. Արկադիոս Կայսր վախճանեցաւ 408ին, թողլով գահին ժառանգ Թէոդոս Բ. Փոքր հնգամեայ հասակին: Մինչեւ 415 վարեց պետական գործերը Անթեմիոս. ապա Ծերակուտին հաւանութեամբ պետութեան վարչութիւնը ձեռք առաւ հանճարեղն Պուլքերիա, կայսեր քոյրը Աւգոստա տիտղոսով: 421ին ամուսնացուց Պուլքերիա իր եղբայրը Եւդոկիայի հետ: Թագուհին օգնական ունենալով Քրիսափիոս ներքինին, միջամուխ եղաւ վարչական գործերու մէջ. անոր անկումէն վերջ Քրիսափիոս էր որ կը վարէր պետութիւնը: Պուլքերիա դժկամակ եղածներէն՝ առանձնացաւ իր սեպհական պալատը:

Սխալը զոր գործած էր Թէոդոս Մեծ Հայոց հանդէպ, ջանաց Թէոդոս Բ. ըստ կարի ուղղել: Երբ Մաշտոց դիմեց Կայսեր Հռոմէական Հայաստանի մէջ դպրոցներ բանալու, հայ դպրութիւնը ուսուցանելու, քարոզելու եւ եկեղեցական գեղծումները դարմանելու, յօժար կերպով ընդառաջ եկաւ իրեն կայսրը եւ պետական գանձարանէ տրամադրեց կարեւոր պէտքերը: Հաւանօրէն նաեւ հայ թարգմանիչներուն ի Կ. Պոլիս ձեռնտու եղաւ: 451ին, երբ հայ պատգամաւորութիւնը խնդրեց Կայսեր օգնութիւնը Պարսից դէմ, նպաստաւոր տրամադրութիւն ցոյց տուաւ. բայց ի դերեւ հանեց ամէն յոյս կայսեր արկածաւոր մահը 28 յուլիս 451:

Յարէուենիս յուղարկելոյ: — B ձեռագիրն ունի հոս. «հրաման ելանէր (ի Կայսերէ) վայելուչ մեծարանօք զՍուրբն ակումիտ անուն կոչելոյ: Այսպէս մտած է բառս նաեւ Բառագրքերու մէջ. ՆՀԲ կը մեկնէ ἀκοίμητος «անքուն. տքնող. հսկող». այսպէս նաեւ Աճառեան, Արմատ. Բառ. Ա. 95 եւ Հիւբշման, Հայ. Քեր. 339: Հմմտ. Վարք Հարանց, ԺԴ. «Հանդիպեցաւ նմա միայնակեաց մի Անհանգստից վանացն, որ կոչի Ակիմիտ»: Թերեւս այս ընթերցուածի ազդեցութեան տակ եղած է նաեւ Մ. Խոր. Գ. 57. երբ կ'ըսէ թէ «յաւաջին վարդապետս գրեցաք զնա»:

Հ. Յ. Թորոսեան, Բազմավէպ, 1931, էջ 473 ճշդիւ ուղղած է «յարքունիս յուղարկելոյ». հմմտ. Մաշտոց վարդապետ, էջ 140:

Աւգոստականն: — Կորիւն նկատի ունի երկու գահ եւ երկու գահակալներ. անոնք են առանց տարակուսի Թէոդոս Բ. իբրեւ Թագաւոր եւ իր քոյրն Պուղքերիա իբրեւ Աւգոստա եւ վարիչ պետական գործերու: Ըստ այսմ իմանալու է ԻԴ. 3. «մտեալ (Մաշտոցի) առաջի պատուակալ Աթոռոցն՝ յանդիման լինէր աստուածակարգ Թագաւորացն» եւ ԺԴ. 3. «Եւ երկիր պագեալ ծիրանափառ Աւգոստականացն»:

Աւգոստական լատ. Augustus, իգ. Augusta բառն է, որ կը նշանակէ բնական իմաստով «սուրբ, նուիրական, պաշտելի», որ ապա իբրեւ պատուանունական տիտղոս յատկացուեցաւ Կ. Ոկտաւիանոս Կեսարի, երբ միապետ հռչակուեցաւ: Յաջորդ կայսրները ժառանգեցին գահին հետ այս պատուանունն ալ: Յոյները նոյնը արտայայտեցին σεβαστος (իգ. σεβαστή) բառով, որ իր կարգին փոխ առնուեցաւ հայերէնի մէջ ալ «Սեբաստոս»: Սովորութիւն եղաւ պատուանունս գործածել նաեւ Կայսրուհւոյն, Կայսեր մօր եւ քրոջ եւ դստեր համար: Հիպպողիտոս իր ժամանակագրութեան մէջ կը գրէ. «Կայսր Սեբաստոս Ոկտաբիոս, որ եւ Աւգոստոս… յորմէ հետէ Աւգոստեանն եւ Սեբաստեանք անուանեցան Թագաւորք Հռովմայեցւոց» (Անանուն Ժամ., էջ 25). այսպէս նաեւ Եւսեբիոս իր ժամանակագրութեան մէջ (Ա. 196). «Աւգոստոս որ Սեբաստոսն յորջորջեցաւ եւ թարգմանի Պաշտելի»: Եւթաղի քով ունինք «աւգոստից» (էջ 100), մինչ Ոսկ. Պաւղ. Ա. 207. «Ինքնակալ» կը թարգմանէ, ուր յն. ունի «աւգուստոս»: Աւգոստոս եւ Սեբաստոս բառերու շուրջ տես Վարդանեան, Եւթաղի Մատենագրութիւնք, էջ 100—101:

61. Ակակիոս եպիսկոպոս Մելիտենէի: — Մելիտենէ Փոքր Հայոց մայրաքաղաքն է, այժմ Մալաթիա անուամբ, Եփրատի ափին: Եպիսկոպոսանիստ քաղաք էր: 418/9ին, երբ հանդիպեցաւ հոն Մաշտոց, քաղաքին եպիսկոպոսն էր Ակակիոս: Սա 390ին Մելիտենէի եկեղեցւոյն պաշտօնեաներէն մէկն էր, ինչպէս կը պատմուի Ս. Եւթիմիոսի Վարքին մէջ, ծագումով ազնուական ընտանիքէ, հմուտ արտաքին եւ եկեղեցական գիտութիւններու: Ոտրէոս, Մելիտենէի եպիսկոպոս, անոր խնամքին յանձնած էր Ս. Եւթիմիոսի դաստիարակութիւնը: Թէ ե՞րբ քաղաքին եպիսկոպոս կարգուեցաւ Ակակ, չգիտենք. յամենայն դէպս 419ին եպիսկոպոսական գահին վրայ ողջունից զինքը Մաշտոց: Անոր հոգացողութեան յանձնեց Մաշտոց իր աշակերտները:

Ակակ անձամբ ծանօթ Կ. Պոլսոյ Նեստոր եպիսկոպոսին հետ, զուր տեղ աշխատեցաւ (430) եւ կեցնել զանիկա մոլար վարդապետութենէն: 431ին մասնակցեցաւ Եփեսոսի ժողովին: 433/34ին ի միասին Եդեսիոյ Ռաբուլա

եպիսկոպոսին հետ խօլ պայքար մղեց Թէոդորոս Մոպսուեստացւոյ գրուածքներու դէմ: Գրեց զգուշացուցիչ թուղթեր նաեւ Սուրբ Սահակին եւ Հայ Նախարարներուն (Հռոմէական Հայաստանի): Փութաց Ս. Սահակ անդորրացնել զինքը (այս թղթակցութիւնները տես Գիրք Թղթոց, էջ 14—18, 19—21):

Ակակ վախճանած ըլլալու է 449էն յառաջ, վասն զի այս տարւոյն Եփեսոս գումարուած ժողովի մը մէջ Մելիտենէի եպիսկոպոս կը յիշուի Կոստանդիանոս: Հմմտ. U. Rouziesի յօդուածն Dictionnaire d'histoire et de géographie ecclesiastiques, I. p. 242—243 եւ Ակինեան, Մաշտոց Վարդապետ, էջ 140—141 = Հանդ. Ամս. 1936, էջ 531/32:

62. Ղեւոնդիոս, որուն տեղական անունը չէ յիշած Կորիւն, էր անշուշտ «ի Վանանդայ» (Փարպ. 101), որ յետոյ Կորիւնի հետ Կ. Պոլիս ուղարկուեցաւ Ս. Սահակէ եւ Մաշտոցէ տանելու համար Պրոկղի թուղթին պատասխանը (Կոր. ԺԶ. 4): Մեծ մասնակցութիւն բերաւ Ղեւոնդ 451ի կրօնական պատերազմին. նահատակուեցաւ 454ին ի Ռեւան: Հմմտ. իր մասին՝ Մաշտոց Վարդապետ, էջ 188—190:

63. Գինթ եպիսկոպոս Դերջանայ: — Դերջան (յն. Δερξηνη, լտ. Dercene, Derxene) Բարձր Հայոց գաւառներէն մին է, այժմ Մամախաթուն գլխաւոր քաղաքով: Այս տեղ էր հին Բագառիճը կամ Բագայառիճը: Հաւանօրէն հոս էր Գինթ եպիսկոպոսի աթոռանիստը: Այլուստ անծանօթ է Գինթ եպիսկոպոս:

64. Յարճունատուր դեսպակս: — B ձեռագիրը կ'ընծայէ հոս աղաւաղուած ընթերցուածս. «յանարւոյն դիմոսական»: Հ. Յ. Թորոսեան (Բազմավէպ, 1932, էջ 5—7) առաջարկած է կարդալ կա՛մ «ի կառս՝ ի դեսպակս արքունականս» եւ կամ «եւ կալեալ զճանապարհս արքունական»: Ես փորձած էի ընթեռնուլ «յԱնտիոք ի դեսպակսն» (Մաշտոց Վարդապետ, էջ 141): Այժմ նկատի առնելով Կ. Պոլսէն վերադարձի համար բուածը. «ելանէին ի դեսպակս ի կառս արքունատուրս» (Ագ. «ելանէին յոսկիապատ կառս արքունատուրս») կը համարիմ թէ նաեւ հոս նոյն ասութիւնը գործածուած ըլլայ, քանի որ հոս ալ արքունական հիւրասիրութիւնը կայ. միւս կողմէ Կ. Պոլիս հասնելու համար անհրաժեշտութիւնը չկայ Անտիոքի ճանապարհը բռնելու: Կը կարդամ «յարքունատուր դեսպակս»: Բառս դեսպակ բաւական յաճախութեամբ գործածուած է դասական եւ ոչ դասական հեղինակներու քով. քիչ վարը բառիս կցուած «ի կառս» պէտք է նկատել երկրորդ ձեռքէ լուսանցագրութիւն:

65. Ատտիկոս Եպիսկոպոս Կ. Պոլսոյ, բնիկ Սեբաստացի, մայրաքաղաքին եպիսկոպոսական գահը բարձրացած է 415/16ին եւ վախճանած է 10 Հոկտեմբեր 425: Կ'ըսուի թէ իր խօսուածքին մէջ զգալի էր հայկական շեշտը: Եպիսկոպոսին «հայրապետին սրբոյ» տիտղոսը կը համարիմ եկամուտ. իսկ «կաթողիկոս» յորջորջումը, որ նաեւ՝ քիչ յետոյ կը կրկնուի, իմանալու է Մետրապոլիտ իմաստով:

66. Մաշտոցի Կ. Պոլիս երթալու ճշգրիտ տարին կարելի չէ մատնանշել. P. Peeters, Pour l'histoire des origines de l'alphabet arménien: Revue des études armeniennes, 9 (1929), 203—237, յատկապէս էջ 212, կը նշանակէ 422 տարւոյն. ես համարած էի 419/20ին (տե՛ս Մաշտոց Վարդապետ, էջ 143): Ներքին ցուցմունք կ'ենթադրեն 416—426 տարիները, երբ Կ. Պոլսոյ եպիսկոպոսն էր Ատտիկոս: Այս 10 տարիները կարելի էր սեղմել, եթէ ունենայինք ճշգրիտ տեղեկութիւններ Մելիտենէի Ակակ եպիսկոպոսի գահակալութեան եւ Անատոլիոսի սպարապետութեան առաջին տարիներու մասին: Նկատի առնելով Կորիւնի արտայայտութիւնքը «մտեալ առաջի պատուակալ աթոռոցն՝ յանդիման լինէր աստուածակարգ Թագաւորացն... եւ երկիր պագեալ ծիրանափառ Աւգոստականացն», կարելի է մտածել թէ Կորիւն աչքի առաջ ունեցած ըլլայ Թէոդոս Բ. եւ անոր քոյրն Պուղքերիա աւգոստա: Պուղքերիա պետական գործերը Թէոդոսի յանձնեց 419/20ին (տե՛ս վերը Ծան. 60): Մաշ-

տող 411—416 մերձաւորապէս անցուց Գողթն—Սիւնիք—Աղուանք—Վրաստան. ուստի կարող էր դէպի Հռոմէական Հայաստան ուղեւորութեան ձեռնարկած ըլլալ 417ին: 418—421 տարիներուն Զատիկը կը պատահէր. 7 ապրիլ 418, 30 մարտ 419, 18 ապրիլ 421:

67. Սակր, Սակերf: — Բառս Կորիւնի քով կը գտնենք յգ. հայցական եւ գործիական հոլովներով. «Սակերօք կայսերագիր նշանակելովք. հանդերձ սակերօք կայսեր. առեալ սակերս կայսերական նշանօք». ուր Սակերf ներկայացուած է ըստ իմաստին հայերէն թարգմանութեամբ «կայսերագիր նշանակաւք», ինչպէս առաջին վկայութենէն կը տեսնուի, «նշանակելովք» կարդալով նշանակաւf: Այսպէս պէտք է ուղղել նաեւ յաջորդ երկու վկայութիւններու մէջ: Բառիս եզակի ձեւը սակր կը տեսնուի հետեւեալ տեղիքներու մէջ, զորոնք յառաջ կը բերէ ՆՀԲ. Վենետիկի Գ. Ճառընտրէն. «Թագաւոր ոք տպաւորելով զբանն ի քարտիսի, որ Իտալացւոց բարբառովն սակր ասի: Յորժամ ոք զթագաւորական սակր ապականելով որպէս զբան թագաւորին՝ ի մահ ածի»: Սակր, ինչպէս ՆՀԲ. ուղիղ իմացած է, լատ. sacer բառն է, իմաստով «սրբազնեալ մճիռ կամ գիր արքայադրոշմ»: Կ՚ըսուի epistola sacra sacra imperialis, նաեւ բառիս չեզոք ձեւի (sacrum) յոգնակին՝ sacra (ասկէ յն. σάχρα), ինչպէս ունի Ս. Գրիգոր Մեծ (Epist. I. 47). Ս. Նեղոս առ Փիլիպպոս սքոլաստիկոս թուղթին մէջ կը գրէ. ἐπὰν δὲ ὑπογραφὴν δέξεται βασιλέως, δῆλον ὡς σαχρα ὀνομαζεται (կայսեր կողմէ ստորագրուած գիրը կը համարուի սակրա (սակերք): Հմմտ. Ed. Brinckmeier, Glossarium diplomaticum, II, Hamburg 1855, S. 495 եւ Du Cange, Glossarium, VII. Paris 1938, p. 256. Sacra կ՚անուանէին յատկապէս արեւելեան հռոմէական Կայսրներու այն հրովարտակները, որոնցմով որ եւ է շնորհ կամ աստիճան կը բաշխէին կայսերք ինքնագիր ստորագրութեամբ:

Կորիւնի բացատրութիւնը «Կայսերագիր նշանակք» պէտք է իմանալ «Կայսերագիր ստորագրութիւն» եւ կամ «Կայսերագիր կնիք». հմմտ. Ոսկ. Եփես. (ՆՀԲ). «Այս կնիք կայցէ ի վերայ բերանոյ ձերոյ. մի առնուցուս գնշանակն ի բաց»:

68. Բորբորեանf: — B ձեռագիրն եւ տպագիրք ունին նախ «Բարբարոսաց» եւ ապա «Բարբարիանոսաց աղանդ». H կը կարդայ «աղանդն Բորբորիանոսացն». Մ. Խոր. Գ. 57, 58. «աղանդն Բորբորիտոնաց»: Առաջին անգամ Եպիփան Կիպրացւոյ քով կը հանդիպինք աղանդիս «Բորբորիտք» (Բորբորեանք) անունով, այն է «տղմայինք». ծագած յն. βόρβορος, «աղբ, տիղմ, սիկ». ասոնք գնոստիկեաններ են, կամ գոնէ անոնցմէ մաս մը: Արդէն Կղեմէս Աղեքսանդրացի կը ստգտանէ գնոստիկեաններէն ոմանք, թէ նոխազի նման անձնատուր են հեշտասիրութեան, պղծելով իրենց մարմինն եւ թաթաւելով իրենց հոգին չարութեան տիղմին մէջ (Strom, II. 20. III, 47): Թերեւս Կղեմէսի ազդեցութեան տակ Բորբորեան անուանած ըլլայ զանոնք Եպիփան, որ կը գրէ (Haeres, XXVII, 3). «Անոնք Բորբորեանք, այսինքն տղմի նման անմաքուր կը կոչուին: Կ՚անուանուին նաեւ Կոդդեանք, ասորերէն codda կը նշանակէ դաշտավայր, սարահարթ. այսպէս կոչած են, վասն զի անոնց անառակ կենցաղի պատճառաւ ոչ ոք անոնց հետ կերակրոյ նստիլ կ՚ուզէ. զանոնք կը հեռացնեն ինչպէս պղծեալներ. անոնց հետ հաց չեն բեկաներ: Անոնք կը նկատուին նզովեալներ. ով որ անոնց հետ կենակցի, կը կոչուի Կոդդեան: Այսպիսիներ Եգիպտոսի մէջ ստրատիոտf եւ Փիբիոնիտք կը յորջորջուին. ոմանք Զակէեանք, ուրիշներ Բարբելիտք կ՚անուանեն»: Բոլոր այս անունները, բացի վերջինէն, առաջին անգամ Եպիփանի քով կը յիշուին: Ասկէ կարելի է հետեւցնել, թէ Գնոստիկեաններու մէջ Բորբորեան աղանդաւորներ գոյութիւն չեն ունեցած, գոնէ Ե. դարէ յառաջ: Ս. Աւգոստինոս (Haeres VI) այն կարծիքի է, թէ անոնց այլաբանօրէն տրուած է այս անունը: Թէոդորետի (Haeret. Fabul. ,I 13) համաձայն Վաղենտինեանց ճիւղաւորումներն են Բարբլիոտք կամ Բորբորեանք, Նաասեանք, Ստրատիոտք եւ Փիբիոնիտք. այսպէս Բորբորեանք անունը ստացած են, իրենց արարողութեանց պատճառաւ, որոնք

աներեւակայելիօրէն ամօթալի են: Փիլոստորգիոս (Hist. eccles. III) կը պատմէ թէ Դ. դարուն Աւետիոս Բորբորեանի մը հետ վէճի բռնուած եւ զայն լռեցուցած է: Ասոնք յիշուած են ուրիշ հերձուածողներու թուին մէջ 428ին (Cod. Theod. XVI, v, 65):

Եպիփանի Յանդիմանութիւնն հերձուածողաց թարգմանուած էր հայերէնի. զոր Եզնիկ կարդացած էր: Անոր համառօտութեան նոր թարգմանութեան մէջ կ՚ըսուի պարզապէս. «ՃԼ. Բորբիոսք, որք ասին Տզմայինք. զամենայն մեղս անխտիր գործեն» (Արարատ, 1892, էջ 18): Մ. Խորենացւոյ «Բորբորիտոնաց» կ՚ենթադրէ յոյն աղբիւր մը:

Կորիւն կը նկատէ այս աղանդաւորները «ժանտագործ ազգ», «դժպիհ եւ կամակոր աղանդ»: Անոնք Հռոմէական Հայաստան թափանցած պէտք է ըլլան Ասորիքէն 385էն ետքը: Անոնց դէմ մաքառած է Ե. դարու առաջին երեսնամեակին Եդեսիոյ եպիսկոպոսը Ռաբուլա. անոր կենսագիրը կը հաղորդէ տողերս. «Բարբոյեաններու ամօթալի աղանդն եւ աղտեղի աւանդութիւնը հալածեց Ռաբուլա իր կեանքին բովանդակ տեւողութեան. շարժած ճշմարիտ մարդասիրութենէ. որովհետեւ անոնց ժանտագործութիւնն այնպէս մեծ եւ անոնց վարդապետութիւնն այնպէս պղծալի է, որ մաքուր շրթունքներն եւ ողջախոհ ականջները պիտի աղտեղէին, եթէ ուզէինք անոնց մասին խօսիլ: Այս պատճառով ալ սահմանեց Ռաբուլա, որ անոնք իր թեմին մէջ չհամարձակին երեւալ»:

E. de Faye, Gnostiques et gnosticisme, Paris 1925, p. 421—423. G. Bardy, Borboriens: Dictionnaire d'histoire et de geographie ecclesiastiques, t. (Paris 1936), p. 1178/1179. G. Bickell, Ausgewählte Schriften der syrischen Kirchenväter Aphraates, Rabulas und Isaak von Ninive, Kempten 1874, S. 197. Ակինեան, Մաշտոց վարդապետ, էջ 150—151:

69. Բենիամին երէց: — Ազգով աղուան էր Բենիամին, իր ազգային լեզուն էր աղուաներէն. քանի որ ինքը կոչումով երէց է, պէտք է ժողովուրդն ալ քրիստոնեայ եղած ըլլայ: Բենիամին կը ներկայանայ Մաշտոցի, երբ նա Հռոմէական հողի վրայ կը գտնուէր. կը խնդրէ վարդապետէն աղուաներէն լեզուի համար այբուբեն:

Մաշտոց իբր 5 տարի յառաջ Աղուանից աշխարհը գացած, թագաւորի եւ եպիսկոպոսի հաւանութեամբ դպրոցներ բացած, եւ որովհետեւ հայերէնախօսէր էր աշխարհը, հայերէն գրականութիւնը անոնց մատչելի ըրած էր: Այն ժամանակ «աղուաներէն» լեզուի համար մասնաւոր այբուբենի պէտքը չէր զգացուած: Ի՞նչպէս այժմ օտար հողի վրայ աղուան երէց մը նման խնդրանք մը կրնար ներկայացնել Մաշտոցի:

Հարկ է հոս «աղուան» անուան տակ ոչ-աղուան ժողովուրդ մը ենթադրել: Աղուան եւ Աղան (Ալան) ժողովուրդներու անունները թէ Հայոց եւ թէ յոյն եւ լատին հեղինակներու քով իրարու հետ կը շփոթուին, թէ դրացիութեան եւ թէ անուան նմանահնչութեան պատճառաւ: Այս տեղ «աղուան» անուան տակ պէտք է իմանալ Ալանները, եւ այն ա՛յն Ալանները, որոնք Գոթերու հետ Արեւմուտքէն գաղթած են Արեւելեան Հռոմէական Պետութիւն, եւ հոն զինուորական ծառայութեան մտած: Երկար ժամանակ Գոթերու հետ ի միասին ապրած, կորսնցուցած էին Ալանները իրենց մայրենի լեզուն եւ կը խօսէին գոթերէն: Ուստի այստեղ Բենիամին ազգով ալան անուանուած է, իր խօսած լեզուն ալ ալաներէն կամ «աղուաներէն»:

Մաշտոց կատարած է անոր խնդրանքը: Այն այբուբենը, զոր նա կազմած եւ յանձնած է Բենիամինին, այժմ սովորութիւն է կոչել գոթական այբուբեն, որ կը բաղկանայ 27 նշանագիրներէ: Հիմնական տարրն է հոն յունականը, նոր են 7 նշանագիր միայն, որոնք ձեւուած են Մաշտոցէն այն սկզբունքով կամ գիր յօրինելու արուեստով, զոր նա կիրարկած էր հայերէն այբուբենի վրայ:

Այս գոթական այբուբենէն ծագած են ռուն (run) կոչուած այփաբետը, որ գործածուած է ի սկզբան փայտագրութեան համար, եւ ապա նաեւ քարեայ

եւ մետաղեայ առարկաներու վրայ։ Մնացած են այս ռուն կոչուած գրերով արձանագրութիւններ, անթուական։ Անոնցմէ խումբ մը կը ներկայացնէ մի եւ նոյն բնագիրը առաւել կամ նուազ ամբողջութեամբ։ Այս խումբը սովորութիւն է կոչել առաջին 6 գրերու անունով Fut'ark։ Ինծ յաջողեցաւ կարդալ այս արձանագրութիւնը. որ էր ռուն գրերով գրուած հայերէն նախադասութիւնս. «Փութացարուք աւրհնել զՔրիստոս Տէր Էմլ. (Էմանուէլ) ընդ (մեզ Աստուած. յաւիտեանս յաւիտենից)»։ Կը համարիմ, թէ Մաշտոց երբ յանձնեց գոթական այբուբենը Բենիամինին, սա խնդրեց յիշատակի համար նոյն նշանագիրներով հայերէն նախադասութիւն մը, որ պիտի ծառայէր Գոթ ժողովուրդին համար իբրեւ պահպանակ, գիր օրհնութեան։

Այդ ժողովուրդը թէեւ անտեղեակ պիտի մնար գրուածքին իմաստին, բայց գրողին հմայիչ անձը պիտի պարգեւէր գրուածքին պահպանիչ ոյժ։ Եւ իբրեւ այսպիսի պահպանակ շրջան ըրած է այն Նորուեգիա, Շուէտ, Գերմանիա եւ Անգլոսաքսոնական երկիրներ։

Տե՛ս Մաշտոց վարդապետ, էջ 295—420։

70. Եռովք եւ Դանան։ — Մաշտոց իր այս երկու աշակերտները կը զետեղէ Հռոմէական Հայաստան, չ'ըսուիր ո՛ր քաղաքը կամ գաւառը, հսկելու համար դպրոցներու եւ տարածելու համար հայկական դպրութիւնը։ Եւ ընդհանրապէս անծանօթ կը մնան մեզի ոչ միայն այս երկու աշակերտներու գործունէութիւնը, այլ եւ Հռոմէական Հայաստանի գրական բարգաւաճումը։ Ծաղկեցա՞ւ հոն հայ գրականութիւնը, թարգմանական արուեստը եւ այլն։ Ե. դարուն վերջերը ի Թորդան երեւան կու գայ Գառնիկ ճգնաւոր, որ հաւանօրէն Ագաթանգեղոսի խմբագրիչն է։ Կրնայ մտածուիլ, որ Գրիգոր Աստուածաբանի եւ այլ Ս. Հարց գործերէն ինչ ինչ Հռոմէական Հայաստանի արդիւնաբերութիւնն ըլլայ։

Դանան անունը այս տեղ միայն երեւան կու գայ։ Ունի՞ անունս որ եւ է աղերս Դանուն անունի հետ, որ երկիցս կը յիշուի Փաւստոսի քով (Ե. 37. «Դանուն ոմն զամապետ սպարակրացն (՞) դնդին»։

71. Արտաշէս թագաւոր։ — Վռամշապուհ վախճանած էր 408/409ին։ Գահը իբր 10 տարի թափուր մնացած էր, եւ կազմուած էր այն համոզումը, թէ «բարձաւ թագաւորութիւնն Հայոց»։ Բայց Բարձրագոյն Դուռը, թերեւս Ս. Սահակի խնդրանքով, հաճած էր գահ բարձրացնել Վռամշապուհի որդին։ Նկարագիր կարգաց գրութեան հեղինակը՝ Եզնիկ կը գրէ. «Ամս հարուստս մարզպանք Պարսից կալան. ապա Արտաշէզ որդի Վռամշապհոյ թագաւորէ հրամանաւ Պարսից արքային», իբր 421/22ին։ Երբ Մաշտոց վերադարձաւ Հռոմէական Հայաստանէն, գտաւ գահին վրայ Արտաշէս թագաւորը։ Կորիւն աւելի տեղեկութիւն չի տար թագաւորիս մասին։ Սուտ Ղազար Փարպեցի (24—25) կը գրէ թէ «բարձաւ թագաւորութիւն յազգէն Արշակունեաց ի Զ. ամի Արտաշիսի», ուստի իբր 427/28ին։ Հմմտ. Ակինեան, Մաշտոց վարդապետ, էջ 31—34։

72. Արճիւղ թագաւոր Վրաց։ — Մաշտոց երկրորդ անգամ Վրաստան այցելեց իբր 422ին։ Բակուր թագաւոր վախճանած էր. գահին վրայ գտաւ Արձիւղ թագաւորը։ Սա, ինչպէս Պետրոս Մայումայի եպիսկոպոսին կենսագիրը կը հաղորդէ, եղբայրն էր Բակուրի, արդէն յառաջացած տարիքի մէջ։ Յոյն կենսագիրը կ'անուանէ թագաւորս Արսիլիոս, Մ. Խոր. Արձիլ. վրացիք գիտեն «Արձիլ» (Պատմ. Վրաց, էջ 30)։ Տե՛ս Ակինեան, Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան, էջ 21—30։

73. Աշուշայ իշխան Տաշրացւոց։ — Կորիւն գովութեամբ կը յիշէ զինքը իբրեւ «այր պատուական եւ աստուածասէր». եւ Ղազար Փարպեցի կը հաւաստէ, թէ ան «էր այր խելացի եւ խորհրդական» (էջ 52)։ Կորիւն «Իշխան Տաշրացւոց» գիտէ զանիկա, մինչ Փարպեցի թէ «իշխան» եւ թէ «բդեաշխ» կ'անուանէ։ 297էն յառաջ, երբ Գուգարաց նահանգը, ուր էր Տաշիրք, Հայաստանի մաս էր, չորս բդեշխութիւններէն մին էր. իսկ 297էն ետքը Վրաց անցնելով դադրեցաւ բդեշխութիւնը։ Ե. դարուն այն շրջանը, որ բդեշխու-

թեան կ'ենթարկուէր, վերածուեցաւ մարզպանական շրջանի, ուղղակի Տիզբոնի հսկողութեան տակ, այս անգամ Կողքիսէն մինչեւ Կասպից Դուռ տարածութեամբ «Վրաց մարզպան» տիտղոսով։ Այս քաղաքական բաժանմունքի հետեւանքով Նախկին բդեշխական տան իշխանութիւնը ամփոփուեցաւ Տաշիրք գաւառին սահմաններու մէջ, իշխան տիտղոսով։ 422/23ին, երբ Մաշտոց այցելեց Տաշիրք, Վրաց մարզպանն էր, ինչպէս կարելի է ենթադրել, Վասակ Սիւնի, իսկ Տաշիրքի իշխանը՝ Աշուշայ։

Աշուշայ իշխան առանց տարակուսի նոյն է այն համանուն իշխանին հետ, զոր Փարպեցի (էջ 47) կը յիշէ «յաշխարհէն Վրաց բդեշխն Աշուշայ» ի թիւս այն հայ իշխաններու, որոնք հաւաքուած էին Արտաշատ Յազկերտ Բ.ի հրովարտակին պատասխանելու համար (450) եւ անոնց հետ ի Դուռն ուղեւորեցաւ։ Աշուշայ «ունէր կին յազգէն Արծրունեաց (զԱնուշվռամ), զքենի մեծի սեպհին Մամիկոնէից»․ այսինքն զքոյրն Ջուիկի, որ էր կին Հմայեկի Մամիկոնեան, եղբօր Վարդանայ եւ մայր Վահանայ Մամիկոնեանի (Փարպ․ 52, 111)։ Մինչ հայ նախարարներն վերադարձան, «զբդեշխն Վրաց զԱշուշայ» Վասակի որդւոց հետ իր քով պատանդ պահեց Յազկերտ (55)։ Աշուշայ վերադարձաւ 457ին եւ իր քով ասպնջականեց Հմայեակ Մամիկոնեանի կինն եւ որդիքը (Փարպ․ 110—111)։ Աշուշայի որդին էր բդեաշխն Վազգէն (Փարպ․ 118), որ կին առած էր Վարդան Մամիկոնեանի դուստրը՝ Ս․ Շուշանիկը։

Հաւանօրէն Վազգէնի որդին էր այն «Աշուշայ բդեաշխն Վրաց» (Arbula oder Arschuscha der Pitiachsch Georgiens), որ կը յիշուի 541ին Ս․ Եւստաթիոս Մծխիթացւոյ վկայաբանութեան մէջ (Das Martyrium des hl. Eustatius von Mzchetha. Aus dem Georgischen übersetzt von Dschawachoff, bearbeitet von Harnack: Sitzungsberichte der kgl. Preuss. Akademie der Wissenschaften zu Berlin 38 (1901), 875—902։ Կը յիշուի երրորդ մ'ալ 608ին Աշուշան գրչութեամբ Կիւրիոնի առ Սմբատ Վրկան Մարզպան գրած թուղթին մէջ (Գիրք Թղթոց, էջ 170 = Ուխտանէս, Բ․, էջ 95)։

E. Q. Visconti, Iconographie greque, II, Milan 1825, p. 365/6, pl. XVI, n. 10 հրատարակած էր եղնգաքարէ կնիք մը այսպիսի արձանագրութեամբ․

ΟΥCΑC ΠΙΤΙΑΞΗC ΙΒΗΡΩΝ ΚΑΡΧΗΔΩΝ.

Արձանագրութիւնս մեկնած է Հ․ Յ․ Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ․ (Վիեննա 1852), 74, ծ․ 8 «Աշուշայ բդեաշխ Վրաց Կարքեդաց (Գուգարա՞ց»)։ Այսպէս իմացած է նաեւ Յ․ Մարկուարտ, ουσας լրացնելով ας] υσας եւ հարցական մը դնելով χαρχηδωνι քով (Eranšahr, 169 = Հայ Բդեաշխք, Վիեննա 1903, էջ 14), նկատի առնելով, որ Մ․ Խորենացի, Գ․ 60 Կորիւնի յիշած Աշուշան «բդեշխ Գուգարացւոց» ներկայացուցած է։ Փաւստոս Դ․ 50 եւ Ե․ 15 կը յիշէ 297ին անանուն Բդեշխ մը Գուգարաց», ուրիշ մ'ալ Ագաթանգեղոս (էջ 414), նոյնպէս անանուն։ Յամենայն դէպս կնիքիս πιτιαξης հայ Բդեաշխին եւ Վրաց pitiaχšն է, ուստի կ'ենթադրէ «Բդեաշխ Վրաց»։ Հ․ Կ․ Տէր-Սահակեան Καρχηδωνը ուզեց կարդալ Կա(ր)խէթ։ Ես պաշտպանեցի «Գուգարք» մեկնութիւնը (Աշուշայի կնիքը․ Հանդ․ Ամս․ 1907, էջ 121—126, 296—300)։ Առանց տարակուսի եթէ Ուսաս (Աշուշայ) բդեաշխ է, ինքնաբերաբար նկատի պիտի առնուէր Գուգարաց բդեշխութիւնը։ Բայց հոս կը չեշտուի թէ այդ բդեշխութիւնը «Վրաց» բդեշխութիւն է։ Այս պարագային եթէ «Վրաց» իմանանք Վրաստանը (Սաքարթելոյ), հարկ է մտածել, թէ կնիքս յօրինուած է 297էն ետքը, երբ Գուգարք կցուեցաւ Վրաստանի։ Բայց կարելի է նաեւ «Վրաց Բդեշխն» նկատի առնել այն սահմանին մէջ, ինչպէս էր յետոյ «Վրաց մարզպանը»․ այս ինքն «Վրաց բդեշխին» պաշտօնն էր Կողքիսէն կամ Տփղիսէն մինչեւ Կասպից դուռ երկարող անդրկուրեան միջոցի պահպանութիւնը։ Ինչպէս ալ իմանանք, դժուարալուծելի հանգոյց մը կը մնայ Καχξδων անունին առեղծուածը, որ ըստ ձեւին նոյն չէ «Գուգարաց» հետ․ այն հողամասերը, որոնք անցան Վրաց, Վրացիները անուանեցին Սամցխէ։ Զարմանալի երեւոյթ է որ Ιβηρων Καρχηδων մ'ալ կը գտնենք Սպանիայի մէջ,

ἡ ἐν Ἰβηρία Καρχηδών, անունս Կարքեդոմն կը թարգմանուի «Նոր քաղաք», նաեւ կ'անուանուի ἡ καινὴ πόλις: Այս անունով քաղաք մ'ալ կը յիշէն Պղոտարքոս, Ղուկ. 12 եւ Եւտրոպիոս առ Ստեփ. Բիւզանդացւոյ, ἡ ἐν Ἀρμενίοις Καρχηδών, ուր խօսքը Արտաշատի մասին է: Արդեօք նաեւ «Վրաց Կարքեդոմն»ը Նո՞ր քաղաք իմանալու է, շինուած ի կողմանս Վրաց:

74. Եզնիկ Կողբացի: — Կողբ գիւղը Այրարատ նահանգի Ճակատք գաւառին մէջ էր. նշանաւոր իր աղահանքով: Եզնիկ Մաշտոցի երէց աշակերտներէն մին կ'երեւայ, անոնցմէ, որոնք 407ին Մաշտոցի ընկերացան եւ Եդեսիա գետեղուեցան ասորերէնի հմտանալու համար: Իբր 428ին Յովսէփ Պաղնացւոյ հետ դարձեալ Եդեսիա կը մեկնի, այս անգամ հրամանաւ վարդապետաց՝ ասորի Հայրերու գործերը թարգմանելու համար: Ի գլուխ հանելով իրենց յանձնուած թարգմանութիւնները, անոնք կ'անցնին Կ. Պոլիս (իբր 432), յունարէն սորվելու եւ յոյն Հարց գործերը հայացնելու համար: Կ'երեւայ թէ Յովսէփ վաղ կը վերադառնայ Հայաստան: Եզնիկ տակաւին Կ. Պոլիս էր, երբ կը հասնին հոն Ղեւոնդ եւ Կորիւն, Ս. Սահակի թուղթը յանձնելու համար Պրոկղ Եպիսկոպոսին (436): Ապա անոնց հետ կը վերադառնայ հայրենիք, տանելով իր հետ յոյն Աստուածաշունչի ընտիր օրինակ մը: Եզնիկ եպիսկոպոս կը կարգուի Բագրեւանդի. այս հանգամանքով ներկայ էր ան 450ի Արտաշատի ժողովին (Փարպ. 44): Աթոռանիստ գիւղն էր Բլուր. հոս կ'անցնէ Սահակ իր կեանքի վերջին երեք տարիները, զբաղած Եզնիկի հետ Աստուածաշունչի փութանակի թարգմանութիւնը բերուած հաստատուն Օրինակին համաձայն սրբագրելու: Եզնիկ եպիսկոպոսի մահուան տարին մեզի անծանօթ կը մնայ:

Իրմէ հասած է ոսկի մատեան մը՝ Ընդդէմ Աղանդոց: Ունինք իր ձեռքէն թուղթի մը հատակոտորները, գրուած Մաշտոց վարդապետին, եւ Պատմական հատուած մը՝ Նկարագիր Կարգաց: Անանուն են իր կատարած թարգմանութիւնները: Եզնիկի մասին տես Մաշտոց վարդապետ, էջ 54 եւ շար. 188—190 եւ 221—225:

75. Այս ԺԶ. 3 հատուածը, որ BH օրինակներու մէջ զետեղուած է ԺԻ. գլխուն վերջը, հետեւելով դիպաց ժամանակագրութեան, փոխադրեցի այս տեղ: Մ. Խորենացւոյ ծանօթ կ'երեւար այս հատուածը. անոր տողերը. «Եւ վասն զի ոչ հանդիպեցան յայնմ ժողովի (Եփեսոսի) մեծն Սահակ եւ Մեսրոպ՝ գրեն առ նոսա Կիւրեղ Աղեքսանդրացի եւ Պրոկղոս Կոստանդնուպոլսի եւ Ակակ Մելիտինեայ եպիսկոպոսք, զգուշացուցանելով զնոսա. քանզի լուան, եթէ ոմանք ի չարափառացն աշակերտաց առեալ զգիրսն Թէոդորոսի Մամուեստացւոյ, զվարդապետին Նեստորի եւ զաշակերտին Դէոդորի (տպ. Թէոդորի, ձեռագիրք՝ CRSP Դեոդորի)՝ գնացին յաշխարհն Հայոց» (Գ. 61). իրենց աղբիւր ունին Պրոկղի, Ակակի եւ Սահակի թղթակցութիւնները:

Հատուածիս հարազատութիւնը կասկածելի կ'երեւայ ինձ: Կան հոս բառեր եւ ասութիւններ, որոնք չեն կրնար Կորիւնի գրչէն ըլլալ. այսպէս «սիւնհոդոսական հայրապետաց», Կորիւն պիտի ըսէր «ս. հարց»: Ալ 362 անգամ մ'ունի «վասն որոյ եւ սիւնհոդոսական հրամանաւ առաքելոցն». յն. σύνοδος, կազմուած συν+ ὁδός (սիւն–հոդոս), ասկէ նաեւ աս. sunhodos. հայ. սիւնհոդոս, ժողով. (հմմտ. Նորայր, Կորիւն, էջ 124): Աշխարհահալած (ՆՀԲ աշխարհհալած), որ միայն հոս գործածուած է, ըստ բարդութեան է «հալածել զաշխարհ», իսկ հոս «հալածել յաշխարհէ»: Ընդունայնախօս միայն հոս գործածուած է իբրեւ «գիրք ը.»: Իսկ «սուտապատում» (գիրք), Կորիւն կը կիրարկէ մակբայօրէն (Ի. 2 ասկէ Ագաթ. 470): «Առն ուրումն հոռոմի»: Կասկածելի է «հոռոմ» անուան գործածութիւնը այս տեղ: Փաւստոս ունի անգամ մը (Զ. 6), Փաւստոս եպիսկոպոս եւ Առոստոմ «էին լեալ սոքա ազգաւ հոռոմ». այլուր (Գ. 10) Կոստանդիանոս կայսր «Հոռոմոց» եւ Ե. 1. Տերենտ եւ Ադէ «զօրագլուխքն Յունաց» կը կոչուին «զօրագլուխքն Հոռոմոց»: Ագաթ. 12 Կոստանդիանոս կայսր «Յունաց եւ Հոռվմայեցւոց (bt հոռոմոց). Տրդատ կ'ըսէ. «զի զՅունաց աշխարհն եւ զՀոռոմոց (ab զՀոռվմայեցւոց) քաջ

գիտեմ» (109)․ Հռիփսիմեանք եկեալ էին «ի Հռոմոց (այլ ձձ․ ի Հռոմայեցւոց) աշխարհէն»․ այլուր Հռոմայեցիք, հռոմայերէն եւն։ Ա․ Մակաբ․ Ա․ 1․ «ի վերայ Յունաց աշխարհին եւ Հռոմոց»․ Յովհ․ ԺԱ․ 48․ «Գայցեն Հռոմք» (յն․ οἱ Ῥωμαῖοι Հռովմայեցիք)․ այլուր յաճախ Հռովմայեցիք, այր հռոմայեցի եւն։ Այս տեղիքներու մէջ Հռոմք նոյն են Հռովմայեցւոց հետ․ ըստ այսմ «հոռոմ» նոյնպէս Հռոմայեցի պէտք է նկատել։ Բայց Թէոդորոս Անտիոքացի յոյն է։ Զ․—Է․ դարերուն ընդհանրացաւ Հոռոմք ձեւը արեւելեան Կայսրութեան համար, իբրեւ յոյներ նախկին Հռոմէական տիրապետութեան հպատակներ։ Փաւստոս հաւանօրէն հռոմայեցի էր, բնակութեամբ Հայաստանցի։ Պարբերութեանս երկրորդ մասէն «զայն ի միջոյ բարձեալ» այնպէս կ'իմացուի, թէ Թէոդորոս ինքնին մերժուած, արտասահմանուած է Հայաստանէն։ «Ճշմարտասէր փութով» յարմարցուած կ'երեւայ Կորիւնի «քրիստոսասէր փութով» ասութեան նմանութեամբ (հմմտ․ Նորայր, Կորիւն, էջ 98—99)։ «Արտաքոյ իւրեանց... մերժեցին» պէտք է լրացնել կամ «սահմանացն» եւ կամ «աշխարհին»․ H ունի «հալածեալ յիւրեանց աշխարհէն»։

Այս ամբողջ հատուածը H ունի․ «Յայնժամ արք ոմանք հալածեալք ի ժողովոյն Եփեսոսի, որում անուն էր Թէոդորոս, ըստ Պաւղոսի Սամոստացւոյ եւ ըստ Նեստորի հերձուածոյն գիրս ստացեալ համաձայնս պարզամտացն եւ դիւրահաւանիցն, եւ եկեալ յաշխարհս մեր՝ կամէին ուսուցանել գչար աղանդն։ Վասն որոյ ի սուրբ ժողովոյն առաքեալ թուղթս՝ ազդ առնէին ճշմարտահաւատ փառաւորչացն Սահակայ եւ Մեսրոպայ։ Եւ նոցա ճշմարտապէս փութով զկամակոր հերձուածողսն ի բաց հալածեալ յիւրեանց աշխարհէն, զի մի ինչ ի լուսաւոր վարդապետութիւնն ծուխ ինչ սատանայական մերձեցի» (էջ 40—41)։ Ընդգծուած բառերը փոխառութիւն են ԺԶ․ 3էն․ ինչպէս կ'երեւայ նախնաբար ինքնակաց եղած է, գրուած Ս․ Սահակի, Ակակի եւ Պրոկղի թղթերու, թերեւս նաեւ Մ․ Խոր․ ազդեցութեան տակ։

Կորիւն չէր կրնար հեղինակն ըլլալ հատուածիս, վասն զի չէր կրնար ինքը Ս․ Սահակի տուած վկայութեան հակառակ վկայել։ Ուշադրութեան արժանի է նաեւ այն պարագան, որ հատուածս անծանօթ մնացած է Ագաթանգեղոսի խմբագրին։

76․ Թէոդորոս Մոպսուեստացի։ — Թէոդորոս ծնած է Անտիոք իբրեւ զաւակ հարուստ եւ ազնիւ ընտանիքի․ իր ուսումն առաւ առ ոտս Լիբանիոս իմաստակի, որ յԱնտիոք կը դասախօսէր․ հետեւեցաւ ճարտարախօսութեան եւ գրականութեան։ Մտադրած էր գործել աշխարհիկ ասպարէզի վրայ․ բայց իր երիցագոյն ուսումնակիցը Յովհաննէս, որ ապա Ոսկեբերան կոչուեցաւ, շահեցաւ զինքը եկեղեցւոյ ծառայութեան․ մտաւ վանք մը, ուր Դիոդորոս էր առաջնորդը, այն որ յետոյ Տարսոնի եպիսկոպոս կարգուեցաւ։ Իբր 383ին ձեռնադրուեցաւ քահանայ եւ գործեց ժամանակ մը Անտիոք իբրեւ ուսուցիչ եւ հոգեւոր հովիւ։ Ապա փոխադրուեցաւ Տարսոն վաստակելու Դիոդոր եպիսկոպոսի առաջնորդութեան տակ։ 392ին ընտրուեցաւ Մոպսուեստիայի (Մամուեստիա, այժմ Միսիս) եպիսկոպոս․ վախճանեցաւ 428ին, հաշտ Եկեղեցւոյ հետ։

Թէոդորոս պարապեցաւ երիտասարդական հասակէն մինչեւ խոր ծերութիւն գրական աշխատանքներու․ արտադրեց անհամար գրքեր։ Ազդու կերպով պայքարեցաւ ամենազգի հերձուածողներու դէմ։ Վայելեց մեծ համբաւ․ ամէն կողմէ կը դիմէին իր խորհուրդին։ Իր բարեկամներն էին ի մէջ այլոց Յովհաննէս Անտիոքի եպիսկոպոսն եւ Թէոդորետոս։ Բայց ունէր նաեւ թշնամիներ։

Վերջիններս ձայն բարձրացուցին իրեն դէմ իր մահուընէն ետքը։ Դժբախտաբար Թէոդորոս եղած էր Նեստոր մը Նեստորէն յառաջ․ կուսակից մ'էր Պեղագիոսի եւ կ'ուրանար սկզբնական մեղքը․ եղաւ վերանորոգող եւ աւերիչ աստուածաշնչեան Կանոնին։

Հազիւ հողին յանձնուած էին իր աճիւնները, երբ ձայն բարձրացուց

իրեն դէմ Ռաբուլա, Եդեսիոյ եպիսկոպոսը, որուն յարեցաւ Ակակ Մելիտենէի եպիսկոպոսը: Կը պահանջէին հրով մաշել անոր գրքերը, զորոնք հերձուածողական եւ նեստորամիտ կը հռչակէին: Այս մասին վերջնական վճիռը տուաւ հինգերորդ տիեզերական ժողովը 553ին, որ դատապարտեց Թէոդորոսն եւ անոր գրուածքները: Ասով ոչնչացման մատնուեցան Թէոդորոսի թէ լաւ եւ թէ հերձուածամիտ գրութիւնները, որոնք թէ թուով եւ թէ բովանդակութեամբ հարուստ էին:

Մեզի հասած են ինչ ինչ մնացորդներ, կամ յոյն բնագրով եւ կամ լատին եւ ասորի թարգմանութեամբ: Անոնց թուին մէջ կը յիշուի նաեւ գրուածք մը Պարսից դենին մասին, ուղղուած Թէոդոր երէցէն առ Մաշտոց Հայոց քորեպիսկոպոս, զոր կարդացած է Թ. դարուն Փոտ պատրիարք: Թէոդորի մասին ընդարձակ տես O. Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, 3 (1912, Freiburg im B.) 312—324:

Թէոդորոս, որ բարեկամ մ՚եղած էր Մաշտոցի, թերեւս նաեւ աշակերտակից, համբաւ վայելած ըլլալու է նաեւ Հայոց քով եւ իր ինչ ինչ գրութիւններ, յատկապէս հակամարտութիւնք ընդդէմ հերձուածողաց եւ Ս. Գրոց մեկնութիւնք, թարգմանուած ըլլալու են հայերէնի, անոր կենդանութեան իսկ. յամենայն դէպս պէտք է ենթադրել, թէ ընդդէմ Պարսից դենին գրուածքը հայերէնի թարգմանուած ըլլայ: Եզնիկ իր Ընդդէմ աղանդոց գրքին մէջ չէ՞ օգտուած անոնցմէ:

Թէպէտ մատնանիշ չենք կրնար ընել յանուանէ այդպիսի թարգմանութիւններ, բայց չենք ալ կարծեր, որ բոլորովին սուտ ըլլայ այն համբաւը, թէ Թէոդորոսի գրքերը հայերէն թարգմանութեամբ հասած են Հայաստան, զորոնք Ակակ եպիսկոպոս այրել կը հրամայէ: Այս եւ ասոր հայող խնդրոց մասին տես իմ Մաշտոց վարդապետ, էջ 56—68:

77. Կորիւն եւ Ղեւոնդ ե՞րբ ուղարկուեցան Կ. Պոլիս: Ջամչեան, Նորայր եւ ուրիշներ, որոնք արժէք տուած են Մ. Խորենացւոյ տողերուն (Գ. 60. Եզնիկ եւ Յովսէփ Եդեսիայէն կ՚անցնին Կ. Պոլիս. «եւ ընդ նոսա նախանձեալ ընկերաց իւրեանց աշակերտակցաց, որոց անուանքն Ղեւոնդ եւ Կորիւն կարդային՝ յիւրեանց կամաց ելին առ նոսա ի Բիւզանդիոն: Ապա ելանեն անդր Յոհան եւ Արձան...: Որոց ընդունելութիւն ամենեցուն մեծապէս արար Մաքսիմիանոս եպիսկոպոս Բիւզանդացւոց»), կը համարին թէ ինչպէս Եզնիկ եւ Յովսէփ, նոյնպէս Ղեւոնդ եւ Կորիւն, ապա Յոհան եւ Արձան «զոյգ զոյգ մի զմիոյ կնի՝ հասած են ի թագաւորական քաղաքն կա՛մ ի կատարած 431 տարւոյն կա՛մ ի սկիզբն 432ի»: Իսկ վերադարձած են Մ. Խորենացւոյ (Գ. 61) համաձայն 434 կամ 435ին (Նորայր, Կորիւն, էջ 384—385): Իսկ Մ. Աբեղեան (Պատմութիւն, Ա., 151) Կորիւնի վերադարձը կը դնէ «ոչ վաղ քան 431 թ.»: Բայց հարկ է այս կէտին մէջ միայն Կորիւնի տողերը նկատի առնել. Յովսէփ եւ Եզնիկ ուղարկուեցան Եդեսիա իբր 426ին. անոնք Կ. Պոլիս գացին 431ին: Իսկ Ղեւոնդ եւ Կորիւն ուղարկուեցան իբրեւ թղթատար 436ին: Վերադարձը տեղի ունեցած ըլլալու է նոյն 436/37 տարւոյն (տե՛ս Մաշտոց վարդապետ, էջ 54—63 եւ տես Ներածութիւն):

78. Նիկիական եւ Եփեսոսական Կանոնք: — «Նիկիական Կանոնք» կ՚անուանեն նախնիք Նիկիոյ 325ի տիեզերական ժողովին եւ անկէ յառաջ եւ ետքը Անկիւրիա, Նէոկեսարիա, Գանգրա, Անտիոք եւ Լաւոդիկիա գումարուած ժողովներու կանոնները: Եփեսոսի 431ի ժողովը բարեկարգական հարցերով չէ զբաղած, ուստի կարելի չէ մտածել թէ հոս «Եփեսոսական» կանոնք ակնարկեն այն Եփեսոսի կանոնները, որոնք վեց գլխով կը գտնուին մեր Կանոնագրքի մէջ: Աւելի հաւանական է կարծել, թէ «Եփեսոսական» կանոնք ըսելով իմացուած ըլլայ Եփեսոսի ժողովին Պատմութիւնն եւ Կիւրղի Նզովները: Վերջինս հասած է Ե. դարու թարգմանութեամբ. իսկ ժողովին Պատմութիւնը կ՚երեւայ թէ Վրթանէս Քերդողի ձեռքի տակ ունեցած աղբիւրն է:

Իսկ «Հաստատուն օրինակք աստուածատուր Գրոցն» առանց տարակուսի Որոգինեան Տետրապլան (քառիջեան) կ՚ակնարկեն, զոր ունեցած են Սահակ

*եւ Եզնիկ աչքի առաջ Աստուածաշունչի փութանակի թարգմանութեան սրբագրութեան ժամանակ։*

79· Ճառք յաճախագոյնք։ *Կորիւն ԺԴ․ 7 կը գրէր, թէ Մաշտոց երբ կը գտնուէր Հռոմէական Հայաստան «բազում շնորհագիր մատեանս զհարցն եկեղեցւոյ ստացեալ՝ ծովացուցանէր զվարդապետութեանն զխորութիւն եւ լցեալ զեղոյր ամենայն հոգեւորն բարութեամբք»։ Այդ գրքերը առանց տարակուսի յունական Ս․ Հայրերու գործերն էին յունարէն բնագիրներով։ Գրուածքներ, որոնք կարելի չէր եղած իրեն ձեռք բերել Պարսկական Բաժնին մէջ։ Մաշտոց, որ կրթուած էր հելլենական դպրութեամբ, պարապած արտաքին ուսմամբ, ուշ ձեռք առած էր Ս․ Գիրքը եւ անոր ընթերցման մէջ խորացած։ Առաջին անգամ այժմ կը ծանօթանար յունական Հարց մատենագրութեան եւ կը նուիրուէր անոնց ընթերցման եւ անով կը ծովացնէր զվարդապետութեանն խորութիւն իր մտքին եւ սրտին մէջ։ Այդ գրութիւնները տարաւ անշուշտ իրեն հետ Հայաստան եւ անձամբ կամ ի ձեռն աշակերտաց թարգմանեց եւ կամ թարգմանել տուաւ․ ինչպէս Կիւրղի Կոչման ընծայութիւնն, Բարսղի Վեցօրեայքն եւ այլն։*

*Հմտութիւնն, զոր ձեռք բերաւ, յորդորեց զինքը ձեռնարկելու ինքնուրոյն հեղինակութեանց․ անոնք են «Ճառք յաճախագոյնք», որոնց բովանդակութեան եւ ոճի մասին այնքան լայնաբար խօսած է Կորիւն ԺԶ․ 7 հատուածին մէջ։ Այդ ճառերու նիւթն է քրիստոնէական վարդապետութեան «դժուարապատում» խորհուրդներն եւ «առակք խորիմացք», հանուած «ի զօրութենէ եւ ի հիւթոյ Գրոց մարգարէականաց», ինչպէս նաեւ առաքելականաց եւ առհասարակ Հին եւ Նոր Կտակարաններէ, զորոնք ներկայացուցած, բացայայտած է «դիւրալուր, շնորհագիւտ, բազմադիմի» իմաստներով, եւ «լի ամենայն ճաշակօք աւետարանական հաւատոցն ճշմարտութեան»։ Կը նկատուին այդ ճառերու մէջ «բազում նմանութիւնք եւ օրինակք յանցաւորացս աստի, առաւելագոյն վասն յարութենական յուսոյն առ հանդերձեալսն»։ Անոնք յօրինուած են ամէնուն համար դիւրամարս, «հեշտընկալ եւ դիւրահասոյց» ոճով, մանաւորապէս «տխմարագունից եւ մարմնական իրօք զբաղած» ժողովուրդին համար, եւ նպատակը կը հետապնդէն ժողովուրդը սթափելու, զուարթացնելու «առ խոստացեալ աւետիսն» քաջալերելու։*

*Հ․ Բ․ Սարգիսեան, Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, էջ 302—303, ուղիղ նկատած էր, թէ այս Ճառերը ոչ այլ ինչ են, բայց եթէ «Գրիգորի Վարդապետութիւնը», որ իբրեւ այսպիսի առնուած է Ագաթանգեղոսի Պատմութեան մէջ (էջ 134—372)։ Անկէ մասեր կը տեսնուին նաեւ Ագաթանգեղոսի Յառաջաբանին եւ Գրիգորի Խոստովանութեան, նաեւ Փաւստոսի Պատմութեան մէջ (Դ․5)։ Կ'արժէ այս «Վարդապետութիւնն» իր մասերու մէջ մանրակրկիտ ուսումնասիրութեան ենթարկել, վերականգնել եւ իբրեւ «Վարդապետութիւն Մաշտոցի» ուրոյն հատորի մէջ լոյս ընծայել։ Գոհար մըն է այն հայ մատենագրութեան եւ ցոլացուցիչը Մաշտոցի հանճարին։ Այս «ճառք յաճախագոյնք» չունին որ եւ է աղերս «Յաճախապատում Ճառերուն» հետ, զորոնք Պ․ Ֆետտէր եւ Ս․ Վեբեր ուզեցին Մաշտոց վարդապետի վերագրել, առ այս մերժեցնելով Կորիւնի ակնարկութիւնները։ Հմմտ․ իմ Մաշտոց վարդապետ, էջ 162—163։*

80· Թաբորական լեառն։ — *Կորիւն, յայտնի չէ ինչ աղբիւրէ, գիտէ թէ Քրիստոս «ի Թաբորական լերինն զաւետեաց երանութիւնն տայր» եւ դարձեալ «ի նմին լերինն զկանոնական զաղաւթսն առնէր մինչդեռ աշակերտքն ի Տիբերական ծովուն նաւէին»։ Նոր Կտակարանի մէջ Թաբոր լեռան յիշատակութիւնը չկայ։ Հին աւանդութեան մը համաձայն այս լեռան վրայ տեղի ունեցաւ Քրիստոսի այլակերպութիւնը։ Ի՞նչպէս պէտք է հասկնալ «զաւետեաց երանութիւնն»․ հաւանօրէն խօսքը ութ երանութեանց մասին է․ ուստի կ'ակնարկուի Մատթ․ Ե․ 1․ «ել ի լեառն... եւ ասէր․ Երանի աղքատաց հոգւով․ զի նոցա է արքայութիւն երկնից»։ Այս լեռը Կորիւն Թաբորը կը համարի։ Նոյնը գիտէ ան նաեւ Մատթ․ ԺԴ․ 23․ «ել ի լեառն առանձինն կալ*

յաղօթս· եւ իբրեւ ընդ երեկս եղեւ, անդ էր միայն»· երբ աշակերտները նաւով կ'երթային դէպի Գեննեսարէթ։ Այս տեղիքին հետ նկատի առած է Կորիւն նաեւ Յովհ· Զ· 1· ուր ծովը կը կոչուի «Գալիլեացւոց Տիբերեայ»· որ բնականաբար Թաբոր լեռան հետ որ եւ է աղերս չունի։ Ինծի կ'երեւայ, թէ Բնագրին մէջ թերոյթ մը պէտք է ենթադրել· ի Թաբորական լերինն ||||, այսինքն թէ Յիսուս իր աշակերտներէն երեքը հանեց այդ լեռը· նոյնպէս առանձնացաւ աշակերտներու հետ ուրիշ լեռ մը, ուր «զաւետեաց երանութիւնն տայր»։ Այս մասին տես նաեւ S. Weber, Bemerkungen zur palestinensischen Ortskunde aus armenischen Schriftstellern. Հանդ· Ամս· 41 (1927), 817—826, յատկապէս էջ 82։

81· Ս· Սահակի մահուան տարին։ — Կորիւնի տեղիքն «յառաջնում ամի Երկրորդ Յազկերտի··· ի կատարել ամսոյն Նաւասարդի··· յերկրորդ ժամու աւուրն··· ծերունւոյն զհոգին ի Քրիստոս աւանդեալ» Սուտ Ղազար Փարպեցի յառաջ բերած է այսպէս· «ի սկզբան ամին երկրորդի Յազկերտի··· յամսեանն նաւասարդի, որ օր Լ· էր ամսոյն, յերկրորդ (Ա·—Գ· տպ· յերրորդ) ժամու աւուրն» (37)։ Իսկ Մ· Խորենացի (Գ· 67)· վախճանեցաւ Սահակ յետ ԾԱ· ամի եպիսկոպոսութեան «սկսեալ յերրորդ ամէ վերջնոյ Խոսրովայ··· մինչեւ ցսկիզբն ամին երկրորդի Յազկերտի··· յելս ամսոյն նաւասարդի»։ Հիները սկսեալ Չամչեանէն Յազկերտի Ա· տարին կը նշանակեն 439· եւ եթէ Սահակի մահը տեղի ունեցած գիտեն «յամի Տեառն 440 ի վերջնում ամսեանն նաւասարդի, այն է իններորդ օր սեպտեմբերի» (Չամչեան, Պատմ· Ա· 533), յայտնապէս կը տեսնուի թէ կարեւորութիւն տուած են Փարպեցւոյ եւ Մ· Խորենացւոյ ընթերցուածներուն, անտեսելով Կորիւնի «յառաջնում ամի Երկրորդ Յազկերտի»։ Այսպէս 440 ունի նաեւ Հ· Յ· Գաթըրճեան, Տիեզ· Պատմ· Բ· 527։ Միայն Հ· Ղ· Ալիշան է, որ անտեսելով Փարպեցւոյ եւ Մ· Խորենացւոյ տեղիքները Կորիւնի կը հետեւի եւ կը ստանայ 439 սեպտ· 7 (Յուշիկք հայրենեաց Հայոց, Ա· 347)։

Երբ լոյս տեսաւ Th. Nöldekeի Geschichte der Perser und Araber zur Zeit der Sassaniden. Leyden 1879· ուր Յազկերտ Բ·ի գահակալութեան ստուգագոյն տարին 4 աւգոստոս 438 ցոյց տուած էր, հարկաւոր տեսնուեցաւ ասոր համեմատ ճշդել նաեւ Ս· Սահակի եւ Մաշտոցի մահուան տարիները· այն է 7 սեպտ· 438 եւ 17 փետր· 439 (հմմտ· Նորայր, Կորիւն, էջ 387—388)։ Այս ժամանակագրութեան հետեւած էի եւ ես (Մաշտոց վարդապետ, էջ 71, 80, 157 եւն)։ Պէտք եղաւ վերաքննել Թ· Նէօլդեկէի պատճառաբանութիւնները ի մասին Յազկերտ Բ·ի առաջին տարւոյն։ Քննութիւններուս արդիւնքն եղաւ, որ ըստ ասորի եւ հայ աղբիւրներու Յազկերտի պաշտօնական Ա· տարին պէտք է համարիլ 439 աւգ· 4։ Իր հայրը Վռամ Ե· պէտք է վախճանած ըլլայ 439 տարւոյ առաջին ամիսներուն· 439 յունիսին արդէն գահին վրայ էր Յազկերտ (տե՛ս Ակինեան, Կանոնք Շահապիվանի ժողովոյն, էջ 93—95)։ Ուստի Սահակ վախճանած է 439 սեպտ· 7ին։

82· Բլրացւոց գիւղ։ — Սուտ Ղազար Փարպ· 37 այս տեղիքը յառաջ կը բերէ այսպէս· «վախճանեցաւ··· ի գաւառին Բագրեւանդայ, ի գեւղն որ անուանեալ կոչի Բլուր»· Մ· Խորենացի (Գ· 67) կը պատմէ, թէ Սահակ, որ առանձնացած էր ի Բագրեւանդ գաւառի··· (ի Բագնացն աւանի), երբ Յազկերտ Բ·ի զօրքերը «եկեալ անարգապէս բանակեցան հուպ առ Բագնացն աւանի, յայնժամ հասեալ մեծին Սահակայ հիւանդութիւն մահու եւ առեալ զնա աշակերտացն՝ տարան ի գեւղն որ կոչի Բլուր··· ուր եւ եհաս վախճան»։ Այսպէս «ի գեւղն Բլուր» ունի նաեւ H· իսկ B «ի գիւղն Բլրոցաց»· առ այս կը գրէ Հիւբշման· «ուրեմն ուղղականը Բլրոցք, որ բլուրի հետ (յք· բլուրք, սեռ· բլրոց) չի համաձայնիր» (Տեղւոյ անուններ, 325)։ Այս անհամաձայնութիւնը կը բառնայ Բլրեցւոց ընթերցուածը· ուստի Բլուր + եցի, հմմտ· Աթէնք, Աթենացւոց քաղաք։ Բլուր գիւղին ստոյգ տեղը չգիտենք, կը գրէ Հ· Ղ· Ալիշան, «զոր անկ է կարծել ի լեռնակողմանս ուրեք հեռի յարքունի պողոտայէն», թերեւս յեցած Մ· Խորենացւոյ յիշեալ վկայութեան վրայ

(Այրարատ, էջ 528)․ այլուր (էջ 535) նկատի առնելով Բագրեւանդի Ենկի թեփէ գիւղը Ալաշկերտի (Վաղարշակերտի) շրջանին մէջ, «յիշեցուցանէ, կը գրէ, զՀին Բլուր կամ Բլրոյաց գիւղ»:

Այստեղ, Բլուր գիւղին մէջ կը պարապէր Սահակ Եզնիկի հետ Ս․ Գրոց սրբագրութեամբ: Ասկէ կարելի է հետեւցնել թերեւս, թէ այս շրջանին Բլուր նստոցն էր Բագրեւանդի եպիսկոպոսին, վասն զի Եզնիկ 450ին գաւառիս եպիսկոպոսը կը յիշուի: Միւս կողմէ, եթէ Մ․ Խորենացի կը գրէ թէ Սահակ հիւանդագին Բագաւանէն Բլուր գիւղ փոխադրուեցաւ, պէտք է կարծել թէ Բլուր Բագաւանէն շատ հեռու չէր նկատեր Խորենացի:

Երեմիա, որ Սահակի ձեռնասունն եւ պաշտօնէից գլխաւորը կը ներկայացուի, ուրիշ կողմէ ծանօթ չէ: Եթէ «պաշտօնեայք» διάκονος, սարկաւագ իմաստով առնուի, Երեմիա պէտք է սարկաւագապետ նկատուի: Բայց չկայ որ եւ է պատճառ այս իմաստի դիմելու համար:

Դուստրը, որ կին Վարդանայ: — Վերագոյն Ծան․ 34 խօսք եղաւ այս մասին․ պարբերութիւնս անհարազատ է տեղւոյս, ինչպէս որ անյարիր է նախորդ եւ յաջորդ բառերու իր գործիական հոլովով․ «պարապեալ ամենայն հանդերձանօք... պաշտօնէիցն իւրոց... հանդերձ աստուածասէր իշխանական միով, որ անուանեալ կոչէր Դուստր, որ էր կին Վարդանայ, զոր ի վերոյն (Ա. ի վերնոյն) յիշեցաք, եւ բազմամբոխ սրբոց ժողովելոցն բարձեալ...»: Նկատելու է լուսանցագրութիւն մը: Դուստր իշխանակին Վարդանայ յիշուած է հոս որպէս կին Սահակայ թոռնիկին, ուստի եւ որպէս մայր Ս․ Շուշանկան: Այլուր չէ յիշուած «Դուստր» անունս, եւ ոչ Ս․ Շուշանկան վկայաբանութեան մէջ:

83․ Աշտիշատ գիւղ: — Կորիւն կը չեշտէ, թէ Ս․ Սահակի մարմինը տարին Տարօն «ի բուն իսկ գեւղն․ եւ անդ ի մարտիրոսական խորանին յարկեղս սրբոցն... եդեալ»: Փաւստոս Աշտիշատը կ'անուանէ «աւան» եւ «գիւղ» (Գ․ 19)․ այս տեղ կային Վահագնի մեհեանք, զորոնք կործանեց Ս․ Գրիգոր եւ անոր աւերակներուն վրայ կանգնեց «զմեծ եւ առաջին մայրն եկեղեցեացն Հայոց», որ շրջափակուած էր քաղաքորմով (Փաւստ․ Գ․ 3, 14): Այն տեղ էր նաեւ Եպիսկոպոսանոցն (անդ, Գ․ 19): «Ի ներքոյ քան զնա» կար մարգարէանոցն Յովհաննու․ նոյնպէս մօտ ի տուն Տեառն Հանգիստ առաքելոցն» (անդ, Գ․ 14): «Մեծ մարգարէանոցն Յովհաննու... էր նախ շինեալ տուն աղօթից եւ խնդրուածոց ի հանգիստ սրբոցն»: Այս տեղը Փառէնի «էր հաւատացեալ»․ երբ նա եպիսկոպոսապետ ըլլալէ ետքը վախճանեցաւ, մարմինը տարին «ի գաւառն Տարօնոյ... յագարակն մեծի մարգարէանոցին Յովհաննու» (Գ․ 16): Հաւանօրէն թաղուեցաւ Սահակ ի մատրան, որ կը կոչուէր «Հանգիստ Առաքելոց» կամ «Առաքելարան Տեառնաշակերտացն (Փաւստ․ Գ․ 3): Փաւստոս կը յիշէ նաեւ «Վկայարան Մարտիրոսաց» (անդ):

Աշտիշատի դիրքը կ'որոշէ Ագաթ․ 422․ «ի սնարս լերինն Քարքեայ ի վերայ գետոյն Եփրատայ (այսինքն Արածանւոյ), որ հանդէպ հայի ի մեծ լեառնն Տաւրոսի»․ Փաւստոս (Դ․49 կը պատմէ թէ Հայր մարդպետ իջնալով Աշտիշատէն կը հասնէր Եփրատայ եզերքը, ուր երկու գետեր իրարու հետ կը խառնուին հին Մծուրք քաղաքին քով, զոր շինած էր Սանատրուկ թագաւոր: Հ․ Ղ․ Ինճիճեան, Նոր Հայաստան, էջ 193—194 կը գրէ․ «Սուրբ Սահակ, ի հն(ումն) Աշտիշատ: Գիւղ հեռի սուրբ Կարապետէ իբրեւ 6 ժամու յարեւելեան կողմն նորա առ ստորոտով լերին․ յեկեղեցւոջ սորա որ քակեալ կայ ըստ մասին, է գերեզման սրբոյն Սահակայ, նաեւ սրբոյն Շուշանայ որպէս ասեն, ուր յաճախեն ուխտաւորք յաւուր աւագ հինգշաբաթւոջ: Զսուրբ եկեղեցին եւ զմենաստան քակեաց Լէնկթէմիւրն առ ի շինել ի քարանց անտի զքայքայեալ կամուրջն Եփրատայ... ի Սուրբ Սահակայ մինչ ի կամուրջն... հեռի է իբրեւ 2 ժամու»:

Սուտ Ղազար Փարպեցի կը գրէ այս առթիւ․ «Ուր եւ շինեալ եկեղեցի մեծապայծառ եւ վկայարան սրբոց՝ զարդարեցին պատուական եւ մեծագին սպասուք․ հիմնացեալ կանգնեցին ի տեղւոջն վանս բազմութեան պաշտօ-

նէից, կարգեալ դարման անպակաս պտղոց ի հանդիստ առաւելեալ եղբայրութեանն․ ժողովս տարեւորականս աշխարհայորդոր բազմութեամբ հաստատեցին ի տեղւոջն․ որ ըստ ժամանակի բազմամբոխ ժողովրդօք կամաւոր յօժարութեամբ ազատք եւ քահանայք գաւառին, այլ եւ կարի յոյժ ի հեռաւոր տեղեաց դիմեալք զօր կարգադրութեան նորա կատարեն։ Ուր եւ բազում օգնականութիւնս առողջութեան ըստ իւրաքանչիւր ախտից շահէին ի նշխարաց սրբոյն եւ ուրախալից սրտիւ դառնային ի բնակութիւն յիւրաքանչիւր» (37)։ Հմմտ․ Յ․ Թաթարեան, Ս․ Սահակայ գերեզմանն յԱշտիշատ․ Բիւզանդիոն, 1897, Թ․ 205։

«Որպէս եւ զաւր ծննդեանն զնոյն համարեալ յիշէին»։ — Այս տեղ անշուշտ «օր ծննդեանն» կ'ակնարկէ ամսոյն օրը, այն է 30 Նաւասարդի=7 սեպտ․ եւ ոչ օրուան պատկերը (439ին սեպտ․ 7՝ երեքշաբթի)։ Հաւանօրէն կը տօնուէր Հայոց քով ալ օրն ծննդեան․ որով միայն կարող էր իբր դար մը ետքը Սահակի ծննդեան օրը մարդկան յիշողութեան մէջ կենդանի մնալ։ Կ'ըսուի թէ Սահակ 110 տարեկան հասակի մէջ վախճանած ըլլայ (Diegesis)։ Իսկ Թովմաս Արծրունի (էջ 74) 120 կը նշանակէ Սահակի տարիքը․ ուստի Սահակ ծնած պիտի ըլլայ 319ին կամ 329ին․ սովորաբար կը վերագրուի Սահակի իբր 100ամեայ տարիք եւ ծննդեան տարին կը համարուի իբր 339ին։

«Ի պաշտաման անուշահոտ իւղոյն»։ — Անուշահոտ իւղն է միւռոնը (յն․ μυρον, որ Իմաստ․ Բ․ 7 թարգմանուած է «անոյշ իւղ»)․ հոս խօսքը հիւանդաց իւղի մասին է․ հմմտ․ Յակոբ․ Ե․ 14․ «Հիւանդանայցէ ոք ի ձէնջ՝ կոչեսցեն զերիցունս եկեղեցւոյն եւ արասցեն ի վերայ նորա աղօթս, օծցեն իւղով (αυρον) յանուն Տեառն»։ Տեղւոյս կը հայի հետեւեալ հարցը։

Հ․ Ղ․ Ալիշան (Հայապատում, Ա․, էջ 49) յառաջ կը բերէ տեղիքս․

«Whiston անգլիացի գրէր առ հայագէտն La Croze, թէ ‘Զարմանամ որ դու եւ Schroeder կ'ըսէք թէ Խորենացին ի Կորիւնէ առեր է Յովսեպոսի յիշած (Բ․ ԺԵ) ապրսամ (իւղոյն) յիշատակը․ բայց երկուքին բանից ոճն զանազանի իրարմէ, միաբանին՝ բալսանը ապրսամ կոչելով,։ Բայց, կը գրէ Ալիշան, Ապրսամ չի գտնուիր Կորիւնի մեր օրինակաց մէջ։ Յարմարագոյն տեղն պիտի ըլլար յիշուելու հոն ուր կ'ըսուի․ ‘ի պաշտաման անուշահոտ իւղոյն,։ Միթէ ա՞յս տեղ սպրդած էր ապրսամն, եթէ ուրիշ տեղ․ ըսել է թէ բանք պակասին մեր օրինակաց մէջ։ Եւ այս անտարակոյս է, ինչպէս յառաջ յիշեցի, թէ աւելի երկար գրած էր Կորիւն այս գործը»։

Whistonի յիշած Gorionides յունական ձեւն է Josippon կամ Յովսէփ ben Gorion անուան, որ հրեայ հեղինակ մըն է, եւ գրած է եբրայերէն լեզուով Հրէից Պատմութիւնը, ժամանակ մը համարուած թէ այս ըլլայ Յովսէպոսի Պատմութեան սկզբնագիրը։ Josippus ben Gorionի մասին տե՛ս E. Schürer, Geschichte des jüdischen Volkes im Zeitalter Jesu Christi. I. Leipzig 1901, էջ 159—161 եւ J. Wellhausen, Der arabische Josippus. Berlin 1897. Հմմտ. W. von Christ, Geschichte der griechischen Literatur, II, I, München 1920, էջ 601. Lacroze իր մէկ թղթին մէջ, գրուած 1718ին, կը լիշէ, թէ Josephus Gorionidesի գործը հրատարակած է J. F. Breihaupt (Thesauri epistolici Lacroziani t. III, էջ 131)։ Ուստի հրեայ Յ․ բեն Կորիոնի մասին ըսուածը կարծած է Հ․ Ալիշան, թէ Կորիւնի կը հայի։

Gulielmus Whiston 24 դեկտ. 1731 Լոնտոն կը գրէ առ La Croze:

Non possumus quin miremur, quomodo tu vir doctissime, pariter cum Schroedero, indaxeritis in animum, quae testimonia ex Josepho produxerit Chorenensis, ea ex Gorionide deprompta fuisse suspicari; quum non solum res a Chorenense memoratae, sed totum orationis filum, atque ipse rerum contextus longissime a Gorionide discrepent; quin et ipsissias Josephi voces Graecas saepius Armeniace reddidisse videtur Moses, id quod cuiuis Graeca Josephi cum Armeniacis conferenti facile, credo, persuasuri sumus. Nam, quod ad vocem *Apersamon* attinet, quam Moses aeque ac Gorionides usurpat, sic nihil inde sequitur, nisi in nomen Chorenensis tèmporibus balsamo

Judaico in oriente datum fuisse, qua de re consulas Bochartum in *Hierozoic.* l. II. c. 51. Thesauri epistolici Lacroziani. t. I. Lipsiae 1742, *էջ* 356—357.

84. Բանակն Հայոց: — *Այս պարբերութիւնը* B *ունի «Սահակայ, լինէր հանդերձ սրբով վարդապետովն Բանակն Հայոց յԱյրարատեան* (IJK *յԱյրարատ*) *ի Նոր քաղաք... հասանէր:* K *կը կարդայ. «Սահակայ, հանդերձ սրբով վարդապետին յոստանին Հայւոց յԱյրարատ ի Նոր քաղաքին... հասանէր:* H (*չունի «լինէր հանդերձ սրբով վարդապետաւն բանակն Հայոց*) *յԱյրարատ գաւառի ի Նոր քաղաքն... հասանէր»: Կը համարիմ թէ չորս ձեռագիրներու մէջ ալ համառօտուած է հոս բնագիրը առաւել կամ նուազ չափով. լրացուցի եւ վերականգնեցի:*

*Հայոց Բանակին ձմերոցն էր 297էն յառաջ Ուտի. Անակ «եկեալ յանդիման եղեւ Թագաւորին Խոսրովու յՈւտի, ի Խաղխաղ քաղաքի, ի ձմերոցս արքայութեանն Հայոց»* (*Ագաթ.* 21)*: Այնուհետեւ Այրարատեան գաւառի մէջ կը ձմերէր հայ բանակը* (*հմմտ. Փարպ.* 67 *«ըստ սովորութեան». Եղիշէ.* 48, 60. *Մ. Խոր. Բ.* 65 *եւ այլն*)*: Մաշտոց վախճանեցաւ* 16 *փետր.* 440, *երբ ձմեռ էր տակաւին:*

*Իբր* 422*ին, երբ Մաշտոց վերադարձաւ Հռոմէական Հայաստանէն, «հասեալ ի Նոր քաղաք յանդիման լինէր սրբոյ եպիսկոպոսին Սահակայ եւ թագաւորին Հայոց, որում անուն Արտաշէս կոչէին եւ ամենայն Բանակին»* (*Կոր. ԺԴ.* 10)*: Ասկէ կարելի է թերեւս հետեւցնել, թէ Մաշտոցի վերադարձը տեղի ունեցած է ձմեռ ժամանակ, երբ բանակը տակաւին ձմերոց կը գտնուէր:*

*Հայոց եպիսկոպոսապետը միաժամանակ Բանակին եպիսկոպոսն էր. ուր կ'երթար թագաւորը իր բանակով, հոն էր նաեւ եպիսկոպոսը. այսպէս Վրթանէս Խոսրով Բ.ի օրով, Ս. Յուսիկ Տիրանի հետ Ծոփաց աշխարհը, Ներսէս Շահապիվան, երբ Բանակը Նաւասարդաց տօնը կը տօնէր, նոյնը Պապի եւ Հայոց Բանակի հետ Նպատ լեռան վրայ* (*տե՛ս Փաւստոս*)*:*

85. Յովսէփ Երէց: — *Այս Յովսէփը պէտք չէ շփոթել Յովսէփ Պաղնացւոյ հետ, որ Մաշտոցի օգնականն էր: Կորիւն վերագոյն Ա.* 2 *յիշած էր զինքը իբրեւ «այր պատուական», մին Մաշտոցի աշակերտներէն, որ հրամայած էր իրեն գրել Վարդապետի կենսագրութիւնը: Թէ այն տեղ եւ թէ այս տեղ որ եւ է ակնարկութիւն չենք գտներ Յովսէփի ծննդավայրի մասին. լռելեա՞յն անցած է Կորիւն, թէ թերոյթ մը կայ հոս բնագրին մէջ: Սուտ Ղազար Փարպեցի* (*էջ* 38) *գիտէ սակայն. «որ էր ի գաւառէն Վայոց* (*Զ. Վայոյ*) *Ձորոյ, ի գեղէն որում անուն էր Խողոցիմք»: Հեղինակը իր ձեռքին աղբիւր ունէր Կորիւնը. առանց տարակուսի անկէ գիտէ այս մանրամասնութիւնն ալ: Վայոց Ձորէն գիտէ նաեւ Ղ. Փարպեցի* (*էջ* 101. *«սուրբ կաթողիկոսն Յովսէփ ի Վայոց* [*Զ. Վայոյ*] *Ձորոյ»*)*: Վայոց* (*կամ Վայոյ*) *Ձոր Սիւնեաց գաւառներէն էր* (*Հիւբշման, Տեղւոյ անուններ,* 259)*:*

*Մաշտոցի մահէն ետքը «գլխաւոր ժողովոյն» եւ «տեղապահ» կաթողիկոսին կարգուեցաւ Յովսէփ երէց: Պարսից Դուռը թոյլ չտուաւ, որ եպիսկոպոսական ձեռնադրութիւն ընդունի:* 450*ին Արտաշատի ժողովին նախագահն էր, ինչպէս կը գրէ Ղ. Փարպեցի* (44)*. «Յովսէփ, որ թէպէտ եւ երէց էր ըստ ձեռնադրութեան, այլ զկաթուղիկոսութեան Հայոց զաթոռն ունէր ի ժամանակին»: Նահատակուեցաւ* 27 *յուլիս* 454 *ի Ռեւան* (*Փարպ.* 101)*:*

Թադիկ, *Մ. Խոր. Գ.* 67 *գիտէ Թաթիկ: Ղ. Փարպեցի* (44, 75, 88) *կը յիշէ* 450*ի Արտաշատի ժողովին մասնակից «տէր Թաթիկ* (*սեռ. Թաթկայ*) *Բասենոյ եպիսկոպոս»: Կայ նաեւ անունս* Թաթ *Կամսարական* (*Փարպ.* 86)*: Յամենայն դէպս* H*ի ընթերցուածը «Թոդիկ» շփոթութիւն մըն է համանուն ճգնաւորին հետ, որ Է. դարուն կը ճգնէր ի Վարագ:*

86. Վահան Ամատունի: — *Կորիւն, որ կը գրէր իբր* 442*ին, կը ճանչնայ զինքը Վահան «յազգէն Ամատունեաց, որ էր հազարապետ Հայոց մեծաց», «այր պատուական» եւն: Ինքն էր որ առ սնարս Մաշտոցի կանգնած, առաւ անոր հաւանութիւնը, ինչպէս կը կարծեմ, որ Հայոց գրականութեան*

*Մեծ Վաստակաւորին մահկանացու նշխարները ամփոփուին Օշական, Այրարատեան նահանգի Արագածոտն գաւառի այս պատմական աւանին մէջ, որ Ամատունեաց ազգին տիրոջ նստոցն էր, ուր եւ կանգնեց փառաւոր խորան մը եւ ի հանգիստ փոխադրեց Մաշտոցի մարմինը. որ եւ եղաւ այնուհետեւ ուխտատեղի։*

*Երբ Վասակ Սիւնի Հայաստանի մարզպան կարգուեցաւ, որ եւ է պատճառով առաւ Վահանէն հազարապետութիւնը։ Ե՞րբ տեղի ունեցաւ այս դէպքը, չենք գիտեր։ Յամենայն դէպս դեռ 444ին հազարապետն էր Վահան, ինչպէս կ'ըսուի Շահապիվանի ժողովին Նախադրութեան մէջ. ուստի 444էն ետքը եւ 450էն յառաջ. այս տարւոյս լոկ «տէր Ամատունեաց» էր Վահան* (*Փարպ*. 445)։ *Ասկէ ծագեցաւ այն «ոխութիւնը», «զոր ունէին առ միմեանս իշխանն Սիւնեաց Վասակ եւ տէրն Ամատունեաց Վահան»* (*Փարպ*. 60)։ 450ին *Թէոդոս Բ. Կայսեր ուղարկուած հայ պատգամաւորութեան գլուխն էր «իշխանն տանն Ամատունեաց Վահան, որպէս այր մտացի եւ խորհրդական»* (*Փարպ*. 63)։ *Բիւզանդիոնէն վերադարձին կալանաւորուեցաւ եւ աքսորուեցաւ Վրկանից աշխարհ* (*Փարպ*. 86)։ *Հմմտ. Ակինեան, Եղիշէ վարդապետ, Բ*., *էջ* 465—467։

87. Հմայեակ Մամիկոնեան։ — *Եղբայրն էր սա Վարդան Մամիկոնեանի, Հայոց սպարապետի. հաւանօրէն անոր բացակայութեան իբրեւ ներկայացուցիչ սպարապետութեան՝ մասնակցած յուղարկաւորութեան բանակի կողմէ։ Հմայեակ, որ իրեն կին առած էր Արծրունի տունէն առաքինի Ձուիկը, քոյրը Աշուշայ իշխանի կնոջ Անուշվռամի, հայրն է Վահան Մամիկոնեանի եւ իր եղբայրներուն։ 450ին ինքն ալ մասնակից էր այն պատգամաւորութեան, որ հայ նախարարներու կողմէ ուղարկուած էր Թէոդոս Բ. Կայսեր։ Վերադարձին, երբ լսեց Վարդանի նահատակութիւնը Աւարայրի վրայ, չանցաւ Պարսկահայաստանի սահմանը. ամրացաւ Պարխարի լեռները, հոն ալ նահատակուեցաւ* (*Փարպ*. 73—75)։

88. Յովհան խոստովանող։ — *Զինքը պէտք չէ շփոթել ոչ Յովհան Եկեղեացացիի եւ ոչ Յովհ. Ա. կաթողիկոսի հետ։ Կորիւն շատ անորոշ, տարտամ իսկ, արտայայտուած է Յովհաննու անձնաւորութեան մասին։*

*Յովհան, անշուշտ յետ ընտրութեան, մեկնած է Տիզբոն, հաւանօրէն կարեւոր գործով մը. բայց հոն ենթարկուած է «բազում եւ ազգի ազգի փորձութեանց եւ կապանաւոր վշտաց» եւն։ Կորիւն, որ զգածուած կը նկարագրէ Յովհաննու կրած վշտերը, բառով մ'իսկ չ'ակնարկեր այս վշտերու պատճառը։ Զենք կրնար ենթադրել թէ Յովհան Արտաշէսի գահին վրայ յաջորդ մը պահանջած, եւ այսու արքայից արքայի բարկութիւնը գրգռած ըլլայ։ Բայց հաւանական է կարծել, թէ Յովսէփի ընտրութիւնը ծանուցած ըլլայ թագաւորին եւ անոր հաստատութիւնն եւ եպիսկոպոսական ձեռնադրութեան համար Կեսարիա երթալու թոյլտուութիւնը խնդրած ըլլայ։ Այսպիսի խնդիր պիտի բախէր առանց տարակուսի թագաւորին դիմադրութեան։ Տիզբոնի Եկեղեցին դեռ նոր խզած էր իր յարաբերութիւնները Անտիոքի հետ եւ ինք զինքը անկախ մետրապոլտութիւն հրատարակած բովանդակ Պարսկաստանի քրիստոնեաներու։ Պէտք էր Հայոց Եկեղեցին ալ ենթարկուէր անոր, խզելով ամէն կապ կայսերական արտասահմանի հետ։ Յովհան չէր կրնար տեղի տալ այս պահանջքին։ Կոտրելու համար իր յամառութիւնը կը բանտարկեն, կը կոշկոճեն, կը խոշտանգեն։ Ի վերջոյ կ'արձակուի Յովհան եւ կը վերադառնայ ձեռնունայն։ Այս առաջին անգամն էր, որ քրիստոնեայ Հայաստան իր ընտրած գլխաւոր եպիսկոպոսի համար հաստատութիւն կամ «վստահութիւն» կը խնդրէր հեթանոս թագաւորէն։*

*Կ'ըսուի, թէ Յովհան «այսրէն ի նոյն վերակացութիւն դառնայր յերկիրս Հայոց»։ Նա ընտրուած էր ժողովէն «վերակացու ժողովրդեան»։ Իր գործունէութեան մասին անդրադոյն տեղեկութիւններ կը պակսին։*

89· *Կորիւն սրտառուչ ոճով ներկայացուցած էր երկու մեծ գործիչներու Սահակի եւ Մաշտոցի յաստեացս յանմահութիւն փոխումը: Կը մնար մահուան յիշատակութիւնը երրորդ անձնաւորութեան մը, որ իբրեւ Մեկենաս երեւցաւ պատմութեան բեմին վրայ եւ անյայտացաւ: Անոր նպաստամատոյց աջակցութեան սակայն արդիւնքն էր մեծ ձեռնարկութեան յաջողութիւնը: Մեծն Վռամշապուհ: Թէպէտ հատու, բայց հոյակապ տողերու մէջ հիւսած է Կորիւն անոր գովքը:*

*Բայց որքա՜ն աղաւաղուած ձեւի մէջ հասցուցած է մեզի զայն միակ ձեռագիրը: Բարեբախտաբար Ագաթանգեղոս եւ Մովսէս Դասխուրանցի (Կաղանկատուացի) պահած են անկէ անաղարտ տողեր, որոնք կը նպաստեն մեզի վերականգնելու բնագիրը: Կը ներկայացնեմ այս տեղ երեք պատճենները:*

B Իսկ բարեացապարտին Վահանայ յանկարծահաս կենաց ամենեցուն լինէր որ աշխարհածնիւն հայրենեացն սեպհական ոգի գտեալ շնորհօքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ մերձաւոր կենակից վայելէր:

H Իսկ բարեացապարտն Վահան յանկարծահաս կենաց ասպնջական ցանկալի ամենայն սրբոց լինէր, որ աշխարհածնունդ հայրենեացն սեպհական որդի գտեալ՝ շնորհօք Քրիստոսի մերձաւոր կենացն յաւիտենից լինէր:

A· 11· Իսկ բարեացապարտն Տրդատ յանկարծակամ կենաց ասպնջական ցանկալի ամենեցուն լինէր, որ աշխարհածնունդ հայրենեացն որդի գտանէր շնորհօքն Աստուծոյ, եւ յաւիտենական կենացն մերձաւոր լինէր [bt Աստուծոյ մերձաւոր կենաց (b կենացն) վայելէր]:

*Մովսէս Դասխուրանցի Բ·* 41 (*էջ* 197, *էմին*)· «Ասպնջական ցանկալի սուրբ հաւատոցն լինելով, աշխարհածնունդ հայրենեացն որդի գտանէր շնորհօքն Աստուծոյ»:

*Աւելորդ կը համարիմ այլ եւ այլ փորձեր հատածիս սրբագրութեան համար մի առ մի յիշել հոս· հմմտ· Նորայր, Կորիւն,* 136· *Ֆնտգլեան, էջ* 73· *Աբեղեան, էջ* 96 *եւ* 122—123:

*Թէ ի՞նչպէս Վռամշապուհ «Վահանայ» փոխուած է, չեմ կրնար բացատրել· բայց Ագաթանգեղոսի «բարեացապարտն* Տրդատ» *բաւական էր անդրադառնալու համար, թէ հոս* Վռամշապուհի *մասին ըլլալու էր խօսքը:*

90· Ժամանակագրութիւն: — *Մաշտոց կրօնաւորած է* 47 *տարի:*

*Հայոց գրականութեան սկզբնաւորութենէն մինչեւ Մաշտոցի մահը կ'ընէ* 32 *տարի:*

*Այս տարիներուն Պարսկաստան թագաւորած են·*

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Վռամ Դ· Կրման* | 6 | *տարի* | (388—399) | 393—398/9· |
| *Յազկերտ Ա·* | 21 | „ | | 399—419· |
| *Վռամ Ե·* | 19 | „ | | 420—438/9· |
| *Յազկերտ Բ·* | 1 | „ | | 439/440· |
| | 47 | | | |

*Յազկերտ Բ·ի առաջին տարին* † *Մաշտոց* 439/40 (*փետր·* 17):
*Մաշտոց կը կրօնաւորի Վռամ Դ·ի չորրորդ տարին,* 392/3:
*Հայոց գրականութիւնը սկսաւ Յազկերտի Ա·ի ութերորդ տարին* 407/8: